# ՀԱՅ ԿԱՅՍԵՐՔ
## ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ

---

## Ա. ՀԱՏՈՐ

ՄՕՐԻԿ, ՎԱՐԴԱՆ, ԼԵՒՈՆ Ե. ՎԱՍԻԼ Ա. ԼԵՒՈՆ Զ. ԱՂԵՔՍԱՆԴՐ:

---

ԳՐԵՑ

Հ. Կ. ՏԷՐ ՍԱՀԱԿԵԱՆ
ՄԽԻԹԱՐԵԱՆ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ
1905

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հայեր՝ որ աղքատ կը ծնանին ու կայսր կը մեռնին։

Կեանքի այս մեծ հակասութիւնները՝ մեծ հանճարով մը միայն կրնան հանգուցուիլ, եւ այն՝ բաղդին օգնութեամբ։

Իրենց գոյութիւնը՝ *Աստուածային կատակերգութեան* պէտի կոչուէր Տանդէէն. — Խաւարի մէջ կը սկսի, լոյսերու մէջ կ'աւարտի։

Վիպասանութիւն մ'է ան, որ գահակալութեան օրը՝ դիւցազներգութեան կը փոխուի։

Միջազգային ասպարէզին մէջ միանգամ կը տեսնենք Հայը. — երբ Բիւզանդիոյ մէջ կը մրցէր բոլոր ազգերու հետ, եւ կը գործէր ոչ միայն իբրեւ վաճառական ու զինուոր, այլ նաեւ իբրեւ Թագաւոր։

Բայց մեր ազգային կեանքի այս երջանկագոյն վայրկեանը մոռցուած է մեզմէ։

Անգէտ ենք դիւցազններուն՝ որ արեւուն նման գիշերուան ծոցէն ծնած, մարդկութիւնը կը շլացնէին երկնքի միջակէտէն։

Անոնց զէնքերը՝ Հայաստանի սահմաններուն վրայ չորացին. բայց եթէ իրենց օգուտները ուրիշներ վայելեցին, փառքը կը մնայ այն երկրին՝ որ անոնց արտադրողն եղաւ։

Հռոմէական պետութեան ամէն կողմը, — Եւրոպայի, Ասիոյ եւ Ափրիկէի մէջ, — կ'երգուէին հայ ասպետներու դիւցազնական վէպերը, որոնց արձագանգը դեռ կ'որոտայ բիւզանդական պատմագրութեան մէջ։

Հայութիւնը սակայն չգիտցաւ վերականգնել զանոնք վէպով ու թատրոնով. մինչդեռ սպարտացի մայրը իր տղային ասպարէզներու համար վրանին տակ *Ծառաչտիկինի* (Չմշկիկի) անունը կը յիշէ, հայ ժողովուրդը մոռացեալ է անոր դիւցազնութեանց։

Անցեալին ազգային ծանօթութիւն մը, զուրկ պիտի ըլլայ մեզ համար բարոյական դաս մը։

Պիտի իմանանք թէ հանճարը չէ պակսած մեզի, այլ անոր գնահատումը։

Գողգոթայի զարմանքը պիտի զգանք՝ երբ անդունդներ կոխելէ վերջ, ուղիղ դէզեր տեսաւ, զորմէ գործածող չկար։

Երախտարանին քով Թող պատմէ ուրեմն հայ մայրը՝ Բիւզանդիոն հայկազն կայսեր-ներու փառքը։ Այն ատեն Տրդատի պլպլուն լուսով, անոնք՝ լեգէոններու անցնիլը պի-տի տեսնան, լեգէոններ՝ որ հայ էին։ Պի-տի տեսնան հռոմայեցի կամ յոյն գունդեր ալ, բայց անոնց գլուխ հայ կայսր մը, որ սուրը մերկացնելով պատեանէն զանոնք կը կանչէ դէպ ի Տիգրոն, դէպ ի Բաբե-լոն, դէպ ի Արաբիա։

Անոնցմէ քիչ հեռու՝ պիտի տեսնան խառնիխուռն կոտորածը՝ Պարսիկներու, Բուլղարներու, եւ Անապատի ամեհի որ-դիներուն։

Այն ատեն պիտի բորբոքի իրենց սիրտը, յանդուգն երազներ պիտի իջնան իրենց կուրծքին մէջ, եւ պիտի ունենան ազգային ինքնաճանաչութիւնը՝ որ մայրն է ասպետա-կան յաղթութեանց։

*25 մայիս 1903*

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ



Ծրագիր պատմութեան՝ յունական Հայաստանի. — Իր կարեւորութիւնը ազգին պատմութեան և աշխարհագրութեան նկատմամբ. — Գեղեցկագիտական կարեւորութիւնը. Թատրոն ու վէպ. — Իր հնագոյն և նորագոյն աղբիւրները։ — Թիւ հայկազն կայսերաց։



Պատմագիրները կ'ըսեն յաճախ, Բիւզանդիոնի վրայ խօսելով, — թէ նա յունական քաղաք մ'էր. Կոստանդիանոս՝ հռոմէականի փոխեց, և Մէհէմմէտ Բ՝ տաճկականի։

Այս թուարկութիւնը՝ կատարեալ չէ։

Ժամանակ մ'եղաւ, ուր իր կայսրները յաջորդաբար հայ էին, հայ էր բանակին մէկ մասը, հայ էին զօրավարները՝ որ անոր կ'առաջնորդէին։ Ընկերութեան բոլոր դասակարգերը հայկական տարր մ'ունէին իրենց մէջ,

ազդեցիկ և ազատ տիրապետելու։ Ինչո՞ւ մոռնալ այս ճշմարտութիւնը։ Այո, Բիւզանդիոն մեկնման քաղաք մը ըլլալ դառնար. բայց Վասիլ և Զմշկիկ արդէն կանխած էին զայն ծայրակալմանի փոխելու։

Սխալ է կարծել՝ թէ երբ Հայաստանի թագաւորութիւնը երկուքի բաժնուեցաւ, ազգին մէկ մասը Յունաց ծառայելու գնաց. անոնց մէջ կային ոմանք՝ որ կ'երթային... Յունաց տիրելու։

Եւ այդ շրջանը որքան աղերաններ ունի մեր միջնադարեան Անցեալին մէջ, որքան յայտնութիւններ մեր ռոմանական նկարագրին։

Սակայն ըսել չէ կարծել թէ Հայոց՝ Բիւզանդիոնի մէջ կատարած դերը՝ ինչը հայ գաղթականութեան մը ծառայական պատմութիւնն ըլլայ է, ինչպէս կը կարծուի ընդհանրապէս։

Ոչ. անոր կարեւորութիւնը շատ աւելի մեծ է, այնքան մեծ՝ որքան ազգային պատմութեանը։

Ի՞նչ կը ծածկուանը այս անուան ներքեւ.
— Պարսկահայաստանի պատմութիւնը։

Բայց հայ երկրի և մասնաւորապէս հայ ժողովրդեան մեծ մաս մը կար, որ Յունաց իշխանութեան ենթարկեալ էր. ինչո՞ւ զայն Պատմութենէ դուրս ձգել։

Եթէ ան օտար տէրութեան ծառայած էր, Պարսկահայաստանն լաւագոյն բաժին մը չունէր։ Այս վերջինն ալ, ինչպէս յունական բաժինը, յաճախ օտար մարզպաններէ կա-

ռամկավարութեան։ Յունաստանի վրայ զէթ Հայերը թագաւորեցին, բայց հայ շահնշահ մը չենք գտներ յիշատակուած։

Մեր կարծեօք ինչպէս հայ ազգը երկուքի բաժնուեցաւ, յունական բաժին և պարսկական բաժին, այնպէս ազգային պատմութիւնն ալ երկուքի պէտք է բաժնուի. Պատմութիւն Պարսկա–Հայաստանի և Պատմութիւն յունական Հայաստանի։

Այս վերջինը գրեթէ առաջնոյն չափ կարեւորութիւն կ'ունի, երբ նկատենք որ՝ ազգին մեծամասնութեան համակրութիւնը Յունաց կողմն էր և ամենէն ազնուական ցեղերը (Արշակունիք, Մամիկոնեանք, Արծրունիք, Յունաց բաժինը գաղթեցին, այն աստիճան՝ որ յետոյ կարելի եղաւ Կիլիկիոյ մէջ անկախ թագաւորութիւն ալ հաստատել։

Այսպէս ուրեմն մեր նպատակն է, սոյն գործով ոչ եթէ ըսել թէ Հայերը ինչ գործած են Բիւզանդիոյ մէջ, այլ նախնին և գիտական փորձ մ'ընել — առ այժմ անհատներու կենսագրութեան ձեւին տակ — ազգային գիտութեան մը, որ շատ մասնակի և առանց մասնաւոր ուշադրութեան մը առնուած է ի նկատի, — գիտութեան մը՝ զոր անուանելու է Պատմութիւն յունական Հայաստանի։

*

Ի՞նչ ծրագրի վրայէն պէտք է նա ընթանայ։ —

Ամէն Անցեալ երկու ձեւով կարող է ներ-

ըլլան օտար ազգերու վերաբերեալ դէպքերը և ուր պատմութիւն Հայերու քաղաքական և ընկերական դերը իւրաքանչիւր կայսեր ժամանակ, — փոյթ չէ թէ օտար ծագումն ունեցած ըլլայ ան։

Այսպիսի գործ մը պիտի համապատասխանէ միշտ անոր՝ զոր կարելի է գրել Հայոց վիճակին վրայ՝ արդի ժամանակներու մէջ. — Ճապոնական ըլլալով միշտ, ամենայն զանգուածը ունի դեռ ինքնուրոյն նկարագիր, գործունէութիւն, ազդեցութիւն, արժանի ըլլալու համար պատմութեան մը, որ շահագրգռէ, — գոնէ ցեղակիցները։

2. **Հայկական Բիւզանդագիտութիւնը** կարող է առնել կենսագրութեան ձև, ուր ներկայացուին առանձին իւրաքանչիւր կայսր կամ իւրաքանչիւր զօրավար, և այլն։

Բայց այս ամէնը պէտք է հիմնուին հաւաստագիրներու վրայ. Հայ բիւզանդագէտը պիտի կարենայ երրորդ գործ մ՚ալ ընել ուրեմն, որուն մատենագրական արժէքը անժխտելի ըլլայ, և արդիւնքները՝ բազմատեսակ. — **Հաւաքածոյ մը բիւզանդական մատենագիրներու մէջ գտնուած բոլոր հայկական վկայութիւններուն։**

Բազմաթիւ դէպքեր Հայոց պատմութեան՝ իրենց վաւերացումը պիտի գտնեն յոյն պատմիչներէ, և նոյն իսկ, երբեմն, — ընդլայնումը։ Ուրիշ դէպքեր ալ պիտի ըլլան որոնց բացատրութիւնը, պատճառները, կամ հետեւանքները ընդ առաջ պիտի ելնեն մեզ՝



Ներկայումս մեծ ձգտում մը կայ արտա-սահմանի երիտասարդութեան մէջ՝ Հայը Եւ-րոպացիին ծանօթացնելու։

Ի՞նչ ճանապարհով կը դիմուի այս նպա-տակին։

Թարգմանելով ազգային պատմութիւնը, որ դեռ շատ մթութիւններ կան լուսաբանե-լի, որ շատ պարծանքներ կան տարակուսի տակ, կամ մանրանկարական քանի մ՚ հա-տուածներ։

Հայ ազգի ծանօթացնող մը՝ աւելի դիւ-րաւ պիտի մօտենայ իր գործին նպատակին, եթէ վերոյիշեալ գործերու հետ չմոռնայ նաև **Հայը Բիւզանդիոնի մէջ**։

Ո՛ր և իցէ օտարազգի՝ աւելի սիրով պիտի ընթեռնու փառքը Բիւզանդիոնի պատմութեան մէջ գործող Հայկազնի մը. վասնզի փառքն է ան՝ գիւղացիի մը, և յետոյ փառքն է անձի մը՝ որ յարնչութիւն ունեցաւ գրեթէ բոլոր ազգերուն հետ, Արեւելքի և Արեւմուտքի։



Բայց ամէնէն աւելի գեղեցկագիտութեան համար է որ շրջան մը կրնայ բանալ հայ-կական բիւզանդագիտութիւնը։

Մեր գրականութիւնը երբէք ուշադրութեան պիտի չարժանանայ, ցորչափ սահմանափա-կուած է անձկօրէն՝ ազգային նիւթերու մէջ։

Բիւզանդիոյ պատմութիւնը առիթ մը պիտի

ըլլար ամէն ընդարձակ ասպարէզի մէջ նետուելու, միանգամայն հաւատարիմ մնալով գրական ազգայնութեան։

Ցեղոյ մեր պատմութեան մէջ գոյները միակերպ են. ընդհակառակն հոն փառքն ու ցաւը փայլակնանման կը յաջորդեն իրարու. մարդկային հոգին կը տանջուի ծայրայեղ տրամադրութեանց մէջ։

Արքունեաց խորը ամենէն վայրագ զազանութիւնը կայ, և ամենէն բարձր խորհրդապաշտութիւնը՝ վանքերու մէջ։ Եւ այս երկուքը միշտ հաղորդակցութեան մէջ են, անյաջող փառասիրութեանց շնորհիւ։

Բիւզանդիոյ պատմութեան ամէն էջ վէպ մը կը համառօտէ. ամէն էջ վարագոյր մ'է, որ թատերական բեմ մը կը ծածկէ՝ լի մեծ և յուզիչ տեսարաններով։



Չամչեանէ զատ, — որ խօսած է, թէ և շատ համառօտիւ, սոյն կայսերներուն վրայ, — ի բաց առեալ Չմշկիկի կենսագրութեան թարգմանութիւնը (Քարամեանցէ) և Գելցերի Ուրուագիծը (Տէր–Մովսէսեանէ), ամբողջական գործ մը լոյս չէ տեսած՝ հայ բիւզանդագիտութեան վերաբերեալ։

Այս իսկ կ'ապացուցանէ թէ բիւզանդական հին մատենագրութիւնը, նորագոյն ուսումնասիրութիւնք անծանօթ մնացած են մեզմէ։

Բիւզանդական պատմիչներու ամբողջ շարքը հրատարակուած է ի Վենետիկ, 1729ին, մեծադիր, և հետագայ վերնագրով.

## Corpus historiae byzantinae.

Վերջին հատորին մէջ կը գտնուին բիւզանդացի բոլոր կայսերաց դրամներուն պատկերները։

2. Նիպուհր գերմանացին ուրիշ հրատարակութիւն մ'ալ ըրած է, փոքրադիր, տպագրեալ 1841ին, ի Պոնն. կը կոչուի նոյնպէս **Corpus historiae byzantinae:**

Երկուքն ալ ունին, յունարէնին հանդէպ, լատիներէն թարգմանութիւնը, և անուններու բազմաթիւ ցանկեր՝ որ աշխատութիւնը կը դիւրացնեն։

Յիշենք հոս գլխաւորները՝ բիւզանդացի պատմիչներուն. — ամբողջական ցուցակ մը շատ երկայն պիտի ըլլար։

**Մենանդր**, 582–602 Մորիկի ժամանակակից։

**Պրոկոպիոս**, շուրջ 560ին, Յուստինիանոսի ժամանակակից։

Բազմաթիւ հայ զօրավարներ կը յիշէ, և Արշակ Բ-ի. դէպքերը փոխ կ'առնու Բիւզանդէն։

**Ագաթիաս**, շուրջ 566ին. գրեց Յուստինիանոս Բ-ի գործերուն վրայ։

**Թէոփիլակտոս Սիմոկատտա**, շուրջ 612, կենսագիր Մորկայ։

**Թէոփանէս խոստովանող**, ժամանակագիր՝ ժամանակակից Լևոն Հայկազնի, շարայարեալ Լևոնդ Բիւզանդացիէն։

**Գէորգ Կեդրենոս** տարեգրութիւն մը յօրինեց որ կը սկսի աշխարհի ստեղծմանէն և կը հասնի մինչև Իսահակ Կոմնենոս։ **Միքայէլ**





Գըլիկաս նոյն ծրագիրը գործադրեց 1140ին։

Գէորգ Կրօնաւոր (791ին) ժամանակագրութիւն մը գրեց. նոյնը Ս. Նիկեփոր պատրիարք (828ին)։

Յովհաննէս Զոնարաս, որ կ'ապրէր շուրջ 1120ին, պատմութիւն մը գրեց աշխարհիս ստեղծմանէն մինչև 1118 թուականը։

Կոստանդին Մանասէ, որ ապրեցաւ 1150ին, Մանուէլ Կոմնենոսի ժամանակ, գրեց ոտանաւոր պատմութիւն մը, աշխարհիս ստեղծմանէն մինչև Կոմնենոս։

Որո՛նք ատենըմէ հայ կայսերներու վրայ կը խօսին։ Այս բանս պիտի տեսնանք ծանօթութեանց մէջ որ պիտի յաջորդեն կայսերաց կենսագրութեան։

Ասոնց նորագոյն ուսումնասիրութիւններն անտեսելու, ուղղակի բիւզանդացի աղբերաց դիմած ենք. ամէն անգամ որ հարկ էր Հայոց վերաբերեալ դէպք մը այլ և այլ հեղինակաց բաղդատութեամբ լուսաբանել. և տալ անոնց այն համեմատութիւնը՝ զոր հայկական տեսակէտէ կը ստանան. — Դէպք մը՝ որ օտար գիտնականի մը համար ինչ կարևորութիւն ունի, նոյնը պիտի չըլլայ բնականաբար Հայ քննողի մը համար։

Բիւզանդագիտական արդի մատենագրութիւնը, որ շատ ճոխ է, թուարկելու միտք չունինք, այլ անոնք՝ որ այս գործին նպաստեցին։

1. *Histoire du Bas-Empire*, par Lebeau, revue et augmentée d'après les

historiens orientaux, par M. Saint-Martin, 21 volumes, Paris, 1831.

*Այն գործը բիւզանդական պետութեան տարեգրութիւնն է, որուն ոճը՝ և զատատառանները քիչ մը ձինգած կը համարուին․ բայց յարգի է միշտ իբր խմբագրութիւն յոյն տարեգրողներուն։ Ժամանակագրութեան մէջ յաճախ մէկ կամ երկու տարի ետ կը մնայ (նմնտ.* Muralt) *սխալմամբ։*

2. *Յոյն պատմիչներու անելի համառօտիւ ձեռնարկութիւն մ՚է, բառացի թարգմանութիւն,* *Histoire de Constantinople*, par Mr. Cousin, président en la Cour des Monnaies, à Paris, chez Damien Faucault, Imprimerie et libraire ordinaire du Roi, MDCLXXXV.

*Այն գործը միանգամ միայն առիթ ունեցած ենք տեսնելու (ի Կ. Պոլիս)։*

3. *Essai de Chronographie byzantine*, par M. Edouard de Muralt, St. Petersburg 1855.

4. *L'empire grec au dixième siècle* (Constantin Porphyrogénète) par Alfred Rambaud, Paris 1870.

5. *Abriss der byzantinischen Kaisergeschichte*, *Հեռրիկոս Գելցերի․ հայերէն թարգմանուած՝ Տէր — Մովսիսեանէ, Էջմիածին,* 1903.

6. *L'épopée byzantine*, par Schlumberger, *թարգմանուած հայերէնի՝ Քարամեանցէ, Լուսայի մէջ,* 1899*ին։*

Գոյութիւն ունի բիւզանդագիտական — մասնագիտական թերթ մ'ալ, Byzantinische Zeitschrift. զոր գործածելու միջոցը չենք ունեցած։ Անթիւ են զաղղ. անգղ. գերմ. ուսումնասիրութիւնք, պատմական կամ տեղագրական՝ Կոստանդնուպոլսոյ վրայ։

Բայց անոնց կարեւորութիւնը չափազանց մասնագիտական է, որովհետեւ քաղաքական մեծագոյն դէպքերը կը գտնենք արդէն Բիւզանդացի պատմչաց քով։



Այն Հայերը՝ որ պաշտօնապէս Բիւզանդիոնի կայսր կը ճանչցուին պատմութեան մէջ, և որոնք միայն մուտ կը գործեն ցանկերու և ժամանակագրութեանց մէջ, երկոտասան են։

Անտարակոյս այդ երկոտասան կայսերքը, իրենց անուանքը, այն տառադարձներով՝ զոր Եւրոպացիք կու տան և անոնցմով զորս Զամչեան յօրինած է. թէ և այս վերջինոյն յօրինածը աւելի տարածուած է մեր մէջ, մենք այս գործին մէջ՝ հետեւեալները պիտի ընդունինք, 1° նախ ընդհանուր գիտութեան համընթաց ըլլալու համար, 2° ընթերցողը շփոթութիւններէ ազատելու համար՝ երբ եւրոպական գործի մը մէջ՝ նոյն կայսերաց անուանը հանդիպի։

**Ա. Մօրիկ** (Հայկազն կոչուած Զամչեանէ) 583–602

**Բ. Վարդան փիլիպպիկոս** (Վարդան փիլիկ կոչուած՝ հայ պատմիչներէն) 711–713

Գ. Լեւոն Ե. Հայկազն (Եւրոպացիք Հայ մականունը կու տան Լեւոնի, Չամչեան Արծրունի կը կոչէ զայն, — թէ և իրաւամբ) 813–820

Դ. Վասիլ Ա. Մակեդոնացի (եւրոպացիք այսպէս կը կոչեն զինք իր ծննդավայրին պատճառաւ, Չամչեան Արշակունի կը կոչէ զայն) 867–886

Ե. Լեւոն Զ. Իմաստասէր 886–912

Զ. Աղեքսանդր (Հայ պատմիչներէն Ալեքս ալ կոչուած. նա տիտղոս չունի, կրնանք Արշակունի կոչել), 912–913

Է. Կոստանդին Է. Պերփիրուժէն 913–959

Ը. Ռոմանոս Ա. Լեկապենոս (Գարեգինեանի աղաւաղութիւնը կը թուի այս մականունը) 920–944

Թ. Ռոմանոս Բ. (որդի Պերփերուժէնի) 959–963 (Կրտսեր, Մանուկ, և Գեղեցիկ Տըղայ կոչուած)։

Ժ. Յովհաննէս Չմշկիկ (Հայ պատմիչներէն Կիւռ Ժան կոչուած) 969–976

ԺԱ. Վասիլ Բ. Բուլղարասպան 976–1025

ԺԲ. Կոստանդին Ը, որդի Ռոմանոսի Բ. 1025–1025

*Հայազգի թագապահանջներն են.*

1. Մժէժ Գնունին *որ թագաւոր հռչակուեցաւ քիչ ժամանակուան համար* (1668ին)
2. Արտաւազդ (743ին)
3. Ալեքս Մուշեղ (790)
4. Վարդան Թուրք (803ին)
5. Արշաւիր (808)

6. Թովմաս Գազիուրացի կայսրն, (822ին) (ըստ ոմանց հայ)

Լեւոն Իսաւրացին ալ (717–740) հայ համարուած է ոմանցմէ, բայց սխալմամբ։

Գործոյս ներկայ առաջին հատորին մէջ պիտի խօսինք վեց առաջին հայ կայսերաց վրայ, ծանօթութեանց մէջ քննելով իրենց ազգութիւնը, իրենց կենաց տարակուսական կէտերը, դնելով ինչ որ հայ և յոյն պատմիչներ կ'ըսեն նոյն խնդրոյ մասին։

Գալով պատմագրական ոճին, այս գործը կենսագրութիւն ըլլալով, ոչ եթէ ազգի մը պատմութիւն, կը վայելէ ազատութիւններ՝ որ վերջնոյս ներելի պիտի չըլլային, ինչպէս անհատական կեանքի մանրամասնութիւններ, նկարագրութիւններ, և այլն։ Մասնաւոր դէպքերէն աւելի ջանացած ենք դարու ոգին ներկայացնել, որ եզական եղած է․ անոր մէջ կը կայանայ Պօլսոյ պատմութեան բոլոր յարգը, շահեկանութիւնը։ Բուզանդացիներու մտածումը բոլորովին կը տարբերէր եւրոպականէն. Նոր աշխարհի բնակիչներ միայն կրնան անոնց հետ համեմատուիլ․ այս տարբերութեամբ սակայն՝ որ ասոնք մեծղին կը փնտռեն նորութեան մէջ, մինչդեռ Բուզանդացիք՝ գաւեշտականը։ Հոգեբանական այս երեւոյթը յատուկ կ'երեւի այն միջավայրերուն ուր բազմաթիւ ցեղերու յորձանք և ձուլում՝ կայ։ Եզականութեան այս ձգտումը, միջադէպ յօրինելու այս սէրը՝ հասարակաց է ոչ միայն պատմութեան դիպուածներուն, այլ և անոնց հե-

# Ա.

# ՄՕՐԻԿ ՀԱՅԿԱԶՆ

(582–601)

---

## Ա.

ԿԵՆԴԱՆԱԳԻՐ ՄՕՐԿԱՅ. — ԾՆՆԴԱՎԱՅՐ

*Տաւրոսի լեռնաշղթայն դարերէ ի վեր սահմանաքարն եղած էր Հռոմէական պետութեան։*

*Տիգրոն ու Հռոմը կու գային իրարու հետ ոգորելու իր ստորոտը, իրենց ետեւէն բերելով Արեւելքն և Արեւմուտքը։*

*Արշալոյսը անոր կատարին վրայ բացուած ժամանակ՝ արիւնհեղութեան նշանը կ՚ըլլար միշտ, ինչպէս կարմիր դրօշ մը պատերազմի։ Հոն հռոմէական արծիւները կը սաւառնէին պարսիկ առիւծներու դէմ։ որ կը մռնչէին բիւրաւոր փողերու ձայնով՝*

578ին, — խրոխտ երիտասարդ մը կանգնած էր Քրիստոնեայ լեգէոններուն առջեւ։

Բարձր էր իր հասակը, ուղիղ և արքայավայել, անմօրուս մանկական դէմք ունէր, գլուխը ճաղատ էր, բայց կիսովին ծածկուած դեղձանիկ մազերով։ Եւ իր անունն էր Մօրիկ։

Յոյն պատմիչները կ'ըսեն՝ թէ նա ծընած էր Կապադովկիոյ Արաբիսոս գիւղին մէջ (539ին)։

Ազգային աւանդութիւնը այս խօսքը կը մերժէ՝ Մօրիկի աւելի գեղեցիկ հայրենիք մը տալու համար. — Այրարատի Օշական գիւղը։

Մայրը Յոաննա կը կոչուէր. քոյրն էր նա Արաբիսոսի Անկիւրիոս եպիսկոպոսին։ Իր հայրը, Պօղոս անուամբ, ազնուական մ'էր—ըստ յոյն պատմագրաց—երկրագործ մը՝ ըստ հայ աւանդութեան։

Կեդրոնին մէջ գտնուելով անդուլ պատերազմներու, անձամբ կը սորվեցնէր իր փոքրիկ որդւոյն՝ թէ ինչպէս պէտք է զէնքը գործածել ի պաշտպանութիւն հայրենեաց։

Եւ իր դասերը գործնական էին միշտ։

… Կը կանչէր Մօրիկը իր փոքրիկ բանջարանոցին քով, ու կաղամբներուն գլուխը թոցնելով, կ'ըսէր. «Այսպէս վարուէ թշնամիներուդ հետ»։ Մօրիկ կը մեծնար՝ զինուորական վաստակաւորութեամբ միայն լեցուած։

Կեանքի փայլուն ասպարէզ փնտռելով, գաղթեց Հայաստանի այն մասին մէջ՝ որ Յունաց կը հպատակէր։ Հոն նախ զինուոր եղաւ, յետոյ սպայ, յետոյ զօրավար, յետոյ սպարապետ կանչուելով՝ կոմս դրուեցաւ պահապան զօրաց։

Այս բոլոր դէպքերու մասին՝ կը պատմեն մանրամասնութիւններ հին պատմիչներու քով. լռութեան ամպը կը նետեն անոնք՝ Մօրիկի արշալոյսին վրայ։ Բայց այդ լռութիւնն ալ ճարտասան է, ենթադրել տալով անօրինակ քաջութիւններ՝ որ իր առջեւ գահու ճանապարհը բացին։

Պատերազմը որ կը մղուէր Փոքր Ասիոյ մէջ, — Պարսից դէմ, — սկսած էր ձախող ընթացք մ'առնուլ։ Տիբեր կայսրը, 575ին իր առջեւ կանչեց Մօրիկ կոմսը, և զինքն անուանեց սպարապետ արեւելեան բանակին, հրամայելով դիւցազնական հոգիով երթալ, և յաղթանակներով վերադառնալ։

## Բ.

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՇԱՐԺԱՌԻԹԸ

571 տարեթիւն էր։

Մոգերու բազմութիւն մը, պարսիկ իշխանաւորած զօրքեր Հայաստանի Դուին քաղաքը մտած էին, հոն ատրուշան մը շինելու և Հայերը կրակապաշտ ընելու համար։

Ամբողջ քրիստոնեայ ժողովուրդը ոտքի ելաւ, զէնքի դիմեց և պաշտպանուեցաւ ամենէն բուռն ընդդիմութեամբ։ Կաթողիկոսն անձամբ հոգիները կը գրգռէր, իր ներկայութեամբ և իր խօսքերով. «Մեռնինք, կ՚ըսէր ան, քրիստոնեայ հաւատքը չուրանանք»։ (571 մարտ 30)։

Երկնուած էր ճիշդ այն արհաւիրքներուն՝ որ Վարդանանց պատերազմով վերջացան։ Եւ յիրաւի հիմակ ալ Մամիկոնեան մ՚էր որ յեղափոխութեան գլուխ կ՚անցնէր ու կը կոչուէր նոյնպէս... Վարդան։

Օր մը, երբ կաթողիկոսը կ՚անցնէր քաղաքէն, պարսիկ դեսպանները դուրս ելան յանկարծակի, գաւազաններ շողա-

ցնելով օդին մէջ. գետին տապալեցին զինքը եւ սկսան անխնայ ծեծել։ Հազիւ թէ հայ ժողովուրդը այս բանը լսեց, աննկարագրելի կատաղութեամբ ու խուլացուցիչ աղաղակներով պատուհաններուն վրայ յարձակեցաւ։ Նոյն վայրկենին Վարդան ու Վարդ, որոնք ամբոխի մը գլուխ անցած, կը դիմէին Սուրէն մարզպանի պալատին վրայ, իրենց Մամուէլ եղբօր մահուան վրէժը առնելու համար։

Բռնեցին բոլոր Պարսիկները, գլխատեցին ու կտոր կտոր ըրին իրենց մարմինը։

Արիւնային գործողութիւնները կատարելէ յետոյ, երբ կը դառնային, փողոցի մը մէջ խուռներու հանդիպեցան երկու մոլեգնած ամբոխները. «Սպաննեցինք» գոչեց մին խոր գոհունակութեամբ՝ մոգերու մօրուաւոր գլուխները ցուցնելով. «Սպաննեցինք» պատասխանեց միւս ամբոխը՝ անոնց նետելով Սուրէնի արիւնաթաթաւ գլուխը։

Յեղափոխութիւնը երթալով կը հրդեհէր։ Լուրը հասաւ մինչեւ շահնշահի արքունիքը, ու միւս կողմէն՝ մինչեւ Բիւզանդիոն։ Վարդան հոն դեսպաններ դրկած էր՝ օգնութիւն ուզելով Յուստինոս կայսերմէն,

որ ի բնէ մեծաբան, մեծամեծ խոստումներ ըրաւ:

Վրացիք ալ, Հայոց օրինակէն և Յունաց խօսքերէն խրախուսուած, ապստամբութեան դրօշը բարձրացուցին:

Վարդան հաւաքեց իր բոլոր ուժերը, և բոլոր հայ իշխաններուն հետ որ միացած էին իրեն, յառաջացող Թշնամւոյն դէմ քալեց: Իր դրօշին կը հետևէին նաև Վիրք, Սամխիք, և Աղւանք՝ իրենց Ճարուճ թագաւորին հետ միասին: Պարսիկներու ընդարձակ բանակ մը, հեծեալ, հետևակ, ուղտեր, փիղերու մեծ երամակներ, Պերենի հրամանատարութեամբ, ահագին ապառնալիքով Հայաստանի կը մօտենային:

Խառնուրդը տեղի ունեցաւ Աւարայրի դաշտերուն վրայ:

Յաղթանակը չէր գուշակուեր ի սկըզբան: Վարդանայ և իր գունդերու հայրենասիրական մոլեգնութիւնը, Թշնամեաց թուական այնպիսի առաւելութիւն մ'ունէր իրեն մրցակից, որ մինչև կէս օր կռիւը հաւասարակշիռ մնաց: Յետոյ Հայերն յարձակողական դիրքը բռնեցին, և սկսան Պարսիկները ետ մղել. ա՛լ յաղթութիւնը ապահով էր. մեծ մասը սպաննեցին, մաս

մ՚անոնցմէ՝ գերի բռնեցին. — կողոպուտը՝ թիւ չունէր։

Այս յաղթութիւնը սակայն՝ վերջնական արդիւնք մը չէր կրնար ընծայել, քանի որ պարսիկ պետութիւնը մեծագոյն բանակ մը կը ղրկէր Հայաստանի վրայ, Վահրամ Չուպինի առաջնորդութեամբ։

Անմիաբանութիւնը սկսած էր Հայ իշխաններու մէջ. Բիւզանդիոնի օգնութիւնը՝ դեռ խոստում կը մնար։

Վարդան տեսնելով որ միայնակ պիտի չկարենայ յաղթութիւնը շարայարելի ընել, Բիւզանդիոն գնաց՝ Հռոմէական պետութիւնը յուզելու և ամբողջապէս զանիկա Պարսկաստանի դէմ հանելու համար։

Ինչ բանով կարելի էր այս գաղափարը իրագործել։

Դիւանագիտութեամբ ու ճարտասանութեամբ։ Երկուքն ալ ունէր Վարդան։

Բիւզանդիոյ կառավարութիւնը բերանացի յայտարարութիւն մը հանեց, որով ինքզինք պաշտպան կը հռչակէր քրիստոնեայ ժողովուրդներու. կը յորդորէր զանոնք հանգչիլ, որովհետև պատերազմը իրենք կը ստանձնէին, որովհետև կռուելու կարգը Բիւզանդիոնի եկած էր։

Տիրեր Պարսից կուսար Հայաստանն ու Վրաստանը, փոխադարձ այս երկու բանը խնդրելով.— խաղաղութիւնը՝ ու Կարս քաղաքը։

Արքայից արքայն, դեռ աւելի խրոխտացած, պատասխանելու տեղ՝ անձամբ բանակի մը գլուխ անցաւ ու Մուշեղի դէմ քալեց։ Յաղթական կը կարծէր ինքզինք, առանց գուշակելու կարենալու՝ թէ Հայ զօրավարը ինչպիսի երագութեամբ յառաջ կու գար։

Շահնշահը՝ Կորդուաց լեռներուն վրայ կը գտնուէր, երբ հեռուէն, իրիկուն մը, հորիզոնի վրայ բոցեր տեսաւ. գիւղեր էին, քաղաքներ էին որ կ'այրէին. Մուշեղն էր որ կայծակի պէս իրեն դէմ կը սլանար։ Եւ հրդեհը հեռուն, մթութեան մէջ, այլ և այլ կէտերու վրայ, ահաւոր ձեւեր կ'առնուր։

Արիւնը սառեցաւ շահնշահի երակներուն մէջ.— այդպիսի յանդգնութիւն դեռ չէր տեսած։

Չհամարձակեցաւ հայ զօրավարին դէմ ելլել և մղել զանիկա՝ Զիրաւ գետէն անդին։

Փախուցաւ Պարսկաստան, և այդէն մաղձոտած, մեռաւ սրտի ցաւով։

Շահնշահը այնքան դառնացած էր իր պարտութեան վրայ, որ մահուան ժամանակ կը հառաչէր անդադար. «Փառքն ալ երազ մ'է. աշխարհները՝ որոնց տիրեցի, այսպէս կը թողուն զիս յանկարծ»։

Յանցանքը աշխարհներուն չէր, այլ իրեն. չէր կշռած ոյժը ժողովրդեան մը՝ որուն արդարութիւնները կ'անարգուէին։

## Դ.

### ՈՐՄԻԶԴԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ. — ՆՈՐ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ. — ՆԵՐՍԷՍ ՀԱՅԿԱԶՆ։

Երբ Խոսրովի գահուն վրայ՝ Որմիզդ բարձրացաւ, (579ին) կը յուսային Բուզանդացիք թէ քաղաքական յարաբերութիւնք պիտի փոխուին և պիտի կարենան ստանալ այնքան ցանկացուած խաղաղութիւնը։

Թէոդորոս ու Զաքարիա Պարսկաստան դրկուեցան՝ բանակցութիւնները սկսելու համար։ Որմիզդ պատասխանեց.

«Հայրս՝ հաշտուիլ կ'ուզէր, ես՝ երբէք. ինքն իր սրով առաւ աշխարհները, ուստի ազատ էր զանոնք դարձնելու։ Բայց ինձի համար՝ ժառանգութիւն մ'են,

մինչև վերջ պէտք է պաշտպանեմ զա-նանք։ Կը հաշտուիմ ձեզ հետ՝ միայն մէկ պայմանաւ. ամէն տարի վճարեցէք այն հարկերը՝ զոր Յուստինիանոս խոստացաւ»։

Պատերազմի յայտարարութիւն մ՚էր ասիկա։ Մօրիկ, որ Պոլիս վերադարձած էր՝ զարնան բացուելուն, մեկնեցաւ դէպ ի Արևելք։

Այս անգամ իրեն օգնական ունէր Ներսէս Բ. Հայկազնը, մին՝ նոյն ժամանակի ամենէն նշանաւոր, ամենէն յանդուգն զօրավարներէն։ Նա կը հրամայէր Տիբերեան կոչուած գունդին, որ 16 հազար Սկիւթացիներէ կը բաղկանար, և որուն կազմողը՝ ինքն եղած էր։

Երկու հայ զօրավարները փոթորկի պէս կը յառաջանային, աւերելով արտ ու գիւղ։ Ոչ մէկ քաղաք կը յանդգնէր դուռը գոց պահել իրենց դէմ։ Հայաստանի սահմանները անցան ու Մարաստան մտան մինչդեռ միւս կողմէն Յուստինիանոս զօրավարը ամբողջ Հայաստանի տիրելով մինչև Կասպից ծով կը հասնէր, հոն Որմիզդի յաղթելով և անոր գանձերը ու փիղերը գերի տանելով (581)։

Մօրիկ արդէն մօտ էր Միջագետքի ա-

նապաստներն ալ մտնելու՝ երբ Մօրկայ արար զօրավարներէն մին համախմբեցուցած զասուեցաւ, չուզելով զէնքով մտնել իր հայրենի անապատներուն մէջ. և Պարսից մտնեց պատերազմի ծրագիրը։

Լսելով Մօրիկ թէ թշնամիներ Արմիզդի հետ շտապով յառաջ կու գան՝ կամաւոր հրդեհի զոհ ըրաւ ցորենալից նաւերը՝ զոր Եփրատայ վրայէն կը բերէր։

Երկու բանակները շտապով հանդիպեցան իրարու. բարձրէն դիտող զօրավարները կը տագնապէին, տեսնելով յանկարծական փոփոխութիւնները ռազմական բաղդին, յաղթութեան տարատամութիւնները ամէնէն ստոյգ արշաւիրքներուն քով։ Մերթ մէկ բանակն էր, մերթ միւսը՝ որ կ՚ընկրկէր, վիրաւորեալները դիակ դարձնելով, ու դիակները՝ փոշի։ Սակայն Պարսից այն թեր որ արաբացի հեծեալներէ կը բաղկանար, սկսած էր անկարագրելի կոտորած մը տալ Տիբերեան գնդին շնորհիւ իրենց օդապարիկ նժոյգներուն. Սկիւթացիներուն վրայ կը նետուէին. խռովութիւն կը ձգէին, կը սպաննէին, յետոյ կը ճողոպրէին, առանց յաճախ փոքրիկ վէրք մ՚ալ կրելու։

Մորիկ նշմարեց հետևէն, որ Թէոդորիկոս զօրավարը կանոնաւոր փախուստ մը տուած էր, իր Տիրերեաններուն հետ։ Իր յաղթական ույժերը վտանգուած կէտին մըրայ հաւաքեց և շրջապատեց Արաբացիները։ Թշնամիները նետերու կարկուտի մը բռնուած, խոնջ, կէսէն աւելի սպանուած, փախչիլ սկսան։

Այս յաղթութեամբ՝ Մորիկ տէր կ'ըլլար բոլոր Միջագետքի։

Որմիզդ, խոնարհած, խաղաղութեան առաջարկութիւններ սկսաւ ընել, առանց դադրելու պատերազմի պատրաստութենէ, և ջանալով կեղծ նամակներու միջոցաւ՝ սխալ ծրագիրներ շնչել Մորիկի։ Պարսիկներ միշտ արևելեան մեծարանութեամբ կը խօսէին հռովմայեցոց հետ.

— Շա՛տ, բաէ՞ք ձեր կարծիքը, կ'ըսէին, մեր զօրքերը անհամբեր կռուի կը սպասեն. մէկ բանի միայն անոնք անկարող են. — իրենց ետանցը դարձելու։

— Թող չզգայէն, պատասխանեց Հռովմայեցւոց զեկավարը. — պատրաստ ենք մենք՝ լաւ ընդունելութիւն մ'ընելու ձեր զօրքերուն, և մէկ օրուան մէջ՝ իրենց չափազանց ետանցը դարձել սորվեցնելու։

Հռովմայեցիք տեղիք կու տային գրեթէ Պարսից բոլոր պահանջներուն. յանձն չէին առնուր միայն ուխտադրուժ գտնուիլ՝ վարդանք Պարսից դրկելով։ Աստի պատերազմը նորէն սկսաւ Կոստանդիանայի դաշտերուն մէջ։

Խառնուրդը ամենէն կատաղիներէն եղաւ. — Հռոմայեցիք յաղթեցին։

Թագաւորը տեսաւ իր վրանէն՝ բանակին մէկ մասը գետնի վրայ տարածուած, միւսը՝ տագնապալից փախստեան մէջ։ Իր պարտութեան վրայ ամչցած, գէնքերը առաւ, վազեց դէպ ի Թշնամեաց կեդրոնը, և հոն քաջութեամբ ընկաւ։ (580)

Ե.

ՓԱՌՔԻ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ. — ՄՈՐԻԿ՝ ԿԱՅՍԵՐ ՓԵՍԱՅ. — ՄՈՐԻԿ՝ ԿԱՅՍՐ։

Վերջնական հարուածը տրուած էր Պարսից։ Կեանքի նոր շրջան մ'էր որ կը բացուէր՝ թէ հռոմէական պետութեան և թէ Մորիկի համար։ Երբ Բիւզանդիոն դարձան Մորիկ և Ներսէս, երկու հայկազն զօրավարները, շրջապատուած 5000 գերի Պարսիկներէ, աւելի շքեղ քան կայսրը՝ որ

իր արքունիքով միասին ընդառաջ ելաւ իրենց. ամբողջ ժողովուրդը խանդավառութեան ծայրայեղ ցոյցերն ըրաւ. քանի մ'օր յետոյ շքեղօրէն իր յաղթանակը տօնեց: Կայսրը Մօրիկի քաջութիւնը արեւելեան ոճով վարձատրեց. — Իր աղջիկը նշանեց Մօրիկի հետ (582 օգ. 5):

Աղքատ մը՝ որ օտար երկիր կը գաղթէ, հանճարով կը հռչակուի, յաղթութիւններով կը բարձրանայ և հուսկ ուրեմն ձեռք կը կարկառէ թագաւորի աղջըկան. — վէպ մը չէ այս, կամ թատերերգութեան մը վերջին տեսարանը. դէպքը ինքնին կը նշանակէր՝ թէ Մօրիկ պիտի ըլլայ յաջորդ Տիբերի որ դուրկ էր թագաժառանգէ:

Յիրաւի, քանի մ'օրէն կայսրը ժողովքի հրաւիրեց բոլոր ծերակուտի անդամները, խորհրդականները, եկեղեցականները, իմացնելով անոնց՝ որ իր իշխաններուն մէջէն ապագայ կայսրը պիտի ընտրէր:

Մեծամեծները հաւաքուեցան արքունեաց մէջ. սրտաթունդ ընտրութեան կը սպասէին: Ամէնքը տեղի ելան, երբ Տիբերը, պատգարակի մէջ, ներս բերուեցաւ: Հրաժարական ճառ մը պատրաստած էր ան.

անկարող ըլլալով խօսելու, պալատական-ներէն մին ելաւ մարմարեայ սանդուղի մը վրայ և զայն արտասանեց.

«Ինծի յաջորդ մը պիտի գտնեմ — կ՚ը-սէր Տիրեր — եթէ ամենէն արժանաւորը չըլ-լայ ան՝ իր ոճիրները՝ իմ ոճիրներս պիտի ըլլան. Ես պիտի ամչնամ իր սխալներուն վրայ...

Մերեցեալ ամուսինիս համար իր նոր տէրը թագաւոր մը, եղբայր մը պիտի ըլլայ։ Դեռատի աղջիկներուս պաշտպանը, հայրը պիտի ըլլայ։

Բայց չեմ վախնար ըսելու՝ (ոչ կինս և ոչ ալ աղջիկներս պիտի բարկանան, վասն զի վարժուած են այս լեզուին), տէ-րութիւնը՝ ընտանիքէն աւելի սիրելի է ինծի։ Ինքն է հիմա իմ մտատանջութեանս առարկայն։

Իշխանի մը համար բաւական չէ պա-հած ըլլալ տէրութիւնը, պէտք է մտածէ յանձնել զայն ժառանգի՝ որ արդեամբք քան զինքը գերազանցէ. ապա թէ ոչ մեծ չէնքը, նորոգութենէ զուրկ, պիտի աւե-րուի և քիչ ատենէն պիտի կործանի բո-լորովին։

Այս մտածութիւնը միայն կը տանջէր

ու կը նեղէր՝ երբ աստուածային իմաստութիւնը օգնութեան հասաւ և ցցուց ինծի զանիկա՝ զոր կը փնտռէի։ Անիկա է ձեր թշնամեաց յաղթողը, անիկա է որ Հռոմէական փառքը բարձրացուց ու Պարսից ամբարտաւանութիւնը խոնարհեցուց։ Մորիկն է այս մարդը, կայսրութեան սուրն ու վահանը։...

Թագաւորէ՛ Մորիկ. յոյս պարապ մի՛ հաներ. ականջդ բաց ըլլայ ճշմարտութեան ու գոց շողոքորթութեան։

Արդարութիւնը քեզի աթոռակից ըրէ. գիտցիր որ ծիրանին իր պայծառութիւնը կը կորսնցնէ՝ եթէ արատերու միայն ծածկոյթ ըլլայ։ Գաւազանդ ժողովրդեան նեցուկ ըլլալու համար է. նայէ՛ որ ժողովուրդը երջանկացնես։ Լաւ թագաւորը՝ իր գերագոյն իշխանութիւնը ծառայութիւն մը պիտի սեպէ։... Միանգամայն վստահ եղիր ու արթուն, տուած պատիժներուդ պատճառն ու չափը՝ հասարակաց օգուտը միայն ըլլայ։

Ասոնք հօր պէս ես քեզի կ՚ըսեմ. բայց օր մը այնպիսի անաչառ դատաւորի մը պատասխան պիտի տաս՝ որուն առջև ամէն մեծութիւն աներևոյթ կ՚ըլլայ։

Թագաւորէ՛ Մորիկ. քու յաղթութեանց նշաններդ՝ իմ գերեզմանիս դարպասին ըլլան, և առաքինութիւններդ ինծի դամբանական ներբողներ »:

Բոլոր Հանդիսականները լացին. քանի մ'օրէն մեռաւ Տիբերիոս: (589 Օգ. 14):

## Բ.

### ՀԱՐՍԱՆԻՔ ԵՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ. — ԱՐՔԱՅԱԿԱՆ ԶԲՕՍԱՆՔ ՄԸ:

Կայսերական հարսանիքը արեւելեան շքեղութեամբ մը կը տօնուէր Բիւզանդիոնի մէջ, նոյնպէս թագաւորութիւնը. — Ինչ պիտի ըլլային այս երկուքը՝ միացուած:

Երկրորդ առաւօտն էր՝ յետ Տիբերի մահուան. Մորիկ Ս. Սոփիա կ'երթար՝ պսակուելու համար Տիբերի Կոստանդինա դստեր հետ: Բոլոր իշխանները ճերմակ հագուած էին, հրեշտակներու բանակ մը պիտի թուէին, եթէ կարելի ըլլար իրենց մեղքերը մոռնալ: Ամէնքն ալ խաչ մը կը կրէին իրենց ձեռքին մէջ: Մեծ տաճարին մէջ եկեղեցւոյ արարողութիւնները կատարուեցան, և Հայրապետը, իրենց

ձեռքերը միացնելով, պնակ մը ու թաս մը գետնեղէն միանգամայն իրենց գլխուն վրայ։

Անոնց օգոստափառ ամուսինները անկասան չէին ի պալատ դիմել։ Գաւթին մէջ թափօրը կանգ առաւ. իշխաններու կրկին ճերմակ կարգեր ձեւացուցին, մինչ անդին զօրավարներ կը շողշողային ոսկեղէն զէնքերով ու զրահներով։

Ներքինապետը, աջը թագուհւոյն տուած, որ քողերու թրթռուն սպիտակութեանց մէջ՝ հոգիի մը նրբացումն առած էր, յառաջեց քանի մը քայլ՝ ու վարագոյրի մ'ետեւ անհետացաւ։

Վայրկեան մը վերջ, կայսրը, ծիրանիներու մէջ, փայլփլուն ակունքներով ծածկուած, թագը գլխուն վրայ, սկսաւ դէպ ի նոյն կէտը երթալ։

Բոլոր ժողովուրդը միաբերան՝ սկսաւ աստուածային երգը հնչեցնել. վարագոյրը բացուեցաւ, և երեւցան երկու շքեղ գահեր, որոնց ոսկեղէն շրջագիծերը կը նկարուէին մետաքսապատ, նոյնպէս փայլփլուն յատակի մը վրայ։ Աստուածազարդ երկինք մ'էր կարծես՝ որ ամպի մը ոտքէն կ'երեւար։ Դշխոյն շնորհալի կերպով ընդ առաջ եկաւ

կայսեր, մօտակայ գաւը իրեն հրամցուց, մինչ վարէն ստորոտի երգերը կը շարունակէին թնդալ՝ դեռ աւելի ոգեւորեալ կերպով։

Այս վայրկենին՝ Ներքինապետը վեր կ՚ելլէր գինիի բաժակ մը ձեռքին մէջ. զայն Ներկայացուց թագաւորաց ամուսիններուն՝ իբրեւ խորհրդանշան մը սիրոյ։

Հարսանիքը տեւեց եօթն օր, եօթն գիշեր։

Մեր Կիրակոս պատմիչը կ՚աւանդէ թէ յետ հարսանեաց Մօրիկ պատգամաւոր դրկեց իր հօր՝ թագաւորութիւնը իմացնելու համար, կառավարութեան մասին ալ խորհուրդ հարցնելով։

Պատգամաւորները կայսեր հօր՝ բանջարանոցի մը մէջ հանդիպեցան՝ ուր նա զբաղած էր բոյսերը խնամելու։ «Ինչպէ՞ս կ՚ուզես որ որդիդ տէրութիւնը կառավարէ» հարցուցին իրեն։ Նա լուռ կեցաւ. յետոյ շրջան մ՚ըրաւ, և ամենէն բարձրահասակ կաղամբները գլխատեց։ «Գացէ՛ք, ըսաւ նա, ըրածս որդւոյս պատմեցէք»։

Մօրիկ իսկոյն հասկցաւ թէ հայրը իրրաւ կու տար ազդեցիկ իշխանները մէջտեղէն վերցնել և հեռացաւ հօրը խոր-

հուրդին։ Այս զրոյցը չի կրնար ճշմարիտ ըլլալ, որովհետեւ՝ ըստ ժամանակակից պատմիչաց, Մորիկի հայրն իր հարսանեաց ներկայ էր և հանդէսին ամենէն հետաքրքրական մասը կը կազմէր։ (Տե՛ս ծանօթ)։

Կարելի չէ որոշել՝ թէ Մորի՞կ աւելի փառաւորուեցաւ գահակալութեամբ, թէ գահը՝ Մորիկով։ Իր անձին մէջ քաջութիւն և առաքինութիւն էին որ կ՚արժանանային թագի։

## Է.

### ՄՈՐԻԿԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ. — ՄՈՐԻԿԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ. ԱՆՈՐ ԹԵՐԻ ԿՈՂՄԵՐԸ։

Քառասուն և երեք տարեկան էր երբ գահու վրայ բարձրացաւ։

Երիտասարդական թափը հանդարտած էր իրեն մէջ, տեղի տալով տակաւ ծերունիի ծանրախոհութեան։ Լուրջ էր, բայց դժուարամերձենալի. խոհեմութիւնը զանդաղութեան կը յանգէր, կը սիրէր կրօնքը, երբ պետութեան շահերուն չէր վնասեր. տնտեսագէտ էր, ագահ, գէնքերու սիրահար, գրքերու բարեկամ. ցորեկը պատերազմներով կը զբաղէր՝ գիշերը ընթերցումով։

Հնութեան մէջ, ուր Ինքնակալը բացարձակ վարիչն էր տէրութեան գործերուն, դիւանագիտութիւնն ալ կայսեր նըկարագրին դրոշմը կը կրէր։ Եւ Մօրիկ այն երեցաւ ազգերուն, ինչ որ ճանչցուած էր պալատին մէջ։

Իր առաջին նպատակն եղաւ զինուորական արհեստը ծաղկեցնել ։ Անձամբ գիրք մը գրեց այն նիւթին վրայ, իր բազմամեայ փորձառութիւնը հոն ամփոփելով։ Խրամի սովորութիւնը, որ վերցուած էր, ինք վերահաստատեց։ Բիւզանդիոյ կայսր մը պէտք է մտածէր միանգամայն՝ Ասիոյ, Եւրոպայի ու Ափրիկէի վրայ։ Իրեն ժամանակ՝ այս երեք կողմէն ալ սպառնալիքներ կու գային հռոմէական պետութեան։

Մօրիկ Բարբարոսաց առջեւ ամենուն համար բդեաշխներ հաստատեց էքզարք տիտղոսով, Հռովմայի ու Կարքեդոնի մէջ։ Այդ բդեաշխները ոչ միայն քաղաքին ներքին կառավարութեան հոգն ունէին, այլ և էին միանգամայն մէկ մէկ զօրավարներ. Հռոմէական դիւանագիտութեան մէջ ամենէն նշանաւոր գործերէն է աս։ Այս հետեւողութեամբ է որ, ութերորդ

գարու մէջ, կ՚ըսէ Գեյցեր, այլ և այլ բանակաթեմեր սկսան հաստատել։

Զէնքէն յետոյ գանձն է որ տէրութիւնք իր մեծութեան մէջ կանգուն կը պահէ. Զայն աճեցնելու ամէն միջոց կը մտածէր։ Մորիկ, ոչ միայն անձնական հաճոյքնե-րու, իր ընտանեաց համար ևս զայն չէր գործածեր։ Իր չափազանց խնայողու-թիւնք իր մահուան պատճառ պիտի ըլ-լար։ Նա երբեմն այնպիսի կերպարանք կ՚առնէր՝ որ մարդկային զգացման դէմ ալ կը դառնէր. յանձն չէր առներ, օրի-նակ իմն, գերիները ստակով փրկանաւո-րել. աւելի կ՚ընտրէր նուազ հպատակ ու-նենալ՝ քան նուազ դրամ։

Մորիկ ջերմեռանդն հաւատացեալ մ՚էր. Փառատուն վկային հոյակապ տաճարը՝ յուշարձանն եղաւ իր բարեպաշտութեան։ Բայց միշտ հայրենիքը եկեղեցիէն աւելի կը սիրէր. օրէնքով արգիլեց կրօնաւոր ըլլալ՝ զինուոր չեղած (592)։ Ինքը քաղ-կեդոնական, միշտ ներողամտութեամբ վա-րուեցաւ միաբնեայց հետ, և այս բանս արդիւնքն եղաւ Յովհաննէս Ծոմապահ պատրիարքին. այս սուրբ ճգնաւորը, ինք-նիրեն միայն խիստ, մոլորութեան դէմ

կ'ուզէր ատելութիւնը, զոր իր նախորդները մոլորեալներուն կ'ուզէին ։ Մօրիկ մոլեռանդ գտնուեցաւ միայն՝ Ասորւոց մէջ գտնուող կարծեցեալ հեթանոսներուն դէմ. Անտիոքայ եպիսկոպոսը, իբր կռապաշտ ամբաստանուած, ստիպուեցաւ շրջաբերականով մ'ինքզինք արդարացնել։

Ուրիշ եկեղեցական խնդիր մը ծագեցաւ տիտղոսի մը համար. Պոլսոյ պատրիարքը սկսած էր ինքզինք տիեզերական անուանել։ Գրիգոր Ա. պապը (590–604) բողոքեց այդ նորութեան դէմ. արեւելքի պատրիարքները Հռովմայ կողմը բռնեցին, եթէպէտ տիտղոսը դարէ մ'ի վեր արդէն սկսեր էր գործածուիլ, — քահանայապետը խափանել տուաւ զայն։

Օժտուած լուսաւոր մտքով մը՝ որ չէր կարող գրական մեծ արտադրութիւններ ընել, բայց գիտէր զանոնք գնահատել, Մօրիկ ջանաց Բիւզանդիոնը Աթէնք մը դարձնելու։

Փոխանակ երաժիշտներու՝ պատմաբաններու եւ բանաստեղծներու հետ կ'անցնէր գիշերները։ Հետաքրքրական է այս մասին՝ Մենանդրի յառաջաբանը, զոր Սուիդաս ի մէջ կը բերէ։

«Իմ հայրս Եփրատաս կը կոչուէր, ծագմամբ բիւզանդացի։ Հերոդոտոս էր իմ հարազատ եղբայրս՝ որ Իրաւագիտութենէ ձանձրացած, ետ կեցաւ շուտով այս տեսակ ուսումներէն։ Ես սակայն համոզուած էի, թէ պէտք չէ օրէնսգիտութիւնը արհամարհել, եւ պէտք է աշխատութեանց ծայրը հասնիլ։ Ուստի ըրի, ինչպէս որ պէտք էր։ Բայց երբէք այս արուեստը չգործածեցի։ Երբէք փափագ չզգացի ատենաբանել դատարանի մէջ, արքունիքը յաճախել,... այլ ինծի հաճոյ էին երաժշտական աղմուկները, ձիարշաւները, եւ միմոսներուն ոստոստումները։ — Սակայն երբ Մօրիկ կայսրութեան հասաւ, իշխան մը՝ որ թէ՛ ժողովրդեան փրկութիւնը կը նախահոգար, եւ թէ՛ մուսաները կը սիրէր, եւ շատ համ կ՚առնէր բանաստեղծութիւն եւ պատմութիւն լսելէ, այնպէս որ՝ գիշերուան մեծ մասը՝ այսպիսի բաներ ուսումնասիրելով կ՚անցնէր, եւ բթամիտներն անգամ իր ընծայներով կը խրախուսէր, եւ մտքերնին կը սրէր. այն ատեն սկսայ իրաւամբ ցաւիլ եւ դառնանալ, թէ ինչո՞ւ պէտք եղած բաները չունիմ, ինքնիրենս սկսայ ըսել՝ թէ պէտք

չեմ կեանքս այսպէս անգործ և դատարկ անցընել »։

Այսպիսի էր Մորիկ՝ իր ներքին վարչութեան մէջ, իսկ իր արտաքին քաղաքականութիւնը կարելի է ամփոփել մէկ բառի մէջ. — Պատերազմ։ — Եւ տարբեր կերպով ալ կարելի չէր վարուիլ, քանի որ իր դրացիները բարբարոսնե՛ր էին։

Զէնք առաւ եօթն ազգերու դէմ. — Պաւարից, Սկլաւոններու, Ալամաններու, Լոմպարտացւոց, Գասգոնացւոց, Սարասինացւոց, և ուրիշ փոքր ազգութեանց դէմ։

Հակառակ իր յաջողութեանց, ազգանելի կէտեր ունի Մորիկի քաղաքականութիւնը։

Ամէն բանէ առաջ դիւցազ մ'էր նա. զօրավար մնաց ծիրանիներ հագուելէն վերջն ալ։ — Կայսր մը սակայն խորագէտ ալ պէտք էր ըլլալ։

Պաւարից թագաւորութիւնը որ մշտական սպառնալիք մ'էր՝ կ'երկպառակուի։ Եթէ Մորիկ օգտուէր առիթէն, և ջախջախիչ հարուած մը տար անոր, դարագլուխ մը կը բանար, և թերևս կ'ըլլար մեծ՝ ինչպէս Աղեքսանդրը։ Մորիկ, ընդհակառակն, հաշտարարի դեր կը կատարէ։ Բայց այս՝

Քիչ ժամանակ անցած էր այս դժբաղդութեան վրայէն, երբ մայիսի երեկոն մը, (մայիս 10, 583) վերջալոյսի պահուն, գետնի տակ խուլ դղրդիւն մը լսուեցաւ: Սպառնալիքն էր, որուն երկրաշարժը յաջորդեց. բազմաթիւ պալատներ գերեզմանն եղան իրենց տէրերուն: Նոյն օրն ալ Կոստանդնուպոլսոյ հիմնարկութեան տօնն ըլլալով՝ ժողովուրդը լեցուած էր հրապարակին վրայ: Ամէնքը կարծեցին թէ Բիւզանդիոն կործանմամբ իր շինութեան հանդէսը պիտի կատարէր. Թատրոն ընդհատուեցաւ, երգերը ողբի փոխուեցան. բայց բուզանդացիք երկրորդ օր ալ մեծ զարմացմամբ դեռ ողջ գտան իրենք զիրենք:

Այս ժամանակ էր՝ որ Պաւղինոս անուամբ մէկը, գիտուն ըլլալուն պատճառաւ, կախաղան հանուեցաւ, աչքին առջև որդւոյն գլխատումը տեսնելէ վերջ:

Իր միակ յանցանքն էր առ բնութիւն ունեցած սէրը և անոր գաղտնեաց հետամուտ ըլլալը: Այս մարդը, — որ ներկայ դարուս մէջ՝ մեծ քիմիագէններէն մին պիտի ըլլար, — իր դարուն՝ մոգ և կախարդ համարուեցաւ և պատճառ երկրաշարժի:

Այդ պատուհասը իր յանցանքին պատճառու եղած էր։ Յովհաննէս պատրիարքը զինք ողջ ողջ այրելու դատապարտեց. կայսրը զայն խրատելով գոհ պիտի ըլլար. բայց պատրիարքէն և ժողովուրդէն ստիպուած՝ ի վերջոյ զինանականը կախաղան հանեց։ (583)

Յաջորդ տարին այնպիսի ողողումներ եղան յիտալիա, որ կարծես մասնական ջրհեղեղ մը տեղի կ'ունենար. Նոյ ըլլալու բաղդը շատ քիչերուն թողլով։ Բոլոր գետերը՝ համաձայնած կը թուէին զարթնուլ իրենց անկողիններէն, դուրս վազել, ծովեր կազմել այն դաշտերուն վրայ՝ զորս ոռոգելու միայն սահմանուած էին։ Մինչդեռ Ատիճէ գետը գրաւած էր Վերոնայի ապարանքները քանդելու, Տիբերիս միւս կողմանէ ամբողջ Հռոմ ծածկելով՝ պալատներէն դուրս կը թափէր, անոնց շուրջ ջրվէժներ կազմելով։ Հռոմ մեծ լճի մը երեւոյթն առած էր, և կ'արժէր բարձրանալ օդին մէջ՝ անկէց տեսարանին ախորժ նորութիւնը ըմբռնելու համար։

Միայն բլուրներուն կատարները կը տեսնուէին ալիքներուն մէջ. պալատներ կը լողային ջուրին վրայ, իրենց բնակը-

ներուն մէջէնց մարգիլներու գլուխներ ցուցնելով. ցորենի դէզեր կը թափառէին հոն, իբր թէ արմատախիլ արտ մ'եղած ըլլային. աղքատաց շտեմարաններն էին, ո՛րոնց ալ չէր խնայած ջուրը։ Բնակչաց սարսափը և երկնքի արհաւիրքները աննըկարագրելի էին. որոտում որոտման ետեւէն, կայծակ կայծակի ետևէն. ժողովուրդը չէր տեսներ թէ ո՛ր ճամբով կու գար մահը։ Սուր մը գլխուն վերև, անդունդ մ'ոտքին տակ, մօտ կարծեց Հռոմայ կործանումը։ Այսպիսի տեսարան մը՝ Եգիպտոսի մէջ միայն կարող էր սարսափ չազդել։ Գետին հետ եկած էր խժերու բազմութիւն մը՝ որ խեղդուեցան ծովու ափի ջուրերուն մէջ, յետոյ ծովափը ծածկեցին իրենց դիակներով։ Իբրև այս աղէտներուն վերջարան, հրդեհ պատահեցաւ Վէրոնայի մէջ, և ժանտախտ՝ Հռոմայ։

Հինգ տարի վերջ, (589ին, հոկտ. 31) Անտիոքայ մէջ երկրաշարժ մը վաթսուն հազար հոգի սպաննեց։ Քաղաքին եպիսկոպոսը, նոյն վայրկեանին, խօսակցութեան զբաղած էր իր քահանայներուն հետ։ Յանկարծ պալատը սկսաւ երերալ, քիչ վերջ առաստաղը փլաւ՝ իրեն տակ ծած-

կելով կռուակիցները՝ որ ակամայ ստիպուեցան դադրեցնել վէճերնին: Հողակոյտին տակ ճնշուած, հոգեվարքի տագնապի մէջ, ի գուր օդ շնչել փորձելով, եպիսկոպոսը իր գերեզմանին մէջ կարծեց զինքը. երկրաշարժը, բարեբաղդաբար չէր դադրած. գետինը նորէն ցնցուեցաւ և հողը որ իր տապանաքարին ըլլալու սահմանուած կ'երևէր, ճեղքուեցաւ. եպիսկոպոսը, կիսամեռ, աչքերը բացաւ. օդոյ զովութիւնը զգաց, հառաչանք մ'արձակեց, նշմարեց հեռո՜ւն, հեռո՜ւն, ժպտուն երկինքը՝ որ այնքան եզականօրէն իրեն կը վերադարձնէր լոյսը:

Այսպէս երկրաշարժը, որ այնքան անձանց մահուան պատճառ եղաւ, եպիսկոպոսի մը յարութիւն շնորհեց:

Մորիկի կայսրութեան հետաքրքրական միջադէպերէն մին եղաւ Անյուշ բերդի մէջ պատահածը:

Այն դղեակը, յոյներէն՝ Լեթէ կամ Գիլիգերդոն կոչուած՝ Մորիկի ժամանակ լի էր դատապարտեալներով, ամէն ազգէ: Ասոնք միաբանած (588ին) ջարդեցին բոլոր պահապանները, իրենց Մեհրուժան զօրավարին քոյրը առևանգեցին, և թշնա-

մնաց երկիրը կորելով անվտանգ հասան Կոստանդնուպոլիս ուր Մօրիկ մեծ հանդէսներով իրենց գալուստը տօնեց։

Գրիգորի, Անտիոքայ եպիսկոպոսի դատը, Մօրիկի դատուն բնադրոշմը ամենէն աւելի ցայտեցնողներէն է։ Թշնամացած ըլլալով Աստերիոս քաղաքապետին հետ, սոր գրգռմամբ ժողովուրդը իր Հայրապետին դէմ ելաւ, երգիծաբանական երգեր, պարսաւատետրեր, թատերգութիւններանգամ ձևացուցան իրեն դէմ։ Կայսրը բարկանալով, Աստերիոսը պաշտօնանկ ըրաւ և իրեն տեղ դրաւ Յովհաննէս անուամբ մէկը, որ ժողովուրդը լռեցնելու տեղ, պաշտօնական թղթով մը ծանոյց՝ թէ ով որ ինչ գրպարտութիւն ուզէ՝ կարող է ընել Հայրապետին վրայ։ Այս հրամանը ամենէն փայլուն կերպով գործածողն եղաւ՝ սեղանաւոր մը. զԳրիգոր գրպարտեց՝ իբր գաղտնապէս իր հարազատ քրոջ հետ ամուսնացած և կռապաշտ։ (585, յունիս)։ Պօլսոյ մէջ քաղաքական և եկեղեցական մեծ ժողով մ՚ըրին, բազմաթիւ եպիսկոպոսներէ բաղկացած, Գրիգոր անմեղ դատուելով՝ սեղանաւորը հրապարակաւ գանակոծեցին։ Յետ անպարտաբար բոլոր Պօլսոյ

մէջ թափառելու, աքսորուեցաւ նաև։ Այսպէս տէրութիւնը դադրեցաւ մէկ անձի պատճառաւ աւելնուելէ, ինչ որ սովորական էր կրօնական ոգւով տոգորուած Բիւզանդացւոց մէջ։ — Բոլոր դժբաղդութեանց ժամանակ՝ Մօրիկ չզլացաւ թշուառներուն՝ իր արցունքն և իր գանձը։

## Թ.

### ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ։ — ՄԻՋԱԹԱԵԻՈՆ ՍՊԱՐԱՊԵՏ։ — ՋԱՀԵՐՈՒ ՄԱՏՆՈՒԹԻՒՆԸ։

Տարի մը հազիւ անցած էր Մօրիկի գահակալութենէն, երբ կրկին բորբոքեցաւ պարսկական պատերազմը, յարձակողականը Հռովմայեցւոց կողմէն սկսելով (583)։

Կայսրը՝ Պարսիկները ջախջախուած կը համարէր արդէն և ալ ուրիշ բան չէր տեսներ ընելիք, բայց եթէ յաղթանակը վերջացնել։ Տէրութեան բոլոր ազգերէն գունդեր հաւաքեց, այսպէս անուանելով անոնց՝ Յովհաննէս անուամբ Թրակացի մը. յառաջ զօրավար էր հայկական բանակաթեմին և իր մեծ ընչացքներուն պատճառաւ Միխարքին կը կոչուէր։ Այս

մութեան ամենէն արհաւրալից միջադէպերէն մին էր՝ որ տեղի կ՚ունենար։ Երունուած Համմայեցին անդունդի մէջ կը նետուէր, կամ օդին մէջ կամ ժայռի մը վրայ կտոր կտոր ըլլալու համար։ Պարսիկներ իրենց անգութ հաճոյքները փորձեցին պարտեալներուն վրայ. կը գլորէին զանոնք բարձրութենէ մը՝ այնպէս որ կարենային մինչև Նիմփիս գետը հասնիլ՝ և խեղդուելով ընթացքնին աւարտել։ Ականջներ, քիթ, բազուկ կտրել, և պարականան ուրիշ սոսկալի տանջանքներ, իրենց փայլը կորսնցուցած էին այն օր։ Սակաւաթիւ եղան աւելի քան երբէք, անոնք որ այնքան վտանգ ու տառապանք անցընելէ վերջ, յաջողեցան պարտութեան լուրը Հռոմէական ուրիշ բանակի մը հասցնել։ Այս պարտութիւնը, և յաջորդ երկամեայ անգործութիւնը՝ պատճառ եղան Միյաֆարղինի խուսարելուն. Մօրիկ պաշտօնանկ ըրաւ զինք՝ անոր տեղ Փիլիպպիկոսը՝ բապարապեա և իր փեսայն ընելով միանգամայն։ (584)

## Ժ.

ԼՈՒՍԱՒ ՍՓԱՌԱՓՈՒՏ ՄԸ. — ԵՐԿՆՔԻ ՁԱՅՆԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ. — ԳԻՇԵՐԱՅԻՆ ՓԱԽՈՒՍՏ։

*Պատմութեան մէջ, նոյն իսկ Բիւզանդիոյ, կարելի չէ աւելի կատակերգական անձնաւորութեան մը հանդիպիլ, քան ինչ որ եղաւ Փիլիփիկ։ Բիւզանդացւոց այս ընդհանուր սպարապետը՝ մանկական բնաւորութիւն ունէր. երբեմն այնքան քաջութեամբ կը լեցուէր, որ սուրը ձեռք, բանակներուն առջեւէն, դէպի թշնամին կը դիմէր. ուրիշ անգամ այնքան կը սարսափէր՝ պարզ Պարսիկ տեսնալով, որ բանակը առանց սպարապետի կը թողուր գիշերանց կը փախչէր միայնակ, երբեմն, չպատերազմելու համար, հիւանդ ձեւանալով, անկողին կը մտնէր. խառնուրդէն առաջ զօրքերուն կը ներկայանար՝ և լալով քաջալերական մը կը խօսէր. երբ պատճառը կը հարցնէին, «ինչպէս չլամ, կը պատասխանէր, քիչ վերջ մեռած պիտի տեսնեմ ձեզի պէս կորիճ երիտասարդներ»։ Բարեպաշտ հաւատացեալ մ'ըլլալով, պատերազմէն առաջ Քրիստոսի պատ-*

կերը գաւազանի մը ծայր կ՚անցընէր, և քահանայի մը պէս, իր ձեռքը բռնած զանիկա՝ բանակի մէջ կը պտտէր, զամէնքը օրհնելու և քաջալերելու համար: Այս փափկասիրտ զօրավարը՝ իր առանձին ռազմագիտութիւնն ալ ունէր. երբ ուզէր երագընթաց տեղ մը հասնիլ, գունդերը կը բաժնէր և այլ և այլ ճամբաներով նոյն տեղ դիմել կը հրամայէր. ասոր հետևանքը այն կ՚ըլլար, որ կը մոլորէին, զիրար կը կորսնցնէին և յաճախ հոն կը գտնուէին՝ ուսկից մեկնած էին. և Փիլիպիկ կը ստիպուէր անձամբ կորսուած գունդերը փնտռելու ելլել: Պաշարի մէջ այնքան աղետալի չէր այս բանը, որքան անապատի մէջ: Իր գունդերէն մին գերի բռնուած, — կիներու և տղաքներու հետ, — ճամբայն սխալեցաւ՝ երբ Միջագետքէ կ՚անցնէին. յուսահատութիւն տիրեց ամենուն վրայ. որչափ կը քալէին, աւազուտ հորիզոններ միայն կը բացուէին իրենց աչքին առջև. ոչ աղբիւր կար, ոչ ջրհոր. կանայք և ծերեր սպաննուեցան, որովհետև աւազանիկները՝ որոնց կը հանդիպէին, զօրաց ալ չէին բաւեր, իսկ տղաքներուն նկատմամբ՝ ծարաւը արդէն սուրի պաշտօն կա-

տարեց։ Յետ այսչափ նեղութեանց մոլորած գունդը՝ Թէոդուպօլիս հասաւ, ուր դիտում ունեցած չէր երբէք երթալու. Փիլիպպիկ, Եփրատի ափանց վրայ կեցած էր. կարծէր թէ քիչ օրէն կը հասնի գունդը, և պիտի կարենայ յարձակողական սկսիլ. եղելութեան տեղեկանալով, ինքն ալ նոյն քաղաքը ձմեռելու գնաց։

Զարմանալին այն է որ Փիլիպպիկ պատերազմի դաշտին վրայ ալ՝ հին մեծամեծ զօրավարաց վարքը կը կարդար, և բուզանդացի պատմիչներ կը յիշեն մանաւորապէս, թէ Սկիպիոնի կ'ուզէր նմանիլ։ ... Գերբնականն իրեն շատ կ'ախորժէր, և երբեմն իր տուած հրամանները կ'ուրանար՝ զանոնք երկնքէն իջած կարծեցնելու համար։ Խառնուրդի մը ժամանակ՝ յանկարծ բանակին մէջ ձայն մը լսուեցաւ որ կ'ըսէր. «Գետին իջէք՝ և ձիերը խոցեցէք»։ Իսկոյն յունական հեծելագունդը՝ հետևակի փոխուեցաւ և տէգերու անտառ մը ձեռքերնուն մէջ՝ դիմեցին Պարսից վրայ՝ անոնց նժոյգները խոցելու համար։ Հեծեալները կը տապալէին. կռուի այս եղանակը՝ յաղթութեան պատճառ եղաւ։ Բայց պատերազմէն վերջ Փիլիպպիկ ուրա-

ցաւ՝ թէ ինքը չէր հրաման տուողը. ահեղագոչ գինուոր մը կար Մանեիան անուամբ, կասկածեցան թէ նա եղած ըլլայ. բայց հրաշքի սէրը այնքան մեծ էր բիւզանդացւոց մէջ՝ որ երդմամբ ոչ ոք յանձն առաւ հեղինակ ըլլալ հանճարեղ հրամանին։ Զինուորները հաւնեցուցին թէ հրամանը երկինքէն իջած էր։

Փիլիպպիկ սակայն՝ իր ճարտարութիւնները ունէր. խառնուրդի մը ժամանակ յոյն զօրաց մէկ մասը փախչիլ սկսաւ. անկարելի ըլլալով իր նեղուած գունդը առանց զօրավարի թողուլ, շողշողուն սուրն ու ծիրուն գարգմանակը Թէոդոր Իլլիբին անուամբ զօրավարին տուաւ, որպէսզի փախստականները ծեծով ետ դարձնէ։ Ասոնք, սուրէն ու գարգմանակէն խաբուած, սպարապետը քովերնին կարծեցին և ամօթահար՝ կռիւին խառնուրդին մէջ մտան։

Փիլիպպիկի նկարագրին անհեդող զօրավար մը ինչ կարող էր ընել. — ոչինչ կամ քիչ բան։ Փիլիպպիկ գոնէ այս վերջինն ըրաւ։

584ին Միջագետք եկաւ։ Մծբնայ, Ամդայ, Արծնի և Մանազկերտի մէջ երկու բանակները փոխնիփոխակի աւերած էին զօր-

ծէին՝ փոքր բաղխումներով, որով աւելի բնակչաց կը ճեռանէին քան իրարու։ Փիլիպպիկ, որուն առողջութիւնը տկարացած էր կլիմային պատճառաւ, յետ ձմերելու ի Կոստանդնուպոլիս, գարնան ճամբայ ելաւ դէպ ի Ամիդ, սպարապետի դերը վերակնելու համար։ Լսելով որ Մեբոտէս, և Պարսից ուրիշ մեծ նախարարներ դեսպան պիտի գան իրեն, պատրաստուեցաւ զանոնք արևելեան անակընկալ շքեղութեամբ մը շլացնելու. արևելցին, Հռովմայեցւոց համար, մանկամիտ բարբարոս մ'էր՝ որուն վրայ ակլինները և սպառնալիքը բաւական էին խոնարհեցնող տպաւորութիւն մը թողլու։ Ուստի Փիլիպպիկ բազմեցաւ շքեղ վրանի մը մէջ ուր գոյնզգոյն գորգեր իր պատուանդանը կ'ըլլային, ուր թիկնապահներու մերկ սուրերն ու շողշողուն նիզակները՝ կը շրջապատէին զինք մացառի մը պէս. գորգմանակներով, ոսկեզօծ տարազներով զարդարուած զօրավարներու շարք մը՝ ահաւորանին վեհութիւնը կ'ամբողջացնէր։

Ամփիթատրոնաձև ժողովին մէջտեղ կանգնած՝ Մեբոտէս խաղաղութեան հրաւէր մ'արտասանեց։

«Թշնամինե՛ր. — Մի՛ զարմանաք որ այսպէս կը սկսիմ ճառս. փոխեցէք ձեր վարմունքը, ես ալ իմ խօսքս պիտի փոխեմ. — Խաղաղութիւն ըրէք, պատերազմը վերցուցէք...

Պարսից Թագաւորը խաղաղութիւն կը սիրէ, և ինքը կ'ուզէ վաստկիլ խաղաղարարի փառքը:

Մի՛ կարծէք որ ձեր փոքրիկ յաջողութիւնները, ձեր ըրած աւերածները՝ զինքը կ'ահաբեկեն. կարող է ինքը՝ իր վրէժը առնուլ:

Աղաչանք մը չըներ ձեզի, խորհուրդ մը կու տայ: Յարձակողները դուք եղաք, ուրեմն պէտք է դուք եղած նախատանաց ու վնասուն զարման տանիք:

Ընծայներով միայն կարող էք պարսկական բարկութիւնը իջեցնել որ կարող է Հռոմէական անյաղթութիւնն և հպարտութիւնը մի օրուան մէջ խոնարհեցնել կաւի դաշտին վրայ»:

Փիլիպպիկ Մորիկի հարցուց՝ թէ ինչ պէտք էր պատասխանել. «միակ պատասխանը՝ պատերազմն ըլլայ» ըսաւ Մորիկ, և յոյն բանակները ճամբայ ելան դէպ ի Պարսկաստան: Փիլիպպիկ յետ երդմանց

տանելու իր զինուորներէն՝ թէ յիրաւի պատերազմելու միտք ունին, պաշարեց Բերոյա դղեակը՝ (586ին) որուն շուրջ Արզամոն գետը՝ ընական խրամ մը փորած էր։ Պարսից զօրավարն էր Խարդարիքան. մոգեր այնքան վստահարար յաղթութեան պատգամ տուին, որ ամէն Պարսիկ իր զէնքերուն հետ առաջուց շուան մը և շղթայ մ՚ալ առաւ... յոյն գերիները կապելու համար։ Խառնուրդի տեղ՝ Ռոմականի դաշտը ընտրեցին, պատերազմի օր՝ կիւրակէն. յուսալով թէ Փիլիպպիկի պէս բարեպաշտ անձ մը՝ պատերազմելու փայթակղութիւնը պիտի չտար իրենց։

Հոս էր որ Փիլիպպիկ, Քրիստոսի պատկերը առած՝ բանակի մէջ պտտեցաւ զինուորները օրհնելու համար, լալով քաջալերական մը խօսեցաւ, կողոպուտի գրաւածները՝ զարգմանակովը եւ դարձուց, և վերջապէս յաղթեց՝ Պարսից ձիերը խոցել հրամայելով։

Հինգ հազար Պարսիկ սակայն, Խարդարիքանի հետ միասին՝ լեռան մը կատարին վրայ բազմեր էին. արդէն հացէ զուրկ՝ ոտներով բերած ջուրի տիկերն ալ պարպեցին՝ կռիւը յուսահատ ընելու

## ԺԱ.

ԳԵՏՆԱԿԷՆ ՄԱՐԴԻԿ ԿԸ ԵԼԼԵՆ. — [illegible] ԲԱՆԱԿԸ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՍՊԱՐԱՊԵՏ ՄԸ՝ ՊԱՏԵՐԱԶՄԷՆ ԱՌԱՋ ՓԱԽԱՒ։

Հռոմէական բանակը՝ Արծն գաւառի մէջ դրաւ իր բանակատեղը (586), միակ զբաղում՝ շրջակայից աւերածն ունենալով։

Գիշեր մը երբ զինուորները կը քնանային վրաններուն մէջ, անոնցմէ ոմանք կարծեցին ձայներ լսել գետնի տակ։

Ի՞նչ կար արդեօք. երկրաշարժի սպառնալիք մը. հեռաւոր բանակի մը ոտնաձայներ արդեօք...։ Ական մը կը փորէին թշնամիք։

Ականջնին հողին կպուցած, շունչերնին բռնած, մտիկ կ՚ընէին. երբեմն մարդկային ձայներ, խօսակցութիւն մը, բազմութեան մը ոտնաձայնալից վազքը, ահա ինչ որ կը լսուէր։ Խորհրդաւոր դղեակ մը կար իրենց ոտքին տակ. դժոխքի դեւերը չէին որ կը խօսակցէին. և աւելորդապաշտ երեւակայութիւնք՝ հազար ենթադրութիւններ կ՚ընէին։

Երկրորդ որ գինուորներէն մին պատմեց գիշեր ատեն զգացած սարսափները՝ գետնին տակ ապրող ոգիներէն, անցնելով. կոխած դաշտերնին գերեզման մ'եղած էր արդեօք հնութեան մէջ, և մեռելոց ուրուականներ էին՝ որ կը դանդաղէին հողին տակ: Շատեր հաստատեցին՝ թէ իրենք ալ նոյն ձայները լսած են, և որոշեցին որ յաջորդ գիշերն ալ ուշադրութիւն ընեն:

Նոյն խորհրդաւոր խօսակցութիւնները կրկին լսուեցան՝ ամենուն վրայ սարսափալից տպաւորութիւն մը թողլով:

Երկրորդ օր վճռեցին գետինը փորել և նայիլ թէ ինչ կար մէջը:

Եւ գործը սկսաւ՝ վախով խառնուած հետաքրքրութեամբ մը:

Հազիւ մարդաչափ խոր գացած էին, երբ գլուխի մը հանդիպեցան. դեղնած դէմք մը, չորցած տերևի մը պէս, երևան եկաւ. ողջ մարդ մըն էր. գլուխը բռնեցին. ճիչ արձակելով՝ նա փախչիլ կ'ուզէր, բայց մազերը ուրիշի ձեռքի մէջն էին. գետնին երեսը հանեցին. ստորերկրեայ ճանապարհ մ'յայտնուած էր, գաղտնի բնակիչներով. սկսան մի առ մի մարդիկ-

ներ և կլնեն դուրս հանել. մթին և խոնաւ բնակարանը մելամաղձիկ և արտայայտ երևոյթ մը տուած էր իրենց։ Գետնադամբարան մը, ամբողջ ստորերկրեայ քաղաք մը գտնուեցաւ դաշտին տակ. ժամերով գետնէն մարդիկ կը բղխէին։ Հովմայեցիք հաւաքեցին զանոնք՝ և հարցուցին թէ ինչ մարդիկ էին։

Անոնք Արծնի բնակիչներն էին, մեծամասամբ հայ. լսելով որ կրկին պատերազմ պիտի ըլլայ Յունաց և Հռովմայեցւոց մէջ, և իրենց տուն՝ ստացուածքին հետ կեանքն ալ վտանգի պիտի ենթարկուի, և բարձրագոյն լեռներն անգամ իրենց վստահ ապաստանարան մը պիտի չտան, որոշած էին գետնի տակ փոխադրուիլ, և ողջ թաղուիլ՝ հին քրիստոնեայներուն պէս։ Այսպէս ամբողջ ընտանիքներ, ծեր, կին, տղայ, նոր ամուսնացած ամոլներ՝ կ՚ապրէին ամիսներով զուրկ լոյսէ և օդէ։ Եւ ո՛ գիտէ ինչ արտասուալից, ինչ տաղնապալից խռովութիւններ էին անոնք՝ որ իրենց թշուառ գոյութեան մասնիչն եղան։ Կը կարծենք ընդհանրապէս՝ թէ յարձակման ժամանակ Հայը՝ իր զանձերը միայն հողին կը յանձնէր. Ընդան-

դիոյ պատմութիւնը կը ցուցնէ մեզի՝ թէ յաճախ ինքն ալ թաղուած պէտք է ըլլայ անոնց հետ։

Հռովմայեցիք զամէնքն ալ գերի ըրին, և զԱկրոծն՝ մինչև իր խորերը, անապատ դարձուցին։

Պարսիկներ, իրենց բանակին աջաւոր կերպարանք մը տալու համար, ուղտերու այնչափ բազմութիւն բերած էին հետեր-նին, որ հեռուէն տեսնողը պիտի կարծէր թէ պատերազմը ուղտերը պիտի մղեն, ոչ զինուորներ, որ անոնց մէջ կը թուէին տնակներ՝ մեծ անտառի մը մէջ։ Բանակին տեղ, մեծատարած կարաւան մը յառաջ կու գար։ Հանդիպելով Հերակլիոսի, որ երկու արաբացի մատնիչներով և քանի զինուորով՝ ելած էր բերդի մը կառուցման տեղը փնտռելու, հալածեցին զանիկա և մօտեցան Հռովմէական բանակին։ Փիլիպ-պիկ՝ Խլոմար (586ին) բերդը պաշարելու գրաւած էր. երկու կողմէն ալ թշնամեաց յարձակումը վանելու համար, վար իջաւ լեռներէն. այս նահանջի շփոթութիւններէն օգտուելով՝ Զարերդաս դղեկատէրը, բեր-դէն դուրս ելաւ, գիշերային մթութեան մէջ, Հռովմայեցւոց ետևէն, տանոնց տո-

նաձայնի, սկսաւ դէպ ի Պարսից բանակը երթալ. երբ անոնք կանգ առին, ինքը փոխեց ճամբան, և կողմնակի ճանապարհով մը, առանց փոքրիկ վնաս մ'ալ կրելու, կրցաւ մինչ Պարսից սպարապետին վրանը հասնիլ։ «Իմ ետեւէս բեր բանակը, ըսաւ, խորխորատ մը կայ դաշտին մէջ, Հռովմայեցւոց անծանօթ. եթէ անոր մօտ տաս պատերազմը, ապահովապէս Փիլիպպոսին բանակը որոգայթի մէջ պիտի ձըգես»։

Պարսից սպարապետը հաւնեցաւ տրուած խորհուրդին, և հրամանատրին սկսաւ մօտենալ, մինչդեռ ճարտար Զաբերգանը, լերանց ետեւէն, իր զանգուածը միասին, համբերելով գիշերանց՝ կը յաջողէր կրկին Փիլիպպոսին ետեւէն անցնիլ։ Այսպէս նա կրկին սուրերու մէջտեղը կը մնար, երկու կողմէն ալ պաշարուած։ Յետ երկայն ժամանակ, անգործ, թշնամեաց բանակը դիտելու հեռուէն, որոշեց վերջապէս պատերազմը սկսիլ։

Խառնուրդի նախորդ գիշերն էր. պայծառ լուսին մը սփռուած էր երեք բանակներուն վրայ, որոնց ճերմակ վրանները յստակօրէն կը գծուէին դաշտերու կանա-

վերջ, ինչ որ կ'ուզէ թող ընէ. ամէն մարդ գիտնայ ինծի պէս՝ ինքզինք մտածել»։

Ես սկսայ քանի մը քայլ առնել. բայց շուտով կեցայ։ Ինչպէս պիտի փախչէր իր թիկնապահներուն ձեռքէն, որ արթուն կը հսկէին։ Եթէ գիշերապահները զինքը բռնէին յանկարծ, ու շղթայակապ իր վը-րանը զարնէին։...

Բայց, այս բոլոր արհաւիրքները չէին կրնար մահուան հաւասարիլ. բոլոր քաջասրտութիւնը ժողվեց վրան, և փախչիլ սկսաւ։ Ամբողջ գիշեր հև ի հև վազեց, մինչև Ալֆուսոն դղեակը հասնելով՝ ազատեցաւ որհասական տագնապներէն։ Փախուստը գաղտնի չմնաց, բայց կարելի չեղաւ սպարապետը բռնել. պատերազմի ամէնէն սարսափեցուցիչ գիշերներէն մին էր. ամէն մարդ մթութեան մէջ «Սպարապետը փախած է» կը գոչէր, և այս փոքրիկ բոթը բերնէ բերան շրջելով ահաւոր լուրերու կը փոխուէր. Թշնամեաց գիշերային յարձակում մ'ենթադրելով, ամէն մարդ զէնքը կ'ուղղէր առջևը եկողին. յետոյ խառն ի խուռն դէպ ի խրամատը դիմելով փախչիլ սկսան. Ձիերու ամբող-

ջութիւնը, և զինուորաց մի մասը՝ գահա-վէժ կտոր կտոր եղան. ուրիշներ կոխո-տուեցան իրենց ընկերներէն. բարեբաղդա-բար Պարսիկներն ալ, աղմուկը՝ յարձակ-ման նշան կարծելով, յուսահատ դիմադ-րութեան մը վրայ միայն կը մտածէին, կորսնցնելով ջարդի լաւագոյն առիթը։

Արշալոյսը սկսած էր ծագիլ. Պարսիկ-ներ, դեռ կռուի սպասման մէջ, լերանց կողքերուն վրայ փախստականներու վեր-ջին գունդերը տեսան. չկարենալով դէպ-քին մեկնութիւն մը տալ հեռու կը կենա-յին մինչ, Հռովմայեցւոց լարած դարանին մէջ չընկնալու համար, և զոհ կ՚ըլլային նետաձգութեամբ։ Այսպէս Հռովմայեցւոց մաս մը յաջողեցաւ Աֆուման դղեակը հասնելով՝ իր զօրավարը գտնել։ Բոլոր զինուորները իրենց սպարապետին վրայ յարձակեցան, ծաղրածելով ու նախատե-լով, և քիչ մնաց սպաննէին իր Թէո-դոր անձնապահապետը որ Փիլիպպիկէն նուազ ճարտար զինուոր էր, անոր փա-խուստն արգիլել չկարենալով։

Ուրիշ զօրավար մը, ամօթը քաւելու համար, զէնքի պիտի դիմէր և պատե-րազմի դաշտին վրայ պիտի ընկնար քա-

ջութակամբ։ Բայց Փիլիպպիկ, որ աւելի կ՚ընտրէր խօսքերէ մխիթարուիլ՝ քան գէնքերէ, պատերազմի մէջ չմեռնելու համար՝ ամբողջ տարի մը անկողին մնաց, հրաժանատարութիւնը՝ Հերակլիոսի յանձնելով։

Յետ տիրելու բերդի մը, որ շատ յոգնեցուց Հռովմայեցիները, դիրքով բարձր և չորս կողմէն ալ ուղտի մորթէ շինուած պարկերով պատեալ ըլլալուն համար, Թէյուադէս գդեակը պաշարեցին։ Հոս դիւցազն հանդիպեցաւ հսկայ մը, Սամփիրիս անուամբ. անառիկ աշտարակաց մէջ խռոնուած էր Պարսիկ բազմութիւն մը՝ որ քար ու նետ տեղացող Թաթառ մը կը նմանէր՝ փոթորկի ժամանակ. Սամփիրիս երեք անգամ սանդուղի վրայէն նախայարձակ եղաւ, երեք անգամ վար գլորեցաւ, չորրորդին պարապին վրայ ելաւ, Թշնամւոյն գլուխը կտրեց, իր ընկերաց նետեց, և դղեակը բացաւ անոնց։ Թէյուադէս մեռեալներու քաղաք մ՚էր քիչ յետոյ, արեան գետերով ոռոգուած։ — Փիլիպպիկ Հերակլիոսի յաջողութիւնները լսելով, — վախէն ու ամօթէն յետոյ — նախանձով ալ սկսաւ տանջուիլ։ Փարնան Կոստանդնուպօլիս վերադարձաւ։ Հերակլիոս, իր բացակայու-

թենէն օգտուելով՝ բարեկարգութիւն մտոյց բանակին մէջ. զաւակները պատժի կ՚են-թարկուէին. այս սովորութիւնը վերցու-ցած էր Փիլիպպիկ, վասնզի այնպէս՝ պատիժը ինքնիրմէն պիտի ելնէր...։ Սա-կայն քիչ վերջ Հերակլիոս ալ ստիպուեցաւ բանակը թողուլ Ներսէս Հայկազնի՝ և ինքը Հայաստան քաշուիլ. վասնզի Փիլիպպիկ, լսելով իր պաշտօնանկ ըլլալը անգործու-թեանը պատճառաւ, և Պրիսկոսի սպարա-պետ ընտրուիլը, ամէն միջոց ի գործ կը դնէր՝ յաջորդին փառքը խափանելու հա-մար։ (586)

Ագահ Մօրիկը ի վաղուց հրովարտակ մը ղրկած էր իրեն՝ որով զինուորաց ռո-ճիկը կը նուազեցնէր. Փիլիպպիկ զայն չէր հրատարակած՝ ապահով ըլլալով թէ ապս-տամբութիւն մը պիտի ծագի. Հիմա որ ինքը կատարելապէս կը խաւարէր՝ աճա-պարեց գրգռող հրովարտակը Հերակլիոսի ղրկելու Տարսանէէն՝ հրամայելով զայն փու-թով կարդալ բանակին և յետոյ իր գուն-դով մեկնիլ Հայաստան, ինչ որ հաւա-տարմաբար կատարեց Հերակլիոս։

Փիլիպպիկ իր մեքենայութեան արդեանց կը սպասէր անհամբեր։

ճառագայթը, որ զՊրիսկոս կը փայլեցնէր, այրելու ոյժ ունէր իրեն համար։

ԺԲ.

ԽՌՈՎԱՐԱՐ ԲԱՆԱԿ ՄԸ. — ԶՕՐԱՎԱՐ ՄԸ ԱՆՕՐԷՆ ԸՆՏՐՈՒԱԾ։ — ՓԻԼԻՊՊԻԿԻ ՎԵՐԱԴԱՐՁԸ ԵՒ ԿՐԿԻՆ ՊԱՇՏՕՆԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ։

Նոր սպարապետին գալուստը լսելով, բոլոր բանակը ընդ առաջ գնաց իրեն. սակայն Պրիսկոս, գոռոզ ի բնէ, ձիէն վար չիջաւ բնաւ՝ իր զինուած հպատակներուն հետ բարեւելու համար, ինչպէս սովորութիւն էր։ (587, ապրիլ 1)։

Իսկ Զատկի տօնը կատարելէ յետոյ, երբ թոշակներն ալ նուազեցուց, բանակին զայրոյթը ապստամբութեան փոխուեցաւ։ Որչափ կայսեր արձան կամ պատկեր կար՝ փշրելէն վերջ, ասպարով ու քարերով Պրիսկոսի վրանը վազեցին։ Սպարապետը՝ դիւահարած կարծեց բանակը, բժշկելու համար զայն՝ հրամայեց Յիսուսի պատկերը պտտցնել զինուորաց մէջ, յուսալով որ թերեւս անով զղջումի գան, և սատանաններու լեգէոնները՝ զատուին իրենններէն։ Բայց Քրիստոս ալ Թագաւոր

մը չէր. — ինչ փոյթ թէ երկնքի։ Ձինուորները, սրբազան պատկերն ալ քարերով կը պատառէին։ Գրիգոր աճապարեց ձիու վրայ հեծած փախչելու, բայց ձիարած գինուորայ վիրգերը այնքան վէրք բացին թիկունքին վրայ, որ Կոստանդինա հասնելուն պէս՝ բժիշկ կանչել տուաւ։

Կոստանդինայի եպիսկոպոսի միջնորդութիւնը և ուրիշ ամէն փորձ անկարող եղաւ բանակը իր սպարապետին հետ հաշտեցնելու, գինուորներու խումբ մը զինքը Կոստանդինայէ վերջ՝ Եգիպտոսին ալ հալածելու կ՚երթար, երբ Գրիգոր, յուսահատած դիւահար բանակի զգօնանալէն, աճապարեց Բիւզանդիոն դառնալու։

Եւ որովհետև սպարապետ մը հարկաւոր էր, գինուորները, յետ բոլոր սպայները ըստ իրենց քմահաճոյից փոխելու, Գերմանոսի վրանը գացին։ Առաջին անգամ երկիւղ զգաց նա իր կենաց մէջ. յանձնառութիւնը մեծապատկութիւն մը պիտի ըլլար։ Իր դանդաղելուն վրայ զայրացած, գինուորները սկսան ծեծի ենթարկել զինք՝ մինչև որ յանձն առնէ։ Գերմանոս, սպարապետի զգեստով թիկունքի ցաւերը ծածկելով, ողորմուկ ձայնով մը յայտարարեց՝ թէ իրենց սպարապետն էր հիմա։

Մաւրիկիոսի օրով տարուած շքեղ յաղթանակ մը, որ Պարսից Մեհրուժան սպարապետն ալ գլխատուեցաւ՝ վերջ դրաւ իրենց յառաջդիմութեան։ (587) Կայսրը այս պահուն գտնուած էր ի Պոլիս՝ Պլաքեռնեան դրան քովերը Կարեան կոչուած կամարակապը և հասարակաց բաղնիք մը շինելու. Նա նորակերտ կամարներուն վը-րայ իր թագաւորութեան դէպքերը նկարել տուաւ։

Գրիգոր, Անտիոքայ հայրապետը, սր-տաշարժ ճառով մ'ապստամբ բանակը հա-մոզեց ընդ առաջ երթալու Փիլիպպիկի, զոր կայսրը դարձեալ սպարապետ անուա-նած էր։ Զօրքերը, երդում տուած ըլլա-լով բնաւ զայն չընդունելու, խիղճ կ'ը-նէին. եպիսկոպոսը անոնց յիշեցնելով աւետարանի այն խօսքը, «Զոր ինչ ար-ձակիցէք յերկրի, եղիցի արձակեալ յեր-կինս» զամէնքն ալ երդմունքէ ազատ ը-րաւ. բանակը Փիլիպպիկի ընդառաջ գնաց՝ զղջացեալ սրտով ծունր դրաւ իր առջև. սպարապետը մաղթելով ձեռքը կարկառեց ամենուն վրայ՝ արձակում տալու ձևով մը։ Զինուորաց առջևէն կ'երթային նոր մկրտեալները՝ որ բոլորովին ճերմակ հա-գուած էին։ (589ին)

փիլիպպիկ հազիւ վերադարձած էր, երբ Նփրկերտ Պարսից ձեռքն անցաւ։ Սիթթաս անուամբ քաղաքացին, անձնական դանութեանց վրէժն առնելու համար, 400 Պարսիկներով որ բանտը Մերոդէսի ձեռքէն փախած էր ներկայացնէին զիրենք, ներս մտաւ, քաղաքը բացաւ Պարսից առջեւ։ Ի զուր փիլիպպիկ ամբողջ տարի մ'աշխատեցաւ զայն վերստին առնելու. մի յաղթանակ միայն տարաւ զՄերոդէս բապաններով (591), բայց հետեւանքն եղաւ թշնամեաց առնումը նոր գունդերով, զորս թողուց քաղաքը մտնալ։

Մորիկ վերջնականապէս պաշտօնանկ ըրաւ զփիլիպպիկ, իրեն յաջորդ անուանելով զԿոմենտիոլ։ (591)

Մծբնի Սիսարբան գղեկին մօտ՝ քիչ վերջ կատաղի խառնուրդ մը տեղի կ'ունենար. մարդկային այս հունձքին ժամանակ, նետ մը գետին գլորեց Կոմենտիոլի նժոյգը և սպարապետին մահը անխուսափելի էր, եթէ իր թիկնապահներէն մին ինքզինք վտանգի ենթարկելով իր ձին անոր չընծայէր՝ փախուստը դիւրացնելու համար։ Այս դէպքը այնքան սարսափ ազդեց հռովմայեցւոց վրայ որ խառն ի խուռն

նաւահանջել սկսան: Սակայն Թէոդուպոլսոյ քով Փաշին Հերակլիոս ձեռքերով այս վայրկենին փախստականները՝ թշնամեաց մէջ նետուեցան, հոն իրեն արժանաւոր մահ մը գտնելով. խորոխո մխաւոր մը կանգնած էր ճանապարհին վրայ. այսպէս Հրահատ զօրավարն էր ան. Հերակլիոս վրան խոյացաւ, տապալեց, սպաննեց: Հրահատի գլխակը և Պարսից սարասփը առնելով, Համմայեցիք եւ դարձան, կռուեցան, յաղթեցին:

Հերակլիոսի ատեղ սակայն՝ Կոմենտիոլ վայելեց յաղթութեան փառքը, որ անէլ պիտի փայլէր Նիկիփորոսի ասմանք:

Մորիկ կողոպտուած սուրեր, ակնանկուռ պատեաններ, ոսկեզօծ սաղաւարտներ ցուցահանդէսի դրան հրապարակին մէջ: Թափոր մ'ընել տուաւ՝ գերի դրօշակները ձեռքերնին բռնած: Գիշերները ցորեկի փոխուեցան. ամէն բան կայծերական հարանիք մը կը յիշեցնէր...: Յետոյ շնորհակալութեան համար Պլաքեռնեան Ս. Աստուածածնայ եկեղեցւոյն մէջ հսկում ըրաւ:

## ԺԳ.

### ՊԱՏԵՐԱԶՄ ՍԻՒՆԵԱՑ ՆԱՀԱՆԳԻ ՄԷՋ. — ՍՄԲԱՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ. ԻՐ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆ, ԻՐ ՔԱՋՈՒԹԻՒՆՆԵՐԸ։

Հռովմէական յաղթանակը այնքան վըհատեցուցիչ չեղաւ Պարսից համար՝ որքան կը կարծէին Հռովմայեցիք։

Վաղրամ, Պարսից սպարապետը, 591ին Հայաստան կը մտնէր և ամբողջ Սիւնեաց գաւառը մերկացնելով՝ Բաբելոն կը ղրկէր աւարները հազուագիւտ ճոխութիւն մը։ Լսելով թէ Հռովմէական բանակը կը մերձենայ, Ոստանոս անուամբ զօրավարի մը առաջնորդութեամբ, Գանձակ քաղաքի մօտեր, Երասխայ ափանց վրայ բանակեցաւ։ Թշնամին խաբելու համար այսպիսի հնարք մը մտածեց. երկու Պարսիկներու Հռովմայեցւոց տարազ հագցնելով՝ ղրկեց զանոնք սխալ լուրեր տալու իրենց բանակին վրայ։ Սպասաւորները ճամբան հանդիպեցան յիսուն Հռովմայեցի լրտեսներու. անոնց ըսին՝ թէ թշնամի բանակը մօտ է իրենց, անհոգաբար դաշտին մէջ պառկած են, և թէ շատ շահաւոր պիտի ըլլայ՝ եթէ իրենց հետ գիշերանց Պարսից բանակը դիմելու

գան։ Հռովմայեցիք հաւանութիւն տուին. խարէութիւնը այն ժամանակ իմացան՝ երբ արդէն պաշարուած էին Պարսիկներէ. շրդ-թայակրող Վ̣ահրամի տարուեցան, որ տանջանքի ենթարկելով զիրենք, կրցաւ քանի մը կարևոր տեղեկութիւններ առնել իրենցմէ։

Երկու բանակները հանդիպեցան իրարու Եփրատափայ մօտ. ժայռոտ ափունքներ էին՝ ուր Եփրատը նեղնալով կը խորունկնար։ Ոչ մէկ կողմ՝ չէր յանդգներ գետը անցնիլ. հռովմայեցիք կռուելու անհամբերութեան մէջ էին, բայց Ռոմանոսի խոհեմութիւնը՝ սանձ կ'ըլլար անոր։ Բանակները այնքան մօտ էին իրարու որ զինուորները երկու ափունքէն կը խօսակցէին իրարու հետ. չորս օր այսպէս անցաւ. Վ̣ահրամ՝ պատգամաւոր դրկեց ըսելու համար. «Պատերազմը կարելի չէ ընել այս ձևով. կամ դուք թոյլ տուէք որ մենք Եփրատը անցնինք կամ դուք անցէք»։

Ռոմանոս խոստացաւ առանց կռուի թոյլ տալ որ Պարսիկներն անցնին։

Հինգերորդ օրը կը ծագէր արդէն, երբ երկու բանակները փոթորկի մոլեգնութեամբ իրարու կը խառնուէին. Վ̣ահրամ

կը տեսնէր մարդկային յորձանքներու ե-ռացումն և գոռումը․ իր կեդրոնը ջախջա-խուելու մօտ էր․ ձախ թևին մէկ գունդը օգնութեան գրկեց։ Ռոմանոս Թրշնամեաց ձախ թևը տկարացած տեսնելով՝ հոն խու-յացաւ, փշրեց և սկսաւ կեդրոնի վրայ դիմել։ Պարսիկները չկրցան հեղեղին դէմ նոր թումբ բարձրացնել․ յուսահատ փա-խուստի դիմեցին․ դաշտը ծածկուեցաւ դիակներով․ Երասխը, կարմրած, իր ժայռէ ափունքները կը ծեծէր արեան կոհակնե-րով․․․ ։

Միևնոյն տարուան մէջ էր (591), որ Սմբատ Բագրատունի գլխաւորութեամբ, վճռեցին հայ նախարարներ ինքնիշխանու-թիւն ձեռք բերելու փորձ ընել։ Ինչու երթային օտար ազգերու դրօշակին տակ կռուելու և մեռնելու, նոյնը չէին կարող իրենց հայրենեաց համար ընել։ Ահաւասիկ գաղափարականը որով ոգևորուած, ազգը յուզել կը ջանար Սմբատ. նա հրահանգ ստացեր էր հայկական գունդերով Թրա-կիա գալու՝ Սկլաւոնաց դէմ դրկուելու հա-մար։ Սակայն նախարարներու անմիաբա-նութիւնը պատճառ եղաւ որ դեռ մարմին մը չկազմակերպած, լուրը Բիւզանդիոն

հասաւ և կոմենգիոլ զօրավարը Հայաստան ելաւ ապստամբութիւնը նուաճելու։ Բռնուեցաւ Մհրան. կապուած ոտքերով և ձեռքերով Բիւզանդիոն տարին. Մօրիկ յանձն չառաւ դատաւոր ըլլալ. խնդիրը յանձնուեցաւ ծերակոյտին. Մհրան յանցաւոր դատուեցաւ, ըստ վկայութեան բազմաց, որոց մէջ էր նաև ինքը կայսրը, և որոշուեցաւ ամփիթէատրոնի մէջ զինքը գազանաց առջև ձգել։

Բազմութիւնը որոշեալ օրը խռնուած էր հանդիսատեղին. կայսրը կը նախագահէր. կրկէսին ճիշտ մէջտեղ կեցած էր Մհրան, իր ըմբշամարտի ահեղ մարմնով, բարձրահասակ, լայն թիկունքով, նիհար ու ջղուտ։ Իր ոյժը այնչափ էր որ ձիով անտառէ անցած ժամանակ՝ ձեռքերով ծառոց ճիւղերէն կը կախուէր, և ոտքերով ձիուն կողքը սեղմելով՝ զայն վեր կը բարձրացնէր։

Ժողովուրդը շունչը սարսափէն դադրած՝ կը սպասէր արիւնոտ տեսարանին. յանկարծ դռնակները բացուեցան, և արջ մը մռնչալով ներս վազեց. ընդ առաջ դիմեց Մհրան, բռունքը այնպիսի հարուած մ'իջեցուց ճակտին, որ նա խելացնոր գետին փռուեցաւ։

Պատուագիծը կրկին բացուեցաւ, և ցուլ մը գետինը փորելով՝ ներս դիմեց կատաղաբար. Հայ Թորէատորը անոր եղջիւրները բռնեց և սկսաւ պարանոցը դարձնել. ցուլը յաջողեցաւ փախչիլ՝ բայց զոյգ եղջիւրներն ալ Սմբատի ձեռքին մէջ մնացին։ Գազանը տագնապալից շրջան կ'ընէր կրկէսին մէջ. Սմբատ ալ ետևէն. հասաւ վերջապէս և բռնեց ագիէն. ցուլը մէկ ոտքը վերաց աքացի տալու համար. Սմբատ իսկոյն անոր կճղակէն բռնեց. Երկրորդ անգամ ալ յաջողեցաւ ցուլը փախչիլ, բայց կճղակը Սմբատայ ձեռքին մէջ թողլով։ Երբ ցուլը բոպիկ ոտքով կը կաղար կրկէսին մէջ, ժողովուրդը իր յաղթականը սկսաւ ծափահարել։

Պատուագիծը երրորդ անգամ մ'ալ բացուեցաւ, և այս անգամ առիւծ մըն էր. ամէնքը սոսկացին. «Խնա՜յ Սմբատ» գոչեցին շատեր։ Երբ առիւծը ուղղակի իր վրայ կը վազէր, Սմբատ փոքրիկ շեղում մ'ըրաւ և անոր պարանոցին վրայ ցատքեց. քանի մը վայրկեան կեցաւ առիւծին վրայ հեծած, ուժով մ'ականջներէն բռնած. Ի զուր գազաններու արքայն ոստումներ կ'ընէր, իր հեծեալը թոթվելու համար. Սմ-

բաց իրեն հետ օդոյ մէջ կը բարձրանար առանց փոքրիկ դեդեւում մ'ալ ունենալու. յետոյ բազուկները վար իջեցուց, բոլոր ուժովը խաչաձողը սեղմեց և առիւծը շըն-չասպառ գետին ընկաւ:

Յոգնած էր Արշամ. քրտնած, հեւալով, նստաւ առիւծի գլխակին վրայ, աչքերը հանդիսատեսներուն սեւեռած, որ բուռն կերպով ծափահարելով զինք, կայսեր գը-թութիւնը կը խնդրէին:

Մօրիկ ներումն շնորհեց իրեն. իսկոյն բաղնիք տարին, լուացին, և շքեղ հացկե-րոյթ մը տուին արքունեաց մէջ՝ իրեն ի պատիւ:

Առիւծի և ցուլի յաղթականը պիտի կարողանար Յունաց և Պարսից ալ իր ույժը ցուցնել, եթէ նախարարները ըմբռ-նելով իր յանդուգն ու գեղեցիկ գաղա-փարականը օգնէին իրեն:

Նա յետոյ Պարսից կողմ անցնելով Վըր-կան աշխարհի մարզպան կարգուեցաւ Խոս-րովէն, որ ընծայեց անոր՝ իր Որմիզդ հօր կամարն և սուրը (Սեբէոս, էջ 97):

## ԺԴ.

ՊԱՐՍԿԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ. — ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ՆՈՐ ՇՐՋԱՆ. — ԱՐՔԱՅԻՑ ԱՐՔԱՅՆ ՄՕՐԻԿԻՆ ՈՏՔԸ. — ՎԵՐՋ ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ։

Մինչդեռ պարսկական պատերազմը իր բազմամեայ տեւողութեամբ, իր յաջող կողմերովն իսկ՝ մտահոգութեան մէջ կը ձգէր հռոմէական պետութիւնը, փոքրիկ միջադէպ մը կու գար վերջ գնելու անոր, Արքայից արքայն մինչեւ Մօրիկի ոտքը բերելով։

Վահրամի Սեանայ մէջ կրած պարտութեան լուրը Որմիզդի հասնելով, այնչափ բարկացաւ նա՝ որ կանացի զգեստ մ'ընծայ ղրկեց իր ընդհանուր սպարապետին։ Վահրամ, իբրեւ պատասխան, նամակ մը ղրկեց՝ որուն վերնագիրն էր. «Որմզդայ, դստեր Խոսրովու, Խնդայ»։

Զօրավարին ազդուած նախատինքը ամբողջ բանակին կ'երթար, որ արդէն իր պարտութեամբը զայրացած, ապստամբութեան դրօշը պարզեց։ Արքայից արքայն ուրիշ բանակ մը ղրկեց անոր դէմ. ասոնք ալ, Որմիզդէն դժգոհ, իրենց զօրավարը

Խոսրով իր թիկնապահներուն և կանանց հետ, որոնցմէ երկուքը կաթընկեր տղաք-ներ կը կրէին իրենց ծոցին վրայ, փախ-չելու որոշում առաւ: Վահրամ օգտուե-ցաւ առիթէն, դարանեցաւ Մծբինայ մօտ, անտառի մը մէջ, և յանկարծ յարձակե-ցաւ Խոսրովայ բանակին վրայ. պարտու-թիւնը ապահով էր. Խոսրով միայն փախ-չիլ կարողացաւ, երեսուն թիկնապահաց և իր կանանց հետ:

Գիշեր ժամանակ Յունաց սահմանա-գլուխին հասան. Կիրկեսիոն քաղաքի դրան առջև կեցած, Պրոբոս զօրավարին իր գա-լուստն իմացուց. երկրորդ օր միայն դուռ բացին. հոն այնպիսի արքայավայել ըն-դունելութիւն մը գտաւ, որ մոռցաւ պահ մը իր բոլոր վշտերը: (592 ի յունուա-րին):

Յետոյ նամակ մը գրեց Մօրիկի՝ ծա-նուցանելով թէ ինչպէս զօրքը իր տէրու-թիւնը խառնակած էին, թէ հիմա ստի-պուած էր իրեն ապաւինիլ, իբրև իր հօր, թէ ինքը միմիայն կրնար բժիշկ ըլլալ Պարս-կաստանի՝ և հուակ ապա մաղթելով որ հրեշտակները պահպանեն նոյնպիսի ան-կարգութեանց դէմ համէական տէրութիւ-

նը։ Հայաստան, Պարս և Նփրկերտ իր օգնութեան վարձքը պիտի ըլլային։

Մօրիկ իր օգնութիւնը խոստացաւ. Թոյլ չտուաւ սակայն Պօլիս գալու. Խոսրովի բացակայութիւնը կրնար Վահրամը դեռ աւելի զօրացնել։ Հիերապոլսի մէջ պահեց զինքը ամբողջ ձմեռ, յետոյ Կոմենտիոլի հետ, ստուար բանակով մը՝ Հռոմայեց Պարսկաստան անցնել։ Արքայից արքայն անգոհ ըլլալով Կոմենտիոլի վարմունքէն, կայսրը ետ կանչեց զանիկա՝ իր տեղ Ներսէս Հայկազն զօրավարը ղրկելու համար՝ Մելիտինէի Դոմետիանոս եպիսկոպոսին հետ՝ որ կայսեր ազգական էր, և որուն պաշտօնն էր քրիստոնեայ դարձնել զշահն-շահն։

Այս մեծ ռազմագէտը զոր իր փառահեղ կերպարանքին համար՝ Կիւրիպպոս ժամանակակից պատմագիրը «Զոյլ ամպի» կը կոչէ, իսկ Գելցեր «Արևելքի ամենէն մեծ զօրավար, Պարսիկներու սարսափը» նոյնպէս շատ յարգանք չունէր դէպ ի Խոսրով զոր կը ծաղրէր իբրև պատերազմը բնաւ չհասկցող. շահնշահը զայրացած՝ մարգարէացաւ թէ Բաբելոնէն ժողովուրդ մը պիտի ելնէ՝ Հռոմը կործանելու համար,

ինչպէս որ մեզ մ՚իրեն յայտնած էր։ Ներսէս Հայկազն վաթսուն հազար զօրքով Պարսկաստան մտաւ. իրեն հետ էր Յովհաննէս Թրակացին՝ զօրավարը Հայկական գունդերու, որ իր մեծ ընչացքներուն պատճառաւ Միստաքոն կը կոչուէր։ Պարսկաստանի քաղաքները լսելով Խոսրովի գալուստը Հռովմայեցւոց հետ, իրենց դըռները կը բանային օրինաւոր իշխանին առջեւ։

Վահրամ՝ 40 հազար զօրքով իր յափշտակած գահուն համար կռուելու եկաւ։ Իր ծրագիրն էր առանձինն յարձակիլ նախ Հայկական գունդերու վրայ, յետոյ Հռովմայեցւոց. բայց անոնք յաջողեցան իրարու հետ միանալ, ուժերնին կեդրոնացնել. Զաբ գետին եզերք երկու բանակները կանգ առին իրարու առջեւ։ Վահրամ յանկարծ նահանջեց. յետ Հռովմայեցիները իր ետեւէն ինկան լեռ շրջաններու, Գանձակի մէջ, Պալարաթ գետին եզերք սկսաւ պատերազմը՝ որ վճռական պիտի ըլլար։

Ի սկզբան յաղթական էր Վահրամ. իր փիղերու գունդը քաջաբար ոտնակոխ կ՚ընէր Պարսից թեւը որ արդէն փախուստի սկսած էին։ Հեռուէն տեսաւ Ներսէս Հայ-

կազն, արծուի պէս փառանցուած կէտը սլա-ցաւ. իրեն կը հետեւէր Հռովմէական բա-նակը՝ որուն պատերազմի աղաղակն էր «Ողջոյն քեզ Մարիամ». Վահրամի զի-նուորները տերեւի պէս կը թօթափէին։ Ա-րիւնհեղութեան ամենէն հանդիսական վայր-կեանին, հայ զօրավարներէն մէկը, Մուշեղ Մամիկոնեան, թշնամեաց խորը նշմարեց Նիխորձէս զօրավարը՝ փայլուն զրահնե-րով. ճեղքեց իր գունդերը, մօտեցաւ ա-նոր, և իր նիզակը անոր կոկորդը ուղ-ղեց։

Երկու զօրավարները մենամարտիլ սկը-սան. բազ բազի դէմ կը խփգախէր, հա-րուածները փոխանակեցին. դեռ ոչ մէկն էր յաղթական։ Բայց ծերունին Մուշեղ, հին առիւծ, յոգնած էր. այնպէս որ երբ Վահրամ իր սրով անոր սուրը հարուա-ծեց, Մուշեղայ թուլցած ձեռքէն զէնքը վար ընկաւ. ուրախութեան վայրագ ա-ղաղակով մը՝ Նիխորձէս բազուկը բարձ-րացուց վճռական հարուածը տալու. Մու-շեղ սակայն, օրհասական կատաղու-թեամբ, մուրճով այնպիսի հարուած մ'ի-ջեցուց Վահրամայ գլխուն՝ որ ըղեղը ցըն-ցեցաւ և ինքը վար ընկաւ։ Վէր առաւ

սուրը՝ գլուխը կտրեց և զայն իր մախաղին մէջ նետեց (այն միջադէպին պատմողն է Յովհան Մամիկոնեան, էջ 16)։

Վահրամայ մեռցած զօրքերը փախան. Հայերը հալածեցին ու ջարդեցին, գանձեր գերի բռնեցին. Վահրամ սակայն յաջողեցաւ Պարսկաստանի խորերը փախչիլ։

Խոսրով հետուէն զօրաց վերադարձը կը դիտէր. մէկը զէնքեր կը բերէր, մէկը հարստութիւններ, մէկը փղեր, ուրիշ մ՚ալ թշնամի զօրավարաց գլուխներ։ Հրճուեցաւ Խոսրով. և եթէ նախանձոտ ճոյներ չչարախօսէին Մուշեղայ վրայ, զայն մարզպան կը դնէր Հայոց։ Մօրիկի Դարա և Մծբին քաղաքները տուաւ և ճշմարիտ խաչափայտը՝ զոր Կաւատի որդին Խոսրով յափշտակած էր, Հոռոմայեցի զինուորաց՝ շնորհակալութիւն։

Ներսէսէն ալ հազար Հոռոմայեցի թիկնապահներ և օգնական խրատներ ընդունելով՝ գնաց Տիզբոն բազմելու համար իր նախնեաց գահուն վրայ։ Նա միշտ երախտագէտ մնաց։ Արքայից արքայն՝ Մօրկայ որդին կ՚անուանէր ինք զինք. միշտ խաղաղութիւն պահեց Հոռոմայեցւոց հետ, յարգեց անոնց Աստուածը՝ որ պարտա-

կանանցէն աւելի արդար գտնուեցաւ իր իրաւանց նկատմամբ։ (592)

Այսպէս երջանկութեան թուական մը բացուեցաւ Ասիոյ ժողովրդոց համար, որովհետեւ դարաւոր պատերազմը հազիւ այս կը վերջանար։ Այլ եւ կարող էին Արեւելքի խաղաղասէր քրիստոնեաները իրենց ծառերու հովանիին տակ՝ ընտանեկան բարիքները վայելել։ Այլ եւ հարկ չկար ստորերկրեայ բանտերու մէջ ընակելու։ Յորչափ Մօրիկ ապրեցաւ, Հայաստան այնպիսի հանդարտութեան մէջ էր, որ ժողովրդեան մէջ առած դարձաւ ըսել. «Անհոգ նստիր դու, ինչպէս թէ Մօրիկի ժամանակ ըլլայիր»։

Այսպէս Վահրամի յաղթութիւնը մեծ բարիք մ'եղաւ ամբողջ Արեւելքի. ազգի մը ներքին երկպառակութիւնը պատճառ կ'ըլլար մարդկութեան միանալուն, հաշտեցնելով Տիգրոնը՝ Բիւզանդիոնի, Եւրոպան՝ Ասիոյ հետ։

Այս մեծ դէպքը պատահեցաւ 591 թուականին. դարագլուխ մը պիտի ըլլար անեթէ խաղաղութիւնը Մօրկայ կեանքով չափուած չըլլար։

## ԺԵ.

**ԱՐԵՒՄՏԵԱՆ ՎԻՃԱԿԸ՝ ՄՕՐԻԿԻ ԺԱՄԱՆԱԿ։ — ԼՈՄՊԱՐՏԱՑԻՔ ԻՏԱԼԻԱ ՀԱՍՏԱՏՈՒԻՆ։ — ԳԱՂՂԻԱԿԱՆ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐ։**

Հաղթական պետութեան փառքը նուազող արև մ'էր արեւմուտքի մէջ։ Երկու հզօր ազգեր գերակշռութիւն կ'ուզէին ձեռք բերել. Գաղղիացիք՝ Եւրոպայի համար, Լոմպարտք՝ Իտալիոյ։

Այս վերջիններուն Աւդարիս թագաւորը Իտալիոյ մեծագոյն մասը, մինչև Սպոլէտօ աշխարհակալեց, և գաւառները իր իշխանաց բաժնելով՝ եղաւ առաջին հիմնադիր աւատական կազմակերպութեան։ (584)

Քիլդեբերդ, Գաղղիոյ թագաւորը, երեք անգամ Ալպեաններէն անցաւ Լոմպարտաց դէմ կռուելու համար. այս պատերազմները, որոց շարժառիթը միշտ աննշան դէպք մը եղաւ, — օր. կին աղջիկ մը՝ որ ամուսնութեան համար կը խնդրուի և կը զլացուի (584ին), — կամ պարզապէս Մօրիկի բարեկամութիւնը շահելու համար, անարդիւն կը մնային կամ նոյն իսկ աննըպաստ ելք կ'ունենային Գաղղիացւոց հա-

մար, ինչպէս եղաւ երրորդ արշաւանքի ժամանակ։ Մօրիկ ստակ կու տար Գաղղիացւոց. իսկոյն, Ալպեաններէն անցնելով, Լոմպարտաց դէմ կու գային. անոնց թագաւորը մեծագոյն գումար մը կը ներկայացնէր. իսկոյն, Ալպեաններէն անցնելով, Գաղղիա կը դառնային, անոնց սակայն Մօրիկի դարձներու դրամը՝ զոր պատերազմի պայմանաւ առած էին։

Ամենէն նշանաւորը Գաղղիացւոց չորրորդ արշաւանքն եղաւ. Հռոմէական բանակ մը կ'ընկերէր անոնց. Լոմպարտք բազմաթիւ ճակատամարտներու մէջ յաղթուեցան. յանկարծ սակայն Գաղղիացիք հայրենիքնին վերադարձան. ոչ որ տարակուսեցաւ թէ Լոմպարտացիներէն դրամ առած էին։ Քիչ յետոյ, իբրև ցեղակից, դաշնակցեցան իրարու հետ, կռուելու համար ընդդէմ Հռովմայեցւոց՝ զոր աշխարհի հին բնաւորները կ'անուանէին։ (584)

Ռաւեննայի փոխարքայն էր այս ժամանակ Ռոմանոս, որ շահախնդրութենէ մղեալ՝ պատերազմի կը գրգռէր զԼոմպարտացիս. ասոնք պաշարեցին զՀռոմ, շըրջակայները աւերեցին, զՊատուա, որ փայտէ շինուած էր, կրակի տուին. Գրիգոր

քահանայապետն եղաւ որ պատերազմը կը գադրեցնէր կամ գերիները կ'ազատէր՝ իր անձնական դրամը ծախսելով. սովոր էր ինքզինք Լոմպարտացւոց գանձապետն անուանել:

Աւարները 586ին կ'արշաւէին Հռովմայեցւոց վրայ, հասնելով մինչև Պոլսոյ պարիսպներուն տակ. Կոմենտիոլ զօրավարը յանկարծական յարձակումով զիրենք մինչև Ադրիանուպոլիս վանեց, հոն յաղթանակը կրկնելով՝ օգնութեան հասնող ուրիշ Աւարաց գունդերու վրայ:

Այս պատերազմին կը մասնակցէին նաև հայկական գունդեր (Սեբէոս Գ. էջ 86) որ կը կռուէին Յունաց հետ «յեզր մեծի գետոյն Դանուբայ»: Քասթօս զօրավարը (587ին) սակայն գետէն անդին անցնելով վերադարձին կամուրջը թշնամիներէն գրաւուած տեսաւ. իր բոլոր գունդերը ջարդուեցան, ինքը գերի բռնուեցաւ: Այս պատերազմին մէջ «ձերբակալ արարին զՄուշեղն Մամիկոնեան, կապեցին զձեռբարերն տնկոյ անտառին և սպանին: Եւ բազմութիւն նախարարացն և զաւրացն Հայաստանեայց յաւուր յայնմիկ կոտորանաւ սատակեցան» (Սեբէոս, էջ 87):

գլանար իրենց՝ կայսեր հաճոյանալու համար. «Զորականք իմ, ըսաւ Պրոկոս, ձեր քաջութիւնը ի սես կը գնեմ աշխարհի. ամօթ չէ՞ ձեզ պատիւը կեանքէն ալ վեր դասելէ յետոյ, արծաթը պատուէն վեր համարիլ»։

Այս խօսակցութիւնը հանդարտեցուց զօրքերը, որոնց գանգատները՝ խանդավառ կեցցէներու փոխուեցան։

Մորիկ, Ս. Սոփիայի մէջ շնորհակալ ըլլալէ յետոյ, հաստատեց հանդէսներ կատարելոյ։

Պրոկոս՝ բարբարոսի մ'ապաշնորհութեամբ յարձակեցաւ Աւարներու վրայ, երբ իրենք զիրենք ճախճախուտ անտառի մը մէջ ապահով կը կարծէին։ Թշնամիներէն շատերը անանցանելի ենթարկելով՝ խեղդուեցան թէ իրենց թագաւորը շատ հեռու չէր գտնուեր, և թէ անոր անունն էր Մաւրը։

Յայտնի կը տեսնուի թէ Աւարաց անունը Աւար բառի ծագումն է, ինչպէս Մաւրը Մաւրիկի։

Աւարաց թագաւորին եղբայրը մեռած ըլլալով՝ գինովցած էր նա. փանգի այս բարբարոսաց մէջ՝ սուգի արարողութիւններէն մին ալ՝ արբենալն էր։

Գրիգորս գիշեր ժամանակ իր վրանը խուժելով՝ գերի բռնեց Թագաւորը, իր հըպատակներովը ջարդեց։

Կայսրը հրամայած էր Գրիգորսի՝ Պանդուրէն անցնիլ. արծաթասէր Մորիկի դիտումն էր որ զօրքերը թշնամեաց երկրի մէջ պահուելով աւարով ապրին, ոչ իր գանձով։ Զօրաց դժկամութենէն, Սքլաւոնաց նոր յարձակումներէն ստիպեալ, Գրիգորս չկրցաւ Պանդուրէն անցնիլ. ուստի երբ դարձաւ Պոլիս՝ ձմերելու, Մորիկ զինքը կշտամբեց և իր տեղ՝ իր Պետրոս անուամբ եղբայրը դրաւ զօրավար։

Այս կայսրը կ'ուզէր զինուորաց թոշակը նորէն նուազեցնել. Պետրոսի ձեռք երկու հրամանագիր տուաւ, մէկուն մէջ թոշակի նուազում կը յայտարարէր, միւսին մէջ՝ թոշակի յաւելում։ Պետրոս առաջինը ուզեց կարդալ. տեսնելով զօրաց գրգռումն որ և ոչ իսկ ընթերցումը շարունակել թոյլ տուին, նպաստաւոր հրովարտակը հանեց իսկոյն. այսու ապստամբութիւնը նուաճուեցաւ։

Պետրոս յաջողութիւն մը չունեցաւ. իր անընդհատ պարտութիւններէն ձանձրացած՝ Մորիկ կրկին զԳրիգորս դրկեց։

## ԺԶ.

## ԱՒԱՐԻՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Բայց Սքլավոնաց բոլոր յարձակումները տեղի կ'ունենային՝ գրգռմամբ հզօրագոյն ազգի մը, որուն հարկ կը վճարէին։ Աւար կը կոչուէին անոնք, և Արևմուտքի համար նոյնքան ծանրակշիռ վտանգ էին, որքան Պարսիկք Արևելից։ Չկարենալով միանգամայն այս երկու ազգաց հետ պատերազմիլ, Յոյնք խաղաղութիւն կ'ընէին միոյն հետ։ Այսպէս պարսկական պատերազմի ժամանակ՝ հարկ վճարելով Աւարներուն՝ կ'ազատէին անոնց յարձակումներէն։

Անոնց իշխանը, որ խաքան կը կոչուէր, իր քմահաճոյքները հրամայեցեալ օրէնք կ'ուզէր ընել։ Անգամ մը հրամայեց Մօրիկի՝ իր տէրութեան մեծագոյն կենդանին իրեն ղրկել. Մօրիկ հնազանդեցաւ, և ուղարկեց իրեն մեծ փիղ մը. խաքան զայն տեսնալուն պէս, արհամարհանօք Մօրիկի դարձուց։

Ուրիշ անգամ մը ոսկեհուռ անկողին մը պահանջեց. Մօրիկ դարձեալ կամքը

կատարեց. Խաքանը, անկողինը տեսնելուն պէս, արհամարհանօք ետ դարձուց։

Բարբարոսը այսու կ'ուզէր ցուցնել անշուշտ՝ թէ իր պահանջած իրերուն կարօտ ըլլալուն համար չէր որ զանոնք կ'ուզէր, այլ Մօրիկի հնազանդութիւնը փորձելու համար։

Խաքանը՝ հարկին յաւելումը պահանջեց. պարսկական կռիւը դեռ տագնապեցուցիչ ըլլալով, այս անգամ ալ զիջաւ Մօրիկ։

Բայց հազիւ թէ Արեւելքի մէջ յաջողիլ սկսած էր, Մօրիկ Թրակիոյ և Իլլիւրիոյ բանակները Աւարներուն դէմ ղըրկեց։ Բարբարոսները տիրեցին Սինգիդոն, Փաւթոս և Անխիալութ քաղաքներուն. վերջնական կռիւը սակայն՝ Պալքանեան լեռանց մէջ պիտի ըլլար։ Այս հանդիպումը, որուն համար երկու հզօր տէրութիւնները տարիներով պատրաստուած էին, ամենէն ծաղրական վերջն ունեցաւ։ Հռովմայեցի զօրքերը կիրճէ մը կ'անցնէին, այնչափ նեղ, որ մի առ մի կը քալէին։ Ջորի մը սահեցաւ և ճամբան գոցեց։ Ետեւէն եկող զինուորները սկսան ջորեպանին «Դարձիր, վերցուր» գոչել. Retorna բա-

որ բանակին մէջ լսուելով, ամէնքը սար-սափեցան, մեծ վտանգ մ'ենթադրեցին, ելան փախչիլ։ Արաբները՝ Հռոմայեցւոց յանկարծական անհետացումը տեսնելով մեծ մեքենայութիւն մը գուշակեցին, և իրենք ալ ելան փախչիլ։ Այսպէս երկու բանակները, հակառակ ուղղութեամբ, տագնապալից կերպով կը փախէին, և չէին գիտնար. դիպուած մը բիւրաւոր երիտասարդներ կ'ազատէր մահուանէ։

Յովհաննէս Միստաքոն, հայկական զօ-րաց սպարապետը, Պարսկաստանէն կան-չուեցաւ։ Դրոքթուլֆ Մուշեղին օգնութեամբ, Ադրիանուպոլսի քով այնպիսի ջախջախիչ յաղթանակ մը տարաւ Աւարներու վրայ, որ Սինգիդոնը Հռոմայեցւոց թողլով, իր-րև անդամալուծուած, տարիներով անշարժ մնացին (587)։

Հակառակ այսպիսի անյաջողութեանց, Աւարք մեծա այնքան զօրաւոր վիճակի մէջ էին որ ամբողջ Պալքանեան թերակղզւոյն ազգաբնակութեանց վրայ ցեղաբանական յեղաշրջութիւն մ'յառաջ բերին։

Ելլադայի զանազան կողմեր հաստա-տուն բնակութիւն ունէին. այս ժամանա-կէն սկսան Յոյները սլաւանալ, այնպէս

որ այժմեան Յոյներու մեծագոյն մասը՝ սլաւական ծագում ունի։

Այս խառնուրդն այն օգուտն ունեցած կը համարուի, որ Յոյները այլասերումէ ազատեցան. Հին ազգերը, երբ իրենք իրենց մէջ կզզիացած կը մնան, — կը դիտէ Գիւյցեր, — միշտ կը վատթարանան, խալանատացիններէն զատելով։

Պալքանեան թերակղզին ալ նոյնպէս սլաւացման ենթարկուեցաւ (583ին, Մօրիկայ թագաւորութեան երրորդ տարին)։ Ցեղեր յարձակեցան Սինգիտոնումի, Վիմինակեումի, և ուրիշ Դանուբի եզերաց վրայ կառուցեալ ամրոցներուն վրայ՝ և տիրեցին անոնց։ Քիչ յետոյ մինչեւ Մարկիանուպոլիս եղած քաղաքները Աւարներուն կը պատկանէին։ Թողուց Մօրիկ՝ որ հասնին մինչեւ Ադրիանուպոլիս։ Այնտեղ էր որ Յովհաննէս Միսթաքիոնէն ծանր պարտութիւն մը կրեցին։ — Տարի մը յետոյ (598ին) Ոսկեղէն լերան վրայ բնակող Թուրքաց խաքանը դեսպաններ ղրկեց Մօրիկայ։ Քիչ մ'առաջ հաշտուած էր նա շրջակայ երկիրներուն հետ. Հոս կը յիշատակուին երկու ցեղեր մին «Դեղին ըզգեստներ» կոչուած, միւսը՝ «Սեաւ զգեստ-

ներ»։ Թաւուկաս գետը երկուքը կը բաժնէր իրարմէ. անոնց Թագաւորը Թոյդան կը կոչուէր, այսինքն «որդի Աստուծոյ»։

598ին Դանուբի եզերաց վրայ դարձեալ կը բորբոքէր պատերազմը. Հռովմայեցւոց կը զօրավարէր Պրիսկոս. իր գերիներէն իմանալով թէ Աւարներ պիտի անցնէին մօտակայ տեղէ մը՝ իրենց Պաղմարից մէջ ժողված աւարները տանելով, դարանեցաւ անտառի մը մէջ. ճիշդ այն պահուն որ աւարով լի կառքերը կ՚անցնէին, յանկարծակի դուրս ելաւ, ջարդեց թշնամիները, և այնքան աշխատութեանց պտուղը մի քանի վայրկենի մէջ յափշտակեց։ Աւարները կայսեր դրկուեցան, որպէսզի իրենց նախկին տէրերուն բաժնուին։

Խաքանը, ձմեռ ժամանակ, կռուիլ վճռեց Հռովմայեցւոց դէմ։ Զատկի օրերն էին. սովը տիրած էր Հռովմայեցւոց մէջ. շատերը կը մեռնէին. ցուրտը բարբարոսներուն համար իսկ՝ անտանելի էր։

Խաքանը գթաց՝ և Պրիսկոսի բազմաթիւ կառքեր դրկեց՝ պաշարով լի, ըսելով թէ իր սիրտը շատ կը յուզուէր տեսնելով որ Հռովմայեցիք անօթութենէ կը մեռնին՝ ի-

անայլայլակ էր. կը մտածէր իր կամքը իրագործել տալ, հակառակ ամէն դէպքի և ժողովրդեան դժգոհութեան։

Խաքանը երկոտասան հազար հովմայեցի գինուոր գերի բռնած էր. ասոնք փիլիպպիկի զօրքերէն էին, նշանաւոր իրենց ապստամբութեամբը. բարբարոսը դրամ կարօտ ըլլալով իմացուց Մօրիկի թէ գերիները կը դարձնէր՝ եթէ մարդգլուխ ոսկի մը վճարէր. Մօրիկ՝ իր ապստամբ զինուորաց դէմ ատելութիւն ունենալուն համար թէ ագահութեամբ, — ինչ որ աւելի հաւանական է, — մերժեց. Խաքան կէսը ուզեց, դարձեալ մերժուեցաւ. երրորդ մասը ուզեց, դարձեալ մերժուեցաւ, չորրորդ մասը ուզեց՝ դարձեալ մերժուեցաւ։ Այս վերջին գինն էր, — տասուերկու հազար կեանքի համար, — քսան և եօթն հազար ֆրանք։ Ագահութիւնը սակայն Մօրիկի մէջ այնպիսի աստիճանի հասած էր, որ այս գումարն ալ գլացաւ, և Խաքանը, կատաղութենէն, բոլոր հովմայեցի գերիները՝ ջարդեց մէկ օրուան մէջ։ (600, յուլիս)։

Յուզումը տիրեց Պոլսոյ մէջ. բոլոր ժողովուրդը գրգռուած էր. մայրեր, հայրեր,

եղբայրներ բորբոքած էին Մօրիկի դէմ ահաւոր զայրութով մը՝ որ պիտի չուշանար պայթելու։

Աճապարեց Մօրիկ Աւարներու դէմ դըրկելու Պրիսկոսը. երկու օրուան մէջ գերիներու վրէժը առաւ՝ նոյնչափ Աւար դիակնացնելով Դանուբի ափանց վրայ։ Յաջորդաբար, երկու ամսուան մէջ, հինգ յաղթանակ տարաւ ետեւէ ետեւ. Կոմենտիոլ ալ միւս կողմէն Դալմատիոյ մէջ կը պատերազմէր, բայց յաղթուելով։

Ձմեռը կը մօտենար։ Մօրիկ, որուն ագահութիւնը անբուժելի էր, մտածեց թոշակ տալու տեղ՝ թշնամեաց աւարով զօրքերը սնուցանել. հրամայեց անոնց Դանուբէն անդին անցնել։ Իր կամքը ապահով կերպով կատարել տալու համար Պրիսկոսը ետ կանչելով իր Պետրոս եղբայրը ուղարկեց։

Զինուորները կայսեր դիտումը լաւ գիտէին. այս անգամ կարելի չէր հանդուրժել. իրենց եղբայրները թշնամեաց սրոյն յանձնելէ յետոյ, զիրենք ալ սառերու մէջ մեռցնել կ'ուզէր նա։ Իսկոյն ապստամբութեան դրօշը պարզեցին, բոլոր բանակին սպայները, ու Պետրոսն ինքնին վարն-

տեղւոյն բանակէն, յետոյ Փոկասի վրանը մտնալով, զինքը ապարապետ անուանեցին։

Բիւզանդիոնի ժողովուրդը չանթահարուած լսեց՝ թէ Փոկասի բանակը՝ կայծակի երագութեամբ յառաջ կու գայ։

## ԺԷ.

ՀԱՆՃԱՐԵՂ ՆԱԽԱՏԻՆՔ ՄԸ. — ՍԱՐՍԱՓԵՑՆՈՂ ԴԱԺԱՆՈՒԹԻՒՆՔ. — ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ. — ՏԱՆՋԱՆԱՑ ԳԻՇԵՐ. — ՄՈՐԻԿԻ ՄԱՀԸ։

Ժողովրդական կեանքի մթնոլորտը՝ արդէն սկսած էր փոթորկի նշանները տալ։ Սովը աւելի գրգռած էր բիւզանդացւոց դառնութիւնը։

Ծննդեան օր (601ին) կայսրը բոկոտն թափօր կ'ընէր Պոլսոյ մէջ երբ ապստամբներու խումբ մը ընդ առաջ ելաւ իրեն՝ «Հա՛ց տո՛ւր մեզ» պոռալով և քարեր նետելով ինքնակալին վրայ. նա Պլաքեռնեան եկեղեցին ապաւինեցաւ. ապստամբները, որոնք ձեռքէ փախցնելնուն համար տրտմած, կայսրը նախատելու այս գիւտը գտան. բռնեցին Մորիկի նմանող մէկը, էշու վրայ հեծցուցին, սխտորով պտտեցին

և սև լաթ մը նետելով ուսին՝ իբրև ծիրանի, բոլոր քաղաքին մէջ շրջեցուցին։

Նեղուցին մէջ երևցան երկու հսկայներ, այր և կին, քանի մը վայրկեան մինչև կուրծք ջուրին վրայ կենալով, յանկարծ աներևութացան։ Ժողովրդեան մէջ մարգարէութիւն մը կը շրջէր, որուն համեմատ Փ գիրը Մ գրին պիտի յաղթէր, այսինքն Փոկաս՝ Մօրկայ. կայսրը Փիլիպպիկոսի վրայ կասկածեցաւ, բայց տեսիլքով անմեղութիւնն իմանալով բանտէն ազատեց։ Գերիներու մահուան համար խղճմտանքէն տանջուած, Մօրիկ եպիսկոպոսներուն և անապատականներուն յանձնեց աղօթել՝ որ իւրը այս աշխարհին մէջ քաւէ մեղքը, ոչ հանդերձեալին մէջ. անոնք պատասխանեցին՝ թէ Աստուած քիչ ատենէն իր փափաքը պիտի կատարէր։ Ցորեկուան մտահոգութիւններէ՝ գիշեր ժամանակ մղձաւանջի կը փախուէին. երազի մէջ կայսրը, կանգնած էր պալատին Փրկչեան դրան քով. Յիսուսի արձանը որ գծեցուած էր անոր վերև, կենդանացաւ, խօսք առաւ, և գոչեց ապաշխարելի ձայնով. Մօրիկը Փոկասի մատնեցէք։

Թէոդոս Թագաժառանգը, և Գերմանոս

Մորիկի աները, որոնք եղած էին. ոչինչ գիտէին եղած մեծ յուզումներուն վրայ։ Փոխանակ բանակը իրենց մօտենալով, նախ Թէոդոսի՝ յետոյ Գերմանոսի առաջարկեց Մորիկի գահուն վրայ բարձրանալ. վախցան անոնք, մերժեցին և Պոլիս փախան։ Բայց Մորիկ կասկածեցաւ Գերմանոսի վրայ, որ Ս. Սոփիա ապաւինեցաւ, կեանքը ազատելու համար։

Կայսրը դիմադրութեան պատրաստուեցաւ. Կանաչներէն՝ պարիսպները պահպանելու հրաման տուաւ, և կապոյտ կուսակալներուն՝ (որ 900 հոգի էին) զէնք. յետոյ Թէոդոսը զրկեց Խոսրովէն ընդունելու այն օգնութիւնը զոր ինքը երբեմն տուած էր անոր, հրամայեց չդառնալ՝ մինչև որ իր մատանին մէկը չցուցնէ իրենց։

Միթութիւնը կ'իջնար անձայր Բիզանդիոնի վրայ։ Ամբոխը, ջահեր ձեռքերնին, ոռնալով, հայհոյելով, նախատական երգերով խումբ խումբ կը յարձակէր պալատին վրայ այն իշխաններուն՝ որ Մորիկի բարեկամ կը համարուէին. անոնց պալատները կրակի տուաւ։ Պալատական պահապանները՝ ժողովուրդը փոխանակ հեռ

միացած տեսնելով, կայսեր դէմ դարձան։ Ոչ մէկ յոյս չէր մնար Մորիկի։ Սակայն զգեստը փոխեց, իր որդւոց և կնոջ հետ նաւակի մը մէջ նետուեցաւ՝ և սկսաւ փախչիլ։ Գիշերային մթութեան մէջ ունայող Բիւզանդիոնը դժոխքի տեսարան մը, Բաբելոնի մը կործանումը կը թուէր. հեռուէն կը տեսնուէր հրդեհուող պալատներուն բոցը, դիզադէզ ծուխը, որ երկնքի ամպերը կ'անձեցնէր. ապստամբներէն, պարիսպներէն անդադար կը հասնէր «Մեռնի Մորիկ, կեցցէ Փոկաս» աղաղակը. արհաւիրքը անցնելու համար երկինք մը, Բիւզանդիոնի պէս փոթորկալից, անթափանց ամպերով կը կայծակէր ու կ'որոտար, և տխրանձիչ հովը որ ծովը կը յեղաշրջէր՝ կը յօրինէր ալիքներէն անվերջանալի շարք մը լեռնաշղթաներու՝ որ կարգ կարգ կու գային Մորկայ նաւակին բախելու։ Նաւավարները իրենց բազկին բոլոր կորովովը կը մաքառէին ալեաց դէմ, և մինչդեռ կարծէին բաւական յառաջ գացած ըլլալ, փայլակ մը յանկարծ՝ հրաշէկ ու վառադանցուկ արևի մը պէս՝ հորիզոնը կը լուսաւորէր. և փախստականները սարսափով կը տեսնէին ապրուագծուած, դեռ ի-

րնոյց մօտ, պարիսպներն և աշտարակները, Ս. Սոֆիայի գմբէթը, ամբողջ Բիւզանդիոնը, որ գարշութելի տեսիլքի մը պէս կը յայտնուէր նոյն պահուն: Հեռաւոր փոքրիկ ձայն մ'ալ զիրենք կը սարսեցնէր. ո՛ գիտէ թէ թշնամի նաւակ մը մութի մէջ չէ՞ր սողոսկեր իրենց ետեւէն: Կը թուէին այն մղձաւանջին մէջ ըլլալ, ուր մարդս աղաղակել կ'ուզէ՝ ձայնը կը խեղդուի. յառաջ երթալ, ոտքերը կանգ կ'առնուն: Մօրիկի հոգւոյն մէջ կը կեդրոնանար ցաւը իր բոլոր ընտանեաց. իր զինուորական կրթութիւնը, իր մշակուած միտքը կարող էին անվեհեր ընել զինքը պատրաստուած մարտիրոսութեան հանդէպ: Բայց իր կինը, իր փոքրիկ տղաքները և մանաւանդ փոքրիկ աղջիկները, որոնք օգնութիւն կ'աղաղակէին դողալով ամէն ձայնէ՝ որ հովին հետ կը ներդաշնակուէր: Անվախ էր Մօրիկ իր կեանքին համար. բայց ինչպէս կը գալարէր աղիքը այդ անմեղ էակներուն ողբը լսելով: Եւ այդ տագնապը, աշխարհիս մեծագոյններէն, վերջինը պիտի չըլլար. կայսրը քղանցքով աչքերը կը գոցէր, ոչ եթէ դահիճներու նաւակ մը չտեսնելու համար, այլ ողորմուկ նայուածքը իր որ-

գինեբուն՝ որ յանկարծ իրենին կը հանդիպէին։ Ինչպէս կ՚անիծէր բաղդը որ գինքը նաւազ ըրաւ, և ոչ գիւղացի։ Բայց տարրերը անզգայ էին, կոյր էին սրտաշարժ տեսարանին, խուլ էին ողբերու. և հողմը կը շարունակէր մռնչել, երկինքը գոռալ, ծովն ալեկոծիլ։...

Նաւակը, յաճախ շրջելու վտանգի մէջ, — Ի՜նչ մեծ բաղդ պիտի ըլլար ասիկա Մօրիկի ընտանեաց, — ամբողջ գիշերը յուսահատօրէն կռուեցաւ և յառաջ գնաց. անցան Քաղկեդոնի եզերքէն, Հիէրիոնի հրուանդանէն (Ֆէնէրպահչէ) և սկսան Բիւթանիական եզերքէն յառաջել. արշալոյսը կը բացուէր. Իշխանաց կղզիները սկսած էին մութէն մերկանալ, և արևուն ժպիտովը ծիծաղիլ։ Մօրիկ Սուրբ Աւթոնոմ եկեղեցին հասած էր. յանկարծական կաթուած մը զինք անկարող կ՚ընէր յառաջելու. խորունկ տխրութեամբ վերջին անգամ մը դիտեց ընտանիքն և որդիքը, մատանին ուղարկեց իր Թէոդոս որդին ետ կանչելու համար, յետոյ պատրաստուեցաւ մահուան, համակամած իր ճակատագրին։

Փոկաս նոյն գիշեր թագաւոր անուանուած էր և իսկոյն զինուորներու գունդ մը ղրկած՝ Մօրիկը ձերբակալելու։

Դահիճները առաւօտեան դէմ Ս. Ա-թոնոմ հասան. Նաւակի մը մէջ դնելով, Եւտրոպեայ ծոցէն, (որ կը սկսի այժ-մեան Ֆէնէրպահչէէն և կ'աւարտի մեծ Մօտայի դաշտավայրին հետ) համանուն նաւահանգիստը բերին։ Բազմութիւն մը Բիւզանդիոնէն փութացած էր գալու տը-խուր հանդէսին. դահիճներուն Լիկիոս կը նախագահէր։ Մորիկը աւելի տանջելու համար՝ տղաներն իր որդիներէն սկսան. Նախ Տիբերիոսը յառաջ քաշեցին և ա-ռանց անոր օրհասական տագնապին առջև բացառիկ սարսուռ մը զգալու, թագի հա-մար պատրաստուած գլուխը՝ վար ձգե-ցին. Ի՜նչ անցաւ այն վայրկեանին միւս եղ-բայրներուն սիրտը, որոնց եկած էր մեռ-նելու կարգը. չորսն ալ մի առ մի գլխա-տուեցան։ Մորիկ որ աննկարագրելի կը-կիծով հանդիսատեան եղաւ որդւոց մա-հուան, կը կրկնէր սուրբ ամէն բարձրա-նալուն. «Արդար ես դու, Տէր, և ամե-նայն գործք քո ճշմարիտ են»։ Յետոյ, անվախ, պարանոցն երկնցուց. գերագոյն վայրկեան մ'էր, ուր աւելի մեծ եղաւ քան երբեք իր կեանքին մէջ. վիրաւոր արծուով մը, բայց մրմնջելով միշտ համակամութեան

աղօթքը. Մօրիկը պարանոցն երկնցուց և ընկաւ։ Արևելքի ինքնակալը կը քնանար նաւահանգստին քարերուն վրայ, իր ժառանգներէն շրջապատուած։...

Մօրիկի կոստանդինա կինն և երեք դուստրք մահուանէ ազատեցան, բայց ցըկեանս տան մը մէջ բանտարկուելու պայմանաւ։ Կայսեր եղբայրը և Կոմենտիոլ՝ սպաննուեցան։ Թէոդոս ալ որ Ս. Սոփիա ապաւինած էր, բռնի կանչուեցաւ և Եւտրոպեայ նաւահանգիստը բերուելով՝ գլխատուեցաւ. միայն Սեբէոս հայ պատմիչը (էջ 120) անոր կեանքին խնայելով՝ զայն Պարսկաստան կը տանի և դեռ գործել կու տայ իր Թագապահանջ։ Մօրիկի և իր որդւոց գլուխները Պրոպոնտիսի մէջ նետուեցան. ալեաց վրայ երկար ատեն կը ծփային անոնք՝ բազմութեան արցունքը շարժելով. ծովը զայրոյթով ամէն անգամ ափունքին վրայ կը նետէր զանոնք։

Գլուխները Պօլիս տարուելով ցիցերու վրայ անկուեցան Հեպտոմոն դաշտին մէջ։ Անոնք անգամ, որոնց զաւակները զոհ գացած էին Մօրիկի խնայողութեանց, վրէժխնդրութեան հաճոյքն զգալու տեղ՝ արտասուեցին։

Դարեր յետոյ (920ին) Լեկաբեն Հայազգի կայսեր ժամանակ՝ գտնուեցաւ պղնձէ սափոր մը. անոր վրայ եղած խորաքանդակները՝ Մօրիկի վարքը կը յիշեցնէին. ուրիշ սափոր մ'ալ որ երկու մասի բաժնուած էր կը պարունակէր աճիւն մը՝ զոր Մօրիկի որդւոց մնացորդը կարծեցին։ Կը թուի ուրեմն թէ անծանօթ և բարի մարդ մը գիշերանց ծովուն վրայէն կայսերական մարմինները վերցուց. Թաղել չհամարձակելով, այրեց զանոնք, սափորներ առաւ անոնց՝ իբրև գերեզման։ Ռոմանոս Լեկաբեն՝ Մօրիկի եղերերգական յիշատակը յարգելով Պետրոնակիոս պատրիկին ձեռամբ սափորները Պոլիս բերել տուաւ և դետեղեց Միքայելեան վանքին մէջ։ Մօրիկի մահուանէն երեք դար յետոյ՝ իր յուղարկաւորութեան հանդէսը կատարուեցաւ։

Այսպիսի եղերական վերջ կ'ունենար քսանամեայ թագաւորութիւն մը, որուն ժամանակ Հռոմէական տէրութիւնը առանց նախանձորդի կը մնար. Արեւելքի մէջ, ինչպէս Արեւմուտքի։ Պատմութիւնը Մօրիկի մահուան վրէժը կ'առնու իր ձիրքերն անմահացնելով։ Տիպարն է ան իշխանի մը՝ որ տէրութեան բարիքը կը փնտռէ կարո-

մի կամքով մը, հպարտ իր գիտակցութեամբը, արհամարհելով ժողովրդեան համակրանքն և ապաստանալիքը։ Գիւղացիները երկու տեսակ են. անոնք որ ուրիշին կրել կուտան և անոնք որ կը կրեն. — Քաջերն և մարտիրոսները. երկուքին ալ կը պատկանի Մօրիկ։ Մեծ եղաւ իր փառքերուն մէջ՝ ինչպէս վշտերուն. առաջինովն ապագային հիացումը գրաւեց, երկրորդով՝ իր համակրանքն և արցունքը։

Եւ հիմակ, ամէն մարդ որ Եւրոպական տխրահռչակ ծոցին կ'այցելէ, հանդիսատես կ'ըլլայ արիւնռուշտ տեսարանին յաւիտենական նորոգման։ Կ'անիծէ Գլադստոնի կոհակները որ այնքան անմեղներու կեանքերին դէմ գինուեցան, և իր հովը՝ որ դեռ օդին մէջ մեռնողներու հեծեծանքները կը պտտցնէ։ Երբ փոթորիկի մէջ է ծովը, ականջը խուլ ձայներուն մէջ՝ թիերու ճողփիւնը կը փնտռէ, և նայուածքը Մօրիկի նաւակը....։ Լուսինը հոն արհաւրալից գիշերուան յիշատակը կը բերէ միշտ, և անկարելի է արտասուք մը չթողուլ այն ափունքին վրայ՝ ուր իրենց արիւնը կաթկթեցին հինգ անմեղ, թշուառ էակներ, և մին՝ մարդկութեան մեծագոյն իղձականներէն։

# Բ.

# ՎԱՐԴԱՆ ՓԻԼԻԿ

(711–713)

---

## Ա.

ԻՐ ՆԿԱՐԱԳԻՐԸ. — ՀՄԱՅՈՂ ԵՐԱԶ ՄԸ. — ԱԼԵՔՍԱՐԴ ՄԱՐԴԱՐԷՆ. — ՅՈՒՍԱԽԱԲՈՒԹԻՒՆ. ԱՔՍՈՐ:

Ճարտասան, աստուածաբանութեան մասնագէտ, Վարդան ամէն ձիրք ունէր՝ Պոլսոյ պատրիարգ ըլլալու համար. — անոր կայսրն եղաւ:

Դէմքով փառահեղ, խօսքերովը մոգիչ, շքեղութեամբ՝ ամէնքը շլացնող, ունէր նաեւ մեծ ճարտարութիւն ասպետական խաղերու մէջ: Հմուտ էր, գիտուն, միւս կողմէն այնքան զակատեալ հաճոյքի սիրով, որ զայն գոհացնելու համար՝ տէրութենէն գանձ կը յափշտակէր, Աստուծմէն՝ ուխտեալ կուսանքներ:

Մամիկոնեան մ՚էր նա, եթէ անուանը նայինք միայն։ — Ծնաւ Զմիւռնիոյ մօտ, Պերգամոն քաղաքը, որ Վարդանէն առաջ աւելի օգտակար բան մ՚արտադրած էր. մագաղաթը (pergamena)։

Որդի էր Նիկեփոր պատրիկին. ուսմանց, հաճոյքի, զինուորական հրահանգներու մէջ մեծցաւ։ Իր ազնուականութեանը գիտակից՝ պատանի եղած ժամանակ իսկ կ՚այրէր յանդուգն փառասիրութիւններով։

Օր մը, երազներու աշխարհքէն՝ արծիւ մը ճամբայ կ՚ելլար դէպի Վարդան. կանգնեցաւ անոր գլխուն վերև, անոր հովանի ըրաւ, երկար ժամանակ թռչտեցաւ անոր շուրջը։ Երբ Վարդան աչքերը բացաւ, երազի անոյշ տպաւորութիւնը դեռ կը տիրէր վրան. վազեց պատուհանը, իր աստղը փնտռեց գիշերային երկնքին մէջ, և բիբերն անոր ուղղելով, ուրախութենէն գինովցած, բացագանչեց. «Կայսր պիտի ըլլամ»։

Երազահանութիւնը, այս դարուն՝ ծաղկած վիճակի մէջ էր. կրօնաւորները կէս աստուածաբան էին, կէս քուրմ։ — Եւ, աւելորդապաշտութեան բառագրոց մէջ, արծիւը միշտ կայսերական գահ կը նշանակէր։

Վարդան, գողդողալով իր երազին վրայ, — ինչպէս մէկը որ ձեռքին մէջ թռչուն մը կը դիտէ գուրգուրանօք, վախնալով միանգամայն՝ որ մի՛ գուցէ փախչի, — որոշեց սիրտը բանալ այն ճգնաւորներէն մէկուն՝ որ Պօլսոյ մերձակայ լերանց և Ոլիմպոսի մէջ առանձնացած՝ սուրբ և մարգարէ կը կոչուէին իրենց արհամարհած աշխարհքէն։

Վարդան ճամբայ ելաւ դէպ ի հռչակուած քարայր մը։ Հոն հասնելով՝ դուրս հրաւիրեց սուրբ հայրը պատկառոտ ձայնով։ Ճգնաւորը որ աղօթք մը կը մրմնջէր կամ տեսիլքի մը հետ գրաւուած էր, ետ դարձաւ նայելու՝ կասկածելով որ մի՛ գուցէ սատանայն ըլլայ կամ աշխարհքը։ Պատրիկ մը, երիտասարդական բոլոր առողջութեանը մէջ, ճգնաւորի նայուածքին հանդիպեցաւ. իր գոյնզգոյն զգեստներովը՝ կենդանի նկար մը կը թուէր։

Վարդան իմացուց իրեն՝ թէ գաղտնիք մ՚ունէր յայտնելիք։ Ճգնաւորը նստաւ ժայռին վրայ, Վարդանայ մօտ, իր հրաբորբոք աչքերը ուղղելով արհամարհանօք մայրաքաղաքին, որուն աշտարակներն ու գմբէթները կը տարածուէին փառքը մարդկա-

յին հանճարին վրայ խօսելով, ինչպէս ծովը՝ Աստուծոյ։

Սպիտակ մօրուքը կը ծածանէր Ալիշան եկող հովերով։ Ուշադիր մտիկ կ՚ընէր Վարդանայ երազին։ Երբ ան լռեց, ծերունին խօսեցաւ։

«Վարդա՛ն, դուն կայսր պիտի ըլլաս։ Բայց Աստուած՝ որ քեզ գահ կը հանէ, պայման մը կը դնէ քու վրադ»։

Յետոյ ձեռքը մայրաքաղաքին վրայ տարածելով, աւելցուց.

«Պղծուած է, նզովուած է, բաւ, այս քաղաքը։ Մոլորութիւնը կը թագաւորէ հոն։ Կը հայհոյեն զՔրիստոս՝ երկու կամք ընծայելով անոր։ Վեցերորդ կոչուած դիւական ժողովը՝ դեռ յարգ ունի այստեղ։ Աստուած քեզ գործիք կ՚ընտրէ՝ ճշմարտութիւնը վերականգնելու համար։ Երդուընցի՛ր, Վարդան, որ երբ գահ ելնես՝ հրովարտակով մը հրամայես ժողովրդեան մի կամք դաւանիլ ի Քրիստոս»։

Վարդան երդուընցաւ։

Յետոյ ծերունին՝ անոր փառաւորութիւնները օրհնեց, և վեղարը գլուխը անցնելով՝ անհետացաւ քարայրին մէջ։

Վարդան ուրախութեամբ սկսաւ իջնել

դէպ ի մայրաքաղաքը, նախ ուղղելով ա-
նոր հպարտ նայուածք մը՝ որ կ՚ըսէր. Որ
մ՚ինձի պիտի հպատակիս։

Հոգին անձուկ կու գայ բուռն զգացում-
ներու. Հրդեհին կը նմանին անոնք՝ որ
ինքզինք կը մաշէ։ Վարդան, ուրախու-
թեան գաղտնիքէն տանջուած, կանչեց իր
մտերիմ բարեկամներէն մին, և անոր ը-
սաւ՝ ինչ որ ինքն երազած էր՝ և ճգնա-
ւորը մեկնած։

Կարծեցեալ բարեկամը, մեծ վարձքեր
յուսալով, իսկոյն կայսեր գնաց՝ Վարդա-
նին պատմածները կրկնելու համար։

Օր մը, երբ Հայ պատրիկը զբաղած էր
իր սովորական զուարճութեանց, — մօրքէն
իր ապագայ թագաւորութիւնը կարգադրե-
լով, նոր իշխաններ անուանելով, թերևս
ամենամեծ տիտղոս մ՚ալ վերապահելով
իր մանչին, — զինուորներու խումբ մը
ներկայացաւ յանկարծ, շղթայի զարկաւ
զինք՝ և պալատ տարաւ։ (702ին)։

Հիասթափման դառն վայրկեանն էր.
տեսաւ որ արծիւը՝ թևերը բացած կը
սլանար, կը կորսուէր. մարած յոյս մը,
մատնող բարեկամ մը, մեռնելու ցաւը,
այս ամէնը, հոգւոյ հզօրագոյն տխրու-

թիւններ, միանգամայն իր սիրտը կը խո-ցէին։

Թագաւորը, 702ին, էր Կորիկոսցի Ապսիմարը, որ Տիբեր ալ կը կոչուէր։

Նա Վարդանին պատմել հրամայեց իր երազը։ Մագրածելով, յիմար կոչելով զինք, դանակոծել պատուիրեց, յետոյ, փոխանակ սովորական ձևով գլխատելու, ածիլել տուաւ և Յունաստանի Կեֆալո-նիա կղզին աքսորեց։

Հոն ծովէն շրջապատուած, շղթայա-կապ, տասն տարի միայնութեան մէջ ապ-րեցաւ Վարդան, կորսուած յոյսերն ող-բալով, կամ նոր յոյսեր կերտելով մտքին մէջ....

Բ.

ԽԵՐՍՈՆԻ ԿՈՏՈՐԱԾԸ. — ՆԱԽԱՐԱՐԵԱՆ ՏՈՐՄԻԿԸ. — ՎԱՐԴԱՆ ԿԱՅՍՐ ՀՌՉԱԿՈՒԻՆ. — ԴԷՊ Ի ՊՈԼԻՍ։

Մինչդեռ Վարդան աքսորանքի մէջ կը հեծեծէր, լսեց թէ իր երազած գահուն վրայ՝ կրկին կը բարձրանար Յուստինիա-նոս Բ։ (705)

Խոսուն վագր մ՚էր սակայն, պատակուած գազան մը. մին այն բռնաւորներէն, ո-

րանց փոքրագոյն զբօսանքը՝ ուրիշի արցունքն է, և մեծագոյնն՝ անոնց արիւնը։

Քնչատ չերևելու համար, ոսկեղէն քիթ կը գործածէր. զայն վերուցած պահուն, իր գահընկէցութիւնն և աքսորն յիշելով, կատաղութիւն կը գար։ Եւ որովհետև Քերսոնեցիք, որոնց քով աքսորուած էր, իր աղէտը ծաղրած էին, և ինքն ալ սպառնացած էր զանոնք ամէնքն ալ ջարդելու՝ եթէ յաջողի փախչիլ. կայսր ըլլալուն պէս փութաց խոստումը կատարելու։

Պատրաստեց մեծ նաւատորմիղ մը՝ ուր 100,000 անձ պիտի զետեղուէին. ոչ միայն դահիճներ կը զրկուէին Քերսոն, այլ նաև տէրութեան բոլոր աքսորեալները՝ որպէսզի ջարդուողներուն տեղ բնակութիւն հաստատեն հոն։ (710)

Այս վերջիններէն էր նաև Վարդան։

Ստեփանոս Ասմերոս, նաւատորմիղին հրամանատարը, թէ և Վայրոց տիտղոսը կը կրէր, ցցուց այս առթին մէջ թէ կայսրը իրմէն աւելի արժանաւոր էր անոր։ Դանդաղեցաւ՝ մինչև որ բնակչաց մէկ մասը փախչի, ողջերը գերի բռնեց, ժողովրդեան մնացած մասը ջարդեց։

Մինչդեռ ոմանք նաւակի մէջ դրուած ծով կ'ընկղմէին, ուրիշներ գլխիվայր կը կախուէին կրակի վրայ. Հին վկաներու տանջանքները վերադարձած էին նոր Ներոնին հետ։ Բոլոր Քերսոն արեամբ ողողեցաւ և Ստեփանոս գերիներով միասին ճամբայ ելաւ դէպ ի Կոստանդնուպոլիս, կայսեր Եղիա զինակիրը թողլով Քերսոնի մէջ։ Սակայն նաւատորմիղը փոթորկէ մը խորտակուեցաւ. 63,000 դիակներ կը ծփային ծովուն վրայ, յաճախ ալիքներէն ափունքներուն վրայ նետուելով. Ծովը՝ պատերազմի դաշտի մը կը նմանէր. այս քստմնելի տեսարանին մէջ՝ միայն մէկ ուրախալի բան կար. դիակներուն մէջ կար նաև Ստեփանոս վայրագինը։ (710 Հոկտ.)

Փախստականները, դահճապետին մահը լսելով, Քերսոն վերադարձան. կայսրը իր զինակիրին հրաման ղրկեց՝ կաթնկեր տղու մ'ալ չխնայելու։ Եւ որպէս զի Խազրաց թագաւորը Քերսոնցւոց չօգնէ, երեք հարիւր զինուորով ետ դարձուց երկու Խազարները զորս գերի բռնած էին. անոնցմէ մին, հոն հասնելով մեռաւ. Խազարները, անոր գերեզմանին զոհեցին՝ երեք հարիւր

Համամայեցիները՝ իրենց գլխաւորներով հանդերձ, և փնտռեցին ամէն օգնութիւն ընել տառապեալներուն։ (711)

Քերոնցիք յուսահատ կռուի պատրաստուեցան. կայսեր զօրքն ալ իրենց կողմն անցան։ Ապստամբութեան դրօշը անկեցին փլատակներուն վրայ. կը մնար նոր կայսր մ'ընտրել։ Այս պատիւը նախ կայսեր զինակրին առաջարկեցին. նա վախելով հրաժարեցաւ. բոլոր ժողովուրդը զ'Վարդան կայսր հռչակեց, անունը Փիլիպպիկ (Ձիւանէր) դնելով։

Յուստինիանոս այս բաները լսելով, կատաղութեամբ իր զինակրին տունը վազեց. յետ անոր կաթնկեր որդիները իր ձեռքով սպաննելու իրենց օրօրոցին մէջ, անոր կինը բռնի իր Հնդիկ ամենատգեղ խոհարարին հետ ամուսնացուց։ Յետոյ հրամայեց իր Մաւրոս զօրավարին որ անմիջապէս Քերսոն երթայ, աւերէ, քանդէ, քաղաքէն հետք մը չթողու, և զայն ամբողջովին արօտ վերածէ։

Մաւրոսի բանակը հազիւ թէ բարաններով սկսած էր պարիսպները ծեծել, երբ Խազարներու ստուար բանակ մը եկաւ զիրենք պաշարելու։ Տեսաւ Մաւրոս՝ որ

եթէ դէմ դնէ, պիտի մեռնի խաչակիրներուն ձեռքով, եթէ հնազանդի՝ կայսեր սրով. աճապարեց Վարդանայ կողմն անցնիլ։

Վարդան պաշարումէն առաջ՝ Խաքանին քով ապաւինած էր. ապստամբները խընդրեցին իրմէն՝ որ իրենց կայսրը շնորհէ։ Մարդգլուխ ոսկի մը՝ և հաւատարմութեան երդում պահանջելով, Խաքանը Խերսոն դրկեց զՎարդան, որ խանդավառ կեցցէներով ողջունեցաւ։

Յուստինիանոս վայրկենէ վայրկեան լուրի կը սպասէր. օրեր, շաբաթներ անցան, դեռ լուր մը չէր գար. դժբաղդութիւն մը կասկածեցաւ։ Նոր զունդ մ'առաւ մայրաքաղաքէն, ուրիշ մը՝ դաշնակից Բուլղարներէն, և ցամաքի վրայէն հասաւ մինչև Սինոպ։

Հեռուէն առագաստանաւերու բազմութիւն մը կ'անցնէր, թռչուններու երամի մը պէս։ Յունական նաւատորմիղն էր։

Յուստինիանոս մարդ դրկեց հարցնելու համար՝ թէ ո՞ւր կ'երթան առանց կայսեր հրամանին. անոնք անտարբեր կերպով պատասխանեցին. «Վարդան կայսրը՝ մայրաքաղաք կը տանինք»։ (711 Հոկտ. 24)

Երկաթի պէս կրակ կտրած, մարդու

մը պէս՝ որուն լեզուն վախէն կը բռնուի. կաթուածահար ըլլալու դիրքի մէջ. վարագի պէս փոփոխած, ջղաձգութեանց մէջ, Յուստինիանոս չէր գիտեր ինչ ընելիքը։

Երբ սթափեցաւ այլայլութենէն, փութաց ցամաքէն դէպ ի Պօլիս երթալու. բայց Վարդան քան զինքը կանխեր՝ Բիւզանդիոն մտեր էր ամբողջ ժողովուրդէն ոգեւորութեամբ ընդունուելով, իբրեւ իր ազատարարը՝ հրէշի մը ձեռքէն։

Յուստինիանոս ստիպուեցաւ ետ դառնալ ի Դամատրիս մօտ Նիկոմիդիոյ. Վարդան փութաց հանդարտեցնել Յուստինիանոսը՝ մահուամբ։

Երկու բանակները կանգնած էին իրարու դիմաց. Վարդան մարդ ղրկեց ըսելու թշնամի զօրաց թէ՝ որքան յիմարութիւն է հրէշի մը համար կեանքը զոհել, եւ ընդհակառակն՝ որքան շահաւոր պիտի ըլլար իրենց՝ «Կեցցէ Վարդան» աղաղակը։

«Կեցցէ Վարդան» գոչեցին անոնք, եւ նոր կայսեր կողմն անցան. Յուստինիանոս ջանաց որ գոնէ վերջ կեանքն ալ չկորսնցնէ։ Բայց իր զինակիրը հասաւ ետեւէն, մազերէն բռնեց եւ սրով մը, — որ թերեւս իրեն պատկանած էր — գլխատեց զանիկա։

Յուստինիանոս վեց տարեկան տղայ մ'ունէր՝ Տիբեր անունով։ Իր Անաստասիա մամը՝ փախուցած էր զանիկա Ս. Աստուածածնայ եկեղեցին. տղայն, ամէն կողմը սրբոց նշխարքներով ծածկուած, մէկ ձեռքով խորանը կը բռնէր, միւսով խաչը. մամը կը կարծէր թէ ոչ ոք թերեւս համարձակի դպչիլ իրեն այն դիրքի մէջ, և դողալով կը սպասէր, կարծելով ամէն շշընկոցի՝ թէ դահիճներն հասան.

Յանկարծ ներս խուժեցին անոնք. մին Մաւրոսն էր, միւսն՝ Յովհաննէս մը՝ Ճրճացուկ կոչուած։ Մինչ մամը՝ Մաւրոսի ոտքն ընկած, արտասուօք զինաթափ կ'ուզէր ընել զայն, Յովհաննէս ձեռնտուկը սուրբերը տղայէն հեռացնելով, դուրս հանեց զանիկա եկեղեցիէն՝ ու սպաննեց։ Յուստինիանոսի գլուխը նախ Պօլիս եկաւ՝ անկից Հռոմ ճամբորդեց՝ ամենուն ծիծաղ պատճառելով։

Վարդան կը մնար բացարձակ տէր համմէկական պետութեան, հրամանատար Եւրոպիոյ և Ասիոյ։

Մեծ երազը՝ իրականութեան փոխուած էր։ (711 Նոյեմբ.)

## Դ.

### ՎԱՐԴԱՆԻ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ. — ԻՐ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ. — ԲՈՒԼՂԱՐՔ Ի ՊՈԼԻՍ. — ԱՐԱԲՔ Ի ՊՈՆՏՈՍ։

Աստուածաբանական ծրագիրներու գործադրութիւնը՝ Վարդանի առաջին գործն եղաւ։

Բայց ինքը մինակ չէր որ քաղաքագիտութեան տեղ՝ կրօնագիտութեան խնամք կը տանէր. ասիկա հասարակաց ախտն էր բիւզանդացի կայսերաց։

Երբ Կոստանդիանոս մայրաքաղաք ըրաւ զԲիւզանդիոն, Արիոսի մեծ վէճը կը բորբոքէր. կռիւը՝ շարայարելի եղաւ։ Բիւզանդիոյ վերջին օրն ալ՝ Պալէոլոգը՝ աստուածաբանական վէճի մը հետ զբաղած էր։

Այս ոգին բանակին մէջ անգամ մտեր էր. Մժէժ Գնունիի ժամանակ յոյն զօրքերը կը պնդէին՝ թէ կայսրութիւնը մէկ պէտք է ըլլայ, կայսրները՝ երեք, վասնզի, կ'ըսէին, Աստուած ալ մէկ է, անձինք երեք են։

Այս բանն այն օգուտն ունէր՝ որ երբ

րական ժողովը. Վարդան ներս չմտաւ՝ մինչ՝ որ զայն քննել չտուաւ։ Զայս ընելով՝ շատ տարաձայնութիւններ, վրէժխնդրութեան համար՝ կայսեր դէմը արուեցին եկեղեցեաց մէջ։ Իսկ Հռոմայ քահանայապետը՝ Ս. Պետրոսի գահին մէջ Զ տիեզերական ժողովը նկարել հրամայեց։ Եպիսկոպոսները կ՚աքսորէր, կը չարչարէր, մինչև որ իր կամքին հպատակելով՝ մի կամք դաւանէին ի Քրիստոս։

Պատկերաց հակառակ նամակ մը ուղղեց Արևմտեայց։ Հռոմայ մէջ շատեր ծառքեցին, ուրիշներ զէնք վերուցին կայսեր զինուորներուն դէմ՝ որ առաքելութեան եկեր էին, և որոնց կ՚ընկերէր Պետրոս, որ Փիլիպիկոսի տեղ՝ Հռոմայ դուքս պիտի ըլլար։ Հռոմայ Սրբազան ճանապարհին մէջ կատաղի խառնուրդ մը տեղի ունեցաւ, Պետրոսի և Փիլիպիկոսի կուսակցաց մէջ. ու որ կը վախէր մահուանէ մը, որ կրօնքի և ճշմարտութեան համար էր։ Քսան և հինգ հոգի ընկան՝ գիւղապետական կռուէ մը յետոյ. արիւնհեղութիւնը դեռ պիտի աճէր, եթէ քահանաներ, սարկաւագներ, ժողովրդապետներ, աւետարանը և խաչ ձեռքերնին բռնած՝ չմիջամտէին։

Եպիսկոպոսաց մէջէն միայն մէկ հոգի մը, որ երկու կամք կը դաւանէր ի Քրիստոս, չարչարուելու տեղ՝ վարձատրուեցաւ. — Ռաւեննայի Փելիքս արքեպիսկոպոսը։

Յուստինիանոսի հրամանաւ կուրցած, նա աքսորուած էր Քերսոն, ուր ծանօթացաւ Վարդանայ հետ. Հասարակաց դըժբաղդութիւնը զիրենք բարեկամացուց. այն կապը, զոր ցաւն հիւսած է, չխզուիր երբէք. Վարդան, երբ կայսր եղաւ՝ հայրապետական աթոռը դարձուց՝ ընծայելով անոր ականակուռ թագ մը։ Տարիներ յետոյ Մեծն Կարոլոսի ձեռքն անցնելով սա, հրեայի մը հարցուց թէ ինչ կ՚արժէր. «Աւելի քան Ռաւեննայի ամբողջ եկեղեցին». պատասխանեց նա։

Վարդանայ ժամանակ՝ Բուլղարաց Թէրվէս թագաւորն եղաւ յարձակողը. բարեկամ Յուստինիանոսի, իրեն պարտք կը համարէր կռուիլ Վարդանայ դէմ։ Սակայն Յուստինիանոսի վրէժն առնելու տեղ, Յունաց քաղաքներն սկսաւ առնուլ։ Սեւ ծովու կողմէն Վոսփոր մտաւ։ Վարդան այնքան անհոգ էր իր սահմաններու հըսկողութեան, որ մինչեւ Սիւքեան աւանը (այժմեան Կալաթա) մտան, առանց արգելքի հանդիպելու։

Հարուստ մ'այնտեղ հարսանիք կը կատարէր. արծաթեղէն, ոսկեղէն սպասներ, ակունքներ կը փայլփլէին ամէն կողմը։ Ջութակներու, տաւիղներու և ամէն տեսակ նուագարաններու ձայնը՝ պարողներու գոչիւններուն հետ միացած՝ հեշտալէտ ընդհանուրը կ'ըլլար գիշերային լռութեան։ Բուղար բանակը այս երգերէն ձգուած, լուսաւորեալ պալատին մօտեցաւ. Ներս խուժեցին յանկարծակի, դաշոյնի հարուածներով գետին փռեցին հարսն ու փեսայն, արիւնը գինիին հետ խառնեցին և ակնան հանդիսականները կոտորել։ Յետոյ քաղաքին մէջ ցրուեցան. ամէն կողմ որ կը հնչէր. երկինքը կը թնդար, երկիրը կ'ոռոգուէր։ Քնացողները այլ ևս չէին արթննար. ուրիշներ, բոլորովին մերկ, կամ ճերմակ սաւանի մը մէջ փաթթուած, դուրս կը ցատքէին անկողնէն և խմբովին կը փախչէին դէպ ի Բիւզանդիոնի Ոսկեդէն դուռը, որ շատ քիչեր կրցան հասնիլ։ Շրջակայ աւանները, Թրակիոյ դաշտերը աւերելով՝ Բուլղարիա դարձան. բոլոր զինուորները հարստացած էին։ (712)

Արևելքի մէջ արաբական արշաւանքները աւերած կը սփռէին ամէն կողմ։ Իրենց

գործակից եղաւ, յԱսորիս, ահաւոր երկ-րաշարժ մը, որուն զոհ գացին բազմաթիւ տուներ՝ իրենց բնակիչներով (773 փետ. 28)։ Մուսլիմահ զօրավարը Լիկաոնիան փլատակօք ծածկեց, Մեսաթիան առաւ, յետոյ մտաւ Պոնտոս, և հոն ալ Ամա-սիոյ առիեց։ Ուրիշ սարակինոս մը, Ալ-բաս անուամբ ալխաֆըղեան Անտիոքն առաւ (այժմեան Աղշէհիր։)

Վարդան կը կարծէր թէ կայսերութեան վայելքներն իրեն կ՚ընկնին, իսկ հոգերը՝ ուրիշին։ Օտարազգի մը որ իւր յաջորդութեանը վրայ անփառակ է, տարբեր կեր-պով այնտի չարաճարանէր։ Ընդհակառակն իր ազգակիցներուն վրայ՝ լուրջ և խնա-մոտ ուշադրութիւն մը կը դարձնէր։ Ա-րաբական արշաւանաց հետեւանօք՝ (719ին) Հայեր հալածուած էին իրենց աշխարհէն. «Փիլիպպիկոս գաղթեց ի Մելիտինէ և ի չորրորդ Հայս բնակել տալով» (Թէո-փանէս, էջ 585)։ Ըստ վերջին դարու Հայ պատմչաց՝ նոյն իսկ հրամայեց՝ որ Յոյնք հայկական ձեւը գործածեն։

Միւս կողմէն կայսրը տուած էր ինք-զինք ամէն տեսակ հաճոյից. ասիկա էր իր գերագոյն օրէնքը, որուն պէտք է հը-

պատուակէին ուրիշ ամէն պատուիրանք՝ եկեղեցիէն կամ աւանդութենէն դրուած։ Երկու տարուան մէջ վատնեց բոլոր գանձը՝ զոր դիզած էին իր նախորդները՝ խնայողութեամբ կամ յափշտակութեամբ։ Տուներ և վանքեր կը պատէր. հոն որչափ կանանց կամ կուսանաց հաւնէր՝ կը հրամայէր պալատը բերել։

Այսպիսի կայսր մը չէր կրնար երկար թագաւորել։ Դաւաճանութիւն մը կազմուեցաւ շուտով. գլխաւորներն էին Գէորգ Բարդաս և Թէոդոր պատրիկ։ Գործադրութիւնը Բուլխոս անուամբ յանդուգն զօրավարին յանձնուեցաւ։ Բայց ինչպէս թագաւորին սենեակը մտնել։ Այս բանիս համար իրենց հետ միացուցին Արտեմիոս կայսերական քարտուղարը, խոստանալով զինքը թագաւորեցնել՝ եթէ դռները բանայ իրենց առջև։

## Դ.

### ԿԱՅՍՐ ՄԸ՝ ԱՆԿՈՂՆՈՎ, ՄԻԱՅՆ ԽՆՋՈՅՔԻՆ — ՎԱՐԴԱՆ՝ ԹԱԳԸՆԿԷՑ ԵՒ ԿՈՅՐ։

713 թուականն էր, — Հոգեգալստեան նախընթաց օրը, առտու քաղաքին հիմնարկութեան (յունիս 3)։

Կայսրը նախ կառարշաւ մ'ընել տուաւ կրկէսին մէջ, յետոյ ձիարշաւ մը՝ որուն մասնակցեցաւ ինքն ալ և ազնուականները։

Վարդան ամբոխին երեւակայութիւնը կը շլացնէր երբ կը թուէր նժոյգին վրայ աշտանակած, ակունքներու շռայլութիւնը ցուցնելով. ետեւէն կու գային նոյնպէս ռազմիկներ, որ մէկ մէկ արեւ պիտի թուէին, եթէ Մամիկոնեանը զիրենք չխաւարեցնէր։

Ամբոխը գինովցած էր Վարդանայ փայլէն, Վարդան՝ իրենց ծափահարութիւններէն։ Յետոյ իր հեծեալներուն հետ միասին, ուզեց շրջան մ'ընել Բիւզանդիոյ փողոցներու մէջ։ Իր առջեւէն կ'երթային հարիւրաւոր գուսաններ՝ որ աշխարհիկ բոլոր նուագարաններով յաղթական երգեր

կը հնչեցնէին. դրօշակներ կը ծածանէին օդին մէջ, և ամբողջ քաղաքը կը պատրաստուէր՝ Հանդիսական թափօրին հետևելու համար։ Կայսեր անցած պահուն, փողոցի պատուհանները կը բացուէին, կանայք և աղջիկունք հոն կը թափէին՝ զմայլմամբ դիտելու, կամ Վարդանի ոտքին առաջ կեցցէներ և վարդեր սփռելու համար։

Գինովութեան այդ բոպէներէն վերջ, Վարդանի սիրտը բացագանչեց. «Երջանկութեան գագաթնակէտը հասայ. այլ ևս կարող եմ մեռնիլ»։

Բանծը՝ պիտի կատարուէր։

Կայսրը Զեւքսիպպեան բաղնիքը գնաց. կարգը խնջոյքի եկած էր։ Թիւ չունէին խորտիկները, հրաւիրեալները և գինիները։ Ամէնքը արբեցան նոյն օր, բայց ոչ ոք Վարդանի չափ. գահոյից վրայ նստած, խոր քուն մը քաշեց։

Գիշեր էր։ Երկու հոգի, աղօտ լոյսով, համր քայլերով վեր կ'ելլէին կայսերական սանդուխներէն։

Մթութիւնը, լռութեան մէջ, կրկին ահաւորութիւն տուած էր։ Արտեմիոս և Թէոփոս կայսերական սրահը դիմեցին երբեմն կանգ առնելով։ Արիւնին յանկարծ կը

տանէր. կը սարսափէին իրենց ոտնաձայ-ներէն. կը դառնային մթութեան մէջ մար-գիկ փնտռելու. սուր մը կախուած էր ի-րենց գլխուն վերև. ջահի շարժուն լոյսը պատկերներով կը շլացնէր զիրենք և երբ կը դառնային մթութեան նայելու՝ կը կար-ծէին մարդկային դէմքեր տեսնել։ Ետևէն եկող դաւաճանները՝ դևերու բազմութիւն մը կը նմանէին՝ որ մատներու ծայրին վրայ կոխելով՝ կը շրջէին։

Առաջ անցաւ Արտեմիոս, բանալին մը-խեց դրան աղխին մէջ. յետ քանի մը վայրկեան սպասելու, շունչերնին բռնած, ներքէն դարձուց. դուռը կէս մը բա-ցուեցաւ. դաւաճանները իր ետևէն մտան լռութեամբ։

Կայսրը անզգայ պառկած կը ննջէր։

Աղօտ լոյսով կը տեսնուէին բեհեզները, վար թափուող ոսկեզէն ծոպերը, վիշապ-ները. բացին զանոնք, ու սարսափով տեսին կայսրը. իջնելով մութ անդունդներէն՝ դի-մեցին ծխարձակարանը. ընդարձակ տեղ մը՝ ալպլուն լոյսերով. կայսրը ուժով ցըն-ցում մը զգաց, յանկարծ ցուրտ մը ա-ռաւ՝ ու աչքը բացաւ. շուրջը տեսաւ խու-ժոռ դէմքեր՝ և ջահեր, գլխուն վրայ՝

աստղազարդ երկինք մը... վերջին անգամն էր որ աստղազարդ երկինքը կը տեսնար:

Երկաթներ Վարդանայ աչքերուն մէջ խրեցան, և նա կորանցուց միանգամայն փառքն ու լոյսը:

Երկրորդ օր՝ Ս. Սոփիայի մէջ Արտեմիոս կայսր հռչակուեցաւ:

Ազատաւոր օրէն վերջը՝ Բիւզանդիոյ փողոցներուն մէջէն կ՚անցնէր կոյր մը՝ գաւազանը գետնին զարնելով. իր դէմքին վրայ գաղտնի ու վսեմ տխրութիւն մը կը նշմարուէր. անցնորդները կանգ կ՚առնէին ու կը դիտէին. իր շրթունքները կը թրթռային շարունակ. անէծք մ՚էր որ կ՚ելէր անկից, թէ ապաշխարութեան սաղմոս մը. անցեալ թագաւորութեան մը վրայ կը խորհէր թէ ապագայ արքայութեան մը. — ոչ ոք գիտէր. միայն երբ անցնէր, ամէնքը կը փսփսային.

— Վարդանն է, Վարդանն է:

— Ո՞վ է Վարդան, կը հարցնէր օտարական մը:

— Բիւզանդիոյ վաղեմի կայսրը, կը պատասխանէին:

Խաւարը որ Վարդանայ բիբերուն վրայ իջաւ՝ իր մնացած կեանքը կը ծածկէ մեր աչքէն:

աքսորուած էր Հայաստան։ Ծննդավայրն եղաւ մեծահամբաւ կայսեր։ Զէնքեր նուագեցին Լեւոնի խանձարուրքին շուրջ. վըտանգներու մէջ ծնած՝ չվախցաւ երբեք վտանգի մէջ մեռնելէ։

Իր որդի Արծրունի զօրավարի մը, իր հօր արուեստը ընտրեց. — քաջութիւնը։ Ցեղը փրկելու ուժին մէջ անշուշտ պատուա-նեկութիւն մ՚ունենալու՝ Բիւզանդիոն եկաւ՝ փնտռելու համար բաղդը, որ իր յուսացածէն աւելին պիտի շնորհէր իրեն։

Հոս ծանօթացաւ Արշակի հայազգի պատրիկի հետ, որ երկու դուստր ունէր, Մարիամ՝ Գեղեցիկ կոչուած (Քալի Մարիա) և Թէոդոսիա. Լեւոն ամուսնացաւ այս վերջնոյն հետ։

Կարճահասակ էր Լեւոն. մարմինը՝ գէր ու մսեղ, մօրուքը երկայն, դիմագծերը կանոնաւոր՝ բայց խիստ. յօնքերը սեւ, նայուածքը՝ սարսափեցնող. ահռելի ձայն ունէր. գլխու մազերը այնքան խիտ էին, որ երբ Նիկեփոր պատրիարքը թագ պիտի դնէր գլխոյն վրայ, ձեռքերը ցաւեցան, ինչպէս թէ փուշի մէջ մխած ըլլար զայն։

Ծանր կերպարանքին հետ ունէր նը-

թական մեծ ոյժ մը. ոչ միայն քաղաքա-ցիք՝ զինակիցք անգամ կը դողային Լեւոնի առջեւ։ Բայց նա հազուագիւտ յատկու-թիւնն ունէր՝ ըլլալու միանգամայն, ճկուն, նենգաւոր, սիրելի, շողոքորթ։ Երդմնա-զանցութիւն, բարեկամի դէմ զէնք առ-նել, անգթութիւն, ասոնք սովորական գործիքներ էին իր ձեռքին մէջ՝ երբ կ՚ու-զէր յոյս մը՝ կամ փափագ մ՚իրականաց-նել։

Այս ժամանակ՝ ամբողջ Արեւելքի սպա-րապետն էր Վարդան. Ծագմամբ հայ՝ թուրք մականունը կը կրէր. նա կ՚երազէր հա-մէական պետութիւն մը իր ոսկի գաւա-զանին առջեւ ծնրադրած. Լեւոնի ոյժն եւ յանդգնութիւնը ի նպաստ իր փառասի-րութեանց գործածելու համար՝ բարձր պաշտօնները անոր կը վերապահէր. զա-նիկա զօրավար կարգեց Հայկական գուն-դերու։

Նիկեփոր կայսրը, 803ին, նոր հարկ մը դրած էր ժողովրդեան վրայ՝ Պեկե-րատոս պարիսպը շինել կարենալու հա-մար։ Հասարակաց տժգոհութիւնը պատեհ առիթ տուաւ Վարդան եւ ինքզինք կայսր հռչակեց։ (803, յուլիս 19)։

մար։ Երբ վանահայրը կը դանդաղէր Վարդանի մազերը կտրելու՝ անոր սքեմ տալու, Վարդան սուրը քաշեց․ ինքն իր ձեռքով կտրեց երկայն խոպոպիքները, ցնցոտի մը նետեց ուսին վրայ և վանքը քաշուեցաւ։

Նիկեփոր, Հակառակ իւր երդումներուն, Հակառակ ժողովրդեան կամքին, չկրցաւ վրէժխնդրութեան զգացումը զսպել։

Գիշեր մը (804ին) քանի մը Լիկայոնացիներ, գայլանման մարդիկ, Փռոթէի ծովափը ելնելով, բռնեցին Սաբբաս անունով կրօնաւորը, — այնուհետև այդպէս կը կոչուէր Վարդան, — և երկու հրաշէկ երկաթներ մխեցին իր բիբերուն մէջ։ Ո՛ գիտէ նախորդ իշխանին, խաղաղիկ ծովափը նստած, մայր մտնող արեգակը դիտելով «Յաւիտենութիւն» ըսած էր անոր Վարդան։ Բայց այլ ևս անոր դէմքը չըտեսաւ։

Նիկեփոր շաբաթ մը սենեակին մէջ առանձնացած, բարձրաձայն կը հեծեծէր․ իր կեղծ արցունքները սակայն չկրցան զինքը արդարացնել ժողովրդեան առջև, որ շատ ուրիշ պատճառներ ալ ունէր Նիկեփորն ատելու։

արծաթազօծեց իր արքունի բաժակն ընե-
լու համար։

Թագաժառանգը ծանր կերպով վիրաւո-
րուած էր պատերազմին մէջ, և արդէն
փոքրամարմին ու տգեղ, շատ քիչ կը սի-
րուէր ժողովրդենէն։ Իրեն տեղ կայսր
հռչակուեցաւ Միքայէլ Կիւրոպաղատ՝ Ռան-
գաբէ կոչուած։ (811 հոկտ. 2)

Հռովմայեցւոց մէջ սովորութիւն էր գը-
թութեան նշանաւոր գործով մը՝ գահա-
կալութեան առաջին օրը փառաւորել։

Միքայէլ հրամայեց որ աքսորեալ Լևոնը
ազատի և տէրութեան պաշտօններու մէջ
մտնէ։

Նոյն իսկ այնքան համարում ունէր ա-
նոր վրայ՝ որ իրեն տեղ կ՚առաջարկէր
ինքնակալ ընտրել զԼևոն, «Հայազգի պատ-
րիկը, զօրավար արևելեան բանակին, այր
քաջասիրտ և ուժեղ» (Կեդրենոս, յէջ
43)։

Նորէն պատրիկ ու նորէն զօրավար Ա-
րևելից. Լևոն պատերազմի գնաց Թէպիթ
Արաբացւոյն դէմ, որ Քրիստոնէից պա-
տուհասն եղած էր։ (811)

Երկու հազար Արաբացիի արիւնով քա-
ւեց իր նախկին յանցանքները և փայլուն

համար ամէն օր թամբր կ'ընէին Պոլիս. պատկերամարտները արուեստական հրաշքով մը ուզեցին իրենց ատանդը փաստրանել. օր մը, երբ թամբրը Ս. Առաքելոց եկեղեցին հասաւ, յանկարծ Կոստանդին Կոպրոնիմոսի գերեզմանը բացուեցաւ. պատկերամարտները, կանխաւ եղած որոշման մը համեմատ՝ սկսան միաբերան աղաղակել. «Յաղթութիւն առաւ Կոստանդին. ոտքեր զինք ձիու վրայ հեծած՝ Բուլղարաց դէմ կ'երթայ. ահա կու գայ, ահա կու գայ, ճամբայ բացէք»։

Ժողովուրդը, հրաշքի սիրահար, դուրս ելնալուն պէս տեսաւ Կոստանդինն և իր ձին նկարագրել. բայց պատկերամարտները, տանջանքի ենթարկուելով, խոստովանեցան՝ թէ ինչպէս լծակով մը յանկարծակի կափարիչը վեր հանած էին։ Յանցաւորները լծակին կապուեցան և քաղաքին բոլոր փողոցներուն մէջ պտտեցան՝ անընդհատ պատմելով՝ սաղմոսի ոճով, թէ ինչպէս խորհուրդ ըրած էին հրաշք մը գործելու, և թէ ինչ խարդախութեամբ յաջողած էին զայն ի գլուխ հանել։

Միքայէլի բանակը անշարժ կեցած էր Բուլղարաց առջև, որ տասնապատիկ նուազ

չին թուով. Լեոն և Յովհան Ափլակէս, զօրավար Մակեդոնացւոց, կ'ուզէին Թըշնամեաց վրայ յարձակիլ. բայց կայսեր խորհրդականները արգիլեցին։

Վերջապէս երկու բանակները, յետ 15 օր Ադրիանուպօլսոյ քով զիրար դիտելու՝ սովէ և ծարաւէ ստիպուած՝ իրարու զարնուեցան (813. յունիս 22)։

Լեոն պարտութեան մը կը փափաքէր, որպէսզի Ռանգաբէ բոլորովին անելի դանայ զօրաց ու ինքն անոր տեղ գահու վրայ բարձրանայ։

Կռուի ամենէն ջերմ պահէին, իր գունդերով դուրս ելաւ խառնուրդէն. Յոյներ, աշարեկ, փախչիլ սկսան։ Բուլղարաց համար այնքան անակընկալ էր այս դէպքը, որ ի սկզբան դաւ մը կասկածեցան, բայց յետոյ համոզուելով որ անկեղծօրէն կը փախչին՝ կոտորածի սկսան։

Ռանգաբէ Կոստանդնուպօլիս փախաւ, բանակը Լեոնի յանձնելով։ Հայ զօրավարը խնկոյն իր կուսակիցները դրկեց՝ որ բանակին մէջ ցրուելով զինուորները գըրգռեն.

«Տէրութիւնը պիտի կործանի այս կայսեր ձեռքին մէջ. փրկութիւն չկայ։ Հիմա

ճիշդ կը կատարուի այն առակը թէ եղնիկ մը առիւծներու կը հրամայէ։ Ինքը կը փախչի պալատէ, զմեզ վտանգի մէջ թողլով Բուլղարաց մօտ։ Ճուտ, մեզի նոր կայսր մ'ընտրենք. կեցցէ Լեւոն»։

Սակայն Լեւոն դժկամակութիւն կը ցուցնէր։ «Բանակին ու ժողովուրդը թախանձելին ամենէն ճարտար զօրավարին, Լեւոն է. Հայուն՝ հասարակաց բարիքը սահմանել և քրիստոնեայ հասարակապետութիւնը ազատել։ Մանր պատասխանատուութեան զգացմամբ դրդուած Լեւոն. յետոյ յանձն առաւ՝ պարզապէս պարտուց զգացմամբ» (Գելցեր, Ուրուագիծ բիւզանդական պատմութեան, էջ 766)։

Այս դժկամակութիւնը սակայն՝ կեղծ էր՝ բառ այլոց։ Երբ նա չափազանց կ'երկարէր, զօրքը մեծադղորդ աղաղակաւ՝ իր վրանը պաշարեց. Միքայէլ Թիւլաւա, քանի մը զինակիցներու հետ վրանը մտաւ և իր սուրը — ճիշդ այն՝ որով օր մը զԼեւոն պիտի սպաննէր, — Լեւոնի կուրծքին վրայ դրաւ, գոչելով. «Ասով կամ թշնամիները պիտի ճեղքենք, կամ կուրծքդ. կայսր եղիր կամ մեռիր»։

Լեւոն հաւանութիւն տուաւ վերջապէս։

Բանակը ճամբայ ելաւ դէպ ի Բիւզան-դիոն։

Հերակլիոս պարսիկներու պաշա-րմանը լսելով Ռանգապէն թէ բանակին զօրք թողուցած է հրամանատար, խելոյն բացագանչեց. «Տէր արքայ, աւելի ան-խոհեմ բնութիւն չէիր կարող ընել»։ Այս մարգարէութենէն քիչ յետոյ լուր կը հասնէր՝ թէ բանակը ապստամբած է։

Զօրավարներէն ոչ որ տրամադիր էր պատերազմի երթալու՝ հայրենակիցներ զոհելու համար Ռանգապէի պէս կայսեր մը, որ ամէն յոյս կորսուած տեսնելով, ուզեց անձամբ ընել՝ ինչ որ Լեոն բանի ընել պիտի տար։ — Հրամարեցաւ։ Պրո-կոպիա կայսրուհին, բարկութենէն այլայ-լած, նախատանքեան մինչեւ կ'արձկէր իր ա-մուսնոյն և Լեոնի կնոջ դէմ, — որ իր տեղ Բիւզանդիոյ դշխոյ պիտի ըլլար. — փոխանակ Թէոդոսիայի՝ Բարկես կոչելով զայն։

Ռանգապէ նաւակ մը պատրաստել տուած էր. գինեց ուղղակի դէպ ի Փա-րոս. կը յուսար Աստուածածնայ տաճարին ապաւինելով՝ Լեոնի գութը շարժել։

Ամբոխը յորձանքի նման դէպ ի դուռ

կայսեր ներկայացան՝ և մեծամեծ պատուա-ներով եւ պարգևաւ ։ Միքայէլ Թլուատ, Լեւոնի ապագայ դահիճը և ներկայ բարե-կամը, դաշնակցաց սպարապետ անուանե-ցաւ, իսկ Մանուէլ Հայկազն՝ հայկական բանակաթեմին զօրավար։

Կայսրը մեղմիւ յանդիմանեց զՄանուէլ՝ նկատել տալով որ բոլոր զօրքերը զինքը կայսր ընտրանած էին, հայ զունդերը ընդ-հանրապէս մերժած։

— Քեզ չէր վայլեր, ըսաւ, Պրոկո-պիայի և Միքայէլի համար՝ զէնքի զինել ինծի դէմ կռուելու համար։

— Քեզ ալ չէր վայլեր, պատասխա-նեց Մանուէլ, քու բարերարիդ դէմ զէնք վերցնել։

Այս համարձակախօսութիւնը զայրաց-նելու տեղ հիացուց զԼեւոն, որ ունէր բաւական վեհանձնութիւն՝ առաքինութիւնը իր թշնամեաց վրայ ալ յարգելու համար։

Լեւոն, գահ բարձրացած պահուն, յոյս ու վախ կը ներշնչէր միանգամայն. իր անգ-թութիւնը սպառնալիք մ'էր, քաջութիւնն և հանճարը՝ յաղթանակի խոստումներ։

## Դ.

## ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ. — ՊՕԼՍՈՅ ՊԱՇԱՐՈՒՄԸ. — ԿՐՈՒՄՆՈՍԻ ՄԱՀԸ։

*Բուլղարները. Բիւզանդիոյ ներքին խռովութիւնները իբրև դաշնակից բանակ մը գործածելով՝ իրենց Կրումոս թագաւորին առաջնորդութեամբ Բիւզանդիոյ պարիսպներուն մօտեցան (813 յուլիս 16)։*

*Խրամ բացին, պատնէշ շինեցին և վրաններէ կազմուած զինուորական քաղաք մը յօրինելով՝ իմացուցին Լեոնի, որ հազիւ շաբաթէ մ'ի վեր գահ ելած էր. Թէ Բիւզանդիոն իրենց աւերիչ ձեռքէն՝ երեք պայմանաւ միայն կարող էր ազատիլ.*

*1. Ոսկիք պէտք են տարեկան տուրք վճարել Բուլղարաց։*

*2. Կրումոս պէտք է պտտի Բիւզանդիոնի մէջ և ինչ աղջկան որ հաւնի, պէտք է տանի իրեն հետ՝ իբրև աւար։*

*3. Կրումոս պէտք է իր նիզակը մխէ Ոսկեղէն դրան մէջ, յաղթանակի նշան։*

*Մինչդեռ բանակցութիւնները կը շարունակուէին, բարբարոսները միւս կողմէն իրենց հետաքրքրական հանդէսները կը*

լու. որոշած էր նա յարձակիլ այն կողմէն ուր վիրաւորուած էր. — Պլաքեռնեանց դրան կողմէն։ Հոս միայն մէկ պարիսպ կար. Լեոն երկրորդ մը կանգնեց, պատնէշով ամրացուց, պաշտեց։

Կ՚ըսէին թէ տաս հազար եզներ քարշելով կը բերէին պաշարման ամենամեծ մեքենայներ։ Բուլղարաց բանակը աճած էր Աւարներով, Սկլաւոններով։ Բիւզանդիոն կանխած էր իր մահուան սուգը բռնել։ Սարսափեցնող լուրեր ետեւէ ետեւ կը հասնէին. յանկարծ անոնց աւետիս մը յաջորդեց. Կրումնոսի երակներէն մին պայթած էր և ինքը անխանջէն, բերնէն արիւն ժայթքելով՝ մեռած։ (814, ապրիլ 13, աւագ հինգշաբթի օր)։

## Դ.

### ԿՐԿԻՆ ՅԱՂԹԱՆԱԿՆԵՐ ԲՈՒԼՂԱՐԱՑ ՎՐԱՅ. — ԼԵՒՈՆԻ ԲԱԽՏԸ։

Կրումնոսի յաջորդած էր Կրիտթագոն (814ին)։ Պատճառն չէր՝ անոր հոգին ալ անցած կ՚երեւէր այս երկրորդին։ Ստուար բանակով դէպ ի Պոլիս յառաջեց. Լեոն չթողուց որ շատ մօտենայ. Բիւզանդիոյ

պարիսպները նորոգելէ յետոյ. Մեսեմբրիա իջաւ և հոն կոխ առաջարկեց Պուլկա-րաց։

Ցայներ, յաղթահարուած, նահանջել սկսան։

Լեոն, քաջերու գունդով մը բլուրին ծայրը կեցած կը դիտէր. Յանկարծ փա-խուստը տեսնելով՝ «Զօրականք իմ, գո-չեց, հիմա է յաղթութեան ժամանակը. մերն է յաղթութիւնը. ետեւէս եկէք»։ արծուի մը պէս վար սլացաւ, ջարդեց, փախուց, յաղթեց, դարձաւ հարստու-թեամբ և գերիներով։

Երկրորդ գարնան (815ին) Թրակիա նորէն պիտի ողողուէր արիւնով։

Կայսրը նորէն անձամբ Պուլկարաց դէմ գնաց. բանակատեղ կազմեց ու շուրջը խրամներ փորեց։ Պուլկարները կայսրը մօտէն պաշարեցին, և ուզեցին սովի բռ-նելով՝ անձնատուր ըլլալու ստիպել։

Նենգութիւնը սակայն՝ ազատեց զԼեոն։ Նա ինչ որ խորհէր՝ գաղտնի կը պահէր. եթէ կամքն ալ յայտնէր ուրիշներուն՝ շար-ժառիթը ոչ երբէք։

Օր մը բանակին մէջ պառկեցաւ, քա-ջերու ընտրութիւն մ՚ըրաւ, և առանց բառ

շուներ զոհելով և ուրիշ բարբարոս արա-րողութեամբ կատարեց երդում մը՝ զոր լուծելու երբէք խիղճ պիտի չընէր բնա-կանապէս։

Բուլղարք եօթանասուն և չորս տարի անշարժ մնացին։

Արեւմտեան վաճառքը՝ Աբբասեան Արաբ-ներու ձեռքն էր հիմա։

Լեւոն Ափրիկէի Ագլաբեանց հետ դաշնակցելով՝ զանոնք գործածեց իբր ամ-բարտակ մը Արաբացւոց դէմ, և Սիկիլիան ազատեց։ (816)

Մեծին Կարոլոսի մահէն յետոյ՝ Լեւոն նուիրակներ ղրկեց նաև Գաղղիա, որոնք բարեկամական նամակներով վերադարձան (813ին)։

Այսպէս, Բուլղարաց պարտութենէն յե-տոյ, խաղաղութիւնը կը տիրէր Հռոմէա-կան տէրութեան ամէն կողմը։

դէր դառը կորսնելու, այդքանով վճռեց կայ-սեր դիմել։ Գնաց պալատին դրան քով և Հոն սպասեց. Լեոն իր թիկնապահներէն շրջապատուած դուրս ելաւ. այդքանով իր առջև վազեց, ծունր դրաւ և դժբաղդու-թիւնը պատմեց։

Լեոն զայրացած իր առջև կանչեց թէ ծերակոյտի անդամը և թէ դատաւորը, երկուքն ալ խստիւ յանդիմանելով՝ պաշ-տօնանկ ըրաւ։

Լեոն Իսաւրացին իր գաղափարականն եղած էր։ Ամէն բանի մէջ կ'ուզէր իրեն նմանիլ։ Եւ որովհետև անոր որդին Կոս-տանդին կը կոչուէր, իր Սմբատ որդին գահակից ըրած ժամանակ՝ (813ին) զա-նիկա ալ Կոստանդին անուանեց։

Պալատին մէջ Յովհաննէս անուամբ հայ կրօնաւոր մը կար Գրամմատիկոս կամ Լե-կանոմանտիս կոչուած, որդի Զգասա (Σκά-στος) տիտղոսը կրող Բանգրատի մը, եղ-բայր Արշաւրի, Մորոխարզանեանց (= Կամսարականեանց) ցեղէն, որ Պօլսոյ ամե-նէն ազնուական ընտանիքներէն մին կը համարուէր (տե՛ս Թէոփանէս Շարունակեալ էջ 435)։

Այս Յովհաննէս հակառակ էր պատ-

կերպերու։ Զանոնք յարգողները կռապաշտ կը նկատէր։ Ըստ իրեն՝ աշխարհք դեռ հեթանոսութեան մէջ էր, և քրիստոնեայք այնչափ էին որչափ պատկերամարտները։ Ինքզինքը կախարդութեան տուած, պղըն-ձեայ կոնքի մը մէջ ապագայն կը կար-դար։

Օր մը, երբ եկեղեցւոյ մէջ կայսեր մօտ նստած՝ ընթերցուածոյն մտիկ կ'ընէր, Ե-սայեայ այս խօսքը եկաւ.

«Արդ ում նմանեցուցէք զՏէր, և ո-րում նմանութեան նմանեցուցէք զնա. մի-թէ պատկեր կոփեաց զնա հիւսն, կամ ոսկերիչ ձուլեաց ոսկի և պատեաց զնա ոսկւով, ի նմանութիւն պատկերի կերպա-րանեաց զնա» (Եսայի, Խ, 19)։

— Զի՞ս լսեր, տէր արքայ, ըսաւ քովէն Յովհաննէս, ինչ կ'ըսէ մարգարէն. որուն ուղղուած են այս խօսքերը։ Կը հը-րամայէ պատկերները ջնջել։

Կրօնաւոր մը կայսրութիւն մարգարէա-ցած էր Լևոնի։ Երբ խօսքը կատարուեցաւ Լևոն ընծաներ ղրկեց. բայց ճգնաւորը մեռած էր և իր խցիկը ուրիշ բնակիչ մ'ունէր Սաբբաս կամ Սիմոն կոչուած, որ ինքզինքը ներկայացնելով իբրև նոյն՝

Բայց որովհետև Յիսուսի արձանին ան-
հետացումը կրնար ժողովուրդը ոտք հա-
նել, Լևոն այս հանճարեղ գիւտը մտա-
ծեց:

Յովհաննէս Վերտանեսին և ուրիշ պատ-
կերամարտներու հրամայեց քարկոծել զա-
նիկա. մինչդեռ անոնք եռանդեամբ յանձ-
նարարութիւնը կը կատարէին, ժողովուրդը
խանդացած, քարկոծութենէն զանոնք ըզքաշել
ազատելով. այս վայրկենին դրան առջև
երևցաւ կայսրը և ատելի ձայնով իր զի-
նուորները սկսաւ յանդիմանել.

-Կոյր էք, գոչեց նա, չէք տեսնար թէ
աս հերետիկոսները ինչ նախատինք կ'ը-
նեն Յիսուսի արձանին. ինչպէս արտեր-
նիդ կը գիմանայ. ինչպէս մարգարիտը
խոզերու առջև կը թողուք. ինչպէս կը
հանդուրժէք որ ձեր երկնաւոր թագաւորին
պատկերը նախատուի: Ելէք, վերուցէք
Յիսուսի արձանը, ազատեցէք զՅիսուս
հերետիկոսաց նախատինքէն »:

Այս հրամանին վրայ՝ զինուորները Յի-
սուսի արձանը անհետացուցին, մինչ ժո-
ղովուրդը միաձայնորէն կայսեր նախանձա-
յուզութիւնը կը գովէր...

Քիչ յետոյ Լևոն դիմակը վար առնե-

Ուստի քանի մ'օր առաջ Նիկեփորի հետ տեսակցած ժամանակ՝ յուզուած ձայնով մ'ըսաւ. «Ես ալ պատկերներու կողմն եմ, բայց զիս կը թնդացնեն այնպիսի բաներ ըսելու՝ տէրութեան բարիքը պատրուակ բանելով»։ Այս բանն պաշտօն՝ Լեոն ծոցէն նշխարաց տուփ մ'հանեց և կեղծ արցունքով մ'համբուրեց. քաղաքին մէջ ձայն տարածուեցաւ՝ թէ կայսրը զղջացեր՝ ճշմարտութեան ճամբան եկեր է։

Ցնծութեան հանդէսները կատարելէ, իշխանաց խնջոյք տալէ յետոյ՝ Լեոնի առաջին գործն եղաւ Նիկեփորը աքսորել և իր թիկնապահներէն մին, Թէոդոր Կաստիտերաս անուամբ, քանի մ'օրուան մէջ պատրիարք ձեռնադրել տալ։ Կայսրը անձամբ Ս. Սոփիայի մէջ ամպիոնէ մ'իր այս ընտրութիւնը ծանոյց, յորդորելով ժողովուրդը՝ հալածել թէ պատկերները՝ և թէ զանոնք յարգողները։

Թէոդոր, պատրիարք ըլլալէն վերջն ալ, շարունակեց կայսեր թիկնապահն ըլլալ. մոլորութիւններէ զատ, ուրիշ գիտութիւն չունէր. խառնակեաց կրօնաւորներուն հետ օրը երկու անգամ խնջոյք կ'ընէր. սեղանի ժամանակ կրօնաւորները կը ծաղ-

ըէին իրենց անմտութիւնը՝ որով աշխարհ-քիս վայելքները թողած, աւելորդ ծոմապահութիւններով անցուցեր էին իրենց երիտասարդական թարմ տարիները։ — Սեղանէ վերջ կը պարէին։ Կրօնաւորութիւնը զուարթ կերպարանք մ՚առած էր։

Լեւոն (816ին) ժողովք մը գումարելով պատկերները դատապարտեց։ Այն եօթներորդ տիեզերական ժողովքին մէջ — ինչպէս կ՚անուանէին զայն իրենք — մոլեռանդ կրօնաւորներ եպիսկոպոսներու վրայ յարձակեցան, գետին փռեցին զանոնք, ծեծեցին, կոխկռտեցին, մօրուքը փետտեցին։

Այնուհետեւ Լեւոն զինուորներ ղրկեց՝ եկեղեցեաց մէջէն պատկերները վերցնելու, և լրտեսներ՝ իրեն դէմ խօսողները գտնելու, անոնց լեզուն կտրելու համար։ Հիւանդներուն անգամ չէր խնայեր. Թէոփանէս պատմիչն ալ որ Բիւթանիոյ մէջ վանահայր էր, տարիէ մ՚ի վեր անկողին կը պառկէր. Լեւոնի զինուորներ յանկարծ ներս մտան, տարեր բռնաբար դուրս քաշելով անկողնէն՝ շղթայի զարկին, և Պօլիս բերելով զինքը՝ Սամոթրակէ աքսորեցին, ուր մեռաւ իբրև խոստովանող։

Ոճիր մը կը համարուէր՝ տան մէջ ունենալ պատկեր մը, արձան մը, պատկեր պարունակող գիրք մը կամ պատկերաց յարգող մը։ Գանակոծութիւն, ընչից գրաւում յարքունիս, բանտ, աքսոր, անդամահատութիւն, մահ, ասոնք սովորական վճիռներ էին Լեւոնի համար։

Անցորդները, արքունի ճանապարհէն անցած ժամանակ, մարդկային ոտքեր կախուած կը տեսնէին պատերէն. անոնց քով ականջներ գամուած, կամ բազուկներ կրկնցած, կամ գլուխ մը։ — Լեւոնն էր որ իւր անգթութիւնները ի տես կը դնէր անցորդներուն՝ պատկերաց յարգողները սարսափեցնելու համար։

Լեւոն շատ հեռի էր անոնց համար խիղճ ընելէ. կրօնաւորներ լիովին համոզուած էին զինք թէ «երեքտասաներորդ առաքեալը» ինքն է։

այս սրբազան տօն մը պիտի տօնեցնես ա-րեամբ. ինչպէս կը հրամայես որ վաղուան երգերուն հետ՝ մեռնողի մը ձայնը խառ-նուի ==։

— Թէոդոսիա՛, պատասխանեց Լեոն, հոգիս կ՚ազատես, բայց մարմինս կը կոր-սնցնես ==։

Թլուատին սպանումը յետաձգուեցաւ։ Ամբողջ գիշերը անքուն անցուց Լեոն։

Ապահովելու համար՝ թէ Միքայէլ բանտի մէջն էր, զգեստը հագաւ, ճրագը ձեռք, մինակ, բանտ իջաւ. դուռը բա-նալուն պէս, տեսաւ զՄիքայէլ՝ բարձր տեղ մը քնացած, իսկ պահապանները՝ գետնի վրայ փռուած. զայրոյթէն դուռը ուժգին փակեց դուրս ելաւ. բայց Թէո-դիկտոս, որ հոն էր, անդրադարձաւ թէ եկողը կայսեր կօշիկներ հագած էր, ու-րեմն... կայսրն ինքնին էր։

Իրենց կեանքը ազատելու համար պէտք էին Միքայէլի հետ միանալ՝ ու սպաննել զԼեոն։ Արթնցուցին Թլուատը, հետը խոր-հրդակցեցան ։ Միքայէլ՝ Թէոդիկտոսը Լեոնի դրկեց՝ խնդրելով որ հրաման տայ խոստովանահայր մը կանչելու ։ «Գնա դաւակիցներուս, ըսաւ Միքայէլ՝ Թէոդիկ-

տուսի, — իմացո՛ւր իրենց՝ թէ զամէնքն ալ պիտի մատնեմ, եթէ այս գիշեր Լեւոնը չսպաննեն ու զիս չազատեն»։

Արշալոյսի բացուելու ժամանակն էր. աքաղաղներու ձայնը սկսած էր լսուիլ. բայց դեկտեմբերի այդ ցուրտ ու մթին գիշերը՝ որոշած էր կարծես երբեք չլուսանալ։

Լեւոնը փղոսկրեայ դռնէն անցնելով մատուռը գնաց՝ արքունի երէցներուն հետ ժամերգելու։

«Լեւոն, կ'ըսէ Թէոփանէսի Շարայարողը, ի բնէ ձայնեղ էր, և մեղեդիները իր բոլոր ժամանակակիցներէն աւելի լաւ կ'երգէր»։

Դաւադիրները, կրօնաւորի զգեստով, մութ անկիւններու մէջ ծածկուեցան։

Երբ կայսրը ձայնը ձգեց շարականը սկսելու համար, ամէն անկիւնէ դուրս վազեցին՝ սուրերը մերկացած։ Ցուրտ ըլլալուն պատճառաւ՝ ամէնքը բրդոտ գլխարկով ծածկուած էին. դաւադիրները շփոթեցան. քիչ մնաց որ աւագերէցը սպաննէր, եթէ չաճապարէր ճաղատ գլուխը մերկացնելու. դաւադիրներ սխալնին հասկցան։

տայ համար կը պատմուի (Սիմէոն Մագ. և Կեդ.) թէ ներքինացման ժամանակ՝ չքնաղագեղ ձայնը կորսնցուց, բայց զայն գտաւ հրաշքով՝ Գրիգոր Աստուածաբանի պատկերին առջև աղօթելով. այս հրաշքը պատկերամարտութեան մոլորութենէ ազատեց զինքն և իր եղբայրները։

Այն օր որ գլխուն սպաննելին՝ Նիկեփոր Փոկաս կղզին կը գտնուէր. սոսկալ կանուխ ջերմ խոստովանութիւն մը ըրեց նաւավարներէն, գլուխը կարկառեց՝ և «Ինչ կայ» հարցուց, հեռաքրքրուած։

— Զլխուն սպաններ են այս գիշեր։

Նիկեփոր վայրկեան մը լուռ կեցաւ՝ և յետոյ հառաչեց։

«Եկեղեցին թշնամի մ՚ազատեցաւ, բայց տէրութիւնն ալ մեծ կայսր մը կորսնցուց»։

---

# Դ.

# ՎԱՍԻԼ ՄԱԿԵԴՈՆԱՑԻ

(867—886)



## Ա.

ՎԱՍԻԼԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ. — ՓԱՌԱՒՈՐ ՅԱՂԹԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Երեք արեգակներ, հայ հորիզոնէն ծագած, հանդիսաւոր կերպով անցեր էին Բիւզանդիոյ երկինքէն։

Վասիլ, Մօրիկի չափ անտանելապէս, Վարդանի պէս փառասէր, Լեւոնի չափ ռազմագէտ, պիտի չունենէր, անոնց պէս, իր փառքին չիջանիլը՝ վերջալուսէ մ'անգամ գրկուած։ Գիտէր իր անուան հետ յաջորդներ զետեղել երկրի վրայ. անոնց պէս կը ստեղծէր ոչնչէն. բայց չէր թողուր նաեւ որ իր գործը ոչնչին դառնայ։

Մակեդոնացի կոչուած—որովհետեւ Մա-

## Բ.

### ՎԱՍԻԼ ԿԸ ՄՏՆԷ ԴԻԳ Ի ՊՈԼԻՍ

Արթնցաւէն յետոյ մայրը հրաման տուաւ. Վասիլ գրկեց զինքը, համբուրեց իր փոքրիկ եղբայրները՝ որ կու լային իրենց մօր որբնալէն հեռանալով, ու ճամբայ ելաւ (851ին)։

Ու գիշեր մ՚էր, անանկ մը՝ որ կը մոռնան լուսինն իրենց հետ բերելու։ Բիւզանդիոն կը հանգչէր հիմա, և երկու ծովեր իր վեհափառ քունը կ՚օրօրէին։ Խորհրդաւոր մթութիւնը կը սքօղանուէր կարծես՝ վանքերու քովէն անցած ժամանակ, երբ պատուհաններու առջև կանգ առած, կ՚ունկնդրէր աղօթական մեղեդիներու... Ս. Դիոմեդէսի վանահայրը դեռ կը հսկէր. հողմերու ճիչերուն մէջ՝ կարծես ոտնաձայն մ՚որոշել. քայլերը՝ քանի մ՚անգամ կրկնուեցան՝ յետոյ լռութիւն։

Ալեզարդ ծերունին վառեց ճրագը, անցաւ կամարակապներէն, ու իջաւ գաւիթը։ Երիտասարդ մը, քարեր իրեն բարձ ըրած, կը քնանար։

— Ո՞վ ես դու, հարցուց նա հեռաւորներ գթութեամբ մը։

— Ադրիանուպոլսեցի աղքատ մը. Ե-կայ ընտանեացս համար աշխատելու. Ոս-կեղէն դրան առջեւ՝ գիշերուան հանդիպե-ցայ, և տրտում, յոգնած, ամենուն ան-ծանօթ՝ այս գաւիթը ըրի ինծի բնակա-րան։

Վասիլ մանրամասնօրէն իր վարքը պատմեց. խոստում տուաւ վանահօրմէն որ իրեն գործ մը գտնէ։ Աւելցուց յետոյ՝ թէ ինքը ծագմամբ արշակունի մ'է։

Այս վայրկենին՝ ձէթի լոյսը գողդղաց, ցուց ծերունւոյն մեծ գլուխ մը, վայելուչ դիմագծեր, ըմբշամարտի մարմին մը, բարձր հասակ մը. — կարծես գիտումն ունէր՝ ա-նոր պարթեւական ծագումին ապացուցա-ները։ «Դուն կայսր պիտի ըլլաս, ով Վասիլ, գոչեց վանականը, միայն թէ յիշէ զիս՝ երբ մարգարէութիւնս կատարուի»։ Այս ըսաւ՝ ու մեկնեցաւ։

Երկրորդ օր Թէոփիլոս իշխանը՝ զՎա-սիլ իրեն ձիադարման կ'ընտրէր։ Ինքը նկնահասակ, հսկայ ծառաներու ճոխ հա-ւաքածոյ մ'ըրած էր. անոնց մէջ անցուց զՎասիլ։

## Գ.

## ՎԱՍԼԻ ՔԱՋՈՒԹԻՒՆԸ

Այժմ, քաջութիւն. ահա ձիրքեր՝ որ ռամիկը կը խանդավառեն։ Ամէն ակունքէ աւելի՝ սուրի շողիւնն է որ զինքը կը շըլացնէ։ Քաջութիւնը — հին տաճարներուն մէջ պաշտուած, — երգուեցաւ միշտ ընտանեկան յարկերու տակ։

Արդ, Վասլի համար, այժմ՝ ժամանցութիւն մ՚էր։ Արքունի սեղանի մը ժամանակ՝ բուլղար ըմբիշ մը կը գովէին. «Գըրաւ կը դնեմ, գոչեց Թէոփիլոս, որ իմ հայ ծառայս՝ կարող է յաղթել անոր»։ Քիչ վերջ՝ մօտակայ դուռը բացուեցաւ. դղըրդիւնով ներս մտան հայ և բուլղար ըմբիշները։ Վահագնը՝ Հերակլէսին յաղթեց. Վասիլ առաջին յարձակմամբ՝ օդոյ մէջ հանեց իր ախոյեանը՝ և գետին տապալեց։ — Ուրիշ մը ժամանակ՝ երբ կայսրը, նապաստակ մը վիրաւորելէ յետոյ, վար իջաւ զայն սպաննելու, իր խատերասխ նժոյգը՝ անտառին մէջ թռաւ։ Ոչ ոք համարձակեցաւ մօտենալ անոր, Վասիլ բռնեց զայն և յաղթուած գերիի մը պէս կայսեր բերաւ։

Դաշոյն մը և կայսերական ախոռապե-տութիւնը՝ վարձքն եղան իր քաջութեան. — Երբեք որսի մը ժամանակ՝ գայլ մը ցատքեց անտառէն. ընդառաջ ելաւ Վահէ, քաշեց կայսերական դաշոյնը՝ և գը-լուխը երկուքի ճեղքեց։

Իշխաններու հիացումը՝ նախանձի փո-խուեցաւ։ Վարդ, Հայազգի կեսարը, նոյն անտառին մէջ՝ մտքէն մահուան վճիռ կարդաց Վահէի վրայ։ Վտանգի նախազ-գացումէն մղուած, նա միացաւ Սմբատ Հայկազնի հետ՝ զՎարդ կործանելու հա-մար. դաւադրութիւններով՝ իրենց դաւա-կից ըրին նոյն իսկ կայսրը, զՄիքայէլ Արբշիռ։ Ճեռ սրբագործուած գինիով կեան-քի ապահովութեան երդուընելու, Վարդի հետ միասին եկեղեցի գացին. Արբանեկները դէմ կռուելու պատրաստական։ Հակառակ երդման, որոշեցին զինք՝ կայսեր վրանը կանչել՝ և հոն սպաննել. յարձակման նշանը Սմբատ պիտի տար՝ ինքզինք խա-չակնքելով...։ Երկրորդ օր եկաւ նա, բայց թիկնապահներով միասին. Սմբատ նշան տուաւ. դաւակից զինուորները, աճապարելով, անշարժ կեցան։ Այն ատեն Վահէ մեր-կացուց իր սուրը, —Դահճե՛ր, գոչեց, եսեկս

եկէք. կայսեր կեանքը ազատենք»: Ամէնքը Վարդի վրայ խուժեցան ու կտոր կտոր ըրին զինքը (866 ապրիլ 21)։ Երբ Բիզանդիոն կը դառնային, կրօնաւոր մը, ժայռի ծայրէն, ձայնին բոլոր ուժովը՝ կը նախատէր զկայսր՝ և ապաշխարութիւն կը քարոզէր։ Զինուորները յառաջ գացին զինքը գլխատելու. ժողովուրդը դէմ դրաւ ու պաշտպանեց կրօնաւորը, որ հասարակաց զայրոյթը բացատրած էր միայն։

Սմբատ կը յուսար կայսերակից ըլլալ. երբ իրեն տեղ՝ Վասիլ ընտրուեցաւ, հետամուտ եղաւ նոր դաւի մը։ Սակայն շուտ բռնուելով՝ դատի կանչուեցաւ. քիթը կտրեցին, աչքերը փորեցին, աջ թեւը ջախջախեցին, յետոյ ցկեանս բանտեցին իր տան մէջ, մահ սպառնալով՝ եթէ սեմին վրայ երեւայ։ — Որբերգութենէն յետոյ՝ հարկաւոր էր կատակերգութիւն մը. Միքայէլ Արբշիռ չզլացաւ ժողովրդեան այս հաճոյքն ալ։

### Դ.

### ԹԻԱՎԱՐ ՄԸ՝ ԿԱՅՍԵՐ ԸՆՏՐՈՒԻԼ. — ՄԻՔԱՅԷԼԻ ՄԱՀԸ. ՎԱՍԻԼ՝ ԿԱՅՍԵՐ։

Զանձրացած ըլլալով խրատտուէ Վալէն՝ որոշեց երրորդ գահակից մ'ընտրել։ Մեծ հացկերոյթ մը տուաւ, և յետ արբենալու, հրամայեց Բասիլիկինոսը պատրիկը, իր երբեմնի թիավարներէն մէկը կանչել. նա ներկայացաւ կայսեր. սա յայտարարեց իսկոյն թէ գահակցի մը պէտք ունէր և հետեւաբար Բասիլիկինոս պէտք էր կայսերական ծիրանիներ հագուիլ. Թագուհին կու լար ծիծաղէն. քիչ վերջ՝ տրտմութեան արցունքներ սկսաւ թափել՝ երբ տեսաւ՝ թէ կայսեր միտքը կատակ մ'ընել չէր։

Երկրորդ օր Միքայէլ, Թիավարը իր աջ կողմը առած, ծերակոյտին տարաւ. «Ահա՛ ձեզի նոր կայսր մ'ալ» ըսաւ, դուռը գոցեց ու դուրս ելաւ։ Ծափահարութիւն չլսելով նա զարմացաւ, ու դուռը կէս մը բանալով, «Կը յանձնարարեմ, ըսաւ, լաւ հնազանդիլ մեր վեհափառ ագոստոսին, որ թիավարութեամբ կը գրա-

գէր երբեմն. Ինչ ալ ըլլայ՝ լաւագոյն բան մ'է քան զՎասիլ»։ Միքայէլ Արբշիռ՝ ցամաքի կայսր պիտի ըլլար, Թիավարը՝ ծովերու. ուրեմն Վասիլ ատելոց էր։ Բայց հայազգին աւելի ճարտար գտնուեցաւ քան կայսրը, որ զինքն սպաննել կ'ուզէր։

Սեպտեմբերի իրիկուն մ'էր. մեղամաղձիկ վերջալոյսը՝ խոյս կու տար ալիքներէն։ Միքայէլ դեռ 29 տարեկան, դեռ ծաղիկ հասակի մէջ, ոսկեղէն բաժակներ կը դատարկէր՝ կեանքի անուշութիւնը դովելով։ Կը յուսար տեսնել արեւներ՝ աւելի գեղեցիկ քան զայն՝ որ վայրկեան մ'առաջ մարեցաւ։

Նոյն իրիկուն պիտի մեռնէր։

Հացկերոյթէն յետոյ՝ երկու կայսերք գինով անկողին տարուեցան։ Սենեկապանը՝ դուռը կղպել չկրնալով, — Վասիլ պառկած էր զայն առաջուց, — զինուած դրան առջեւ կեցաւ։ Կէս գիշերին արդէն քունն իր թիրերը գոցած էր երբ «անձնատուր եղիր» գոչեց ձայն մը յանկարծ. աչքը բանալուն պէս՝ տեսաւ իր գլխուն երկու դունդեր, և Վասիլի սուրը՝ իր կուրծքին ուղղուած. երբ ընդդիմանալ կը փորձէր, հարուածը իջաւ, և ծառային դիակը գլը-

բռնելով՝ կայսեր անկողնին վրայ ընկաւ։ Միքայէլ ցնցուեցաւ աղմուկէն. կէս գինով, կէս արթուն, ձեռքերը օդին մէջ կը տատանէր՝ օգնութիւն ուզելու համար. յետ երկու ձեռները կտրելու, իր մարմինը կտոր կտոր ըրին։ Միքայէլի թիկնապահները, աղմուկէն արթնցած, պաշարեցին զՎասիլ. արքունիքը՝ պատերազմի դաշտ մը դարձաւ. բայց չկրնալով դէմ դնել Մարիանոսի, — Վասիլի եղբօր, — և ամէն բան արդէն վերջացած տեսնալով, ետ դարձան։ (867, սեպտ. 27)։

Վասիլի Ինգերինա կինը՝ պալատին մէջ կը քնանար. կէս գիշերին արթնցնելու ցին. Ինգերինա հազիւ կրցաւ համոզուիլ, թէ տեսածը երազ մը չէր. Վասիլ ջահերով ընդառաջ ելաւ, և ողջունեց զինքը՝ օգոստոսի անուամբ։ Երկրորդ օր, արշալոյսին դէմ, Վասիլ Ս. Սոփիա գնաց՝ օծուելու համար. իր հայկական ծագումը յիշելով՝ ճամբուն վրայ շարունակ ոսկի կը ցանէր։ Իր կինն և որդիքներն ալ նոյնպէս առատ կը ցանէին իրենց անձնական դրամէն հանուած։

Ցնծութեան այդ խելայեղ վայրկեանին՝ Քրիստոպոլսի մէջ՝ երեք կին ծունր դրած

էին հողակոյտի մը շուրջ։ Միքայէլի մայրն ու քոյրերն էին. իր յաւիտենական բնակարանին վրայ հանգած, կու լային ու կ'աղօթէին։ ...

## Է.

### ՎԱՍԻԼ ՆԱՀԱՏԱԿԸ

Փառասիրութիւնը եղեռնաւոր սուր մը դրած էր Վասիլի ձեռքին մէջ, ու մատախուղ մ'իր առաքինութեանց վրայ։ Բայց բարձրագոյն ախտաւոր՝ յաղթեցում կու տար հիմա իր բոլոր անձնչանքներուն։

Առաքինութիւնք բնական ձկտումներ էին իր մէջ. նորէն սկսան բողբոջիլ. ապաղաշխարհ երկինք մ'էր, որ իր պայծառութիւնը կը գտնէր։

Կրօնաւէր էր Վասիլ. հրովարտակ մը հանեց՝ որով իր հպատակ հրեաները մկրտուելու կը ստիպէր։ Պեղարանեան մէջ Մայնեցիք կոչուած ցեղ մը կար որ, ինչպէս կ'ըսէ Կասա. Պերփենուտէն (Պետ. կառավ. 50. էջ 224) հին Յոյներէն յառաջ կու գար. լեռներու վրայ կը բնակէր, և ձիթապտուղով կ'ապրէր. ասոնք կռապաշտ մնացեր էին։ Վասիլ ամէնքն ալ մը-

կղզուելու բռնադատեց։ Երախտագէտ էր. Ս. Դիոմէդէսի վանահայրը, Դանիէլին՝ պելոպոնեսացի այրին, որ զինքը խնամած էին, մեծ գանձերով վարձատրեց։ Աս մեռած ժամանակ՝ 3000 գերի ունէր (887ին)։

Ժողովրդեան մը բարոյական կեանքը՝ դատարաններէ կախում ունի, նիւթականը՝ գանձարանէ. — երկուքն ալ բարուոքեց։ Բանակը կարգաւորեց խիստ կանոններով, եկեղեցին ալ՝ գիտուն առաջնորդներով։

Ամէն բարուոքիչ ոյժ՝ չարերէն բանակ մը կը կազմէ ինքնիրեն դէմ։ Դաւ մը կազմուեցաւ՝ որուն գլխաւորն էր Կուրկէն ագահ զօրավարը, իսկ անդամները՝ 66 մեծամեծներ։ Անոնցմէ մին, խղճէ խայթուած, դաւը յայտնեց. Կուրկէն, գահը զանելու տեղ, — ինչպէս սուտ մարգարէ մ'իրեն կը խոստանար, — աչքերը կորսնցուց։ Յանցաւորները հրապարակաւ դատուեցան. ժողովուրդը «Մա՜հ» կ'աղաղակէր. Վասիլ չստորագրեց այդ վճռին։ Դաւակիցները, շղթայակապ ու բոլորովին մերկ, խարազանուելով թափօր ըրին կրկէսին մէջ. յետոյ կանգ առին Ս. Սոփիայի դիմաց. դպիր մը վերէն աքսորման վճիռը կարդաց իրենց։

Կռուի կեդրոններն էին Արեւմուտքի մէջ Պարի, Նէապոլիս, Սիրակուսա, Թուկուգա: Վասիլ պիտի կարենար մեծ յաղթական ըլլալ, եթէ Լուդովիկոս, Գաղղիոյ թագաւորը, չանուանէր ինքզինք «կայսր Հռովմայեցւոց» և, իբր նախանձորդ, մեքենայներ չլարէր իրեն դէմ: Այս դժուար պարագայից մէջ Վասիլ քաղաքագիտական սխալ մ'երբէք չգործեց. իր փառքը անարատ է, պարտութեանց մէջ անգամ: — Նշանաւոր եղաւ Սիրակուսայի առումը: Երկայն ամիսներ քաջաբար դիմադրելէ յետոյ, սովը իր ծայրագոյն կէտին հասաւ. — մայրեր իրենց որդիք կ'ուտէին: Չկար քաղաքացի մը՝ որ վէրք չունենար: Բաբաններ ճեղքած էին պարսպին մէկ մասը. ոգեվար ռազմիկները հոն դիմեցին կարգաւ՝ մինչեւ որ պատառուածքը իրենց դիակներով գոցուեցաւ: Հուսկ ապա մտրեցին Արաբացիք: Յովհաննէս Պատրիկ գլխատուեցաւ. եօթանասուն իշխան, իրարու կապուած, քարկոծուեցան: Նիկողայոս Տարոնեցի, որ յանդգնած էր մեծ մարգարէն հայհոյել, ողջ ողջ մորթազերծ եղաւ. Արաբացիք իր սիրտը եփեցին ու կերան:

Մահմետական պատերազմներու մէջ՝ բաղդը փոփոխական եղաւ Նիկետաս, Բիւզանդացի ծովակալը, որ Կրետէի առջեւ՝ յունական կրակով քանի արաբացի նաւ այրեց ու շքեղ յաղթանակ մը տարաւ, քաջութենէ աւելի՝ իր վայրագութեամբը հռչակուեցաւ։ Ամէն անգթութիւն կը գործադրէր թշնամեաց վրայ, և յանուն քրիստոնէութեան։ Ուրացեալները ողջ ողջ մորթազերծ կ՚ընէր և յետոյ, դիւական հեգնութեամբ մը կը ծիծաղէր անոնց վրայ. «Ձեզ հաճոյք մը կ՚ընեմ, կ՚ըսէր. մկրտուած մորթերնիդ կը հանեմ ձեր վրայէն»։ Կաթսաներ կ՚եռացնէր և ուրացեալները վերէն անոնց մէջ նետելով կը բացագանչէր. «Ձեզի այս տեսակ մկրտութիւն պէտք է, ո՜վ հաւատոյ ուրացողներ»։

Ը.

ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ.

Բաղդը, Արեւելքի մէջ, աւելի նպաստաւոր էր Վասլի զէնքերուն։ Պաւղիկեանք, յետ Արաբներուն հետ նիզակակցելու, այնքան զօրացեր էին, որ իրենց Խրիսոխիր զօրավարը կը հրամայէր Վասլի՝ տաճ-

նմանալ վաղուրէն անցին։ Կայսրը անձամբ առաջնորդեց՝ յոյն բանակին. իր սարսափը կը յառաջէր քան իր զօրքերը. Կուրտիկիոս Հայ իշխանը, որ Լոկանա ամրոցին տէրն էր (Ողական, ὃς εἶχε τότε τὴν Λόκαναν. Թէոփ. Շար. էջ 268) և յաճախ՝ յոյն առհմաններուն վրայ կ'ասպատակէր, աճապարեց անձնատուր ըլլալու։

Կայսրը կ'ընկերէր զինուորներուն ամէն վտանգի և աշխատութեան մէջ։ Ճամբու կը տեսնուէր փայտեր կտրելու զբաղած, կամ ծանր բեռ մ'ուսին։ Օր մը, երբ մոլեկան հոսանք մը մղուած, խառնուրդին խորը մտած էր, պաշարուեցաւ թշնամիներէն. մահը անխուսափելի էր. Հայ զինուոր մը յանկարծ աչ ածելով իր շուրջը՝ կայսեր քով հասաւ, բռնեց զինքը ու դուրս հանեց պատերազմէն։ Յաղթութենէն յետոյ վարձել իր ազատարարը կը փնտռէր. ամէն զինուոր ինքն իրեն կ'ընծայէր այդ փառքը. ամենէն վերջ Թէոփիլակտոս Հայը եկաւ. կայսրը ճանչցաւ իսկոյն իր ազգակիցը, գրկեց և հարցուց թէ ինչ վարձք կ'ուզէր։

— Այո մը, պատասխանեց նա, ընտանիքս կերակրելու համար։

կայսրը, հիացած, լիովին կատարեց իր խնդիրը։ Այդ զինուորի որդին, Ռոմա-նոս Լեկապենոս, որ մը կայսր պիտի ըլ-լար։

Խրիսոխիր չարաչար յաղթուեցաւ. Վասիլ, յետ ընդունայն անեղ պաշարելու զՏէփրիկէ, որ Պաւղիկեանց անառիկ մայ-րաքաղաքն էր՝ անտառներէ շրջապատուած, Եփրատ գետը անցաւ ու դիմեց Մալաթիոյ վրայ։ Իր պարիսպները բարձր էին, ըն-ակիչները՝ քաջ, ցորենը առատ։ Վասիլ չէր յուսար տիրել այդպիսի քաղաքի մը՝ ձմեռուան եղանակին մէջ. շրջակայքը ա-ւերեց և Բիւզանդիոն դարձաւ յաղթանակը կատարելու։ Ժողովուրդը՝ ծափահարելով ընդ առաջ ելաւ. Իգնատիոս պատրիարքը, Ս. Սոփիայի մէջ, շքեղ պսակ մը գետե-ղեց իր գլխուն վրայ։

Գարնան՝ կայսրը երկրորդ արշաւանք մը ձեռնարկեց Խրիսոխիրի դէմ։ Աղօթք ըրաւ Աստուծոյ, սուրբերը բարեխօս բռնեց որպէս զի կարենայ երեք նետով՝ Խրիսո-խիրի գլուխը ծակել։

Ժողովուրդը չթողուց որ ինքը զօրա-վարէ. անարժան էր կայսեր՝ առաջակի մ՚ախոյեանն ըլլալ։ Քրիստոփոս, իրեն

տեղ. Խրիսոխիրի վրայ դիմեց։ Նա բանակած էր խոր հովտի մը մէջ. երկու մեծ թեւեր, որոնցմէ մին՝ Կապադովկացիներէ կը բաղկանար՝ միւսը Հայերէ, յոյն բանակէն բաժնուեցան և լռութեամբ գրաւեցին այն կատարները՝ որոնց ստորոտը անհոգաբար կը զուարճանային պատրիկեանք։ Մեծ վէճ ծագեցաւ Կապադովկիացի և Հայ զօրաց մէջ. իւրաքանչիւրը իրենց ազգային քաջութիւնը կը փառաբանէր։ «Ինչու ընդունայն տեղ վիճել, ըսաւ հուսկ ապա Հայ զինուոր մը, գործով ցուցնենք թէ որոնք աւելի քաջ են, Կապադովկացիք թէ Հայեր»։

Յանկարծ, հեղեղօրէն, գիշերային մթութեան մէջ թշնամեաց վրայ խուժեցին և սոսկալի կոտորած մը տուին։ Խրիսոխիր կը փախչէր երբ իր ետեւը տեսաւ Փուլատ անունով յոյն մը՝ որուն շատ բարիքներ ըրած էր։ «Ինչու կը հալածես զիս, բաւ, մոռցար բարիքներս». — «Ընդհակառակն, պատասխանեց ապերախտ Յոյնը, անոնց վարձքը կը բերեմ»։ Այս խօսքերն ըսելով, մինչդեռ Խրիսոխիր կանգ կ՚առնէր գետի մ՚եզերքը, նիզակով վիրաւորեց զինքը՝ ու գետին տապալեց։ Իր գլուխը Բիւ-

զանգիոն բերուեցաւ իրր ընծայ. կայսրը, յետ զայն երիցս նետով ծակելու, գոհութեան աղօթք մատոյց Աստուծոյ, որպախութենէն ազատուելով։

Ը.

ՈՐՍՈՐԴԱԿԱՆ ՀՐԱՇՔ. — ՎԱՍԼԻ ՄԱՀԸ

Ընտանեկան դառնութիւններ յաճախ Վասլի կեանքը տխրեցուցին։ Կոստանդին, իր անդրանիկը, իր որդւոց մէջէն ամենէն աւելի սիրելին և իրեն նմանողը, մեռաւ ծաղիկ հասակի մէջ։ Փոտը, զկայսր մխիթարելու համար, Կոստանդինը սրբացուց։ Ուրիշ արքունական մը խոստացաւ նոյն իսկ որ իր աղօթքով պիտի իջեցնէ որդին երկինքէն՝ որպէսզի անգամ մ'ալ Վասլի հետ տեսնուի։ Հրաշքը յաջողութեամբ ի գլուխ հանելու համար, անտառին մէջ կեցուց տապետ մը որ ճիշդ Կոստանդինին կը նմանէր։ Օր մը երբ կայսրը որսի ելած էր հոն, տապետը, ճերմակ ձիու մը վրայ հեծած, ոսկի զրահներու մէջ, Վասլի վրայ վազեց. գրկեց, լացաւ, համբուրեց, և առանց բառ մ'արտասանելու, անհետացաւ անտառին մէջ։ Դիւրա-

Հաստատ կայսրը՝ եկեղեցի մը կանգնեց նոյն տեղ՝ Ս. Կոստանդինի անունով։

Նոյն ճարտար արքունականը, որ Ճանբալթալեան կը կոչուէր, համոզեց զՎասիլ թէ իր Լևոն որդին դաւաճանած է իր կենաց դէմ։ Բարբարական ցաւը, զոր զգաց կայսրը, շուտով կատաղութեան փոխուեցաւ։ Զարսաչար տանջանքներով պիտի մեռնէր Լևոն, եթէ, ինչպէս պիտի տեսնենք, իր անմեղութիւնը չփութար յայտնուելու։

Եկեղեցւոյ մը շինութեան ժամանակ կայսրը կը զուարճանար եպիսկոպոսական գաւազանով մը՝ որուն վրայ պղնձէ օձեր փաթթուած էին։

Անոնցմէ մէկուն բերնէն յանկարծ իրական իժ մը դուրս ելաւ ու կայսրը թունաւորեց։ — Բժիշկները հազիւ յաջողեցան կայսեր կեանքը ազատել։

886 Թուականին, փետրուարի օր մը՝ Վասիլ որսի գնաց անտառներու մէջ։

Յանկարծ եղջերու մը իր վրայ յարձակեցաւ. եղջիւրը գօտիին մէջ անցնելով՝ վար ձգեց զինքը։ Կայսրը պիտի մեռնէր նոյն տեղը, եթէ հետեւորդներէն մին՝ սրով իր գօտին չկտրէր։ Վասիլ, ցաւէն խելայեղ, հարուածը՝ իր դէմ ուղղուած կարծեց և սպաննել տուաւ իր ազատարարը։

Այս դիպուածէն՝ ազդեաց հիւանդութիւն ունեցաւ. յետոյ ջերմ, յետոյ մահ, 886ի օգոստոս 29ին:

Բիւզանդիոյ պատմութեան մէջ՝ Վասիլ կը ներկայանայ իբր հիմնադիր Մակեդոնական կոչուած՝ բայց բոլոր գիտնականներէն իբր նոյ ճանչցուած՝ հարստութեան:

Բոլոր պատմաբաններ՝ մարդկութեան մեծագոյն ինքնակալներէն կը ճանչնան զինքը. «Կը պատկանի այն մեծահանճար, բայց ահաւոր և ուժով բնաւորութեանց, ինչպէս Սիլլա, Թէոդորիկոս, Կլոդովիչ, Նաբոլէոն Ա, որ երբէք անօգուտ ոճիր մը չեն գործեր. բայց հարկաւոր արիւնհեղութիւններ կը կատարեն՝ կամ կատարել կու տան՝ ամենայն պաղարիւնութեամբ, իբր թէ ճակատագրական հարկ մ՚ըլլար» (Գելցեր, Abriss der byzantinischen Kaisergeschichte էջ 974):

Կը սխալի սակայն Գելցեր՝ երբ կ՚ըսէ թէ Վասիլ երբէք խղճի խայթ չզգաց իր ոճրին համար: Մահուան պահուն Միքայէլը կը տեսնէր, արեան մէջ, վէրքերով ծածկուած, ու կը կարծէր լսել ուրուականէն. «Ինչ ըրի՝ որ զիս սպաննեցիր»:

Վասիլ կտակեց Լևոնի՝ խրատներու գիրք մը՝ լի թանկագին ակունքներով, ինչպէս այն թագը՝ որ մի և նոյն ժամանակ կը յանձնէր իրեն։



# Ե·

# ԼԵՒՈՆ Զ. ԻՄԱՍՏԱՍԷՐ

(886–912)

---

## Ա·

ԼԵՒՈՆԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ. — ԹԵՈՖԱՆՈ ԻՐ ՀԱՐՍՆԵՐԸ:

Բնութեան այն օրէնքը՝ որ ցորեկէն յետոյ գիշերը կը հանէ, գարուններէ յետոյ՝ ձմեռը, պատմութեան մէջ ալ կը տեսնենք. ոսկեղէն դարերուն՝ անկումը կը յաջորդէ, յաղթանակներուն՝ պարտութիւնը, — և Վասիլի մը՝ Լեւոն Իմաստասէրը:

Արդարահաւատ և անշուք, հակառակակերպն էր իր հօր. երկուքն ալ հանճարը կը սիրէին, բայց Վասիլ՝ վտանգներու մէջ կը գտնէր զայն, Լեւոն հեշտութեանց. Վասիլ՝ պատերազմի դաշտին վրայ, Լեւոն՝ աստղերու:

Մանկութենէն ի վեր՝ իր սիրելագոյն

գրագումներն եղան՝ գրքեր և աստղեր. մեկուն մէջ մարդկութեան Անցեալը կը փնտռէր, միւսին մէջ՝ անոր Ապագան։

Երբ իր անդրանիկ եղբայրը ծաղիկ հասակի մէջ մեռաւ, երբ կայսրութեան ապագան իր ձեռքին մէջ, թագը՝ իր գլխուն վրայ տեսաւ, փորձեց իր ազդեցութիւնը զգալի ընել՝ կործանելով զՍանթաբարէն. նենգաւոր պալատական մը՝ ճարտար, կեղծաւոր, վարքովը գեղծ, համբաւով սրբակեաց, որ յետ զՎասիլ, — հետեւաբար ամբողջ Հռոմէական պետութիւնը, — իր կամքին գերի ընելու, կը փորձէր անդունդ մը զետեղել՝ Լեոնի և կայսերական գահուն միջև։

Օր մը, երբ մեծամեծներ պատրաստուած էին որսորդութեան համար անտառ երթալու, Սանթաբարէն կեղծ ժպիտով մը Լեոնի մօտեցաւ. պատմեց այն վտանգները՝ որ սովոր են պատահիլ անտառներու մէջ, և յորդորեց, որ — հակառակ օրինաց, բայց ի սէր իր հօր, — դաշոյն մը պահէ իր քով, կայսեր օգնելու համար՝ երբ զինքը վտանգի մէջ տեսնայ (885. տարին)։

Խաբուեցաւ Լեոն. դաշոյն մը ծածկեց

իր մուճակին մէջ՝ և անոտս գնաց։ Ճանթարարէն, Վասիլ վազեց իսկոյն, «Տէր որդայ, գոչեց, ահաւելի դաւ մը կայ կեանքիդ դէմ. Լեւոն, թագաւորելու անհամբեր, քեզի դէմ զինուած է. փութա, կանչէ զինքը ու քննել տուր»։

Մերկացուցին թագաժառանգը. դաշոյնը յայտնուեցաւ. Վասիլ այնքան այլայլեցաւ բարկութենէն որ և ոչ իսկ թողուց՝ որ որդին ինքզինք արդարացնէ. Հանել տուաւ կայսերական զգեստները, բանտ դրաւ զինքը. իսկոյն պիտի կուրացնէր՝ եթէ մեծամեծներ չմիջամտէին։

Տխրութեան մէջ մնաց արքունիքը. Լեւոնի հետ՝ ժողովուրդ հեռացաւ անկէց. աղօթաւոր նամակներ կու գային բանտէն. բայց Վասիլ, Ճանթարարէնէն գրգռուած, չէր կարդար զանոնք։

Ճոխ սեղան մը տրուեցաւ բոլոր մեծամեծներուն. 19, (յուլիս 885). տրտում էին ամէնքը՝ և ոչ ոք կը համարձակէր բառ մ՚արտասանել։ Այս լռութեան մէջ, թութակ մը, պատի վրայէն, խօսիլ սկըսաւ. «Ափսո՜ս քեզ, ափսո՜ս, ով անմեղ Լեւոն»։ Երեք ամիս՝ այդ բառը միայն լըսած էր։ Սարսուռ մը զգացին ամէնքը,

յուզուեցան, հառաչեցին, և շատեր ձեռքը աչքերնուն վրայ տարին՝ արտասուքներ ծածկելու համար։ «Տէր արքայ, գոչեց վերջապէս իշխաններէն մին, այս թռչունք զմեզ կը դատապարտէ. մենք խնձոյք կը կատարենք հոս, մինչդեռ որդիդ կը հեծէ բանտին մէջ. դատէ՛, քննէ՛ ու եթէ յանցաւոր է՝ պատժէ, եթէ անմեղ՝ ազատէ»։ Լեւոն շղթայակապ իր հօր ներկայացաւ. պատմեց Ճանթաբարենի նենգութիւնն և իր անմեղութիւնը։ Թէև սրտառուչ գրկախառնութեամբ, հաշտուեցաւ իր հօր հետ, և իր պատուոյն բարձրացաւ։ Լեւոնի կեանքը՝ արկածալիքներու մէջէն կ՚անցնէր։ Անգամ մը (860ին) գացած էր Միքայէլ Բ. Աստուածածնայ եկեղեցին աղօթելու. հանդիսաւոր օր մ՚էր. բազմութիւնը խռնուած էր հոն. յանկարծակի գետինը սկսաւ շարժիլ, որմերը սկսան երկրաշարժով տատանիլ, սիւները դողալ, կանայք աղաղակել՝ և մարդիկները դուրս փախչիլ։ Այս վայրկենին եկեղեցւոյ գմբէթը վար գլորեցաւ և բազմութիւնը թաղեց իր տակ. բայց տասնմէկ հոգի յաջողած էին փախչիլ։ Ասոնցմէ մին էր նաև Լեւոն։ Մահը խնայած էր պետութեան թագաժառանգին։ 870ին կայսերակից ընտրուեցաւ։

աշխարհը։ Լեւոն պատրիարքութենէ գահընկէց ըրաւ զինքը, եւ իր տեղ՝ իր Ստեփանոս եղբայրը զետեղեց։

Եթէ հաճոյքներն ալ գոյն ունենային՝ անոնցմէ ոմանք սեւ պիտի ըլլային անշուշտ, եւ ոմանք սպիտակ։ Ոմանց մէջ ատելութիւն մ՚է որ կը յագենայ, մնացորդուն մէջ՝ սէր մը։ Երկու տարբերն ալ հզօր էին Լեւոնի մէջ. յետ վրէժխնդրութիւններն աւարտելու՝ արքունեաց մէջ ընդունեցաւ Զոյէն, — վատահամբաւ կինը, որ կայսեր հաճոյք պատճառելու գիտմամբ թունաւորած էր իր ամուսինը։

892 թուականն էր։ Լեւոն, պալատին մէջ թողլով իր Թէոփանոյ թագուհին, (որ իրեն հարսնացած էր 883ին) զբօսանքի գացած էր Զոյէի հետ՝ շրջակայ կղզիներէն մէկուն մէջ։ Սպայներ, ասպետներ, զօրավարներ դառնացած Լեւոնի զեղծ վարուց համար մեծ դաւադրութիւն մը պատրաստած էին։ Գիշեր մը, երբ միենոյն սենեկի մէջ կը խօսակցէին Լեւոն եւ Զոյէ, այս վերջինը զինքը լռեցուց եւ ուշադրութիւն ընել տուաւ աղմուկի մը՝ որ երթալով կը մօտենար։ Ձայնը մերձակայ պարտէզէ մը կը թուէր գալ։ Զոյէ, դողալով պա-

տուհան մը բացաւ և ճրագը դուրս կարկառելով՝ տեսաւ զինուած խումբ մը, կարմիր ջահեր, մերկացած սուրեր. «Փախի՛ր, ով Լեւոն, փախիր, կեանքդ վտանգի մէջ է, փախի՛ր»:

Լեւոն կիսամերկ դուրս վազեց անկողնէն և առանց հագուելու մտածելու՝ նաւակի մը մէջ նետուեցաւ. արշալոյսին դէմ կըցաւ Պոլիս հասնիլ ու պալատը ապաւինիլ: Սարսափի տպաւորութենէն յետոյ՝ զայրոյթը յաջորդեց. իր գիշերապահը գլխատել տուաւ և լրտեսներ հաստատեց ամէն կողմ՝ դաւակիցները գտնելու համար: Զոյէ կը ճանչնար զանոնք, բայց չյայտնեց. վասն զի պատուհանէն նայած ժամանակ անոնց մէջ տեսած էր ... իր հայրն և եղբայրը:

Երկու տարի վերջ ուրիշ դաւադրութիւն մը պատրաստուեցաւ: Վլասիոս անուամբ երիտասարդ մը, Թագաւորին խընամի, զահու վրայ բարձրանալը՝ գաղափարական մ՚ըրած էր իրեն. իր դիտումը յայտնեց Ճամուսնայի, — յանդուգն պարոնի մը, որ ըմբոստանալ դարձած էր և պատիւներու հասած: Ճամուսնան այն անձն էր որ կ՚ընկերէր իրենց բարեկամին,

դէպ ի շահ, դէպ ի յաջողութիւն, բայց ոչ նաև դէպ ի փառանք : Իսկոյն կայսեր գնաց և դաւը մատնեց : Ապագայագանելու համար՝ թէ ըրածը զրպարտութիւն մը չէր, երկու հոգի ընտրեց կայսեր հաւատարիմ ծառայներէն, և զանոնք այլևայլ անկեանց մէջ ծածկեց։ Վասիլ կը պատմէր եռանդեամբ նենգութիւնները՝ զոր պիտի ի գործ դնէին, ճանապարհները՝ որոնցմէ արքունիք պիտի մտնէին, երբ զինուորներ դաւը բացին, ձերբակալեցին զինքը, և չգիտայակրաց արքունիք տարին : ...

Պատամանը մահուան արժանի էր. բայց Լևոն խնայեց :

Երկէս տարին զինք, ու հրապարակաւ մօրուքը այրեցին : Յետոյ գլխու մազերուն կրակ տուին, խարազանեցին, ու քաղաքին մէջ մերկ պտտցնելէ յետոյ՝ Յունաստան աքսորեցին :

Ամբոխութիւն էր Բիւզանդիոյ մէջ, դառկէն յետոյ Թամփոր մ՚ընել, որուն ներկայ պիտի ըլլար կայսրն ալ : 902ին, երբ այն արարողութիւնը կը կատարէին, և Թափօրը արդէն մօտ էր Ս. Մոկկիոս եկեղեցւոյն, մարդ մը յանկարծ Լևոնի վրայ վազեց և գաւազանի ուժեղ հարուած մ՚ի-

Լեոն, իր օրինագրքին մէջ, երրորդ հարսանիքը կը դատապարտէր, պատիժներ անգամ սահմանելով։ Սակայն երբ Զոյէի հետ առաջարկեց ամուսնանալ, Նիկողայոս պատրիարքը ծանոյց իսկոյն՝ թէ իր պարտքն էր արգելք ըլլալ իրեն։ «Եթէ եկեղեցւոյ մեծ պատրիարքներն ալ, ըսաւ, համաձայնին հրաման տալու, այն ժամանակ միայն պիտի համարձակիմ չորրորդ պսակ մը դնել գլխուդ վրայ»։

Ամբողջ տէրութիւնը կ'ազդարարէր Լեոնի որ այդ զայթակղութիւնը չտայ իրեն. միայն մէկ հոգի մը կար Լեոնի համամիտ. — Զոյէն։ Եւ իր խօսքը աւելի ազդ ունէր Լեոնի վրայ՝ քան ամբողջ համմէկական պետութիւնը։

Պատրիարքներու հրամանին սպասել չըկարենալով, Լեոն պալատ կանչեց Թովմաս անունով եկեղեցականը և գիշեր ժամանակ պսակի խորհուրդը կատարեց։

Երկրորդ օր, երբ Բիւզանդիոն արթընցաւ, լսեց որ Զոյէն կայսրուհի էր քանի մը ժամէ ի վեր։ Նիկողայոս պատրիարքը բուռն կերպով կայսեր դէմ խօսեցաւ. Հրամայեց որ իրարմէ բաժնուին։ Լեոն հնազանդութեամբ պատասխանեց, թէ շատ

գոհ էր իր ըրածէն, և թէ՛ կը ցաւէր որ աւելի կանուխ չէր կատարած արարքը, — Պորփիւրոժէնի ծնանելէն առաջ։ «Մտադիր եմ, ըսաւ, օրէնք մը հանել, որուն համեմատ իմ բոլոր հպատակներս կարող պիտի ըլլան չորիցս ամուսնանալու»։

Գրեթէ բոլոր եպիսկոպոսները, կայսեր ընծայներով կաշառուած, ետ առին բողոքնին. պատրիարքներն իսկ Լեոնի գործը վաւերացուցին, մեծագոյն չարիքները խափանելու համար։ Նիկողայոս դեռ կը բողոքէր։ Կայսրը բանադրեց և թոյլ չէր տար որ եկեղեցւոյ սեմը կոխէ։ Լեոն անոր դէմ ալ հնարք գտաւ. նոր դուռ մը բանալ հրամայեց։

Փետրուար 1ին կայսրը մեծ հացկերոյթ մը տուաւ. սեղանի վրայ հրամայեց պատրիարքին որ իր բանադրանքը վերցնէ. «Ոչ» պատասխանեց Նիկողայոս, և ըսեց, իր կնճռոտած ճակատին վրայ ամենէն խորին զայրոյթն արտայայտելով։

Կայսրը ժպտեցաւ. դարձաւ մատռուակներուն ու գաղտնի նշան մը ըրաւ։ Խուցին դուռները բացուեցան ու քանի մը հսկայներ ներս մտան։

Թիկնապահներ էին. սեղանէն դուրս

քաշեցին պատրիարքը, ոտքերէն ու թեւերէն բռնած, ամենուն ծիծաղը գրգռելով, նաւակի մէջ դրին: Երեկոյ էր արդէն, ձմեռնային երեկոյ մը. Վոսփորի ափունքները ճերմկցած էին և ցուրտ հով մը ձիւնէ բիւրեղներով կը տանջէր պատրիարքը, որ նաւակով կ'անցնէր նեղուցէն: Անաստղ գիշեր մը կախուած էր իր գլխուն վերև. իր ներկայ տանջանքներուն հետ ապագայի տառապանք կը միանար: Յանկարծ նաւավարները կանգ առին, բռնորէն դուրս քաշեցին զինք նաւակէն, ափունքի վրայ նետեցին և հեռացան: Ամէն կողմ լռութիւն էր. կը լսուէր միայն թիերու ձայնը այն նաւակին՝ որ զինք բերած էր և որ հիմայ կը թողէր Ոսկեղջիւր երթալ:

Ինչ ընել այդ մթութեան պահուն, առանց լապտերի, ոտքին տակ սառ, գլխուն վերև ամպեր...: Երկայն ժամանակ ձեան տակ կեցաւ. տեսնելով սակայն որ մինչև առաւօտ սպասելն անհնարին մը պիտի փոխուէր, վճռեց փորձ մ'ընել մօտակայ գիւղեր հասնելու: Սառոյցներու վրայ խարխափելով, գլորելով, վախնալով ամէն վայրկեան ծովու մէջ խեղդուելու, վերջապէս

վանքի մը մօտ հասաւ. ինքն եղած էր անոր հիմնող. հարցուց մին պատուհանէն թէ ով էր, ինչ բան ունէր հոն, այդ պահուն. զարմանքը մեծ եղաւ, երբ լսեց. «Կոստանդինուպոլսոյ պատրիարքն եմ»։

Վերջին անգամն էր որ այս ախտաւոր գործածեց. արքունիքը իրեն տեղ, Եւթիմիոս անուամբ մէկը յաջորդ անուանած էր։

Գ.

## ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ ԼԵՒՈՆԻ ԺԱՄԱՆԱԿ. — ԱՐԱԲՔ ԵՒ ԲՈՒԼՂԱՐՔ։

Լեւոն գերի եղած էր ճարտար պալատականներու ձեռքին մէջ, որոնցմէ ամենէն նշանաւորներն՝ Ստիլիանոս և Ծամունայ եղան։ Անկարող իր արքունիքը կառավարելու, Լեւոն ինչ դիմադրութիւն կարող էր ընել թշնամի ազգերուն դէմ։ Ամենէն ահարկուները Արաբացիք էին։ Արեւմուտքէն կը սպառնէին իրենց յարձակումները. երբ Լեւոն իրենց դէմ կը հաւաքէր իր զօրքերը, Արեւելքի Արաբները կ՚օգտուէին առիթէն՝ փոքր Ասիա ողողելու համար. կը ստիպուէր Լեւոն զէնքը անոնց

դէմ դարձնել. այն ժամանակ Եւրոպայի Սարակինոսները խրախոյս կ'առնէին. Իտալիոյ ժողովուրդը կարող պիտի ըլլար միայնակ պաշտպանել ինքզինքը, եթէ իր իշխանները, փառասիրութիւնը մերկանալով, հասարակաց թշնամւոյն դէմ միաբանէին։ Բայց ոչ պետութեան շահերը, ոչ կրօնքի կապերը՝ կարող չէին յաղթել իրենց կըրքերու բռնութեան. Նէապոլսոյ եպիսկոպոսն անգամ, ձիու վրայ աշտանակած, իր իշխանութիւնը տարածելու համար, պատերազմի կ'երթար քրիստոնեայ իշխաններու դէմ, և երբ հարկ ըլլար, չէր վարաներ Սարակինոսներու հետ դաշնակցելէ։

Այս հանգամանքներու մէջ Յոյներ չէին կարող յաղթական կանգնիլ Արաբացւոց դէմ. թէ՛ ցամաքի և թէ ծովու վրայ պարտութիւնը ընդհանուր կանոն մ'եղաւ. բացառութիւնք շատ ցանցառ էին, և, գործ հաստատուն հիմէ մը, տևական հետևանք չէին ունենար բնաւ։ Միայն Սիմբատիկ անուամբ հայազգին (890ին) Ապուլիոյ գաւառին տիրելով՝ Իտալիոյ մեծ մասը նուաճեց, բայց երկու տարի վերջ մեռնելով՝ աշխարհակալութեան ընթացքը առկախ մնաց։

Իր սիրելի Սոփիլիանոսը — որ յաջողութեան ախոյեան ունէր, վասնզի Բիւզանդացիք արդէն սկսած էին Թուրքերու հետ վերաբերութիւն ունենալ և անոնց ամբողջութեամբը հետաքրքրուիլ, — Սոփիլիանոսը չարամեցնելու համար, Լեւոն ռազմասէր ազգ մը իր պետութեան դէմ զինեց։ Քանի մը յոյն վաճառականներ, մանաւանդ Մուժիք անուամբ ներքինին որ Սոփիլիանոսի գերին էր, այդ պալատականի պաշտպանութեան վրայ վստահացած, բուլղար ժողովուրդը կը կեղեքէին։ Իրենց Սիմէոն թագաւորը, — ուսեալ երիտասարդ մը՝ Բիւզանդիոն կրթուած, նախ կրօնաւոր եղած, յետոյ, ամբողջ ժողովրդեան կամքով, Բուլղարիոյ գահուն վրայ հրաւիրուած, — օրինաւոր բողոքներ ուղղեց Լեւոնի։ Անոր պատասխանը՝ նախատական լռութիւն մ՚եղաւ միայն։

Սիմէոն զօրաւոր բանակ մը պատրաստելէ յետոյ, պատերազմ հրատարակեց։ Սիմէոն անձամբ կ՚առաջնորդէր իր զօրքերուն, մինչդեռ հռովմայեցիք յառաջ կուգային Պրոկոպիոս Կրինիտէսի հրամանատարութեան տակ։

Դիւրին չէ յաղթել բարբարոս ժողովուր-

գեան մը՝ որ քաղաքակրթութիւն սկսած է։ Ազգերու պատմութեան մէջ այն շրջանն է զա, ուր ցեղ մը իր հին վայրագութեան հետ կը միացնէ այն բարոյական կորովն ալ, զոր կարող է ջնջել հայրենեաց գաղափարը, կրթութիւնը, և արթնցող գիտակցութիւնը։

Հռովմէական բանակը ջնջուեցաւ։ Պրոկոպոսի հետ՝ ընկաւ Փուրդին հայկազն ալ՝ որ ապարանքի տեղապահ անուանուած էր՝ և իբր դիւցազն հռչակուած։ Սիմէոն բոլոր գերիներու քիթը կտրեց, և զանոնք խմբովին Լևոնի ղրկեց։ «Կրէժ» կ՚աղաղակէին այս թշուառները. Լևոն, իրենց տխուր տեսլեանքէն յուզուած, երկրորդ պատերազմը որոշեց։

Քաղաքագիտական մեծ սխալով մը՝ Հունգարները իր տէրութեան մէջ հրաւիրեց, զանոնք Բուլղարներու դէմ հանելու համար։ Եթէ յաղթէր իսկ Լևոն, ուրիշ բան ըրած պիտի չըլլար՝ բայց եթէ հին թշնամւոյ տեղ նոր մը յարուցանել իր տէրութեան դէմ։

Հունգարներ, այս ժամանակ, բոլոր ազգերը կը գերազանցէին վայրենութեամբ։ Կիսամերկ ձիաւորներ էին, մորթ մը միայն

ունենալով ուսերնուն վրայ. գլուխնին ածիլուած էր, որպէս զի թշնամի ձեռք մը կռուան չգտնէ այնտեղ. Հում միս կ'ուտէին. սայլերն էին իրենց հայրենի յարկը. երբ տղայ մը ծնանէր՝ դէմքը կը վիրաւորէին, իր ապագայ կեանքին զայն պատրաստելու համար։ Վարժուած էին արիւն խմելու և հիւանդութեան ժամանակ, իբրեւ դեղ, թշնամեաց սիրտը ուտելու։

Պատերազմի հրաւիրագիրը սիրով ընդունեցան, դրամի խոստումներ կը շլացնէին զիրենք. Դանուբի եզերքը հաւաքուեցան ուր յունական նաւերը կը սպասէին իրենց. գետին միւս ափունքին վրայ Բուլղարներ կանգնած էին զէն ի ձեռին։ Նաւեր միայն մէկ տեղ մը կարող էին կանգ առնուլ, և Բուլղարներ ամուր շղթաներով այդ անցքը գոցած էին. Յոյներ կորսնցնելու մօտ էին իրենց ծրագիրը, երբ նաւաստի մը, վահանը մէկ ձեռքով բռնած, միւսով կացին մը, նաւակով շղթաներուն մօտենալ սկսաւ։ Բուլղարաց բոլոր նետերը շուրջ կ'ընէին իր գլխուն վրայ, դիւցազնը, առանց փոյթ ընելու, ափունքը հասաւ, շղթաները կտրեց և յոյն նաւերու մուտքը ազատ ըրաւ։

Հունգարներ ծովափը եկան. մեծ կոտորած մը տուին Բուլղարներուն, մնացորդները գերի ըրին. Հազիւ Սիմէոն յաջողեցաւ փախչիլ։ Յետոյ աւետաւոր դրկեցին կայսեր՝ գերիներուն փոխարէն ստակ պահանջելով։

Մեծագոյն սխալները՝ դուռար են յաճախ մեծ յաղթութեանց։ Լեւոն հպարտացաւ. խոնարհած կարծեց զՍիմէոն. սրամիտ բուլղարը ուզեց նոյնպէս ձեւանալ, խաղաղութիւն խնդրել, որպէս զի յոյն բանակները իր հայրենիքէն հեռանան. Լեւոն չյապաղեց իր թշնամւոյն փափագը կատարել։ Սիմէոն լաւ պատերազմի պատրաստուեցաւ, անցաւ Դանուբէն, յարձակեցաւ Հունգարներու վրայ, և իր վրէժը բիւրաւորներու արեամբը յագեցուց։ Յետոյ տասնաւելօք գեսպան դրկեց կայսեր որ բուլղար գերիները՝ առանց փրկանքի իրեն դարձնէ. Լեւոն հնազանդեցաւ։

Ե.

ԼԵՒՈՆԻ ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԸ. — ԻՐ ՄԱՀԸ։

Իմաստասէր կայսրը հայասէր էր. իր հայրենի ծագումը յիշելով, բարեկամ հան-

դիմացաւ մինչ Սմբատ Ա.ի Յուսուփի դէմ, որ ելած էր Հայաստան արշաւել, բանակ մը դրկեց (908ին). Նախօրդաբար և Տայոց մէջ հարուածեց Արաբացիները, և եթէ չկրցաւ խափանել, գոնէ ուշացուց այն աղէտները՝ որ սահմանուած էին մեր աշխարհին համար։

Լեոն՝ մեռնելէն առաջ օգտակար գործ գործ մ'ալ ըրաւ ընէր տէրութեան. — Ճամանդայի՝ պաշտօնանկութիւնը։ Նենգաւոր Արաբացին, —այնքան հնարագէտ բարիները կործանելու մէջ, — Կոստանդին անուամբ ծառայ մ'ունէր. հանդիսի մ'օր արքունեաց մէջ երեցաւ նա, և այնքան սիրելի եղաւ Զոյէի, որ աս խնդրեց Ճամանդայէն իրեն տալ իր ծառան։ Զոյէի պաշտպանութեան տակ այնչափ բարձրացաւ Կոստանդին՝ որ Ճամանդայի նախանձորդը կը համարուէր։ Խորոխս Սարակինոսը ալ իսկ չհանդուրժէր ի հարկէ իր քով տեսնել իւր իսկ ծառայն. պէտք էր ուրեմն գրպարտութիւն մը գտնել։ Համոզեց զԼեոն՝ թէ Զոյէ սիրահարուած է անոր. «անհամբեր կը սպասէ մահուանդ, կ'ըսէր, անոր հետ ամուսնանալու համար»։

Տարի մը յետոյ Լեոն շրջակայ կղզի-

ներուն մէջ կը շրջագայէր, երբ վանքի մ'առջեւ համեստ կրօնաւոր մը տեսաւ. Կոստանդինն էր դա։ Կայսրը Ծամծանայէն գրգռեալ աքսորած էր զինքը․ բայց կը զգար թէ անմեղ էր նա, եւ թէ միշտ արժանի էր այն սիրոյն զոր ինքն ալ ունէր իրեն վրայ։ Կրօնաւորը իր առջեւ կանչեց․ հանել տուաւ սեւ զգեստները, կրկին իշխան անուանեց եւ հանդիսով արքունիք բերաւ։

Երկրորդ օր, երբ Ս. Սոփիա կ'երթար, ճամբուն վրայ տնարակ մը նստուած տեսաւ․ վեր առաւ ու կարդաց․ կծու երգիծաբանութիւն մ'էր՝ իր ընթացքին դէմ։ Ամէն կողմ քննութիւններ սկսան կատարել՝ պարսաւագրին հեղինակը գտնելու համար․ յանցաւորը յայտնուեցաւ․ Ծամծանան էր դա, զոր կայսրը վիրաւորած էր խորապէս, վերադարձնելով Կոստանդին։ Իր ստացուածքը յարքունիս գրաւուեցան, իսկ ինքը ցկեանս բանտի դատապարտուեցաւ։

Լեոն, հակառակ նախորդ կայսերաց, ապարանքներու տեղ՝ գրքեր կը շինէր։ Միայն Ս. Ղազար անուամբ վանք մը կանգնել տուաւ, զոր սահմանեց յանցաւոր ներ-

քրիստոնեայ համար. Ս. Թէոդոր եկեղեցին հրդեհուած էր, իր ձեռքով փիւնիկ մ'եղաւ՝ որ յարութիւն կ'առնու իր մոխրէն։ Այս շէնքերէն զատ՝ յօրինեց օրինագիրք մը, և բազմաթիւ գործեր՝ որոնց շնորհիւ բիւզանդացւոց առջև մարգարէի հռչակ ունեցաւ։ Հիւանդութիւնք յաջորդեցին այն հաճոյքներու, որոց անձնատուր եղած էր Լեւոն։ Մայիսի օր մ'էր. արթնցող բնութիւնը կեանքի ակեր կ'արծարծէր իր հոգւոյն մէջ, երբ մահուան ձայնը զինքը դէպ ի շիրիմ կը հրաւիրէր։ Կանչեց իր Աղեքսանդրոս եղբայրը՝ և զԿոստանդին Պորփիւռուծէն. խնդրեց իր եղբօրմէն որ պաշտպան ըլլայ իր որդւոյն, յուզումէն արտասուեց, յետոյ մեռաւ (11 մայիս 912)։

Ոչ օգուտ ըրած էր պետութեան և ոչ չարիք։ Բարեսիրտ հոգի մ'էր որ իր հաճոյքները կը փնտռէր, առանց ուրիշի վնաս փափագելու։ Այսչափն ալ բաւական էր ժողովրդեան համար որ զկայսրը հրապարակի վրայ կը տեսնէ, և արքունեաց մէջ երբէք չթափանցէր։ Ապագային անծանօթ, Բիւզանդիոն անկեղծօրէն լացաւ այն Անցելոյն վրայ՝ զոր կը կորսնցնէր Լեւոնի հետ։

## Զ.

# ԱՂԵՔՍԱՆԴՐ ԱՐՇԱԿՈՒՆԻ

(911 – 912)

---

### Ա.

ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԳԱՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

Բիւզանդիոյ ժողովուրդը հազիւ իր աչքերը բարձրացուցած էր Լևոն Իմաստասէրի սգաւոր գերեզմանէն, երբ նշմարեց, երկնքին խորը, թագեղէն աստղ մը՝ որ իր գլխուն վերև կը շողշողար։

Գինաւոր մ՚էր. տասնեւհինգ օր անշարժ մնաց։ Ամենուն աչքը անոր յառած էին, ամէնքը անոր վրայ կը խօսէին. ամենուն սիրտը կը տրոփէր տխուր նախազգացումներով։

Այս պահուն էր որ գահու վրայ կը բարձրանար քառասնամեայ մարդ մը՝ Աղեքսանդր Արշակունի։

Աւելորդապաշտութիւն է, ի հարկէ, այնքան գէշ նշանակութիւն ընծայել մեր երկնային այցելուներուն. բայց Աղեքսանդ-րի գահակալութիւնը... դա այնպիսի զու-գադիպութիւն մ'էր որ, Թող Բիւզանդիոյ ժողովուրդը, ամենէն սկեպտիկ միտքն ալ պիտի համոզուէր անոնց գէշ նշանակու-թեան մասին:

Որդի Վասիլ Արշակունւոյ, եղբայր Լե-ւոն Իմաստասէրի, Աղեքսանդր ծնած էր 871ի նոյեմբ. 23ին:

Ժամանակի պատմագրութիւնը, դա-րու ոգին, ամենէն առաջ աւելորդապաշտ ըրին զինք և տառապեցուցին: Իր ախտերէն փոքրագոյնն էր ասիկա:

Վասիլի մահուանէն յետոյ, ժառանգա-կան իրաւունքը զինքը գահ բարձրացուց Լեւոն Իմաստասէրի հետ: Ամէն հոգ իր եղ-բօր յանձնեց, — զուարթ պալատական, — անձնատուր եղաւ զբօսանքներու:

Իր ախտերուն մէջ փառասիրութիւնը միայն կը պակսէր... երբեք չմտածեց եր-կիրներ գրաւել, մեծ անուն մ'աւանդել ապագային: Չուզեց նոյն իսկ ամուսնա-նալ, ժառանգներ պատրաստել իր գահուն, վախնալով որ ընտանեկան հոգերը իր հա-ճոյքներն աղօտացնեն...:

Պալատին մէջ միայն այն ժամանակ կը գտնուէր՝ երբ խնջոյք կար հոն ուրիշ ժամանակ կամ կրկէսին մէջն էր և կամ որսի գացած Հիէրոնի (Ֆէնէրպաղչէին) անտառներուն մէջ, որոնցմէ՝ կանաչ հետք մը հազիւ մնացած է հիմա, իբր սիրուն հակապատկեր իր շրջակայ հայելանման կապոյտին։ Աղեքսանդր չէր մոռնար անշուշտ երբեմն ալ՝ կղզիները երթալ և զովութիւններ շնչել Փրինքիփոյի կատարէն, ու Բիւզանդիոնը տեսնալ հեռուն, երկու կապոյտներուն մէջ տեղ նկարուած, ամէն բան ոտքին առջև խոնարհած, ու լսել հպատակութեան խոստովանանքը, զոր ծովը, անտառները, կղզիները կ՚ընէին իրենց կայսեր։ — Ո՛րքան գէշ կայսր, և ո՛րքան գեղեցիկ հպատակներ...

Երբ 911ին, Աղեքսանդր միայնակ մնաց գահուն վրայ, երբէք չմտածեց իր պաշտօնին փառաւորութիւնն ունենալ։ Ամենէն մեծ զինուոր էր և ամենէն մեծ անառակը ... իր բովանդակ կայսերութեան մէջ, թէպէտ ուրիշ տեղ ալ դժուար պիտի ըլլար նման մը գտնել։

Շատ կը ցաւէր որ կռապաշտութեան դարու մը մէջ չէր ծնած. և յաճախ կ՚ը-

և մեր կողմանէ Կոստանդնուպոլսէն. Հետեւաբար պէտք էին առանձին յարգանք մ'ունենալ առաջին հայ քրիստոնեայ թագաւորին։ Հայկական զրոյցները այդ մասին արդէն տարածուած էին Յունաց մէջ, և Աղեքսանդր, Տրդատին առջև, զոր կը տօնենք, կարող էր խորան մը կանգնել, և կրինճին մէջ զինքն ու իր ցեղը տեսնել։

Պատմիչները, գրաւեցուցիչ ընելու համար դէպքը, ծածկած կը թուին այս պարագայն, որ շատ բնական պիտի ընէր զայն։

Աղեքսանդր բոլոր խոհեմութիւնը գործածեց վանելու համար արքունիքէն այն ցուրտ բնաւորութիւնները որ իր վայելքը կրնային վրդովել իրենց ձանձրանալի խըրատներովը։ Որոշեց արքունիք մը կազմել որուն անդամները իր բոլոր ախտերն ունենային, ոչ որ պիտի իշխէր այնուհետև իր գործերը պարսաւել։ Ծերակոյտ մը կազմեց որ մասամբ անառակներէ կը բաղկանար ու մասամբ գինովներէ։

Ժողովքները խնջոյքներէ յետոյ տեղի կ'ունենային. աւելի անտեղի տեսարան չէր կրնար ըլլալ քան այս արբեցողները, որոնք ամէն վայրկեան գլորելու վտանգի

մէջ, սենեակ մը կ'երթային՝ տէրութեան գործերուն վրայ խօսելու համար…

Անշուշտ, այս ժողովքներէն մէկուն մէջ էր որ Աղեքսանդր որոշեց հայրապետը ծեծել… կրօնաւորներու օգնութեամբ։

Կանչեց ատենցմէ խումբ մը, ամենէն ուժովներէն ու քաջասիրտներէն, և իրենց յորդորական խօսքեր ընելէն յետոյ՝ յայտնեց որ Եւթիմիոս հայրապետը ծեծելու փափագ մը կը զգար բաւական ժամանակէ ի վեր, և թէ վստահ էր որ անոնք պէտք եղած օգնութիւնը պիտի չզլանան իրեն. «Եւթիմիոս, աւելցուց, գահազուրկ պիտի ըլլայ, իրեն տեղ պիտի բարձրանայ Նիկողայոս»։

Կրօնաւորները իրենց հաւանութիւնը տուին. դաւադիրները որոշեցին միասին որ Նիկողայոսի աւելի գոհանակութիւն մը տալու համար, առաջուց հրաւիրեց զինք իր ախոյեանին գանակոծութեան հանդէսին։

Որոշեալ օրը հասաւ. Եւթիմիոս հայրապետը, արքունիք հրաւիրուած ատենց կատակածանքի ներս մտաւ։ Յանկարծ կանգ առաւ՝ տեսարանին նորութեանը առջեւ ափշած։ Կայսրը բազմած էր բարձր գահու մը վրայ, աջ կողմը Նիկողայոս, աք-

Եւթիմիոս Ագաթա կղզին աքսորուեցաւ յաջորդ թողլով իրեն զՆիկողայոս, և մեռաւ Փսամաթէի դրան առջև։

Աղեքսանդր Արշակունի աւագերէց մ'ունէր որ թագաւորին կը հաւասարէր իր անսանձ բարքով։ Յաճախ նա Աղեքսանդրի հետ կրկէս կ'իջնէր և քահանայական զգեստով գնդակ կը խաղար թագաւորին հետ։ Ժողովուրդը կը խնդէր այս նորութիւնը տեսնելու համար և ծաղրածութեամբ կը վիճէին իրարու հետ՝ թէ ով պիտի յաղթէ, կայսրը թէ իր աւագերէցը։ — Երկուքն ալ գնդակախաղով պիտի մեռնէին։

Կոստանդին Պերփիւրոժէն, իր եղբօրորդին, դեռ փոքրիկ մանուկ մ'էր, տժգոյն ու նուաղկոտ։ Կայսրը սպաննել կ'ուզէր զինքը, թագը՝ իր ուրախութեան ընկերներէն մէկուն յանձնելու համար։ Ապահովցուցին զինք որ Պերփիւրոժէն պիտի մեռնի արդէն, և աւելորդ է կանխել բնութեան գործը։ Այսպէս Պերփիւրոժէնի հիւանդութիւնը՝ զինք մահուանէ ազատեց։

Հիմերոս ծովակալին այնքան սպառնալիք ըրաւ՝ որ վախէն մեռաւ։ Նոյն ոճով վարուեցաւ Բուլղարաց Սիմէոն թա-

## Ա.

# ԽԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ՄՕՐԻԿԻ ՎՐԱՅ

---

Ա. — Ցանկ որ պատմիչներ խօսած են Մօրիկի վրայ. — 1) Եւագր Սքոլաստիկոս, Մօրիկի ժամանակակից և պատմաբան. իր գործը տպուած է՝ Թէոդորետոսի Եկեղեցական պատմութեան հետ (Augustae Taurinorum, MDCLXVIII, ex regia typographia)։ Մօրիկի վրայ յատկապէս կը խօսի Ե գրքի ԺԹ գլխէն սկըսեալ՝ մինչև Զ գրոց վերջը։

2) Թէոփիլակտոս Սիմոկատա, Մօրիկի ժամանակակից, որոյ կենսագրութիւնն ըրած է՝ երկոտասան գրքով (տպուած Corpus historiae byzantinaeի թէ՛ Վենետկեան և թէ՛ Նիպուհրեան շարքին մէջ)։ — Հայոց վրայ շատ հետաքրքրական տեղեկութիւններ ունի։

3) Մենանդրի Պրոտեկտոր (Menandri Protectoris excerpta de legationibus barbarorum), որուն հատուածները միայն՝ մեզ հասուցած է Սուքիաս։

Յաջորդ դարուց բոլոր ժամանակագիրները այլ խօսած են ընդհանրապար՝ Մօրիկի վրայ. գլխաւորները միայն յիշենք. (էջերը՝ ըստ Նիկոլ-Հրեան տպագրութեան)։

4. Կեդրենոս յէջս 690–707։

5. Գլիկաս յէջ 507

6. Թէոփանէս Վանանայր խոստովանող հտ. Ա. յէջս 387–448

7. Թէոփանէս Բիւզանդացի, զոր Փոտայ մատենադարանէն միայն կը ճանչնանք. ընագիրը կորսուած է (Փոտ. յէջ 81)։

Տե՛ս նաև Ս. Նիկեփոր, Եւփիբեմիոս, և այլն և այլն։

Հայ պատմիչներէն՝ հետևեալները խօսած են Մօրիկի վրայ։

1) Սեբէոս (տպ. Կոստանդնուպօլիս, 1851)։ Գ. դպրութեան Ա. գլխէն մինչև ԻԱ ու Մօրիկի պարտանուածը կը յիշէ և իր Թէոդոս որդւոյն ազատելուն և առ Պարսիկս երթալուն համբաւը, որուն պատճառաւ մեծ խռովութիւններ ծագեցան։

2) Յոհան Կաթողիկոս (տպ. Երուսա-

դէմ, Ս. Յակոբ, 1867 Գիրք ԺԷ, ԺԸ էջք 90–98)։

3) Յովհան Մամիկոնեան, Զենոբ Գլակայ հետ տպուած (Ս. Ղազար, 1883. էջք 13–16)։

4) Ստեփանոս Ասողիկ (տպ. Փարիզ 1859. ի Կ. Վ. Շահնազարեանց) Բ. Գիրք. էջ 85–87)։

5. Վարդան (տպ. Վենետիկ, 1862 էջ 59, 60, 84)։

6. Կիրակոս Գանձակեցի (Վենետիկ, 1865. էջ 26–29)։

7. Սամուէլ Անեցի, տպ. Վաղարշապատ 1893, էջ 77։

8. Առաքել Դաւրիժեցի. Յայսմաւուրք, և այլն։ Սեբէոս, իբրև ժամանակաւ Մօրկայ ամենէն մերձաւորը, մեծագոյն հեղինակութիւնն է Հայոց մէջ։



Բ. — Հա՞յ էր Մօրիկ։ — Հայ աւանդութիւնք այս խնդրոյն մասին այսպէս կը խօսին. «Այս թագաւորեաց Տիբեր, և յետ նորա Մօրիկ. զսա ասեն ի Հայոց, յՕշական գեղջէ. և այլք՝ թէ ի Տարօնոյ... կէսք ասեն զսա յԱրփաստա

գեղջէ Կապադովկեցւոց, զոր յետոյ թագաւոր շինեաց զօրավար Տիբերի» (Կիրակոս 29 էջ)։

Մօրիկի հայազգի ըլլալը ժողովրդեան համոզումն եղած կը թուի, և Առաքել Դաւրիժեցի և ճառընտիր կը յիշեն թէ Հայաստանի մէջ ծնած եղած էր ըսել. «Իբրև ի ժամանակս Մօրկայ՝ նստեալ ես յանհոգս»։

Ստոյգ է Մօրիկի հայ ծագումը։

Յունաց պատմիչներէն միայն մէկ հոգի է որ զայս կը հաստատէ. — Յովէլ որ սակայն 1204 թուականէն վերջ կ'ապրէր։

«Տիբերիոսէն վերջ (կ'ըսէ նա) թագաւորեց Մօրիկ Հայկազն և փեսայ նորին, ամս քսան[1]»։

Սակայն այս բանիս հակառակ կ'ելնեն հետևեալ պարագայները. 1. Մօրիկի ժամանակակից մեծ հեղինակութիւն մը՝ Եւագրիոս, որուն պատմութիւնը գրուած կը համարուի 431 – 594, կ'ըսէ. (Ե գիրք, ԻԹ գլուխ)։

1. Տե՛ս Յովէլ. Corpus historiae byzantinae, հատ. էջ 136.
«Μετὰ δὲ Τιβέριον ἐβασίλευσε Μαυρίκιος Ἀρμένιος καὶ γαμβρὸς αὐτοῦ ἔτη Κ».

Տիբերիոս «Արեւելքի զօրավար ձեռնադրեց (= անուանեց) զՄօրիկ, որուն տոհմն և անունը յառաջ եկած էր ի հնոյն Հռոմայ. բայց իր մերձաւորագոյն նախնեաց (գաղթելուն) պատճառաւ՝ հայրենիք ունէր իրեն՝ Արաբիսոնը որ Կապադովկացւոց գաւառին մէջ է»[1]:

2. Մօրիկի ընտանեկան բոլոր անունները հռոմէական են (տես Մօրիկի գերդաստան վերնագրով ծանօթութիւնը)։

3. Մօրիկի Յոհաննա մայրը Արաբիսոնի Ադելփիոս եպիսկոպոսին քոյրն էր (տես Corpus historiae byzantinae, վենետկեան տպագրութիւն, հտ. XXI, յէջ 88)։

4. Սեբէոս որ ժամանակաւ մեր պատմիչաց մէջ՝ Մօրիկի մերձաւորագոյնն է, երբեք պարծեցած չէ անոր հայ ծագումով, և բառ մ'անգամ ըսած չէ այս մասին. ընդհակառակն զայն Հայոց ոխերիմ թշ-

1. Χειροτονεῖ δὲ ἄφας στρατηγὸν Μαυρίκιον, ἕλκοντα μὲν γένος καὶ τοὔνομα ἐκ τῆς πρεσβυτέρας Ῥώμης, ἐκ δὲ τῶν προσεχῶν πατέρων, Ἀραβισσὸν πατρίδα ἐπιγραφόμενον τοῦ Καππαδοκῶν ἔθνους.
(Այս վերջին բառը. տես Ducange, Glossarium mediae et infimae graecitatis, ամենահին գրչագրի ծանօթագրութիւնն ևս ունի)։

նամին կը ներկայացնէ, և իրեն այսպիսի դիւանագիտութիւն մը կ'ընծայէ. Խոսրո-վայ հետ կը բանակցի՝ յորդորելու համար զանիկա որ իր հպատակ Հայերը ճնշէ, ինքն արդէն նոյնը պիտի ընէ. այսպէս Հայերն ինքնուրոյնութեան յոյսը պիտի կորսնցնեն՝ և երկու տիրող պետութիւնք ալ՝ անվնաս պիտի մնան. ահաւասիկ Սե-բէոսի ներկայացուցած նամակը՝ զոր Մօ-րիկ գրեց Խոսրովին (Գ. Դպր. Գլ. Ջ. էջ 79). «Ազգ մի խոտոր և անհնազանդ են (Հայք). կան ի միջի մերում, և պղտորեն. բայց եկ. ես զիմս ժողովեմ՝ և ի Թրակէ գումարեմ. և դու զքոյդ ժողովէ՛ և հրա-մայէ յԱրեւելս տանել։ Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին, և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն, և մեք կեցցուք խաղաղութեամբ։ Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին, մեզ հանգչել ոչ լինի»[1]։

5. Եւրոպացի գիտնականներէն ոչ ոք Մօրիկի հայ ըլլալը կ'ընդունի, այլ ա-

1. Կիրակոս եւս Մօրիկի հայաստանեայ ըլլալը կը շեշ-տէ.

«Սա էր ազատատոհմեայ նախարարաց Հայոց՝ փա-խուցեալ ի տէրութենէն Պարսից։ Իսկ սա անմտաբար բարս ցուցեալ, այլ և զկարգեալ տաճկան յաւուրցն թագաւորացն արգել ի նոցանէ» (էջ 28)։

մէջը ժամանակակից և պարսատական Եւագ-րիոսի կը հաստատան։

6. Miscella historia[1] և Մանասէ[2] «կապպադովկացի» կ'անուանեն զՄօրիկ՝ բայց երբէք հայ։

7. Մօրիկ ի պաշտպանութիւն Հայոց կռուեցաւ երկար տարիներ ընդդէմ Պարսից. պէտք էր անոնց լեզուին և սովորութեանց խորահմուտ ըլլալ։ Այս հանգամանքը կարող էր զինք ժողովրդական առասպելաց նիւթ ընել և յետ նախ Հայաստանցի կոչուելու (ինչ որ սուտ է) յետոյ Հայու փոխուիլ։

Յիրաւի այս հզօր փաստերուն կարելի չէ հակառակորդներու փաստեր բերել, և պիտի փութայինք ճանաչնայեցի անուանել զՄօրիկ, եթէ սակայն ստար պատմըչի մը վկայութեան գոյութիւնը կարելի ըլլար մերժել։ Չամչեան զայն բացարձակապէս հայ կը դաւանի (Բ հտ.)

1. Այս լատին հին բիւզանդագիտականներու հրատարակութիւն մ'է. կը պարունակէ
Ա. Պօղոս Սարկաւագ (+ 799).
Բ. Լանտօլփոս (725–806)
Գ. Անաստաս (786).
2. Այս իր պատմութիւնը կը հասցնէ մինչև 1204. հեռաւորը մեծ հեղինակութիւն մը չէ։

իսկ Հ. Ալիշան (Հայապատում, էջ 477) «Կրնայ հաւանական ըլլալ որ իր նախնիքն հռոմայեցի էին. դարերով ի Կապադովկիոյ բնակելով՝ Հայոց հետ խնամեցած ըլլան»։

Հ. Ալիշանի կարծիքը շատ հաւանական է. կը թուի թէ հօր կողմանէ Մօրիկ հայ էր, բայց նա աւելի կ՚ընտրէր հռոմայեցի կոչուիլ (այս պատճառաւ էր որ կ՚ածիլէր մօրուքը) վասնզի

1. Հռոմէական փառքը և Հայաստանի թշուառութիւնք այդ զգացումը պիտի ջնջէին իրեն։

2. Իբրև քաղկեդոնական, կրօնական հակակրութիւններ ունէր Հայոց դէմ, և փոխադարձաբար, ինչպէս պատմիչներէն կը տեսնենք։

Եւագրիոս, յունական պատմիչ, ընդհանրապէս կայսեր զգացումները պիտի փայփայէր, պատճառաւ չեշտելով իր հռոմայեցի ըլլալը, և կրնար ճշմարտութեան մէջ թերի գտնուիլ՝ նոյն իսկ ժամանակակից ըլլալուն պատճառաւ։

Պատմագրաբար ոչ Թէոփիլակտոս Սիմոկատտա, ո՛չ Թէոփանէս Բիւզանդացի՝ Մօրիկի ազգութեան վրայ չեն խօսած։

թշուառութիւնը կը ներշնչէ), այսպանեց զՎահրամ ամենամօթալից նախատանօք, կանացի զգեստներ զգեցնելով իրեն՝ իբր վարձ իր անփառունակ պատերազմին. հանեց զինքը զօրավարութենէ, վճռելով այս բանս՝ արքունի նամակներով. անկէց՝ պատերազմը Մարաց մէջ սկսաւ։ Բայց Որմիզդ, որ պարագաները թագաւոր ըրած էին, արհամարհուեցաւ իր զօրավարէն. նախատինքներ գրուեցան նամակներով՝ որոնց վերնագրին մէջ այս Որմիզդը փոխանակ որդի՝ դուստր Խոսրովու կը կոչուէր։

Բայց այս բաներէս քիչ մը ժամանակ յառաջ՝ Պարսկաստանի դրացի Հայերը քանի մը Հռոմայեցիներէ գրգռուած՝ միաբանեցան ապստամբելու և Մարաց կողմ անցնիլ ձեռնարկեցին, խաղաղութեամբ սպաննելով կայսերմէն՝ Հայաստանի վրայ դրուած իշխանը Յովհաննէս անունով. մինչդեռ Հայաստանի գործերը այլեկոծուելու մօտ էին, Մօրիկ ինքնակալը Հայաստան դրկեց զԴոմենզիոլոս, նշանաւոր մարդ, կարի յոյժ սիրուած, որ սինկղիտոսի ժողովին մէջ կը փայլէր առաջին խորհրդականներուն մէջ. աս արգելք դրա

համաձայնին, Մօրիկի ժամանակ դնելով հայկական մեծ շարժում մը։

Այս նշանաւոր դէպքը պէտք է դնենք մօտաւորապէս 590ին։

Որովհետեւ Սիմոկատտա յետ յիշելու վահրամի ապստամբութիւնը, որ պատահեցաւ 591ին, կ'աւելցնէ. «Բայց այս ժամանակէս քիչ մը յառաջ»

«Πρὸ τινος δὲ τούτων βραχέος καιροῦ οἱ γειτνιῶντες πρὸς τῇ Περσίδι Ἀρμένιοι, ὑπεπεισθέντες ὑπὸ τινῶν Ῥωμαίων ἀνδρῶν» ևն։

Ապստամբութեան նպատակը՝ ըստ Սիմոկատտայի՝ է Պարսից կողմը անցնիլ, ըստ Սեբէոսի՝ ազգային անկախութիւն հիմնել։

Ապստամբութեան առաջին շարժումը տուողները Հռովմայեցիներ եղան, ըստ Սիմոկատտայի, Հայեր իշխանին՝ ըստ Սեբէոսի։

Բայց պէտք է դիտել՝ թէ ինչ շահ ունէին Հռովմայեցիք Հայերը գրգռելու մէջ. ըստ իս այս բառը հոն «Յունահայ» հաս-կընալու է, դիտելով մանաւանդ որ կը յաջորդէ անոր, իբր համապատասխանող հակադրութիւն մը, «Պարսկաստանի դրացի Հայեր» բացատրութիւնը։ Եւ յիրաւի Սեբէոսի մէջ ալ կը տեսնանք թէ

գաղանաց դէմ, — Հռոմմայեցւոց համար ամփոփական տեսարան, և քիչ արժանի հռոմմէական պատմչի մը խանդավառ նըկարագրութեան, — բայց ժողովրդեան ապագաններէն առաջ (կրկէսին մէջ յաղթողը՝ կը տեսնէր ամբողջ ժողովուրդը կայսեր դարձած՝ իրեն կեանք խնդրելու համար), կանխած էր Մօրիկ՝ ազատարար հրամանը տալու, ցոյց իրեն մարդասիրութեան, ու թերեւս, քիչ մը՝ հայասիրութեան։

Յամենայն դէպս, քիչ վրայ կայ, որ Սեբաստինեին չափ օտարներէն՝ իր վաւերացումը գտնէ։



5. — Յովհաննէս Մայրավանեցի և Զամչեանի Մուշեղ Տարօնեցին. — Մեծահամբաւն Զամչեան իր Պատմութեան Բ. գրոց, ԽԶ գլխոյն 253 էջին մէջ՝ Մայրավանեցին վրայ այսպէս կը խօսի.

«Էր յայս աւուրս իշխան Տարօնոյ Մուշեղ Մամիկոնեան՝ այր հզօր և երևելի, որոյ բազում քաջութիւնս ցուցեալ էր ի դրան կայսեր և յաշխարհին Հայոց, զոր և յոյն պատմիչք յիշատակեն, այլ չէ-

ընտրելով ուղիղ արտասանել՝ Մուշեղ կամ Մուշարք կոչեն։

Սա առեալ էր զդուստր իւր զՄարիամ ի կնութիւն Վասակայ Արծրունւոյ. յորմէ ծնաւ Մեհրուժանոս, որ եղև յետոյ առաջնորդ ինքնակալեան վանացն Գլակայ։

Զայս Մուշեղ կարգեալ Մորիկ կայսր՝ զօրս Հայոց եղելոց ի բաժնին Յունաց, զի մեռեալ էր Յովհան նախարար՝ իշխան այնր կողման, և զուգէ յայս տակս պատմագիրք Յունաց՝ Յովհաննէս ևս կոչեն զՄուշեղ և կամ թերևս վասն լինելոյ նորա իշխան երկրին Յովհաննու Կարապետի՝ որ ի Մուշ Տարօնոյ»։

Անոնք որ հակառակ ամբողջութիւն մը յօրինելու գիտումն ունին, ինչպէս Չամչեան, այսպիսի մանրամասնութեանց մէջ կրնան երբեմն մոլորիլ։

Միւս պարագաներ՝ Մուշեղի սխալագրութիւնը չէ, քանի որ յոյն պատմիչք՝ միշտ Մուշեղը «Մոզէլէս» կը գրեն. հմմտ. այս կէտիս նկատմամբ՝ Կեդրենոսի Բ. հտ. էջ 25, որ կը խօսի Իրենէի ժամանակակից Ալեքս Մուշեղի մը վրայ, դարձեալ Կեդրենոս Բ. հտ. էջ 118–119 ուրիշ Ալեքս

Գիտենք ուրեմն թէ այս դէպքը պատահած ժամանակ Արտաբիանը ո՛ւր կը գտնուէցին Հռովմայեցի պատմիչք։

Մենանդր կը յիշատակէ թէ խոսրով յետ Հայաստան արշաւելու և նուաճելու՝ դէպ ի Թէոդոսուպոլիս դիմեց, անցնելով նախ Պասենան երկրէն։

Saint-Martin, Լըպոյ ծանօթաբանած ժամանակ (ԺԱ. էջ 1354, ծանօթ. 2) այսպէս կ'ըսէ. «Ce pays est peut-être le canton que les Arméniens appellent *Vanand*, et qui était situé en effet sur les frontières de l'Arménie romaine».

Պասենան (Βαζανῆς) Վանանդէն բաւական տարաձայն է. — բայց մեզ՝ Բասենանի սխալագրութիւնն է[1]։

Եւ յիրաւի Բասենայ Թէոդուպոլսի ճամբան վրայ է ուղեւորին համար՝ որ Հայաստանէն կու գայ՝ ինչպէս կ'ընէր խոսրով։

Ճանապարհ երբ Թէոդոսուպոլիս կը հասնի, Հռովմէական Հայաստանի մէջ մտնա-

1. Յովհ. Մամիկոնեան դէշ պատմագիր, բայց քաջ աշխարհագէտ, խոսրովայ համար այսպէս կը գրէ. «Ացեալ գնաց ի կողմանս Բասենոյ, ի Դուին, ի Հեր և ի Բանէ, բայց յորժամ եկին, ի Կարին»։ Հայաստան արշաւանքներու ուղեգիծն այդ էր։

բարեխօսները նոյնացնել։ Այլապէս՝ կո-կիսոնի դրացին նախընտրելի է՝ իբր հայրենիք Մօրկայ, որովհետև «Կապպադովկիոյ» մէջ կը գտնուի՝ բաւական հարազատ նշանակութեամբը։

⁂

7. — 570ի Հայկական ապստամբութիւնը։ —— Վարդանայ ապստամբութիւնը այնքան մեծաձայնակ եղաւ՝ որ զայն կը պատմեն ոչ միայն Հայք, այլ և Յոյնք և Լատինք։ Տեսնենք նախ թէ Սեբէոս ինչպէս կը ներկայացնէ։

«Եւ եղև ի խա ամի թագաւորութեան Խոսրովայ՝ որդւոյ Կաւատայ՝ ապստամբեաց Վարդան և ի բաց եկաց[1] ի ծա-

1. Ստեփաննոս Ասողիկ, փոխանակ կրօնական պատճառի, հետևեալը շարժառիթ կը դնէ ապստամբութեան. (Գիրք Բ. Գլ. Բ. էջ 85)։ «Եւ սորա Խոսրով արքային Պարսից զՍուրէն ոմն ազգական իւր, որում անուն էր Ճիհովր Վշնասպ՝ հանէ ի մարզպանութիւն Հայոց։ Որ եկեալ կալաւ զեկեղեցիս մեր յոյժ հարստահարելով զնախարարսն Հայոց. զի շինել քնոց կամաւ ատրուշանս, ոչ անսալով պայլին՝ առէր կնոջ իւրոյ։ Ընդ որ զայրացեալ Վարդանայ բդեշխի որդւոյ Վասակայ, որ էր յազգէն Մամիկոնէից, ապստամբեալ զինուոր ժամանակի՝ սուսերահարս առնէր զՍուրէն Մարզպան.... Եւ իշխանքն Հայոց համօրէն ապստամբեալ ի Պարսից՝ ձեռն ետուն ի Յունականն նոյնպէս ընդգրկեմ կայսերն աստիճի մարտիւ։ Իսկ Վարդանայ առեալ զմնացորդս իւր և զայլ ազատագունդն՝ փախստեայ անկանի ի թագաւորական քաղաքն Կոստանդնուպօլիս»։

տայութենէ թագաւորութեանն Պարսից, հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեաց։ Սպանեալ զՍուրէնն մարզպան յանկարծաւրէն ի Դուին քաղաքի. առին զաւար բազում և գնացին ի ծառայութիւն Յունաց։

Յայնժամ յառաջ քան զայս ապստամբեալ ի բաց եկաց ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան աշխարհին Սիւնեաց ի Դունայ ի Փայտակարան քաղաք և կարգեսցէ զքաղաքն ի Շահրմար Ատրպատականի. զի մի՛ ևս կոչեսցի անուն Հայոց ի վերայ նոցա։ Եւ կատարէր հրամանն։

Իսկ առ Հայոց երդնոյր թագաւորն Յունաց, և հաստատէր զնոյն ուխտ որ ի մէջ թագաւորացն էր երկոցունց՝ երանելւոյն Տրդատայ և Կոստանդիանոսի. և տայր նոցա զզաւրան կայսերական յաղթութիւն։ Եւ նոցա առեալ զզաւրն՝ դիմեցին ի վերայ քաղաքին Դունայ՝ և պաշարեալ կործանեցին ի վերուստ մինչև ի վայր. և հալածեցին զզաւրն Պարսից՝ որ ի նմա կային։

Բայց եհաս ի վերայ նոցա յանկարծաւրէն խռովութիւն մեծ, զի զեկեղեցի սրբոյն Գրիգորի, որ շինեալ էր մերձ ի քաղաքն,

յոյժ. և մատնեաց Տէր ի պարտութիւն զթագաւորն Պարսից՝ և զաւրս նորա զամենայն։ Եւ խորտակեցան առաջի թշնամեացն որով սուսերի, և փախեան յերեսաց նորա սաստիկ տագնապաւ, ոչ գիտելով զճանապարհս փախստեան իւրեանց՝ երթեալ անկանէին ի գետն մեծ՝ որ կոչի Եփրատէս։

Եւ ստացեալ ի մեր ձեռն՝ խաղաղացոյց զբազմութիւն փախստականացն իբրև ըզբազմութիւն մարախոյ, և ոչ կարացին յառաջ յայնմ ճողոպրել բազումք։ Բայց թագաւորն մազապուր ապրեալ սակաւուք՝ ի փոքունս և ի ձին սպառաստան եղեալ փախստական ընդ Աղձնեան անցանէր ի կայանս իւր երթայր։

Եւ նորա առին զբանակն ամենայն հանդերձ արքունականն գանձիւքն։ Եւ կալան զգամբիչն և զբանակն, և թափեցին զՄաշապերճանն. ամենայն զեղջակն ունէին բազմոքանդակար, որ էր ամբարք պատրաստականօք՝ և մարգարտաւ յօրինեալ, որ անուանեալ կոչէր ի նոցանէ զեղջակ փառաց։

Ասէ և Հրատն՝ զոր ընդ իւրեան բերձեցուցանէր թագաւորն Հանապազորդ յաւգ-

նախանձութիւն իւր՝ որ մեծագոյն համարեալ էր քան զամենայն կրակ, որ կոչէր ի նացունց Աթաշ. հեղձաւ ի գետն հանդերձ Մովպետան Մովպետաւ, և այլ բազմութիւն մեծամեծ աւագաց։ Յամենայն ժամ աւրհնեալ է Աստուած »։

Յովհան Կաթողիկոս. (էջ 83).

«Ի ժամանակի սորա Խոսրով արքայ Պարսից զօր բազում գումարեալ՝ առաքէ հրոսակս Վարդանայ, և ընդի պատերազմ սատակի ի դաշտին Խաղամախեաց և ի մշտական աղօթից սորայն Ներսեհի, անհնարին հարուածովք մաշէն զօրքն Վարդանայ ըզ-Պարսիկսն »։

Եւագր Սքոլաստիկոս իւր Ե գրոց Ի. գլուխը ամբողջապէս հայկական պատմութեան կը նուիրէ, այն դէպքը մեր պատմութեան մեծագոյններէն ըլլալով, հետաքրքրական կը համարիմ Եւագրի վկայութիւնը հոս թարգմանել։

«Ինչպէս Պարսից—Հայ կոչուածները[1] Փերսարմենայներուն կողմն անցան, որուն պատճառաւ Պարսից դէմ պատերազմ ծագեցաւ։

1. Ἀρμένιοι Πέρσαι.

Այդ տարի (Գրիգորի եպիսկոպոսութեան առաջին տարւոյն մէջ), բնակիչներն այն երկրին որ ի հնումն Մեծն Հայաստան, յետոյ Պարսկահայաստան կոչուեցաւ և որ ի հնումն Հռովմայեցւոց կը հնազանդէր, բայց Գորդիանոսէն վերջ (եկող) Փիլիպպոսէն՝ Շապհոյ ծախուեցաւ, — փոքր Հայաստան կոչուածը Հռովմայեցւոց հպատակերով, միւս ամբողջ մնացածը Պարսից, — որովհետև քրիստոնէական կրօնքը կը պաշտէին, կը չարչարուէին Պարսիկներէն, մանաւանդ այն բաներուն մէջ՝ որ իրենց ներքին օրինաց կը վերաբերէին. գաղտուկ պատգամաւոր ղրկեցին առ Յուստինոս, թախանձելով՝ զիրենք Հռովմայեցւոց հպատակ ընդունել, որպէս զի անվախ Աստուծոյ պաշտամունքները կատարեն, և ոչ որ իրենց արգելք ըլլայ. երբ Յուստինոս ընդունեցաւ (պատուիրակութիւնը) և կայսեր կողմէն գրուած նամակներով դաշինքներ կնքուեցան, և ահաւոր երդումներով ապահովցան, Հայերը սպաննեցին իրենց վրայ իշխողները, և ամէնքը միասին՝ Հռովմէական իշխանութեան կողմը անցան, թէ համազգի և թէ այլազգի դրացիներուն հետ՝ որ իրենց միացած էին.

ամենէն մեծը իրենց մէջ թէ՛ ցեղով, թէ պատուով և թէ՛ պատերազմական հմտութեամբ՝ էր Վարդան[1]:

Խօսելով այս բաներուն համար մեղադրեց (կայսրը). Յուստինոս ևս դրկեց (իր պատուիրակները) ըսելով թէ խաղաղութեան ժամանակը լրացած է և թէ անվայել էր մերժել քրիստոնեաները՝ որ պատերազմի ժամանակ քրիստոնեայներու կ'ապաւինին. Նա այսպէս պատասխանեց. բայց պատերազմի չէր պատրաստուեր. այլ անձնատուր եղաւ իր սովորական հաճոյքներուն, որովհետև ամէն բան երկրորդ կը համարէր նկատմամբ իր հաճոյից»:

Փոտի Մատենադարանին մէջ Photii Myriobiblon, sive bibliotheca, Rothomagi, MDCLIII) կը գտնենք կայսերաց հեղինակ մը՝ Թէոփանէս Բիւզանդացի կոչուած, զոր պէտք չէ շփոթել Թէոփանէս Խոստովանողի հետ, որուն պատմութիւնը հասած է մեզի:

Այն Թէոփանէս Բիւզանդացի, ինչպէս

1. Շատ հետաքրքրական է Մամիկոնեան տոհմի այս գովեստը՝ օտարազգիէ մը գրուած. Հռովմայեցիք անգամ՝ Հայոց ամենէն փայլուն ցեղը կը համարէին զայն. «Οὐαρδάνου προύχοντος παρ' αὐτοῖς γένει τε καὶ ἀξιώσει, καὶ τῇ περὶ τοὺς πολέμους ἐμπειρίᾳ»:

Չուպինը, — ապագայ մեծահռչակ ապըս-տամբը, — նաև Միհրան անունը կը կրէր, որ գործածած է Սեբէոս, Միհրևանեան մականունով միասին, և յիրաւի բաց օ-տարագրեաց ալ Միհրանեան ցեղէ էր Վահ-րամ։

Կը մնայ ստուգել՝ Խոսրովի անձամբ գալը Վարդանայ դէմ։

Մենանդր (էջ 395) կը յիշէ Խոսրովի այն արշաւանքն ի Հայաստան մինչև Թէո-դոսուպոլիս, անցնելով Պատեան գաւա-ռէն, որ Բասեան մեկնեցինք։

Սեբէոս կ՚ըսէ. «Գնաց ընդ Բագրեւանդ զանց արարեալ զկարնոյ քաղաքաւ»։

Յիրաւի Մենանդր ալ կը յիշէ թէ Խոս-րով մտաւ «ի գաւառն Մաքրավանդեանց (= Բագրեւանդ) և Տարանեանց (= Տա-րոնոյ), ἐν τῷ κλίματι Μακραβανδῶν καὶ Τα-ρανῶν» (ուղղագրելի բառ ես, Ταρωνῶν)։

«Զանց արարեալ զկարնոյ քաղաքաւ», յոյն պատմչաց մեկնութեամբ կը նշանակէ թէ Խոսրով չկրնալով առնուլ զԿարին, պաշարումը վերուց, Մելիտինէի վրայ եր-թալու համար։

Խոսրովի պարտութիւնն ալ այդ է, գրեթէ Սեբէոսի յիշած բոլոր մանրամաս-

նութիւններով. միայն ըստ Եւագրիոս Սքո-լաստիկոսի

1. Խոսրով Վարդանայ դէմ չգնաց, ինչպէս կ'ըսէ մեր Սեբէոսը, այլ Յուստինիանոսի, Յունաց մեծ սպարապետին դէմ՝ որ արեւելեան քրիստոնէից բոլոր բանակներով — Վարդան ալ անշուշտ կ'ընկերէր անոր — Խոսրովի դէմ կու գար[1]։

2. Խոսրովի յաղթութիւնը, և Սրբազան կրակին գերի բռնուիլը շատ գանձերու՝ հետ՝ Եւագրիոս ալ կը յիշատակէ[2] բայց, ըստ Եւագրիոսի, անոր տիրողը Վարդանը չէ, այլ Փոքր անուամբ Սկիւթացի մը (Հաւանալու է Գոթացի, կամ Հոն) որ յանկարծակի յարձակմամբ Պարսից բանակը շփոթցուց։

Վարդան Պոլսոյ մէջ անգործ չէ մնացած. իր մասին՝ հետեւեալը կը պատմէ Փոտ առ Զաքարիա գրած թղթի մը մէջ.

«Ի ժէ. ամի Յուստինիանոսի կայսեր, յորժամ զօրքն Սոփի չինէր, ի տօնի

1. Եւագրիոս. Գիրք Ե. գլուխ ԺԴ. «εἶδε τὸ Ῥωμαίων στράτευμα ὑπὸ Ἰουστινιανῷ ταττόμενον».

2. Փոքր Սկիւթացին «μεγάλων χρημάτων καὶ λαφύρων ἐγκρατὴς γενόμενος, τά τε σκευοφόρα τῶν ζώων σὺν καὶ αὐτοῖς φορτίοις φέρων, ἐν οἷς καὶ τὸ Χοσρόου σεβαστὸν πῦρ» (Էջ 400)։

որոց խաչին՝ ի հաղորդութենէ ի բաց ե-
լեալ Վարդան՝ ասելով, թէ վարդապետք
մեր ոչ հրամայեցին մեզ. Յայնժամ, ասէ,
հրամայեաց Թագաւորն ժողով լինել, և գալ
եպիսկոպոսաց բազմաց և վարդապետաց,
և ժողովեցան ի Կոստանդնուպօլիս ձէ-
հարք. որում հինգերորդ ժողովն կոչի, և
Հայք ընդ նոսին. և ձեռագրով ընկալան՝
զժողովն Քաղկեդոնի »:

Ինչպէս Չամչեան դիտել տուած է ար-
դէն (Հատ. Բ. էջ 521) մեծն Յուստինիանոս,
շինող Ս. Սոփիայի և գումարող հինգե-
րորդ ժողովին, հոս շփոթուած է Յուստի-
նոս Բ. ի հետ՝ որուն ժամանակ Վարդան
Պօլիս եկաւ:

Ասողիկ կ'ըսէ (տպ. Փարիզ, 1859. Բ
գիրք էջ 84).

« Եւ երթեալ յանդիման լինէր Թագա-
ւորին Յուստինիանոսի, որ զտաճարն Սոփիա
շինեաց. և հաղորդի ընդ նմա օրինաց. և
յիւր անունն անուանէ զաւագ դուռն Սուրբ
Սոփիայ, որ մինչև ցայսօր կոչի դուռն
Հայոց »:

Փարիզու ձեռագրատան մէջ կայ յու-
նարէն Հայոց Պատմութիւն մը « Διήγησις
ἀπὸ τοῦ ἁγίου Γρηγορίου μέχρι τοῦ νῦν »

Վարդան՝ այսպէս կը պատկերուի իր ներկայացուցիչ և պաշտպան Հայոց՝ թէ քաղաքական և թէ եկեղեցական իրաւանց։



8. — Մորիկի հայրը բանջարանոցի մէջ. — Համառօտած է Կիրակոսի այն զրոյցը՝ ըստ որում Թագաւորը Մորիկի պատգամաւորները իր հայրը բանջարանոցի մէջ գտան (էջ 28), և իրմէն կառավարութեան խորհուրդ ուզեցին։

Ասիկա զուտ առասպել է։ Թէոփիլակտոս Սիմոկատա, Մորիկի հայրը ներկայ կը դնէ՝ անոր հարսանեաց և գահակալութեան հանդէսին՝ բերելով. օծումէն առաջ «Ինքնակալն՝ իր Պաւղոս հայրը շքեղապէս և հանդիսով պալատ ընդունեցաւ» (Թէոփիլակտոս, Գրք. Ա. էջ 51)։



9. — Կիրակոսի ուրիշ առասպելները՝ գա-

1. Ասողիկ միայն նոյն բանը կը գրէ։ Տես Յովհ. Կաթ. (էջ 93).

«Յետ այսորիկ բազ համբաւէր կայսերն Մորկայ զՅովհան ... ի գաւառէ Կոգայ ի Բագարան գեղջէ, հայազգեանն կաթողիկոս յանդակցան հողմանն»։ Նոյնը Կիրակոս (էջ 29)։ Տես նաև Վարդան (էջ 60)։

նուէր զգեակ մը Գիլիգերդոն անուամբ, Միդիաց կոչուած գաւառին մէջ, ոչ հեռի Բենդոսաբիրոն քաղաքէն, ուր մօտ կայ բանտ մը՝ զոր Լեթէ կ'անուանեն բարբարոսք»։

(Φρούριον, Γιγιγέρδον ὄνομα αὐτῷ, ἐνδοτέρω δὲ τούτο τῆς Μηδικῆς ᾠκοδόμηται; ἐν χώρᾳ ἐπιλεγομένῃ Βιζακοῦ οὐ πόρρω Βενδοσαβειρων τῆς πόλεως. πρόσεστι δὲ τούτῳ καί τις εἱρκτή. Λήθην δὲ ὀνομάζουσι ταύτην οἱ βάρβαροι):



11. — *Մօրիկի կենաց ժամանակագրութիւնը.* — Այս մասին յանձնարարելով E. de Muraltի «Chronographie byzantine», (էջ 243–262), հոս կը նշանակենք Մօրիկի կենաց գլխաւոր դէպքերը միայն՝ ըստ իրենց տարեթուին.

Մօրիկի ծնունդը 539

Արեւելք դրկուիլը 577

Մօրիկի դարձ ի Կ. Պ. 582

Մօրիկ կեսար՝ և կայսեր փեսայ ընտրուած 582 օգ. 5

Մօրիկի հարսանիք և գահակալութիւն 582 օգ. 13

Հրդեհ ի Պօլիս 583 տարին

Կախարդին սպանումը 583

Երկրաշարժ 583 մայիս 10

Մխիթարըն Պարսից դէմ կը կռուի 583

Արշաւանք Աւարաց 583. 584. 586. 589. 592. 599. 594–600

Պարսկական պատերազմ 584 (Փիլիպպիկ յԱրեւելս) 585, 586 (Մաւրիկոսի կրտսեր) 587, տարր. 1 (Պրիսկոսի դէմ ապստ.) 589. 590 (Փիլիպպիկի Նփրկերտի քով) 591. (Դոմենցիոս յԱրեւելս, Մծբնայի պաշար.) Վերջ պարսկական պատերազմին 592 (յորում զահ եղաւ Խոսրով, շնորհիւ Ներսէս Հայկազնի)։

Յունաց Թէոդոս Թագաժառանգի 585

Թէոդոս կեսար անուանեալ 590, մարտ 26. կ'ամուսնանայ նոյնը՝ Գերմանոսի դըստեր հետ 601 նոյեմբ.

Լոմբարդական պատերազմ 587

Աֆրիկէի Մաւրիտանացւոց ապստամբելն և նուաճուիլ 588

Կաստապարանաց Անյուշ բերդէն կ'ազատին 588

Երկրաշարժ յԱնտիոք 589 հոկտ. 31

Վահրամի ապստ. 591

Մօրիկ կ'ընդունի զԽոսրով 592 փետր.

Նարսէս Խոսրովի հետ՝ Վահրամի դէմ կ'երթայ 592

Մօրիկի հօր մահը 593

Մօրիկի Պետրոս եղբայրը զօրավար ընտրուած՝ Պրիսկոսի տեղ 594–600, 602

Մօրիկի գերիներուն ջարդը 600 յուլիս

Ցուցմունք և տխուր գուշակութիւնք ի Պոլիս 600, 601, 602

Բանակի ապստամբութիւնը, Փոկաս կայսր հռչակուած 602

Ապստամբութիւն ժողովրդեան 602, նոյեմբ. 22

Փախուստ Մօրիկի 602 նոյեմբ. 23

Փոկաս ի Պոլիս 602 նոյեմբ. 23

Մօրիկի գլխատումն 602 նոյեմբ. 27



12. — Մօրիկի Դրամները. — Մօրիկի թագաւորութեան դրամներ հասած են մեզ. ցուցակով, ընթերցմամբ և պատկերով հրատարակուած են Corpus historiae byzantinae ի Վենետկեան հրատարակութեան XXI հատորին 86–87 էջին մէջ. ընդհանրապէս նա հոն կը ներկայանայ անմօրուս, մանկական դէմքով մը, ձեռքին

իրր անգամ Մորիկի գերդաստանին, հա-
մէական անուն կը կրէ։

Կը թուի թէ համէական մեծ գաղթա-
կանութիւն մ'եղած է դէպ ի փոքր Ասիոյ
խորերը, կամ ընկերները չափազանց են-
թարկուեցան համէական ազդեցութեանց,
այնպէս Մելիտինէ, յունական Հայաս-
տանի մայրաքաղաքը, Պտղոմէոսեան ա-
նուամբ եպիսկոպոս մը ունի չներկա-
յացնէր մեզ։



15. — Հայաստանի աշխարհագրութիւնը՝ Մորիկի ժամանակ. — Անկարելի է գծել քարտէս մը, ուր Հայաստանը ներկայա-
ցուած ըլլայ այնպէս՝ ինչպէս էր Մորիկի
ժամանակ։ Թագաւորի պարտութենէն վերջ՝
ամբողջ Հայաստան և Միջագետք իրեն կը
պատկանէին, բայց անկից յառաջ՝ սահ-
մանները միշտ կ'եղծանէին՝ արշաւողնե-
րու քայլերէն։ Հռոմայեցիք արեւմուտքէն
և հիւսիսի կողմէն միանգամայն կը յառա-
ջէին. այսպէս Արծնի մէջ կռուած ժամա-
նակ, Միւնիքի մէջ (Մուանիա) մէջ ալ
կռուի կ'առաջարկէին Փարսից։ Այս գծին
մէջտեղ Թէոդոսուպօլիսը յունական սահմանի
ցայտուն կէտերէն մին կը ներկայանայ։

իշխանք Պարսից կողմն անցեալ էր. այս պարագայն կը լսեն յայն պատմիչք. բայց արդեօք չի կրնար մեկնութիւնն ըլլալ այդ՝ Հռոմայեցւոց Սիւնեաց մէջ կեդրոնանալուն։

Յովհաննէս Կաթողիկոս (Գլ. ԺԶ, էջ 88) կ՚ըսէ.

«Այս կայսերն Մորկայ ձեռներիցութեամբ իմն փոփոխումն սահմանաց անուանց աշխարհացն այնոցիկ, որ ի ներքոյն Արամայ կարգաւ եդեալ էր։ Եւ նախ զԱրմենին զայն որ Առաջին Հայքն անուանիւր, երկրորդ Հայք զնա Մորիկ կոչեաց, յորում մայրաքաղաք է Սեբաստիա, իսկ զԿապադովկիա, յորում մայրաքաղաք Կեսարիա և երկրորդ Հայք նախ անուանեալ, կոչէ զնա երրորդ Հայք և ասէ զնա Եփրատի։ Իսկ զՄելիտինէ՝ որ ունի զՀամանուն իւր գաւառ, է և երրորդ Հայք. կոչէ զնա առաջին Հայք։ Իսկ զՊոնտոս՝ յորում մայրաքաղաք է Տրապիզոն, կոչէ զնա մասն մեծ Հայոց։ Եւ զչորրորդն կոչեցեալ Հայք՝ յորում մայրաքաղաք Մարտիրոսաց պոլիս, այսինքն Նփրկերտ, Յուստինիանուպօլիս զնա գրէ ի դիւան արքունի։

Պարծեալ աշխարհն Կարնոյ՝ յորում մայրաքաղաք է Թէոդոսուպոլիս, անուանէ զնա մեծ մասն մեծ Հայոց։ Եւ որ ի մեծ Հայոց մասն ինչ մնացեալ էր ի ձեռս Հոռոմոց՝ ի կողմանց անտի Բասենոյ մինչեւ ի սահմանս Արարատեանի, մեծ Հայք զնա կոչէ։ Իսկ զկողմանս Տայոց սահմանօքն իւրովք հանդերձ՝ խորագոյն Հայք անուանէ, եւ զկողմն Գեղին քաղաքի՝ ներքագոյն Հայք։ Այսպէս ամենեցունց սոցա փոփոխումն արարեալ Մօրկայ՝ զրէ ի դիւանս արքունի։ Արդ այսոքիկ սակս այսորիկ առ յինէն քեզ երկրորդեալ գրեցաւ, զի մի՛ տգիտութիւն ինչ ինձ վարցես զայն, զոր յառաջագոյն առ յինէն քեզ պատմեալ եղեւ առաջինն եւ երկրորդն եւ երրորդն եւ չորրորդ Հայք։ Զի այն առաջինն ի մերոյն յԱրամայ քաջէ անուանեալ եղեւ, իսկ այս երկրորդ՝ ի Մօրկայ կայսերէ Հոռոմոց»։

Վարդան պատմիչ (էջ 59) ընդօրինակած է այն ամբողջ հատուածը. «Սա (Մօրիկ) յանդգնեալ գծեալ անուանս յԱրամէն փոխէ. զԱրմենին կոչեցեալ ի նմանէ, որ է առաջին Հայք» եւայլն մինչեւ «զրէ ի դիւանս արքունի»։ Կրպաւոնիս

ի հին պատմութիւնս ինչ, երեւի թէ Յոյնք յառաջ քան զՄօրիկ և քան զՅուստինիանոս այլազգ կոչէին զանուանս աշխարհին փոքուն Հայոց՝ առաջին և երկրորդ Հայք։ ... Իսկ Մաղաղաս ասորի անտիոքացի (Գիրք ԺԲ.) զայլ ինն պատմէ և զբաժանումն աշխարհին Հայոց յառաջին և յերկրորդ՝ ածէ ի ժամանակս Մաքսիմիանեայ Կայսերին, որ սպանաւ ի մեծէն Կոստանդիանոսէ. յորժամ, ասէ, Հայք և Պարսիկք միաբանեալ յարձակեցան յիշխանութիւն Հռովմայեցւոց, խաղաց Մաքսիմիանոս ի վերայ նոցա և յաղթահարեաց զնոսա. և գաւառս ի Պարսկահայոց յինքն գրաւեալ՝ ընդ Հռովմայեցւոց էարկ իշխանութեամբ. զորս յառաջին և յերկրորդ Հայս Հռովմայեցւոց բաժանեաց ։

Խոսրովու և Վահրամի պատերազմը բնականաբար Հայաստանի ճակատագրին համար մեծ նշանակութիւն ունէր. այս մասին Յովհան կաթողիկոս այսպէս կը խօսի.

«Խնդրէ Մօրիկ ի Խոսրովայ զՄիջագետս՝ Դարայիւ և Մծբնաւ հանդերձ, և ի Հայոց զայն աշխարհ՝ որ Տանուտիրական գունդն անուանէր, բաց յատանէն

ի Դվինն քաղաքէ, և յերկուցն եւս գաւառաց՝ որ է Մասեաց ոտն և կողմն Արագածու։

Զայսոսիկ ի բաց զատուցեալ, զայլն ամենայն թողու Խոսրով ի Մօրիկ, ի լեռնէն որ կոչի Ընձաքիսար մինչև ցԱռեստ աւան և ցՀացիւն »։

Նոյնը բառացի Վարդան (էջ 59)։

Սեբէոս (Գ., Դպր. Գլ. Գ. էջ 75), կ'ըսէ. «Յայնժամ Խոսրով ետ ամենեցուն ըստ իւրաքանչիւր չափուն՝ պարգեւս, և արձակեաց յիւրմէ... ետ նոցա զԱսորեստան զամենայն մինչև ցՄծբին, և զերկիրն Հայոց՝ որ ընդ իւրով իշխանութեամբն էր. Զոստն տանուտէրականն մինչև ցգետն Հրազդան. և զգաւառն Կոտէից մինչև ցաւանն Գառնի, և ցեզր ծովուն Բզնունեաց և ցԱռեստ աւան և ցԿողովիտ գաւառ մինչև ցՀացիւն և ցՄակու։ Եւ կողմն Վասպուրականն գնդին էր ի ծառայութիւն Պարսից արքային։ Եւ ի նախարարացն բազումք ի Յունաց կողմանէ՝ և սակաւք ի Պարսից »։

Մօրիկի ժամանակակից Հայաստանը՝ աւերակներու կոյտ մ'եղաւ երկար ժամանակ. թէ՛ Յոյնք, թէ՛ Պարսիկք զայն կ'ա-

ւերէին. ինչ որ մին մոռցած էր բանել, ձուարացն էր հակառակորդին։

Ընականաբար վաճառականութիւն և այլ ամէն արհեստներ ընկած էին ճանապարհորդութեանց վտանգներուն պատճառաւ, կամ միայն՝ գերիներու տուրևառը ծաղկած վիճակի մէջ էր։

Զինուորական ոգին սակայն արթնցաւ Հայ ազգին մէջ, որ երբ ինքնիրեն մինակ կը մնայ, երկպառակեալ է և անվստահ, բայց երբ նեցուկ մ'ունի, այնպիսի յատկութիւններ ցոյց կու տայ յաճախ՝ որմէ զուրկ է նոյն իսկ այն՝ որուն կ'ապաւինի։ Ներսէս Հայկազեան՝ որ Պարսից թագաւորը կը ծառայեցնէ իբրև անձնեղեակ պատերազմական գործերու, աչքերը ուղղած դէպ ի Պարսկաստան՝ որուն տիրելը մի վայրկեանի գործ կը թուի իրեն, արժանի է նկարի մը՝ որ իր դարու ոգին պիտի պատկերէր միանգամայն։

Մորիկ Հայաստանի համար անմոռանալի բաղդ մ'եղաւ, և ոչ ոք լաւագոյն կերպով իրագործեց ինչ որ դարերէ վեր Հայոց Հռոմը կ'երազէր և Հայաստանը կը տենչար. — միութիւնը՝ Արևելքի քրիստոնեայ ազգերուն։

# Բ.

# ԽԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ՎԱՐԴԱՆԱՅ ՎՐԱՅ

16. Ո՞ր պատմիչներ խօսած են Վարդանայ վրայ. — Այն կայսեր կեանքը պատմողներէն ամենէն աւելի ժամանակաւ մերձաւորներն են.

1. Թէոփանէս վանահայր և խոստովանող ծնեալ յամին 759, (տե՛ս Ա. Հատոր էջ 569–578)։

2. Ս. Նիկեփոր Հայրապետն Կոստանդնուպոլսոյ և խոստովանող, մեռած 828ին. Վարդանայ վրայ կը խօսի էջ 50–55։

Յետագայ ժամանակագիրներէն ամէնքն ալ խօսած են այն կայսեր վրայ, ինչպէս Կեդրենոս (էջ 690–707). Գլիկաս էջ) 507), Զոնարաս, Եփրեմիոս, և այլք։

Հայ պատմիչներէն զայն կը յիշատակեն.

ինչպէս կրնար իր հայրը պատրիկ ըլլալ և յունական անուն մը կրող։

Այս վերջին կէտին գալով՝ յունական Հայաստանի մէջ սովորական բան մ'էր թէ՛ հայ և թէ՛ յունական անուն միանգամայն գործածել (Վարդ—Փոկաս, Աշոտ—Մուշեղ, Թէոփիլակտոս—Վաչական, Սմբատ—Կոստանդին՝ որդի Լևոն Հայկազնի) և անհաւանական չէ՝ որ պատրիկ ըլլալէն յետոյ՝ Վարդանի հայրը յունական անուն մ'առած ըլլայ։

18. Հայոց նեղ իրեն ապերու ունեցած է Վարդան. — Վարդանի ժամանակ Հայաստան արաբացի ոստիկաններէ կը կառավարուէր. 710—713ին՝ Հայաստանի գլխաւոր դէպքն եղաւ Հայ կաթողիկոսին վէճը Աղուանից Մովսէս կաթողիկոսին հետ։ Քիչ վերջ էր (717ին) որ Վահան Գողթնացւոյ նահատակութիւնն հանդիպեցաւ։ (Տե՛ս Չամչեան, Բ, էջ 384)։

Մերազնեայ գրիչները կը նկատեն ըզ-Վարդան՝ իբր Հայատեաց. Հ. Ալիշան կ'ըսէ (Յուշիկք).

«Նեղեց զՀայս՝ շատ գաղթական հա-

նել տալով ի մեծ Հայոց՝ ըշեց Դ. և Գ. Հայոց կողմերը, որ են Մալաթիա և Խարբերդ»։

Յետոյ նա կը յիշատակէ Յուստինիանոսի, Հոռի Զ, յիշատակածը.

«Հալածեաց զազգս Հայոց վասն ուղղափառ հաւատոյ յիշխանութենէ իւրմէ, և ուրախացեալ Տաճկացն, բնակեցուցին զնոսա ի Մելտենի, ի Միջագետս Ասորւոց»։

Յոյն պատմիչներ՝ բոլորովին հակառակը կ'ըսեն. ըստ Թէոփանէսի՝ Արաբացիք հալածեցին զՀայեր, և Վլարդան ընդունեցաւ զանոնք, «զՀայեր չահելու համար» կ'աւելցնէ Գելցեր։ «Յայսմ ամի (410) զՀայերն՝ որ հալածուած էին իրենց աշխարհէն, Փիլիպպիկոս ի Մելիտինէ և ի չորրորդ Հայս բնակել ստիպեց». (Թէոփանէս, էջ 585)։

Պէտք չէ այս դէպքը շփոթել՝ ու միացնել ուրիշ դէպքի մը հետ, ինչպէս ըրած է Չամչեան (Բ, էջ 583)։

Թէոփանէս զայն ուրիշ տեղ պատմած է. տասը տարի առաջ տեղի ունեցած էր ան. Վահան, եօթնայեւ կոչուած Հայր՝ զՉորրորդ Հայս Արաբացւոց կը յանձնէ։

Ապսիմար (դեռ կայսր չէ Վարդան), այս խնդրոյն համար՝ Կեփաղոնիա կը դրկէ զՎարդան (Թէոփանէս, էջ 569)։



19. Վարդան ինչպէս ծերբակալուեցաւ. — Վարդանի պալատէն տարուիլն և կուրանալը՝ հանդիպեցան պենտեկոստէէն օր մ՚առաջ։

Դաւադիրներն էին, ըստ Թէոփանէսի, Գէորգ Բուրաֆոս, Օփսիկիոն բանակաթեմի զօրավար և Թէոդոր Միյակիոս. ըստ Կեդրենոսի կար նաև դաւակցաց մէջ Ռուփոս, նոյնպէս Օփսիկեոնի բանակաթեմէն։

[illegible], Վարդանի շրջագայութիւնը Պոլսոյ փողոցներուն մէջ՝ և խնջոյքը տեղի ունեցած կը թուին առաւօտը. որովհետև, կայսրը կէսօր հանգչելու սովորութիւն ունէր.

Բնականաբար անտեղի է կարծել՝ թէ ցորեկուան լուսով կայսրը սաւաններու մէջ փաթթած՝ առած տարած ըլլան կըրկէսը. այնքան գինովցած էր Վարդան, որ կէսօր հանգչած ժամանակ՝ մինչև կէս

Մահ Յուստինեայ և իր որդւոյ 711.
Փիլիպպիկ գահ կ'ելնէ 711 նոյեմբ.
Պաշտօնանկ կ'ընէ Կիւրոս պատրիարքը
712 յուն. 8
Միակամք, դատապարտութիւն Զ ժողո-
վոյ, կրկին Հռոմայ մէջ 712
Փիլիպպիկ Հայերը Մելիտինէն կը փո-
խադրէ 712
Արաբք կը առնեն Ամասիոյ, Մալաթիոյ
և Սպանիոյ 712
Բուլղարք մինչև Պոլսոյ դրան առջև
կը հասնին 712
Աբաս Արաբը Անտիոքայ կը առնէ 713
Երկրաշարժ յԱսորիս 713 փետր. 28
Փիլիպպիկի կուրանալը, Յունիս 3։



21. Վարդանի գրածները. — Վարդանի գրածք աշխարհին մէջ միակ վաւերական եղածն է՝ որ Մամիկոնեանի մը գծերը կը պատկերէ։

Մեր պատմիչները միայն Մամիկոնեանց հոգին պատկերացուցած են։

Վարդան, իր գրածին վրայ, զօրավարի մ'երիտասարդութիւնն է. մէկ ձեռքին մէջ՝ խաչազարդ երկրագունտ մ'ունի, միւսին

մէջ գաւազան մը՝ որուն ծայրը արծիւ մը հանգչած է։ Արձանագրութիւնն է. Dy Pilippicus multi an.

Դրամին միւս կողմը՝ մեծ խաչ մը կայ քառակուսի քարերու պատուանդանի մը վրայ, որուն շուրջը գրուած է լատիներէն. Victoria Augus. և տակը՝ Conob։

*

22. Վարդանի գերդաստանը. — Այս մասին կատարելապէս կ՚անգիտանանք. ոչ եղբօր, ոչ որդւոյ յիշատակութիւն. կը թուի թէ ամուսնացած չէր։ — Վերջացնենք Վարդանի կենդանագիրը ընելով լաւ օտար պատմիչի մը. «Խօսքով ճարտասան, հմուտ գրութեանց մէջ, քաջ խորհուրդ տուող, դարձեալ բաւական ճարտար մի քանի դէպքերու մէջ. կառավարելու մէջ անյարմար, ընդունայն լեզուանիութեամբ զարդարուած, խակ գործերով բնաւ»։ (Եփրեմիոս, ոտանաւոր պատմութիւն, էջ 73, տող 1570)։

# Գ

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԼԵՒՈՆ ՀԱՅԿԱԶՆԻ ՎՐԱՅ

---

23. Որ պատմիչներ խօսած են Լեւոնի վրայ. — Թէոփանէս վանահայր, որ նոյն իսկ Լեւոն Հայկազնէն չարչարուելով իբրեւ պատկերապաշտ՝ խոստովանող կոչուեցաւ, այն կայսեր վրայ կը խօսի իր Պատմութեան Ա. հտ. էջ 774–785. Կեդրենոս Բ. հտ. 45–71. Գլիկաս 533. Սիմէոն Մագիստրոս կրօնաւոր, Լեւոնի դէմ հակակրութեամբ գրող էջ 603–620. Գէորգ կրօնաւոր էջ 763–792. Թէոփանէս Շարայարեալ (Theophanes Continuatus էջ 3–40). Գենեսիոս «Գիրք Թագաւորաց» Ա. էջ 3–50 «Յաղագս Լեւոնի Ամորհեցւոյ» վերնագրին տակ.

Հայկազնի = վերնագրով՝ այսպէս կը խօ-սի.

«Հայոց երկիրն եկած էր. անոր հա-մար չար էր ու դժպհի:

Հեռաւոր և հին աւանդութիւնը, — ինչ-պէս կը պատմեն ծերերն ամենք՝ որ ա-սոր և իր հայրերուն վրայ ի վաղուց աւանդուածները գիտեն, — կ՚ըսէ թէ զտա-կերպով յառաջ եկած չէր անկից (= զտա-հայ չէր), բայց որով ծնած էր Ասորե-ստանեայց (τῶν Ἀσσυρίων) ամենաչար շա-ռաւիղէն, որոնցմէ առած էր իր հայկական արիւնը, ինչպէս կը համբաւուի. վասնզի սերած էր յորդւոցն Սենեքերիմայ, որ Ա-սորւոց իշխեց երբեմն և մահացու վէրք ստացաւ անոնցմէ՝ զորս ինք ծնած էր. անոնք որ մարդասպան աջերնին դէպի հայրերնին ուղղեցին, և արտասովորութեան արիւնհեղութեամբ, և նոյն իսկ իրենց ձեռքով հայրերնին սպաննեցին, իսկոյն դէպ ի Հայոց գաւառները փախչելով ա-զատեցան. մինչև մեր օրեր՝ պահուեցա-այդ հայրասպան սերմը, և բուսաւ անկից մարդասպան պտուղ մը». (Գէորգ Կրօնա-ւոր էջ 769, տպուած՝ Թէոփանէս Շա-րունակողի և Սիմէոն Մագիստրոսի հետ):

Թէոփանէս Խոստովանող (էջ 750) կը պատմէ թէ փետրուար ամսեան մէջ շատեր «զԱրշաւիր զանձնապետ և պատրիկ, զայր բարեպաշտ և ամենահմուտ, կայսր անուանեցին». (Ἀρσαβὴρ τὸν κοιαίστωρα καὶ πατρίκιον ἄνδρα εὐσεβῆ καὶ λογιώτατον ἐψηφίζοντο), որոնց հետ պատժուեցան ոչ միայն աշխարհականներ, այլ և եկեղեցականներ և քահանայներ:

Լեւոնի անուան յիշատակութիւն չենք գտներ: Ինչու արդեօք զայն աքսորուած ըսել այդ դաւին առթիւ:

Երբ 808ին Լեւոն աքսորուեցաւ, ինչպէս կրնար 811ի փետրուար 22ին Արաբացւոց դէմ կռուիլ Եւքայիտայի մէջ, որովհետեւ մենք կարծէն գիտենք՝ թէ Լեւոն յաքսոր մնաց՝ մինչեւ Ռանգաբէի գահ ելնելը, որ հանդիպեցաւ 811ի հոկտեմբեր 2ին:

Արդեօք հաստատապէս կարող ենք հետեւցնել՝ թէ Լեւոն Արշաւիրի դաւին մասնակից չէր, Եւքայիտայի պարտութեան առթիւ աքսորուեցաւ 811ի փետրուարին, նոյն տարւոյ հոկտ. — յետ ինն ամսեայ աքսորի — վերադարձաւ, Միքայէլ Կիւրոպաղատի թագաւորութեան առթիւ (811 հոկտ. 9):



27. Լեւոն նենգաւորութեամբ գահ ելաւ: — Պետրոս Կրօնաւոր, Սիմէոն Մագիստրոս, Թէոփանէս Շարայարող եւ այլ բիւզանդացի պատմիչք կ՚ըսեն թէ Լեւոն կամաւ թողուց որ Միքայէլ Ռանգաբէ պատերազմի մէջ յաղթուի, որպէս զի ինքը գահ ելնէ:

Այդ պատմաբաններէն ոմանք զԼեւոն ատելի անձեր կ՚երեւակայեն, եւ ըստ Գելցերի, պարզ պարտուց զգացմամբ թագաւորել յանձն առաւ:

Այս կարծիքը կը հաստատէ կերպով մը՝ ժամանակակիցն Թէոփանէս՝ որ Լեւոնի նենգաւոր դիտման վրայ չէ խօսած:

Ըստ մեզ՝ Լեւոնի այս արդարացումը՝ բաւական անտեղի է: Ժամանակակից վկայութիւն մը՝ այսպէս արժէք չունի, որովհետեւ շատ դիւրին չէր՝ Լեւոնի պէս բռնաւորի մը արարքը պարսաւելով պատմել: Եւ գրեթէ Բիւզանդիոյ բոլոր թագաւորաժառանգներուն համար կարելի է ըսել՝ թէ հրաժարականը տուած պաշտօն՝ ուրիշ դիտում չունէին, բայց եթէ իրենց ապագայ պատիժը մեղմացնել, եթէ բաղդը զիրենք մատնէր:

Թէոփանէս յէջ 771) աղանդաւորք կը հալածուին Լեւոնէն 812.

Լեւոն Թէպէթի դէմ կը կռուի 812 օգոստոս.

Լեւոն իր զօրքերով Պօլիս կու գայ՝ Բուլղարաց դէմ երթալու համար 813 մայիս 1.

Բուլղարական պատերազմ. Լեւոնի փախուստը. Հասարակաց պարտութիւնը. Կրումոսի յաղթանակը 813 յունիս 22.

Լեւոն Պօլսոյ քով 813 յունիս 24.

Լեւոն իբր կայսր կը մանէ Միքայէլէն զանէն 813 յուլիս 10.

Լեւոն Ս. Սոփիայի մէջ կայսր կ'օծուի 813 յուլիս 11.

Կրումոս Պօլսոյ դիմաց. իր վիրաւորուիլը 813 յուլիս 16.

Լեւոն իր Սմբատ որդին գահակից կ'ընէ 813 դեկտ. 25.

Կրումոսի մահ 814 ապրիլ 13.

Ճարաթ կրօնաւորի ննջը 814 (յուլիս).

Պատկերամարտութեան խնդիրներ 814 (մայիս)—815 ապրիլ 1.

Արաբաց կը յաղթէ 816.

Բուլղարաց կը յաղթէ 817 (յունուար).

Թէոփանէսի աքսոր 818.

Միքայէլ Թլուատ կասկածի ենթար-կուած՝ Արեւելք կ'աքսորուի 820.

Լեւոնի սպանումն 820 դեկտ. 25.

Համեմ. այս մասին Muraltի Chronographie).



29. — Լեւոնի ընտանիքը. — Լեւոնի հայրը կը կոչուէր Վարդ պատրիկ, իր կինն էր Թէոդոսիա դուստր Արշաւիրի: Լեւոնի որդիներն են.

1. Սմբատ կամ Կոստանդին.

2. Վասիլ (Եւստաթիոս, կրօնաւոր ըլ-լալէն յետոյ).

3. Գրիգոր

4. Թէոդոսիոս

Լեւոն մէկ աղջիկ ունեցաւ, որուն ա-նունը չյիշուիր, և զոր Բանդացէի կինը սպաննեց՝ կատաղութեանը ժամանակ (զայս յիշած է միայն Լեւոն Գ. քահանայապետ, իր նամակին մէջ: — Կայսերաց դրամնե-րու ցանկին մէջ Լեւոնինը չենք դներ:

# Դ

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ՎԱՍԼԻ ՎՐԱՅ

30. — Ո՞ր հեղինակներ խօսած են Վասլի վրայ. — Մեծագոյն հեղինակութիւնք կը համարուին այս երեքին նկատմամբ՝ 1. Կոստանդինի Պորփիւռոժէնէի ընծայուած և Թէոփանէս Շարունակողի կոչուած Վարք Վասլի (տես Նիպուհրի տպագրութիւնը 211 էջէն մինչև 353)։

2. Սիմէոն Մագիստրոս Լոգոթէտ (տպուած Թէոփանէս Շարունակողի հատորին մէջ (էջ. 686—700)։

3. Գէորգ Կրօնաւոր (նոյն հատորի մէջ, "Βασιλεία Βασιλείου Μακεδόνος„ էջս 839—848)։

4. Կեդրենոս (Բ. հատոր էջ 180—373)։

5. Գլիկաս պատմիչ (էջ 545—553)։

*Տե՛ս Նաեւ Գենեսիոս, Եփրեմիոս և այլք։*

*Հարկ էր վկայէն յետոյ այլրոց բոլոր բուզանդացի պատմիչներին յիշատակել՝ և-թէ ուզէինք Վասիլի վրայ խօսող հեղինա-կաց ամբողջական ցուցակը կազմել։*

*Հայ պատմիչներ՝ Վասիլի վրայ համե-մատաբար աւելի ճոխաբար խօսած են քան այլոց. այն կէտը տե՛ս* 32 *երորդ ծանօթութեան մէջ։*



31. — *Հայազգի էր Վասիլ. արշակու-նեաց ցեղէն էր.* —

*Վկայներուն հնագոյնը. (Կոստանդին Պերփիւռոսմէն իր հաւուն վրայ խօսելով կ'ըսէ.*

*«Ինքնակալն Վասիլ ծագած էր Մակե-դոնացւոց երկրէն, բայց ազգաւ՝ Հայոց ար-շակունեաց ցեղէն».* Αὐτοκράτωρ Βασίλειος ὡρμᾶτο μὲν ἐκ τῆς Μακεδόνων γῆς, τὸ δὲ γένος εἶλκεν ἐξ Ἀρμενίων ἔθνους Ἀρσακίων:

(*Տե՛ս Կոստանդին Պերփիւռոսմէն, հրա-տարակեալ Նիբուրի շարքին մէջ* Theophanes continuatus *վերնագրի տակ, էջ* 212).

կրնային Պօլիս եկած ըլլալ. Պերփեռուժենի զրոյցէն՝ եթէ գահու խնդիրը զեղչուի, թէ զագթականութիւնը, թէ ժամանակագրութիւնը ճշմարտանման երեւոյթ մը կը ստանան։ Եղիշէի եւ Փարպեցւոյ մէջ յանուանէ յիշատակուած չենք գտներ Արշաւան եւ Կղինէն զոյգ արշակունիները, մանրամասնութեանց ճշգրտութիւն սակայն կարեւորութիւն չունի վաւերի նախնական խնդրոյն նկատմամբ։ Պերփեռուժէն, խօսքը շարունակելով, մեզ կ՚իմացնէ թէ զազթող արշակունեաց մէջ նշանաւոր հանդիսացաւ Մայիբրոսի։

Զամշեան այն անունը՝ Մեղոփս անուան հետ կը համեմատէ. Rambaud գաղղիացին՝ իր Constantin Porpyrogénète գործին մէջ, աւելի յաջող կերպով զայն կը նոյնացնէ հայկական Հմայեակ անուան հետ, թէպէտեւ սա Մամիկոնեանցմէ գործածուած է աւելի քան Արշակունիներէն։ Saint Martin, Լըպոյի «Histoire du Bas Empire»ը ծանօթարանած ժամանակ՝ Մայիբրոսը նոյնպէս Հմայեակի հետ համեմատած է։

«Շատ ժամանակ վերջ, երբ Կոստանդին իր Ելենէն մօր հետ կը բաժանէր, այն

Պերսիեռամէնի. (Տես Կեդրենոսի ժամանակագրութիւն, Բ. հատոր, էջ 183).

«Զինքը (զՎասիլ) Մակեդոնացւոց երկիրը ըսծայեն, իսկ իր ազգութիւնը կ'առնուր ի Հայոց, սերեալ ի պայծառափայլ տոհմէն Արշակունեաց, որոյմէ Թագաւոր առնելու օրէնք ունէին Պարթեւք, Մարք և Հայք, վասն փառաց տոհմին Արշակայ»։

Գրիգորս պատմիչ (էջ 560), որ մանրամասնօրէն կը յիշէ Հայաստանէն եկած հրէշ մը — սա երկու գլուխ ունէր, մէկ իրան, չորս ոտք — իր հրէշին հետ զբաղած՝ կը մոռնայ Վասիլի ազգութեան վրայ մանրամասն խօսիլ, և կ'անցնի "Βασίλειος ὁ μακέδων„ կոչելով, ինչպէս կ'ընեն նաև ուրիշ յետնագոյնեան գրիչներ, տաղաչափ Եփրեմիոսը, Գէորգ Ճիրանց, (յէջ 109), Գէորգ Կրօնաւորը որ Միքայէլի և Թէոդորայի վրայ խօսած ժամանակ՝ (էջ 817) այսպէս կ'ըսէ. «Վասիլ ծնաւ ի Մակեդոնիա, Ադրիանուպօլսոյ գիւղի մը մէջ»։ Նոյնպէս կը խօսի Սիմէոն Մագիստրոս (յէջ 655), որուն վկայութիւնը յետոյ պիտի տեսնենք։

1. Այս ամէն հեղինակները ուրիշ տեսակէտներով ալ խօսած են Վասիլի վրայ

Միայն մէկ պատմիչ եղած է (Համզա սպահանցին) ամբողջ միջին դարու մէջ՝ որ սլաւական ծագում ընծայած է Վասիլ Ա.ի։ (Հմմտ. Rambaud, Constantin Porphyrogénète):

Իր խօսքը ինչ արժէք ունի եւրոպացի գիտնականաց առջեւ.

Գելցեր կ'ըսէ իր Բիւզանդական պատմութեան ուրուագծին մէջ. (էջ 974).

«Թէ նոր հարստութիւնը (= Վասիլէն յառաջ եկած) հայկական ծագում ունէր և ոչ իսկ տարակոյս կը վերցնէ». An der armenischen Herkunft der neuen Dynastie ist nicht zu zweifeln.

Rambaud կը ժպտի Համզայի վկայութեան վրայ և ինքզինքը կռուանելով կը յայտարարէ Բիւզանդիոյ ժամանակակից պատմիչներուն։

Lebeau «Histoire du Bas-Empire»ի մէջ լռութեամբ կ'անցնի այս խնդրոյ վրայէն, «Մակեդոնացի» անուանը գործածելով՝ զոր ծննդավայրին համար բաստացած է եւրոպացիներէն՝ Վասիլ։ Նա ամենքի անփոյթ եղած է, քան անտեղեակ։

Saint-Martin նոյն գործը ծանօթագրած ժամանակ՝ կը բողոքէ այդ բա-

թեան դէմ, ոչ միայն վկայի հայութիւնը զանանելով ջերմեռանդօրէն, այլ նաև դիտել տալով՝ որ վկայի եղբայրը՝ Սմբատ հայկական անունը կը կրէր։

Գելցեր՝ Պօդպուրենսկեա համեմատական գործոյն՝ հայկական հարստութեան ներքև փառաւորուած վերնագիրը դնել է զատ, շատ անտեղի չգտներ որ նոյն իսկ արշակունի եղած ըլլայ վկան, և կ'աւելցնէ. «Հայ ասպետները և վարձկան զօրքերը, որ այս դարուն մէջ իրենց քաջութեամբը՝ համջէնական կայսրութիւնը միացած կը պահէին, այնչափ իրաւունք ունէին պաշտաներէն և Արշակունիններէն սերելու, որչափ մեր վարդենի ազնուականութեան բազմաթիւ ընտանիքները՝ խաչակիրներէն կամ միջին դարու ասպետներէն»։

Saint-Martin դիտել կու տայ որ բազմաթիւ արշակունիներ կային արքունեաց մէջ՝ Յուստինիանոսէն սկսեալ. թէ Փոկաս ամենէն բարձր ընտանիքները՝ հայ ազնուականներէն կը բաղկանային, և թէ շատ հաւանականօրէն վկային կը սերէր այն Արտաւանէն՝ որ նշանաւոր հանդիսացաւ Իտալիոյ և Աֆրիկէի պատերազմներուն մէջ։

Յովհաննէս Կաթողիկոս (տպ. Երուսաղէմ 1867) կ'ըսէ մեծն Աշոտի վրայ խօսելով.

«Այլ և մեծ կայսրն Յունաց Բասիլ ոչ փոքր ինչ պայման խաղաղութեան և հաճութեան և սիրոյ հաստատէր ընդ արքային մերոյ Աշոտոյ, որպէս որդւոյ սիրելւոյ զնա անուանելով, և հարազատակից կացուցանելով յամենայն թագաւորութիւնս թագաւորութեան իւրոյ». (էջ 177)։

Սամուէլ Անեցի (Վաղարշապատ, 1893 յէջ 95).

«Զվասիլ ասեն ի Տարօնոյ, ի գեղջէ Թլոյ. սա շինեաց զաւուրս Զօրավարին»։

Ստեփաննոս Ասողիկ (տպ. Փարիզ, 1859, էջ 144).

«Նորոգումն Հայոց թագաւորութեանս ի ձեռն Աշոտոյ Բագրատունւոյ, որ եղև յաւուրս Վասլի՝ Յունաց թագաւորին, և կատարելութեամբ նորին յ336 թուին Հայոց»։

Պարզեալ յէջ 146 ցոյց կու տայ Ասողիկ թէ գիտէ Վասլի հայկական ծագումը.

«Վասն (Խամատատէր) որ թագաւորեաց ամս 26. այր խաղաղարար և բարեխորհ ամենայն երկրի, տատանաձեռն ի տուրս,

և ի բաշխելն ոչ որպէս զՀռոմ՛ մեծ, զի չէ սովորութիւն Հռոմոց առատ լինել. և ոչ յիւրեանց լեզուն սակի տալ. այլ նա որդի Հայոց էր և աւելի քան զՀայ աստուածասէր »:

Արիստակէս Պատմիչ (Վենետիկ. 1865). յետ յիշելոյ թէ Ս. Գրիգոր Լուսաւորչի և Հռիփսիմեանց նշխարքներ տարուեցան Կ. Պօլիս, կ'աւելցնէ.

«Յաւուրս Վասլի կայսեր և Աշոտ Բագրատունւոյ յայտնի եղև այսպէս:

Պատանի մի ըմբռնեալ յայսոյ չարէ մինչդեռ յաղօթս էր ի նմին եկեղեցւոյ՝ ուր կային նշխարք սրբոց, վերացուցեալ զինքն զպատանին ընկէց ի վերայ սրբոցն, աղաղակէր և ասէր. Սուրբդ Գրիգոր Լուսաւորիչ Հայոց՝ մի՛ տանջեր զիս, և դու սրբուհին Հռիփսիմէ եկիր տանջել զիս, և դու Գայիանէ տանջես զիս: Եւ զայս աղաղակէր ի բազում ժամս. և լուեալ զայս բազմութեանն ազդեցին թագաւորին, և հրամայեաց բանալ զտապանն, և իբրև բացին, լոյս առաւել փայլատակեաց ի նշխարաց սրբոց: Եւ հրամայեաց կայսրն զմարմարիոնեայ տապանն ոսկւով պատել և գրել զանուանս սրբոցն ի վերայ, զի

ամենայն որ գիտացէ թէ ո՛յր է տապանն։ Զայս ամենայն, եկեալ ներքինի մի պատամեաց թագաւորին Աշոտոյ. և նորա լուեալ՝ ետ փառս Աստուծոյ, և կարգեցին զօրն զայն տօն սրբոյն Գրիգորի, որ ի վեցերորդ շաբաթու աղուհացիցն, շաբաթ օրն կատարի, մինչև ցայսօր»։

Վարդան Պատմիչ (Վենետիկ. 1862 յէջ 85.

«Դարձեալ ի նոյն կայսերէ Վասլէ եկն ներքինի մի Նիկիտա կոչեցեալ յերեք հարիւր քսան և հինգ թուին, խնդրեալ ի յԱշոտոյ թագ՝ բերեալ շատ պարգևս. քանզի Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ ասէր նմա՝ թէ արքայկունի իցէ. զի մայրն հայ էր, և կատարիլ թուէր տեսլեանն սրբոյն Սահակայ՝ նորին թագաւոր արշակունի. և կամէր պսակիլ ի Բագրատունւոյն։ Զոր կատարէ Աշոտ, ընդ նմին առաքէ և տասն հազար արծաթ՝ ընծայ նորաշէն եկեղեցւոյն, որպէս Մամիկոնեանքն հինգ գրիւ արծաթոյ առեն գնել զդուռն արևմտեան սրբոյն Սոփիայ ի Յուստինիանոսէ, յիշատակ Հայոց։

Եւ պատմեաց Նիկիտան թէ զսաք նշխար սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ի յաղու-

հացին ի հինգերորդ շաբաթուն շաբաթ օրն, զոր կարգեցին ․:

Բուզանդացի պատմչաց քով չենք տեսներ զհայեր՝ քաղաքական ո՛ և է մեծ յարենչութեան մէջ Վասլի հետ. կը յիշուի յիրաւի անոր երթալն ի Տիվրիկ, Մասնուկ քաղաքի տիրելն, Փոքրին Հայազգոյն անձնատուր ըլլալն՝ Լոպանս բերդին մէջ (Ոզակոն), Մելիտինեի քով ագատին՝ Ակատտակոտու (Վաշտաւկ) հայ զինուորին քաջութեանը ինչպէս նաև հայ և կապպադովկացի զինուորներով՝ խրիստիկի յաղթելն: Այն միջացէգը, — կապպադովկացի և հայ զօրաց մէջը, — պատմած է մեզ Կոստանդին Պորփիրոժէն Գիրք Ե. 41, էջ 73. — Բայց ասոնք դիւանագիտական դէպքեր չեն:

Միւս կողմէն սակայն՝ անկարելի է որ Վասիլ Հայ ազգին նպաստած չըլլայ, քանի որ ինքն այնքան հայասէր էր իր հայ ծագումով: Եւ մենք իրաւունք կու տանք Ասողիկի ու դիտողութեանը՝ թէ Վասլի ազդեցութիւնն և կամքն եղաւ՝ վերականգնիչ Հայ թագաւորութեան:

Թէ Վասիլ Տարօնի Թիլ աւանին մէջ ծնած էր՝ առասպել մ՚է: Թիլ աւանք ե-

կեղեաց մէջ կը գտնուէր և արշալուսեաց պաշտաման գլխաւոր տեղերէն մին էր։ Ուրեմն կրնանք ըսել թէ հայ աւանդութիւնը իր ընտանեաց նախնական բնավայրն ալ կը յիշէր. և հաւանօրէն Վասլի գերդաստանը Տարօնէն գաղթած էր կամ յեկեղեաց։ Չամչեան Վասլի հանդիպող Լեւոն իշխանը՝ «Տարօնեցի» կ'անուանէ, բայց ենթադրութիւն մ'է աս, յոյն պատմչաց քով չենք գտներ։



33. Ժամանակագրութիւն Վասլի կենաց. — Վասիլ ծնած էր 812ին։

Ադրիանուպօլսի գերիներուն հետ Բուլղարիա տարուեցաւ Կրումնոսէն 813ին (!)։

Պոլիս եկաւ 851ին։

Վասիլ Միքայէլի հետ կը դաւակցի ընդդէմ Վարդայ՝ հայ կեսարու 866 փետրուար։

Վարդի մահը 866 ապրիլ 21։

Վասիլ կայսերակից անուանուած 866 մայիս 26

Վասիլիսկիանոս թիավարը՝ կայսերակից 866

Սմբատ կուրացած 866

Վասիլ կայսր կը հռչակուի 867 սեպտ. 23

Գահակալութեան հանդէս 867 սեպտ. 24

Միքայէլի թաղումը 867 սեպտ. 25։

Փոտ գահազրկի 867 սեպտ. 26

Պատերազմ սարակինոսաց յիտալիա 867. 868. 875. 876. 881. 886.

Իգնատիոս հայրապետական գահուն վրայ կը բարձրանայ 867 նոյեմբ. 23

Դանիէլ այրին Պեղոպոնեսէն կը կանչուի վարձատրուելու՝ կայսերութիւն մարգարէացած ըլլալուն համար 868։

Կոստանդին գահակից կ'անուանուի 869

Սիգմայի Ս. Աստուածածնայ փլչին և Լեւոնի ազատիլը մահուանէ 869 յուն. 9։ 30 եպիսկոպոսներէ բաղկացեալ ժողով մը՝ Փոտայ ժողովը կը դատապարտէ 869 յունիս 10

Ութիչ ժողովք Փոտայ դէմ 869 հոկտ. 5.

Սկլաւոնք կը մկրտուին 870 փետրուար

Վասիլ Աղեքսանդր անուամբ որդի մը կ'ունենայ 871 նոյեմբ. 23

Տիվրիկի պատերազմը 872, 873

Ծնունդ Ստեփանն կայսերորդւոյն 872 դեկտեմ.

Վասիլ եղջերուէ մը կը վիրաւորուի 886

Վասիլ կը հիւանդանայ և կը մեռնի 886 օգ. 29



34. — Վասլի ընտանիքը. — Վասլի հայրն էր Կոստանդին, ըստ Զամչեանի. Սակայն Կոստանդին Պորփիւրոժէն՝ որ Վասլի վարքը գրած է՝ այսպիսի անուն չճանչնար, այլ կ'ակնարկէ ըսելով՝ «հայրը այն մարդուն՝ որուն պատմութիւնը կը կը գրենք» (տե՛ս քիչ մը վերը)։

Ծիւքանժ Վեկլոս կ'անուանէ Վասլի հայրը, սակայն այս անունը կասկածելի է՝ և փոխէն հնարուած։

Վասլի եղբայրն էր

1. Մարիանոս, կաղ, (ձիէն ինկած ըլլալուն պատճառաւ) որ եղբօր կայսերութեան ժամանակ՝ մեծամեծ պաշտօններու հասաւ։

Վասլի որդիքներ

1. Լեւոն իմաստասէր
2. Աղեքսանդր Արշակունի
3. Ստեփանոս

Վասլի անդրանիկ և փառամեռիկ որդին

# Ե

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ
## ԼԵՒՈՆ Զ· ԻՄԱՍՏԱՍԷՐԻՆ ՎՐԱՅ



36. — Ո՞ր մատենագիրներ խօսած են Լեւոն իմաստասէրի վրայ. — Ժամանակակից կենսագիրն է Թէոփանէս Շարայարելոյ կոչուած անանուն հեղինակը, որ թերեւս է ինքն Պերփիւռածին, որդի Լեւոն իմաստասէրի, ինչպէս յաճախ յիշեցինք:

Նա կը խօսի Լեւոն Իմաստասէրի վրայ էջ 353–377 Բոնն. տպ.

Կեդրենոս Բ. 237–270 էջերուն մէջ:

Գլիկաս էջ 553–556

Լեւոն Սարկաւագ Զ էջ 122–484

Սիմէոն Մագիստրոս էջ 700–715

Գէորգ Կրօնաւոր էջ 848–871:

Գենեսիոս, Եփրեմիոս, և այլն,

37. — Լեւոն ինչ ազերս ունեցած է Հայոց հետ. որ հայ հեղինակներ կը յիշեն զայն. — Լեւոն Իմաստասէր (886–911) ժամանակակից եղաւ Մեծն Աշոտի (859–889) և Սմբատ Ա. Խոստովանողին (890–908), այսինքն այն ժամանակ՝ երբ Յունաց կ՚ուզէր զՀայաստան: Մեր պատմիչները բարեկամական յարաբերութեան մէջ կը դնեն զԼեւոն Իմաստասէր և զՍմբատ Խոստովանող, բայց այդ բարեկամութիւնը կարեւոր արդիւնք մը չունեցաւ Հայոց համար:

1. Յովհաննէս Կաթողիկոս Գլ. Խ. էջ 251 կ՚ըսէ. «Ի մերում աւուրցիկ բարեբարութեանց՝ թագաւորն Յունաց Լեւոն ոչինչ սակաւ նախախնամէր զարքայ Սմբատ իբրև զորդի սիրելի, ամբաւութեամբ ընդ նմա բերելով ուխտ միաբանական սիրոյ, և բազում ընծայս և պարգեւս և պատիւս ամ յամէ առաքէր:

Իսկ և Սմբատ ի շնորհակալութիւն բարերարութեան արքային Յունաց, առատաձիր պարգեւօք հատուցանէր զվարձ փոխարինին Յունաց, առատաձիր պար-

զնոր հաստատեանէր զմարդ փոխարինին տանուտարութեան յաւելուածով, իբրև մե-ծարանի բան զինքն՝ և հօր հարազատի»:

Եղ 202. «Աւետ (յԱրարատ) զանձս ոսկւոյ և արծաթոյ՝ առ կայսր Լևոն եր-կաթի շղթայիւք զնոսա առաքէր»:

Խոր. յէջ 292.

«Բայց և արքայն Հոռոմոց Բարսեղ իբրև լուաւ զայս անհնար չարի զմեր մա-ծեալ, բազում զօրու յորդան առնել զալ յօգնականութիւն Աշոտոյ. յանկարծակի ժամանեալ նմա ելք հասարակաց կենաց մարդկան, և փոխանակեալ՝ թագաւորէ ընդ նորա եղբայր նորին Աղեքսանդր. և սա չփութ ազգմելի զնոսա շուրջ պատել յա-ռաջատամբութեանց արանց և նա ևս ոչ կա-րաց ժամանել յօգնականութիւն»:

Հոս սխալմամբ Բարսեղ գրած է Յովհ. կաթողիկոս՝ փոխանակ Լևոնի, քանզի Աղեքսանդրը՝ մեռելոյ եղբայրն էր. իսկ Բարսեղի որդի:

2. Ստեփաննոս Ասողիկ. Բ. Գլ. Գ. էջ 146. «Լևոն, որ թագաւորեաց ամս 26. այր խաղաղարար և բարեխօս ամենայն երկրի, աստուածեան ի տուրս, և ի բաշ-խելն ոչ որպէս զհամար ունէր. զի չէ

3. Սամուէլ Անեցի Լևոնի արարք յիշատակութիւնք կ'ընէ յէջս 95. 99։

4. Կիրակոս Գանձակեցի արարք յիշատակութիւն մը՝ յէջս 47. 48։

5. Վարդան էջ 86. «Առնու զԹաղն Սերաստ... կամակցութեամբ Լևոնի, որդւոյ Վասլի, որ թագաւորեաց յետ Հօր իւրոյ ամս քսան և վեց, այր առատ ի գործս և ոչ նման Հատտոմի (քանի մ'օրինակք կ'աւելցնեն. «որ ոչ կայ ի լեզու նոցա առատ, և չլինին ինքեանք, որպէս ասենն»), զի նա որդի Հայի էր, և յոյժ սիրէր զՀայս»։

Յէջ 87.

«Իսկ Աշոտ, որ և Երկաթն կոչեցեալ վասն արիական քաջութեանն, անկանի առ Լևոն կայսրն Յունաց կոչեցեալն Իմաստասէրն։ ... Իսկ Աշոտ դարձեալ ի Լևոնէ դառնայ ի Հայս»։ Տես և էջ 88։



38. — Լևոն Հայոց ձեռք ինչ աւերածներ ունեցած է, ըստ յոյն պատմչաց. — Տեսանք արդէն թէ երբ Բուլղարաց դէմ պատերազմ բացաւ Լևոն, իր զօրաց կ'առաջնորդէին երկու Հայեր. Բուրդիկ և Գր-

կոն) անուամբ մին, որ Կարնոյ Թէոդո-պոլսոյ իշխանին հետ Արաբացւոց դէմ կը-ռուեցաւ և Հայաստանը աւերեց 906ին (Սմբատ Խոստովանողի ժամանակ)։

Ամենէն հետաքրքրականը սակայն՝ Հայ իշխանաց մասին տրուած տեղեկութիւններն են։

Կոստանդին Պօրփիւռոժէնէ իր՝ Տէրու-թեան ինչպէս պէտք է կառավարել գրքին մէջ, որ աշխարհագրութիւն կրնայ կոչուիլ. խԳ. գլուխը Հայոց կը նուիրէ. վերնագիրն է.

«Ապահունեաց գաւառին, Մանազկերտ բերդաքաղաքին, Բերկրի, Խլաթ, Խա-լաթ, Արճէշ, Թիֆլի, Խերդ և Սալամասա, և Ջերմաձոր Τζερμαζου գաւառներուն վը-րայ»։

Թիֆլի Τιβη Դուինն քաղաքն է ան-շուշտ, Խերդ Χερτ Հեր մանաւանդ որ անոր Սալամաստ կը յաջորդէ։

«Պէտք է գիտնալ՝ որ նախ քան զԱ-շոտ իշխանաց իշխանը»։

(Պօրփիւռոժէն 'Ασοτίος կը գրէ և այս-տեղ կը հասկնայ զՄեծն Աշոտ. իսկ զԱ-շոտ Երկաթ՝ ընդհանրապէս Աշոտիկ կը կոչէ 'Ασωτικίος, առաջնոյն հետ չշփո-թելու համար)։

ութեան պատիւն տուաւ, այն երեք քաղաքները, Բերկրի, Խալիաթ և Արճէշ, Պարսից իշխանութեան տակն էին։

Իշխանաց իշխանը՝ մեծ Հայաստանի մէջ կը նստէր, Կարս բերդաքաղաքին մէջ, և ունէր երեք վերոյգրեալ քաղաքները, Բերկրի, Խալիաթ և Արճէշ, Թիֆլի, Խերթ և Մալաշմաս»։

Ըստ նոյն Գերփեռուժէնի Աշոտ մեծ Աֆեղըարդի տուած էր Բերկրի, Խլաթ, և Արճէշ. Աշոտ Բ. զանոնք Աբասերկարին տուաւ. սա երկու եղբայր ունէր Ափասիլէս Ջերմածուեցի, և Աբոլեսիուէր, որ Արարատի հինգերորդ իշխան անուանեցաւ։

Մեր պատմչաց մէջ կը հանդիպին Աբլ՚եր. Աբլուսա արարական անուններուն, բայց Գերփեռուժէնի յիշածները անծանօթ են մեր պատմչաց ընթերցողներուն։

Բագրատունեաց ճիւղ մը Տարօնոյ մէջ հաստատուած ըլլալով ինքնագլուխ հռչակեց ինքզինք, և թագաւորելու իրաւունք կարծեց ունենալ. Լեոն իմաստասէրի ժամանակ այն ճիւղին աւելի քաղաքական կարեւորութիւն կ՚ընծայէր Կ. Պօլսոյ ար-

քանիցը, քան նոյն իսկ Այրարատեանին, յորում Աշոտ Երկաթ կը թագաւորէր։

Ասոր համար Պերպերատմէն՝ Հայաստանի վրայ խօսած ժամանակ՝ նախ Տարօնոյ վրայ կը խօսի, յետոյ Այրարատայ։



Գրիգորիկ, վաճառն Բագրատունեաց որդին Տարօնոյ իշխանին, կ՚ըսէ նա, արտաքուստ Հռովմայեցւոց բարեկամ, բայց ծածկապէս Արաբացւոց դաշնակից, կը ձերբակալէ յանկարծ Արքայիկ կոչուած (Αρχαΐκας) Գրիգոր պատրիկի որդիները, որոցմէ մին է նաեւ Աշոտ, որ մեծ դեր և վարել ունէր նաեւ Պոլսոյ արքունեաց մէջ։

Արքայիկ կայսեր բողոքեց. Լեւոն իմաստասէր միջամտեց՝ Հայ իշխաններու խաղաղութեան համար. Սմբատ անուամբ Հայ մը և Կոստանդին անուամբ յոյն մը՝ այս նպատակաւ Տարօն գացին, որ յաջողեցան Գրիգորիկը իր ընդունայն խորհրդակցութենէն ետ կեցնել և զինքը իր Աշոտ որդւոյն հետ՝ Պոլիս ղրկել։ Լեւոն իմաստասէր՝ յանդուգն և ձեռնարկող իշխան մը Արաբացիներէն բաժնելու և սերտիւ իր հետ կապելու համար ոչ մէկ պատիւ չխնայեց. Գրիգորիկ

վայելէ։ Ռոմանոս կայսեր պատասխանը՝ հետեւեալն եղաւ․ — առանձնաշնորհութիւնք իր նախորդէն գրուած ըլլալով, անկարող էր ինքն այս մասին որոշողութիւն մ՚ը-նելու։ (Դերփ. էջ 186)։

Կիրակոս պատմչի համեմատ՝ Աշոտ Երկաթ գացեր է առ կայսրն Լեւոն զոր Կոստանդին՝ այլ կոչուած կը համարի։

Լեւոն իմաստասէր մեռաւ 912ին, իսկ Աշոտ Երկաթ՝ թագաւորեց 914ին, հետեւաբար կը սխալի Ասողիկ՝ զԼեւոն դնելով Աշոտ Երկաթի թագաւորելուն պահուն։ Սմբատ խոստովանող 914ին նահատակուեցաւ։

Կիրակոս, չսխալելու համար, համա-րեց մտածութիւնը կ՚ունենայ՝ Լեւոն իմաստասէրը՝ Կոստանդին Պերփիւրոժէնի հետ նոյնացնելու։ Ուրեմն գիտենք թէ Աշոտ Երկաթ, ըստ յոյն պատմչաց՝ երբ գնաց ի Պոլիս։

Անոնք երկու Աշոտ կը ճանչնան, երկուքն ալ մագիստրոսի եւ ուժեղ։

Անոնցմէ առաջինին վրայ կը խօսի Պերփիւրոժէն՝ իւր Թեմակարգութեանց գրոց մէջ, (Գիրք. Ա. Լիւկանդոսի վրայ գրած ժամանակ. յէջ 32)։

«Այն մեծ և հսկայանման Հայը, Ան-կուրինեա Լեկաստրեայ փեսայն, երկայ-նաձեռն և յերկոցունց ձեռաց աջողակ, որ Հայոց լեզուով Աշոտ Ἄζωτος կոչե-ցին, ու զաւրով ու մեծահռչակ թագա-ւորն Լեւոն, — իբրև փախստականն թէ իբ-րև բարեկամ՝ չեմ գիտեր, — իրեն ծա-ռայ ունեցաւ մեծահամբաւ Մելիասը, որ նոր և քիչ առաջ վախճանեցաւ»: Այն Աշոտ — Անկուրինեար մեռաւ Բուլղարական պատերազմին մէջ, Լեւոն Իմաստասէրի ժամանակն:

Այն Մելիաս, ըստ Պորփիւրոժէնի (էջ 33 ծանօթութեան) Հայաստան փախչելով Լիկանդոս քաղաքը վերականգնեց, և Հա-յերով լեցուց, և նոյն իսկ Լիկանդոս ա-նունը, ըստ Պորփիւրոժէնի Հայոց ազգէն և լեզուէն յառաջ կու գայ: — Հայերէնի մէջ սակայն Լոգանք! բառէն մերձաւորա-գոյնը չկայ՝ Լիկանդոսի (Լի անդամք):

Տէրութիւնը մատակարարելու (կամ կառա-վարելու) մասին գրոց մէջ (յէջ 227) Պոր-փիւրոժէն կը յիշէ Մելիասի հետ նաև Վասակ անունով հայ մը՝ Βαστάκιος որ երկու եղբայր ունէր Գրիգորիկ և Փա-

Աշոտ, մարդ մը՝ իր ուժովը ամենաչա-
նաւոր, որդի իշխանաց իշխանին. կ՚ըսեն
թէ երկու ձեռքով երկաթեայ գաւազանի
ծայրերէն բռնելով, իր տարօրինակ ուժովը
զանիկա կը ծռէր և շրջանակի ձեւ կու
տար անոր, երկաթի պինդ բնութիւնը՝
տեղիք տալով անոր ձեռաց բռնութեանը.
երբ ինքը եկաւ (Զոյէ) կայսրուհին զինքը
շատ պատուով ընդունեցաւ, և դարձաւ
իր երկիրը ղրկեց»։

Սկիլիցես, Թէոփանէս Շարայարեալէն
առնելով՝ գրեթէ բառ առ բառ, կը պատմէ
Աշոտի գալն ի Կ. Պոլիս (յէջ 284)։

«Այս ժամանակ փախստեայ (Պոլիս)
եկաւ Աշոտ, նշանաւոր մարդ, որ իշխա-
նաց իշխանի որդին էր. կ՚ըսուէր թէ սա
երկու ձեռքով երկաթեայ գաւազանի ծայ-
րերէն բռնելով, ձեռքերուն բռնութեամբ
զայն կը ճկէր և կը ծռէր, երկաթի պինդ
ոյժը տեղիք տալով ձեռքերու կորովին»։

Աշոտ Երկաթի երթն ի Կոստանդնու-
պոլիս կը պատմէ նաև Յովհ. Կաթողիկոս
ԾԵ, ԾԶ գլուխներուն մէջ. Թէոդորոս
Վասիլիկոս պալատականը՝ կայսերական
հրովարտակները կը բերէ Աշոտի՝ և Յովհան
կաթողիկոսի. սա կը հրաժարի, փախնելով

գայթակղութիւն տալ՝ քաղկեդոնականներու հետ հաղորդակցութեան մտնելով։ Աշոտ Երկաթ կ՚երթայ, մեծ պատիւներ կ՚ընդունի, յոյն զինուորներով կը դառնայ, Կորդքը կը նուաճէ և կը սկսի իշխաալէս թագաւորել։

Կրնանք ուրեմն եզրակացնել թէ մեր պատմիչները կը սխալին՝ Աշոտ Երկաթը Լեւոն Իմաստասէրի հետ՝ համաժամանակագրական յարնչութեան մը մէջ դնելով։



39. — Մեծն Աշոտ զաւթած է Կոստանդնուպոլիս. — Զամչեան Գիրք Գ. Գլ. Դ (Բ հտ.) էջ 706 կ՚ըսէ՝ Կոստանդին Պերփիւռոժէնը իրեն այցելիք նշանակելով։

«Իսկ Աշոտ արքայ Հայոց յետ աղդելոյ և կարգելոյ զամենայն աշխարհս անրութեան իւրոյ՝ դիմեաց ի կողմանս փոքուն Հայոց ի գնելն աշխարհաց, առեալ ընդ իւր և զՍեպուհ կամ Սեւի իշխան զօրաց՝ հանդերձ գնդաւ միով. և եկեալ ի Բիւզանդիոն՝ գնաց անդր ի Կոստանդինուպօլիս՝ ի յարգութիւն Լեւոնի կայսեր իմաստասէրի, որդւոյ Վասիլի աշխարհակալնոյ. (ուրեմն զրէ որդի նորա Պորփիւռոժէն կայսր)

և պատուեցաւ ի նմանէ, և պատուեաց զնա։

Եւ քանզի յայնմ ժամանակի պատերազմ անէր Լեւոն ընդ Բուլղարաց, ի յորդորել Լեւոնի զԱշոտ լինել նիզակակից ինքեան՝ եթող առ նմա զՄեղրիկ հանդերձ զօրօք. և ինքն դարձ արար իւրով առանձին գըն-դաւ յաշխարհն իւր։

Իսկ Մեղրիկ հրամանաւ Լեւոնի գնացեալ ի պատերազմ հանդերձ զօրօք Յունաց ի վերայ Բուլղարաց՝ արար բազում քա-ջութիւնս. բայց յետոյ ի խորտակել յու-նական զօրուն՝ և նա ի փախստեան դար-ձաւ. և ապա գնացեալ ի փոքր Հայս՝ ժողովեաց քանի մի արս և եկեալ ի Լի-կանդիոս գաւառ, ուր երբեմն էր նախա-րարութիւն Լիկանդեանց՝ յազգէ Հայոց, մերձ ի սահմանս Ջահանայ՝ յերկիր բերդի և արգասաւորահող, շինեաց անդ դղեակ յանուն Աշոտոյ. ուր եկեալ բազումք ի Հայոց բնակեցան անդ. և ի սակաւ ժա-մանակի լցաւ տեղին այն մարդկամբք. և զի այն երկիր էր ընդ իշխանութեամբ յունաց, կայսրն Լեւոն կացոյց զՄեղրիկ իշխան գաւառին. և զսահմանս նորա ո-րոշեալ կարգեաց ի գաւառապետութիւն։

էր յայնմհետէ Մեղրիկ իւրովք Հայկական զօրօք ներգաւակակից էր կայսեր մինչև ցըվախճան իւր. զոր և յիշէ Կեդրենոս իբրև զմի ի գլխաւոր զօրավարաց՝ յիշատակելով և զզօրս Հայոց՝ որք էին ընդ նմա յիմիք պատերազմի, որ եղև ընդ Բուլղարաց՝ յաւուրս Կոստանդեայ Պերփիւռոմէնայ կայսեր որդւոյ Լևոնի, որպէս է տեսանել յերես 613 կամ 480 եւս և յայլ մատենագիրս։

Այլ Աշոտ արքայ ի դարձին իւրում իբրև մերձ եղեւ ի Ճիրակ գաւառ, ի տեղն որ քարապատ անապատն կոչիւր, հիւանդացաւ ... աւանդեաց զհոգի իւր։

Յովհ. Կաթողիկոսի մէջ չենք գտներ ընաւ՝ թէ Մեծն Աշոտ Կոստանդնուպօլիս գնաց։ Նա կը յիշէ միայն թէ Բագարատի քով մնաց, ուրեմն երբ ճամբորդութեան մէջ էր։ Բայց արդէն Աշոտ Մեծն՝ բարեկարգելու համար՝ Հայաստանի ամէն կողմ կը պտտէր, և անկէց կարելի չէ ուղղակի հետեւցնել՝ թէ Պոլիս գացած էր։

Ուրեմն Զամչեանի միակ աղբիւրն եղած է Պերփիւռոմէն — որովհետև բիւզանդացի միւս պատմիչներ չեն խօսած

վերոյիշեալ կէտին վրայ, և Զամչեան իսկ զայն իրեն աղբիւր նշանակած է։

Սերենի Պերփեռումէնի մէջ գտնուած Աշոտ Անկոսդինեանը՝ նա նոյնացուցած է Մեծն Աշոտի հետ, իսկ անոր Մելիսա ծառային անունը՝ Մերգրիկ ձեւով հայացուցած է։

Այս նոյնացումը ճիշդ չերեւիր։

1. Նախ անհաւանական է որ Մեծն Աշոտ Անկոսդինեա կոչուած ըլլայ և «Լեկատերեայ փեսայ» եղած։

2. Պերփեռումէն յայտնապէս կը յիշէ՝ թէ այդ Աշոտը Բուլղարաց դէմ պատերազմի գնաց և սպաննեցաւ, իսկ իր Մելիսա ծառայն կրցաւ կեանքը ազատել և Հայաստան փախչիլ. «Երբ Հայն ընկաւ վերոյիշեալ պատերազմի մէջ (որովհետեւ, զօրավար էր Եքսքուպիտ կոչուած կայսերական գնդին) որ մղուեցաւ ընդդէմ ամենազօր Սիմէոն Բուլղարին.. Մելիսա ազատելով այս պատերազմէն և Հայոց երկիրը դառնալով» Լիւկանդրոս վերականգնեց», և այլն։

3. Պերփեռումէն Հայոց Թագաւորները յիշած ժամանակ՝ կանոնաւորապէս իշխանաց իշխան տիտղոսը կը գործածէ (տես

էջ 191 Մեծն Աշոտի համար զոր ծանուցանելու դիտմամբ «Սմբատի Հայր» կ'անուանէ, յէջ 187, 193, Աշոտ Երկաթին համար)․ անկարելի էր որ առանց ո՛ և է տարակուսի յիշատակէր նաև «Աշոտ Անկուրինէար», որուն այնքան աւելորդ զովեստներ տեղացեր էր, եթէ նա յիրաւի իշխանաց իշխան մ'էր։

4. Աշոտ Մեծն, ըստ Զամչեանի մեռաւ 889ին։ Իսկ Աշոտ Անկուրինէն, ըստ յոյն պատմչաց՝ մեռած է երեք տարի վերջ 892ի յունիսին․ այս թուին եղաւ Բուլղարական մեծ պատերազմը։

Զամչեանը Աշոտ—Անկուրինէի համար Մեծ Հայր ըսուած անուանելով և միանգամայն իր կարեւոր անձ մ'ըլլալը նկատելով (— «իբրև փախստականն եկաւ թէ իբրև բարեկամ, չեմ գիտեր» կ'ըսէ Պերփեռուժէն) հաւանեցուցած է՝ թէ «Աշոտ Անկուրինէար՝» Մեծն Աշոտն էր։

Այս կարծիքը տեղաւորելու համար, Աշոտը Հայաստան դարձուցած է ողջանդամ, և Մելիտար պատերազմի զրկած, հակառակ Պերփեռուժէնի։



40. — Հա՞յ էր Լեւոն Իմաստասէր. — Լեւոն Իմաստասէր հայ պէտք է անուանուի եթէ իր հայրը Վասիլ է:

Սակայն այս կէտը տարակուսի ենթարկուած է:

Վասիլ ամուսնացած էր յառաջագոյն՝ Մարիամ անուամբ կնոջ մը հետ: Միքայէլ Արբշիռ՝ «Եւդոկիա—Ինգերինա» անուամբ կին մ'ունէր պալատին մէջ, որմէն ձանձրանալով՝ հրամայեց Վասիլի՝ իր Մարիամ կինը արձակել, Եւդոկիա Ինգերինայի հետ ամուսնանալ, իր Թեկղ քոյրը սակայն՝ իրեն կնութեան տալով:

Վասիլ հնազանդեցաւ. իր քոյրը Արբշիռին յանձնելով՝ ամուսնացաւ Ինգերինայի հետ՝ 865ի դեկտեմբերին վերջերը: Ութ ամիս հազիւ անցած էր երբ որդի մ'ունեցաւ (866 սեպտ. 1), զոր Լեւոն անուանեցին:

Նա ոչինչ ունէր իր հօր վսեմաշուք կերպարանքէն: Բիւզանդացիք հետեւցուցին՝ թէ Լեւոն (ապագայ Իմաստասէր) Միքայէլ Արբշիռի որդին էր:

Ազգի գիտնականներէն ոմանք ալ այս

կարծիքէն են. «Léon, fils de Michel, et d'Eudocie Ingérine» (Muralt, էջ 443)։

Պատմիչներ կը յիշեն՝ թէ Վասիլ ամենէն աւելի իր Կոստանդին անդրանիկ որդին կը սիրէր (Մարիամէն ծնած), որովհետեւ իր որդւոց մէջ ամենէն աւելի իրեն նմանողն էր, եւ շատ սէր չունէր Լեւոնի, զոր հազիւ մահուանէ կրցան ազատել։

Զգացման տեսակէտով՝ «Լեւոն Իմաստասէր» հարազատ հայ մ'էր։



41. — Ժամանակագրութիւն Լեւոնի կենաց. — Իր ծնունդը, 866 սեպտ. 1. Երկրաշարժէն հազիւ կ'ազատի 869, յունուար 9։

Կայսր կ'անուանուի 870, յունուար 6։

Լեւոն Եւդոկիա անուամբ աղջիկ մը կ'ունենայ 884։

Լեւոն կը բանտուի 885 Ապրիլ։

Լեւոն կ'ազատի 885 յուլիս 19։

Լեւոն Արշիլի գերեզմանը խորհրդաւորէն կը փոխադրէ Առաքելոց եկեղեցին, որ կայսերաց դամբարանն էր 886 սեպտեմբեր 1։

Փոտ գահընկէց և բանտեալ Հայոց Գոր-դոն վանքին մէջ 886. Ստեփան հայրա-պետ գահ կ'ելնէ նոյն տարին։

Հրդեհ ի Պոլիս, Ս. Թովմաս եկեղեցին այրուած 877։

Ծանթարարէն կոյր և աքսորեալ 887

Պարտութիւն յԻտալիա՝ ի Լոմպարտաց 887 սեպտ.

Արեգակնան խաւարում. եօթն հոգի՝ ջու-կայլին մէջ շանթահար 887 հոկտ. 20

Յոյներ Արաբաց դէմ կը կռուին 888, 889

Ստիլիանոս կայսերահայր կոչուած 889

Ստեփան հայրապետի մահ. կը թա-ղուի Սեղբեան արուարձանի (Կաւլաթայի) վանքի մը մէջ 889 մայիս 17

Բուլղարական պատերազմ 889, 892

Նաւական պարտութիւն Յունաց՝ յԱրա-բացւոց 889

Բանդրատուկ, փոքրիկ և Թաւթուկ Հայք՝ անձնատուր կ'ըլլան 890

Բանակաթեմերու փոփոխութիւն 890

Անկուրինէս Աշոտի մահը 892

Զոյէի ազգականաց դաւն՝ ընդդէմ Լևոնի 892 նոյեմբ. 1

Սմբատ Խոստովանող սպանուած 893 (տես Muraltի, 913. տես Չամչեանի)։

Թէոփանայի մահը 894 դեկտ. 16

Արաբացիք կը ջարդեն Գեմմերիոս քա-ղաքի Յոյները 896

Զօյէ կայսրուհւոյն մահը 896 օգ.

Ստիլլիանոսի մահը 896

Վասիլ Լեփկեյիքուէսի զաւը՝ Ճամունայի հետ 896

Նիկեփոր Փոկասի յաղթանակները՝ Ա-րաբացւոց վրայ 896

Լեւոն Եւդոկիայի հետ կ'ամուսնանայ 897

Ս. Ղազար վանքի շինութիւնը 899

Աֆրիկեցիք Տաւրոմենիումի կը առնեն 899

Արաբացիք Փալերմոյ և Լեմնոս կ'առ-նեն 900

Գրիգորիկ իշխան Տարօնոյ կու գայ ի Պօլիս 901

Մեզլիաս Լիւկանդրոսը կը կանգնէ 901

Դաւ Լեւոնի դէմ՝ թափօրի ժամանակ 902 ապրիլ

Զօյէ առանց հարսանեաց՝ պալատը ըն-դունուած 903

Թեսաղոնիկէ յԱրաբացւոց առնուած 904

Լեւոն Տրիպոլսեցի 22.000 հոգի գերի կը վարէ 904 օգ. 9

Ծամոնաս փախած ժամանակ կը ձերբակալուի (905 մայիս)

Գիւսաւորի երեւում 905 մայիս 16

Ծնունդ Կոստանդնի Պորփիւռոժէնի 905 սեպտ. 1

Պորփիւռոժէնի մկրտ. 906 յունուար 6

Լեւոն Զոյէի հետ կ'ամուսնանայ 906 յուն. 7

Նիկողայոս Պատրիարքին աքսորը 908 փետր. 1

Եւթիմիոս պատրիարք 908

Հիմերիոս նաւական յաղթութիւն մը կը տանի Արաբաց դէմ 908 հոկտ. 6

Կոստանդնի գահակցիլ 911 յունիս 9

Ծամոնաս կրօնաւոր եղած 911 յուլիս 14

Նաւական պարտութիւն Յունաց՝ յԱրաբացւոց 911

Լեւոն աղեաց հիւանդութիւն կ'ունենայ 912 փետր. 24

Լեւոն կը մեռնի 912 մայիս 11



42. — Լեւոն Իմաստասէրի բնաւորութիւնը. — Լեւոն Իմաստասէր, ինչպէս տեսանք, չորս անգամ ամուսնացաւ.

1. Թէոփանոյի հետ, որ Կոստանդին Մարտինակի դուստրն էր, տասնուերկու տարի ապրեցաւ Լեւոնի հետ, և ծնաւ աղջիկ մը որ քանի մ'օրէն մեռաւ։

2. Զոյէ դուստր Ստիլիանոսի, մէկ տարի և ութ ամիս կայսրուհի եղաւ, և ծնաւ Աննա անունով աղջիկ մը՝ որ մօրը մահուանէն յետոյ՝ իբրև աւգոստայ—կայսրուհի ճանչցուեցաւ։

3. Եւդոկիա, որուն հետ մեռաւ նաև իր տղայն՝ դեռ ի լոյս չընծայուած։

4. Զոյէ Կարբոնոփսինէ որ երկու որդի ունեցաւ.

Ա. Կոստանդին Պորփիւրոժէնէ

Բ. Եւդոկիա անունով աղջիկ մը, որ պատանութեան մէջ դեռ չունեցաւ։

*

43. — Լեւոնի դրամները. — Լեւոն կը ներկայացուի իր դրամներուն վրայ. խաչապսակ, մագաղաթ ի ձեռին. իր դրամներուն մակագիրն է. Leon en teo Basilis Romeon.

## Զ

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՎՐԱՅ

44. — *Ցուցակ որ հեղինակներ խօսած են Աղեքսանդ. վրայ.* — 1. *Թէոփանէս Շարայարեալ ժամանակակցից էջ* 377–380. *Հոս կարելի է մի առ մի տեսնել Աղեքսանդրի բոլոր յիմարութիւնները, որոնցմէ մեզ համար հետաքրքրականն է խաղի խարան կանոնները, (Թէոփանէս Շարայ. էջ* 379)։

2. *Սիմէոն Մագիստրոս Լոգոթետ, յէջս* 715–718։

3. *Գէորգ Կրօնաւոր էջ* 871–874

4. *Կեդրենոս Բ.* 279–277, *և այլն։*



45. — *Աղեքսանդր՝ հայ հեղինակաց մէջ*

— Տեսանք արդէն Յովհ. Կաթողիկոսի վկայութիւնը այն կայսեր մասին. նա կ'ըսէ. «Վախճանեալ (Վասիլ!) թագաւորէ ընդ նորա՝ երրորդ որդին Ալեքսանդր. և սա շփոթ ազմկի գնովաւ շուրջ պատեալ յապստամբողաց արանց և նա ևս ոչ կարաց ժամանել յաջնականութիւն», յէջ 292։

«Ստեփաննոս Ասողիկ» Բ, Զ. էջ 156. «Այլ զկնի Լևոնի՝ թագաւորէ Յոհան Ալեքսանդր, երրորդ որդին, ամ մի»։

«Սամուէլ Անեցի սխալմամբ Ալեքս» կը կոչէ զայն՝ սակայն յիշատակութիւն մ'ըրած ժամանակ (յէջ 98)։

«Կիրակոս» յէջ 91. «Վասիլ, և զկնի Լևոն, և ապա Ալեքս»։

Վարդան էջ 47. «Յետ Վասլի կայսեր՝ թագաւորեաց Լևոն, և ապա Ալեքսն»։



46. — Ժամանակագրութիւն Ալեքսանդրի կենաց. — Ալեքսանդրի ծնունդը 871, նոյեմբ. 23

Լևոն իմաստասէր գահ ելած, Ալեքսանդր՝ իրեն գահակից 886.

Ալեքսանդր միայնակ կայսր 912

թիւնները» պէտք է Աղեքսանդրի զուար-ճութիւններն հասկնալ, վասնզի յոյն պատ-միչներ ոչ մէկ ապստամբութիւն չեն յի-շեր՝ իր երկամեայ թագաւորութեան ժա-մանակ։

*

48. — Հա՞յ էր Աղեքսանդրը. — Իբրև հարազատ որդի Վասիլի, Աղեքսանդրի հայ-կական ծագումը տարակուսի չենթար-կուիր։

Բուզանդական կայսերաց մէջ՝ միակն է, որ «Աղեքսանդր» անունը կը կրէ։ Եւ-րոպացի գիտնականք եւ ոչ մէկ տիտղոս չեն յատկացուցած իրեն։

Եթէ Մակեդոնացի անուանենք զինք՝ նա Մեծն Աղքսանդրի հետ կարող է շփո-թուիլ. այս տեսակէտէ նախամեծարելի կը թուի մեզ՝ Արշակունի անուանել զինք։

# Է

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ԽԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

*

49. — *Բանակաթեմերը.* — Ցաւալի այն պատմութեան մէջ առիթ ունեցանք բիւզանդացւոց Բանակաթեմերուն վրայ խօսելու։ Պատմութեան դէպքերը աւելի եւս լուսաբանելու համար, հարկ կը համարենք մի քանի տեղեկութիւններ տալ անոնց վրայ։ Նախնական աղբիւրը Կոստանդին Պերփիւռոժէնն է, որ թէ առանձին գրքով և թէ կայսերական պալատի Արարողութեանց վրայ գրած մատեաններուն մէջ՝ խօսած է անոնց վրայ։ Բանակաթեմերու մասին գրած է նաեւ արաբացի հեղինակ մը, Իբն Խորտատպէհ, որ հայկական բանակաթեմը «Էլ-Արշակ» կ'անուանէ։

Գելցէր իր «Die Genesis der byzantinischen Themenverfassung» (Leipzig, 1899) գրքին մէջ, որ մասամբ

նա կը նշանակէ միանգամայն թէ՛ դրան-գեր, և թէ՛ զինուորական կառավարու-թիւն մը. ինչպէս գաղղիերէն մէջ poste բառը կը նշանակէ հաւասարապէս թէ՛ տե-ղը զոր կ'ուզենք պահպանել, և թէ՛ զի-նուորները՝ որ զանոնք կը պահպանեն։ Չի գիտցուիր թէ նախ որո՛ն համար գոր-ծածուած է յիշեալ բառը, գաւառի թէ զի-նուորական գունդի։

Թէ և Ռամեայ կը սխալի, չափազանց ընդարձակ իմաստ մ'ընծայելով Փաւէն բա-ռի, բայց բանակաթեմերու տուած բացա-տրութիւնը՝ շատ որոշ է և ճիշդ։



51. — Բանակաթեմերու դասակարգու-թիւնը. — Իրենց կարևորութեան համե-մատ, բանակաթեմները այլ և այլ կարգի բաժնուած էին, և իրենց զօրավարները՝ մեծագոյն ռոճիկ կը ստանային։

Առաջին բանակաթեմեր

Արևելեան կամ Անատոլեան
Հայկական կամ Արմէնիակոն
Թրակեսեանք

Բ. կարգի

Օփսիկիոն
Բուկելլարեան

Գ. կարգի

Կապպադովկիա
Խորձեան
Պափլագոնիա
Թրակիա
Մակեդոնիա
Կողոնիա
Խաղտիք

Դ. կարգի

Սամոս
Ելլադայի այլ գաւառները

Ե. կարգի

Սեբաստիա
Լիկանդոս
Սելևկիա
Լեւոնթոկոմէս

## Զ կարգի

Եւրոպայի գաւառներ
Միջագետք

*

52. — Բանակաթեմերու բաժանման սկզբնաւորութիւնը. — Բանակաթեմերու սկզբնաւորութիւնը եղաւ Հերակլի ժամանակ (610–640)։ Եօթն բաժանում կը գտնենք արդէն իր օրով.

1. Ոպսիկիոն, բաղկացած Բիւթանացւոցմէ, Միւսիացիներէ, Տրովացիներէ. իր պաշտօնն էր կայսրը և մայրաքաղաքը պաշտպանել. այս գունդը կայսեր առջեւէն կ'ընթանայր, այն պատճառաւ ալ Ոպսիկիոն կոչուեցաւ (Ծան. յն. կը նշանակէ դէմք, տեսիլ, երեւոյթ). Հրամանատարը կը կոչուէր Կոմս Ոպսիկիոնի։ Այս բանակաթեմը — իբր գաւառ նկատուած — իրեն մայրաքաղաք ունէր զՆիկիա։

2. Արեւելեան բանակաթեմ. իր Հրամանատարը՝ պատրիկ և զօրավար տիտղոսները կը կրէր։

3. Հայկական Բանակաթեմ

4. Թրակեան բանակաթեմ

5. Խօսալիս և արտասանութեան բանակցութեամ

6. Ամփոփելէն բանակցութեամ

7. Մոլական գործեր, որոնց հրամանատարը կը կոչուէր Պրուսեգարիոս (= Մօմակալ)։

(Տես այս մասին Գիւշեր, Հանդէս Ամսօրեայ, 1902, էջ 26)։

*

53. — Արեւելեան բանակարան. — Կոստանդին Պերփիրոգենէտն՝ հետեւեալ տեղեկութիւնը կու տայ այս բանակաթեան մասին, որ ամենէն մեծն էր, և որուն զօրավարութիւնը զինուորական մեծագոյն պատիւն էր։ (Տես Պերփ. բան. էջ 16)։

«Երբ Հռովմայեցւոց տէրութիւնը սկսաւ անդրէն Հագարացիներէն աւերիլ, կրճատուիլ, քիչ առ քիչ փոքրանալ, արեւելքի ազգերը՝ առանձին բանակաթեամբը բաժնուեցան, մինչդեռ առաջ, Յուստինիանոսի և Մօրիկի ժամանակ ամէնքը մէկ իշխանութեան տակ էին. և առաջ այսպէս ինքնին Ներսիսարմոս, որ ամբողջ արեւելքի միակ զօրավարն եղաւ։ Բայց երբ Հագարացիք սկսան պատերազմ բանալ Հռով-

մայեցող դէմ և անոնց քաղաքներն ու գիւղերը աւերել, նոյն ժամանակի թագաւորները բանադրուեցան միակ իշխանութիւնը այլ և այլ փոքրերու բաժնել. զայն յանձնեցին իշխանի մը, և նա Արմենիաքոն (արևելեան) կոչեցաւ, վասնզի, ինչպէս բանից, մեզի՝ Բիւզանդիոնի մէջ կեցողներուս համար՝ արևելեան կողմը կ՚իյնայ։



54. — Կոստանդին Պերփիւռուժէն՝ Հայկական բանակաթեմերի մասին. — Հետաքրքրական կը համարինք հոս ընթերցողաց՝ Պերփիւռուժէնի այն գլուխը՝ որ ամբողջապէս նուիրուած է Հայկական բանակաթեմին, և որ ամբողջական թարգմանութեամբ, կարծենք, դեռ ծանօթացած չէ։ (Տես Բանակաթեմեր, Գիրք Ա. էջ 17)։

«Երկրորդ բանակաթեմ, Արմենիաքոն
(կոչուած.

«Արմենիաքոն կոչուած բանակաթեմը մասնաւոր անուն մը չունի. վասնզի այս յորջորջումը հին չէ, այլ սահմանակից և դրացի Հայերուն պատճառաւ՝ այդ անունն

յառաջ եկած է. կարծեմ թէ Հերակլ կայսեր ժամանակ և կամ աւելի յետոյ այս անունով կոչուեցաւ։ Վասնզի ոչ Ստը-րաբոն աշխարհագիրը զայն յիշած է — ինքը՝ որ Կապպադովկացի էր ազգաւ, Ամասիա քաղաքէն. — ոչ ալ Մենիպպոս, որ բոլոր աշխարհս չափերով նկարագրած էր, ոչ ալ Սքիւլաքս Կարեանդացին, ոչ ալ Պաւսանիաս Դամասկացի, ոչ ալ ուրիշ պատմագիրներէն մէկը։

Կ'երևի թէ շատ նոր է այս յորջորջումը. վասնզի ոչ Պրոկոպիոս, ոչ Ագաթիաս, ոչ Մենանդր, և ոչ մեծահռչակն Խաւխիոս այս անունը յիշեցին, իրենք՝ որ Յուստինիանոսի թագաւորութեան ժամանակագրութիւնը կը գրէին։ Վասնզի հիները Կապպադովկիան երեք մասի բաժնեցին, այսինքն Կեսարեա, որ կը սկսի Մելիտինէէն, Թեփրիկ (այժմեան Տիվրիկ) Տարոսի անուամբ այսպէս կոչուած, և միջերկրեայ գաւառը՝ որուն մէջ կը գտնուի Կեսարիա քաղաքը, Կապպադովկիոյ մայրաքաղաքը. հիները դարձեալ՝ կ'անուանեն Մեծ և փոքր Կապպադովկիա. մեծը կը սկսի Կեսարիայէն և Տարոսէն՝ և կ'երթայ մինչև Պոնտական ծովը. իր

սահմանն է՝ արեւմուտքէն՝ Ալիս գետը, արեւելքէն՝ Մելիտինէ։ Մեծ Կապադովկիան ալ է։ Ասոր վերայ՝ Պողիւբիոս, Հռովմայեցւոց պատմութեան գրողը, որ Կապադովկիան կը դնէ Տաւրոսէն և Լիկաոնիայէն՝ մինչև Պոնտական ծովը. վասնզի Նէոկեսարիան ալ, Կոլոնիան ալ, Մելիտինէն ալ, ամէնքը միանգամայն Կապադովկիա կը կոչուին։ Այս անունը պարսկական է։ Վասնզի Պարսիկ մարդ մը[1] — Քսերքսեսի ժամանակն է, թէ ուրիշ մէկու մը՝ չեմ գիտեր, — առիւծ մը որսի ժամանակ ընդառաջ ելաւ և թագաւորին ձիուն վրայ յարձակեցաւ։ Դիպուածով հոն Պարսիկ մը գտնուելով, գազանին դիմաց ելաւ, դաշոյնը քաշելով փրկեց թագաւորը՝ — որ քիչ մնացած էր՝ պիտի մեռնէր, — և առիւծը սպաննեց։ Արդ այս Պարսիկը՝ ամենաբարձր լերան մը վրայ ելնալով և որչափ մարդուս աչքը կը կարէ նայելով չորս դին՝ դէպ ի արեւելք, արեւմուտք, հարաւ, հիւսիս, բոլորը թագաւորէն ընդունեցաւ։ Այս բանս կը պատմէ Պողիւբիոս։

1. Պերպիլեսուժէնի գրութիւնը՝ աւանդական պատմութեան ընթացութիւնը՝ և յաճախ անհաւանութիւնը՝ կը պարունակէ։

սիս իշխանի մ՚անուամբ, որ նշանաւոր հանդիսացաւ Պարսից դէմ մղած պատերազմներով, անոր համար բանակաթեմի և կուսակալութեան կարգը անցաւ՝ մինչև հիմա։ Սակայն ստորին մասը, ծովուն կողմ եղածը, Արմէնիաքոն կը կոչուէր, վասնզի մաս է Հայոց. իսկ վերին մասը, սահմանակից է Լիկայոնիոյ և Տաւրոսի։ Փոքր Կապադովկիա, որ նոր՝ ինչպէս ըսինք, բանակաթեմերու կարգ անցաւ, իր տանուտէրն թագաւորներն ունէր մինչև Ազոստոս կեսարու ժամանակ. վասնզի Պարսից իշխանութեան տակն էր, նախ քան հռովմայեցւոց տէրութեան զօրանալը։ Ինքնիշխան ալ եղաւ, երբ Արիարաթէս թագաւորը կ՚իշխէր իր վրայ, որուն անուամբ այն լիճը որ աղ յառաջ կը բերէ, և զոր ազատագելով Փարարիս կը կոչեն, Արիարաթիս կոչուեցաւ։ Արիարաթէսէն վերջ անոր վրայ թագաւորեց Արքեղայոս. Հերովդէսի՝ Հրէաստանի թագաւորին՝ խընամին, և երբ թագաւորութիւնը դադարեցաւ, Հռովմայեցիք (կառավարութեան) կերպը՝ եպարքոսութեան փոխեցին. և փոխհիւպատոսը հարկերը կը ժողվէր և զայն կը կառավարէր։ Առաջին եպարքոսութեան

մէջ՝ նշանաւոր քաղաքներն երեք են. Կեսարիա մայրաքաղաքն, որ այսպէս կոչուեցաւ մեծն Տիբերիոս Կեսարու անուամբ, իսկ առաջ Մազաքա (Մաժաք) կը կոչուէր՝ Կապադովկեցւոց նախահօր՝ Մոսոխի անուամբ. Երկրորդ քաղաքն է Նիսսա, երրորդը՝ Թիանա, չորրորդը՝ Ռեգեփոդանդոս. Երկրորդ Կապադովկիոյ իշխանին տակ կը գտնուին սոյն քաղաքներ.

Տիանա
Փաւստինուպոլիս
Փիլիմիթրա
Նազիանզ
Կիրէյախնա
Պառնասսոս
Ռեզեպոդոս
Մոքիսսոս

և Դուարն կոչուած դղեակը. իսկ երրորդ Կապադովկիոյ՝ որ հիմա Արմէնիաքոն կը կոչուի, քաղաքներն են եօթն. —

Ամասիա
Իպորա
Զալիխոս

Անտրաքա
Ամիսոս
Նէոկեսարիա
Սինոպ

Կապադովկացոց ազգին նենգութիւնը՝ արդէն ծանօթ է ամենուն. այնպէս որ՝ իրենց վրայ այս առածն ալ կայ. «Երեք Կ կայ, ամենադէշ. «Կապադովկիա, Կը-րետէ, և Կիլիկիա» և վերատառութեանց մէջ. —

Կապադովկացիք չար են միշտ. բայց
(երբ քսակի հանդիպին՝
Չարագոյն. երբ շահ փնտռեն՝ ամենաչար-
իսկ եթէ երկու կամ երեք անգամ մեծ
(կառքի մը մէջ նստին,
Այն ժամանակ կը դառնան ամենաչարա-
(գունեղ։

ուրիշ կերպով.

«Ատենօք իժ մը սաստիկ կերպով՝ Կապադովկացի մը խածաւ. իժն ալ միասին մեռաւ՝ թունաւոր արիւն ծծելով»։

Սակայն այս վատահամբաւ ազգէն բողբոջեցան, կամ թէ բուսան, ծագեցան իր-

րեւ պայծառափայլ աստղեր, ականաւորքն իմաստութեամբ, ախոյեանք քրիստոնէական հաւատոյ, Գրիգոր Սքանչելագործ, եպիսկոպոս Նէոկեսարիոյ, և Փեդիմոս Ամասիոյ, և ամենանշանաւոր արքայն՝ որ Լիկիննիոսի ժամանակ մարտիրոսացաւ՝ քրիստոնէական հաւատոյ համար, և Բասիլիսկոս արքեպիսկոպոս Կոմանացւոց, որ և մարտիրոսական մահ ընկալաւ, որուն հետ թաղուեցան՝ Ս. Յովհան Ոսկեբերանի նշխարները, և Բարսեղ Մեծ՝ Կեսարիոյ եպիսկոպոս, և աստուածաբանն Գրիգոր որ Նազիանզու եպիսկոպոս ընտրուեցաւ, և հին Առաքելոց տաճարին մէջ կը հանգչի նոյն քաղաքի պատրիարքներուն հետ. հոն զետեղեց զինք՝ բարեպաշտ և քրիստոսասէրն Կոստանդին. և եղբարք Մեծ Բարսղի, այսինքն Պետրոս, Գրիգոր, և Նեկտարիոս և Կեսարիոս, եղբայր՝ Գրիգոր Աստուածաբանի։

«Կապպադովկիոյ վրայ, համառօտի, այսչափ»։ (Պերի. 22)։



# ՀԱՅ ԿԱՅՍԵՐՔ
## ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ

---

## Բ. ՀԱՏՈՐ

ՊԵՐՓԵՌՈՒԺԷՆ, ԼԵԿԱԲԵՆ, ՌՈՄԱՆՈՍ Բ. ՉՄՇԿԻԿ, ՎԱ-
ՍԻԼ Բ, ԿՈՍՏԱՆԴԻՆ Ը. - ՀԱՅ ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐ

---

ԳՐԵՑ

Հ. Կ. ՏԷՐ ՍԱՀԱԿԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1905

# ԴՐԱՄՔ ՀԱՅ ԿԱՅՍԵՐԱՑ

## ՈՐ Ի Բ· ՀԱՏՈՐԻՍ

---




Կոստանդին Պերփեռուժէն




Զոյէ Քարպոնոփսին




Ռոմանոս Լեկաբենոս




Ռոմանոս Բ. Կրտսեր




Վասիլ Բ. և Կոստանդին Ը.

# ՑԱՆԿ ԳՐՈՑՍ

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐԻՆ

### Է. ԿՈՍՏԱՆԴԻՆ ՊԵՐՓԵՌՈՒԺԷՆ



### Ը. ՌՈՄԱՆՈՍ ԼԵԿԱԲԵՆՈՍ

## Թ. ՌՈՄԱՆՈՍ Բ. ԿՐՏՍԵՐ



## Ժ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԶՄՇԿԻԿ

## ԺԱ. ՎԱՍԻԼ Բ. ԲՈՒԼՂԱՐԱՍՊԱՆ

## ԺԲ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Ը.





# ՀԱՅ ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐԸ

## Ա. ՄԱՐԻԱՆԷ



## Բ. ԹԷՈԴՈՍԻԱ



## Գ. ԵՒՓՐՈՍԻՆԷ



## Դ. ԹԷՈԴՈՐԱ Ա.

## Ե. ՀԵՂԻՆԷ



## Զ. ԹԷՈԴՈՐԱ Բ.



## Է. ԹԷՈԴՈՐԱ Գ.



## Ը. ՌԻԹԱ





# ՑԱՆԿ

## ՏԱՆՕԹՈՒԹԵԱՆՑ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՑԱՆԿ

## ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ «ՀԱՅ ԿԱՅՍԵՐԱՑ»

### ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆՑ

## Ա· ՀԱՏՈՐ



## Բ· ՀԱՏՈՐ

| | *Թգւր.* | *Էջ* |
|---|---|---|
| 9. ՌՈՄԱՆՈՍ Բ. | 939 – 963 | 98 |
| 10. ՉՄՇԿԻԿ | 969 – 976 | 120 |
| 11. ՎԱՍԻԼ Բ. | 976–1025 | 215 |
| 12. ԿՈՍՏԱՆԴԻՆ Ը. | 1025–1028 | 313 |

# ՀԱՅ ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐ

## (Բ. ՀԱՏՈՐԻՆ ՄԷՋ)

| | *Թգւր.* | *Էջ* |
|---|---|---|
| 13. ՄԱՐԻԱՆԷ | 788 – 795 | 340 |
| 14. ԹԷՈԴՈՍԻԱ | 813 – 820 | 344 |
| 15. ԵՒՓՐՈՍԻՆԷ | 823 – 830 | 347 |
| 16. ԹԷՈԴՈՐԱ Ա. | 830 – 867 | 355 |
| 17. ՀԵՂԻՆԷ | 919 – 961 | 375 |
| 18. ԹԷՈԴՈՐԱ Բ. | 971 – 976 | 379 |
| 19. ԹԷՈԴՈՐԱ Գ. | 1042–1056 | 381 |
| 20. ՌԻԹԱ | 1296–1333 | 399 |

***ՎԵՐՋ***

# Է.

# ԿՈՍՏԱՆԴԻՆ ՊՈՐՓԵՐՈՒԺԷՆ

## (913–959)

---

### Ա. ԿՈՍՏԱՆԴՆԻ ԿԵՆԴԱՆԱԳԻՐԸ

*Պատմիչ մը՝ որ սոյն կայսեր երիտասարդութիւնը տեսած է, այսպէս կը նկարագրէ զինք. բարձրահասակ էր նա, նոճիի մը պէս ուղղաբերձ, ճակատը լայն, աչքը շնորհալի, քիթը արծուունիգն, մորթը շուշանափայլ, դէմքը վարդագոյն, պարանոցն երկայն. Թիկնաւէտ էր նա և լայն ուսերով։ (Թէոփանէս Շարայարեալ, յէջ* 468)։

*Հելլենական արձանի, ըմբշամարտի այդ ձեւերուն տակ՝ որ յիշողութիւններ էին իր արդատեան ծագման, հոգիներուն ամենէն նուրբը կը բնակէր։*

*Երբ, գահու վրայ բարձրացաւ նա,*

Սրբազան Պալատը ներկայացուց իրեն՝ երկրիս բոլոր վայելքները. Կոստանդին անոնց մէջէն՝ գրականութիւնն ընտրեց. անյագ խանդավառութեամբ մը դէպ ի գեղեցիկն ու ճշմարիտը, փնտռեց զանոնք ամէն արուեստի, ամէն գիտութեան մէջ։

Հիմնող և անխոնջ ընթերցող մեծ գրատան մը, զոր յետոյ Հասարակաց ընծայեց, էր միանգամայն իր դարու մեծագոյն մատենագիրը. պատմաբան էր, բանաստեղծ, երաժիշտ. ոչ միայն, Լեւոն Հայկազնի պէս, մեծ ուրախութիւն կը զգար հրապարակաւ շարական գեղգեղելով՝ այլ նա և անձամբ շարականի նոր եղանակներ կը հնարէր։

Լաւ ճարտարապետ մ'էր և ոչ մէկուն կը կարօտէր՝ երբ հարկ ըլլար պալատի մը յատակագիծը շինել. ճարտար մեքենագործ, անմրցելի մետաղագործ, քիչ մ'ալ արձանագործ, քաջ նուագէտ, – այնպէս որ սենեկին մէջ նստած՝ նաւու մը ներքին մանրամասնութիւնները նկարելով՝ նորոգութեան հրահանգներ կը ղրկէր ծովակալին, – էր միանգամայն իր դարուն մեծագոյն նկարիչը, առանց երբէք վարժապետ ունեցած ըլլալու։

Այսպէս. երաժիշտներ, թիավարներ, բանաստեղծներ, որ կայսեր կու գային, միշտ

իրենց արուեստին վրայ նոր բան մը ավրելով դուրս կ'ելլային։ Ու Պերփիլուժէն ոչ միայն մեծագոյն մարդը՝ մեծագոյն միտքը կը համարուէր իր տէրութեան մէջ։

Այս ձիրքերը իրեն ընծայողը սակայն՝ է այն անանուն պալատականը որ Պերփիլուժէնի հրամանաւ Թէոփանէսը չարչարեց, և որ ըստ բազմաց, է նոյն ինքն Կոստանդին։

Իրաւունք չունի՞նք ուրեմն զեղչելու մաս մ'այդ գովեստներէն։

Կոստանդին, օրինակ իմն, չէր կրնար բանաստեղծ ըլլալ, քանի որ իր պատմական ոճը՝ ճիշդ հակառակ տրամադրութիւն մը կ'ապացուցանէ, (թէպէտ և գովելի են միշտ այն ոտանաւորները՝ որ կայսեր պատիւը պահելու համար՝ կորսուեցան անձնանուիրաբար)։

Ով որ Բիւզանդիոյ անհեթեթ պատկերները տեսած է, կ'ըմբռնէ թէ ինչ ըսել է այդ դարու մեծագոյն նկարիչ ըլլալը։

Հաւատալի չէ դարձեալ որ ուսուցիչ ունեցած չըլլայ. այս բանս հիւղերու մէջ կը պատահի, ո՛չ պալատներու։

Մայրական գորով ունէր դէպ իր ընտանիքը, խոր ատելութիւն՝ դէպ ի անիրաւութիւնները

– գործ նոր օրէնքներով արմատախիլ ընել ջանաց – ընկերոջ ընտանութիւն դէպ ի գիւղացիներն ալ, (ինչ որ պալատականաց եզականութիւնը կը վերցնէր՝ այնքան անհաճութիւն պատճառելով անոնց), և մադնիուացեալի հպատակութիւն դէպ ի անոնք՝ զորս կը սիրէր։ Ինքը զօրութիւն կը կառավարէր, գինքն ալ Հեղինէ հայուհին, որ իր կայսրուհին եղաւ։ Գահն՝ իր սովորական վարմանց մէջ, կը գիւահարէր հազուագէպ զայրութիւն ժամանակ։ Ընդհանրապէս՝ բարեկամ էր խոնջոյքներու, զուարթ և գինեւէր, ինչպէս կը վկայեն անկողմնակալ պատմիչներ։

Աշուասիկ Պերփեսուժէնի մարմնական և հոգեկան պատկերը, որ ամենէն հազուագիւտներէն եղաւ անտարակոյս։

Բայց Կոստանդինի պէս անձ մը, զուտ գաղափարապաշտ խառնուածքով, ի՞նչ կարող էր ըլլալ գործնական ասպարէզին մէջ։

Գերազանց մարդ մ'էր. արդահատելի գիւանագէտ մ'եղաւ։ Մատենագրական անձ պէտք էր ըլլալ, ոչ պատմական։

Իր թագաւորութիւնը պիտի կրնայինք դատարկութիւն արտոյ անուանել, եթէ սակայն իրեն թողուցած ըլլային միայն թագաւո-

րել...։ Պերփիռոժէնի վարքը՝ այս խօսքի ապացոյցն և մեկնութիւնն է միանգամայն։

### Բ. — ՊԵՐՓԵՌՈՅԻԺԷՆԻ ՄԱՆԿՈՒԹԻՒՆԸ. — ԳԻՇԵՐԱՅԻՆ ՅԱՐՁԱԿՈՒՄ ՊԱԼԱՏԻՆ ՎՐԱՅ։

Լեւոն Իմաստասէր, 896ին, դէպ ի գերեզման կը տանէր զԵւդոկիա, իր կայսրուհիներուն երրորդը։ Նա մեռած էր, առանց Լեւոնի յաջորդ մը տալու, առանց ծնունդի մը՝ որ իր մահն սփոփէր։ Եւ յուղարկաւոր թափօրին մէջ՝ Իմաստասէրը, գլուխը կախած, կը մտածէր Զոյէ Քարբոնոփսինի վրայ — թոռն Թէոփանէս պատմչի — զոր ի վաղուց արդէն մտքէն անուանած էր իրեն չորրորդ կայսրուհի։

Բայց այս բանս, եկեղեցական օրէնքէն արգիլուած ըլլալով, մեծ խռովութիւն պիտի չհանէ՞ր աէրութեան մէջ, և ո՞վ կ'ապահովցնէր զինք թէ Զոյէ ժառանգ պիտի տայ իրեն։ Ուստի, ձրի տեղ իր աէրութեան ծովը չալեկոծելու համար, որոշեց նախ որդի ունենալ, յետոյ ամուսնութեան խորհուրդը կատարել։ Այսպէս Զոյէ պալատ կանչուեցաւ, և յետ երեք տարի զԼեւոն տենդոտ սպասումով մը տանջելու, ի լոյս ընծայեց արքայ

մը՝ որ պիտի կոչուէր Կոստանդին Պորփիւրոժէն (905ի սեպտ. 1ին)։

Քանի մ'օրէն, բոլոր ծերակոյտին և իր Աղեքսանդր կայսերակից եղբօր հետ, որ կնքահայր պիտի ըլլար, Ս. Սոփիա իջաւ, և հոն Նիկողայոս Հայրապետի ձեռամբ մկրտել տուաւ նորածինը։ Լեւոն խմաստաուէր, շատ հեռի խղճահարութիւններէ, արցունքով շնորհակալ կ'ըլլար Աստուծոյ՝ որ վերջապէս հաճեցաւ բովանդակ տէրութեան փափագը կատարել՝ իրեն թագաժառանգ մը շնորհելով։ Յետոյ, Նիկողայոս Հայրապետին մօտենալով, իմացուց թէ քանի մ'օրէն կ'ուզէր շքեղ հարսանիքով ամուսնութեան խորհուրդը կատարել։ Հայրապետ, անվախ, բարկացաւ, յանդիմանեց, մերժեց ։ Լեւոն ամենայն անտարբերութեամբ պալատը դարձաւ և առանց շատ դժուարութիւն կրելու, շահուէր եկեղեցական մը գտնելով՝ Թովմաս անունով, անոր ձեռամբ խորհուրդը կատարել տուաւ։

Եպիսկոպոսները բողոքեցին. Լեւոն շատերը կաշառքով լռեցուց. ըմբիշները ալ, Նիկողայոսը միասին, աքսորեց, չարախօսները բանտեց, տանջեց, չարչարեց, յետոյ իր առագարաշխական ուսումներուն դարձաւ, որ

այս դէպքին պատճառաւ քիչ մը ժամանակ ընդհատուած էին։

Զարագուշակ գիտաւորը՝ որ սոյն դարու մէջ բոլոր Թագաւորներու ծննդեան հանդիսակից կ'ըլլար, այս անգամ ալ յայտնուեցաւ՝ իմացնելու համար թէ կայսեր տեղ՝ գիտնական մը կը ծնանէր։

Կոստանդին, իր առաջին տարիներուն մէջ, քնքոյշ և հիւանդոտ էակ մ'եղաւ, այնպէս որ երբ իր Աղեքսանդր հօրեղբայրը սպաննել կ'ուզէր զինք, կայսերական գահը իր ընկերշակներուն անցնելու համար, հաւատացուցին իրեն թէ բնութիւնն արդէն իր կամքը պիտի կատարէր և նոր դահճի մը հարկ չկար։

Տարի մը վերջ, փոխանակ Պերփեռուժէնի, ինչպէս կը սպասուէր, Աղեքսանդր մեռաւ։

Դատարկ գահը Կոստանդինի կը պատկանէր. գոնէ այս օրէնքը ճանչցաւ Աղեքսանդր, և վերջի վայրկեանին՝ զինքն իր յաջորդն անուանեց։

Այսպէս Կոստանդին հռոմէական տէրութեան կայսր կը հրատարակուէր, իր վաղանշոյլ փառքին համար՝ Ծիրանեծին (Պերփեռուժէն) տիտղոսն առնելով։

Դեռ եօթն տարեկան էր. Աղեքսանդր եօթն

խնամակալ Թողուցած էր իրեն, իր տարիքը ճշդիւ ի նկատի առնելով։

Բայց այնքան անխորհրդաբար վարուած էր նա այս ընտրութեան մէջ, որ խնամակալներէն ոչ ոք պատերազմի հասկացողութիւն ունէր, և այս այն ժամանակ՝ երբ Բուլղարները բոլոր ոյժերնին կը հաւաքէին՝ ջախջախիչ հարուած մը տալու համար հռոմէական պետութեան։

Ասոր ժողովուրդը պահանջեց՝ որ ութերորդ խնամակալ մ՚ալ ընտրուի։

Կայսերահայրերը ժողովք ըրին՝ և նախագահը, Նիկողայոս հայրապետը, ճառով մ՚ապացուցուց թէ որքան անհրաժեշտ է Կոստանդին Դուկաս զօրավարը պալատ կանչել և իրենց պաշտօնակից ընել։

Հասարակաց հաւանութեամբ հրաւէր ղրկուեցաւ Դուկասի. նա, խոհեմութենէ կամ կասկածէ դրդեալ, առաջարկը մերժեց. երկրորդ գիր ղրկեցին, պատասխանը դարձեալ մերժում մ՚եղաւ։ Ամէն Բուզանդացի խաչ մը կը կախէր կուրծքէն՝ որուն յանձնումը երդմունքէն աւելի կ՚արժէր. խնամակալները՝ իրենց կուրծքին խաչերը ղրկեցին Դուկասի. այս անգամ տեղիք տալով, հեծեալներով շրջապատեալ՝ ճամբայ ելաւ, և

գիշեր ատեն հասնելով Պոլիս, իջեւանեց Գրիգորոս անուամբ խնամիին տունը։ Այնտեղ իմացաւ՝ թէ դաւ մը մեքենայուած էր իրեն դէմ. յուսախաբութիւնը մեծ էր. ենթադրած էր թէ խնամակալները պատրաստական գտնուելով իրեն ընդառաջ պիտի գան՝ հանդիսով զինք ընդունելու համար։ Անոնցմէ ոչ ոք երեւցաւ։ Ժողովուրդը սակայն կը խօսէր իր տան մէջ, ծերակուտի անդամներուն հետ. կը խոստանային բանի զինքը գահ հանել. «Կեցցէ՛ կայսրն Դուկաս» երգելով, մէկ մէկ ջահ ձեռքերնին, մէջտեղ առին զինքը եւ սկսան դէպ ի կրկէս երթալ։

Լուրը նենգաւոր խնամակալներուն հասած ըլլալով, Յովհաննէս Ելատաս որչափ զինուոր եւ նաւաստի գտաւ՝ գիշեր ժամանակ անձինքն ալ կարգաւորեց, զինեց, եւ պատրաստ բուռն դիմադրութեան, Դուկասի գալուն սպասեց։

Խոր գիշեր էր. կրկէսի բոլոր դռները գոցուած էին. կը լսուէր պահապաններուն ոտնաձայնը՝ որ կը ճեմէին կրկէսին մէջ, առաջուց հսկողութեան խիստ հրահանգներ տրուած ըլլալով։

Հեռաւոր աղմուկ մը վերջ՝ նշմարեցին հազարաւոր ջահերու թափորը, որ քաղաք

երկինք մը կը թուէր, և ժողովուրդը — բիւ-րաւոր գլուխներ՝ կէս լուսաւորուած, կէս մութի մէջ — յառաջ եկաւ. Կեցցէ՜ Դուկաս, քայլերգը կրկնելով։ Պահապանները՝ հարուածնին պատրաստեցին անոր դէմ՝ որ առաջին անգամ վրան պիտի մօտենար։

Ամբոխը կրկէսին առջև կանգ առաւ. ձիաւոր մը՝ որ ամենուն առջևէն կ'երթար, վար ցատքեց իսկոյն և կացինի ուժով հարուած մ'իջեցուց վրան։ Դիմացէն նիզակ մը սողոսկեցաւ մութին մէջէն և խրեցաւ ճիշդ սրտին մէջ։ Երիտասարդը գետին փռուեցաւ։

Դուկասի ախոյեանը մեռած էր։

Ուզեց Դուկաս կրկէսին առջև իր կուսակիցները յոգնեցնել, և ուղղակի դէպ ի Նպատակը, դէպ ի Սրբազան Պալատը քալեց։ Կացինով Խալքի դուռը խորտակելով, մտաւ դաշտին մէջ որ կը տարածուի պալատին առջև։ Յովհաննէս Եղատաս յարձակման նշան տուաւ. բաղխումը սկսաւ երկու կողմէն գիշերային մթութեան մէջ՝ արհաւրալից կերպարանք մ'առնելով։ Գաւիթը կը լեցուէր դիակներով և կոխկռտուած վիրաւորներով. այնքան կատաղութիւն կը բորբոքէր երկու կուսակցութեանց մէջ, որ

ծերակուտի անդամներ ալ կը մասնակցէին կռուին և անոնցմէ շատերն ընկան։

Դուկաս ձիուն վրայ հեծած, արիւնաթաթաւ սուրը ձեռքին մէջ, հրամանը շըրթունքին, ամէն կողմ կը վազէր եւ մղելով խռամակալաց զօրքերը։ Յանկարծ սակայն՝ ձիուն ոտքը սահեցաւ, և Թագաւորահանջը գետին ընկաւ. Թշնամեաց նետերէն մին, որ իրեն դէմ միաբանած էին, ճեղքեց կուրծքը և սրտին մէջ մխուեցաւ։ «Վա՜յ ինձ, ի՜նչ բանի համար եկայ հոս» հառաչեց Դուկաս, և հոգին խօսքը աւարտած՝ վերջին շունչը տուաւ. քիչ մ'առաջ՝ իր որդին ընկած էր։ Թշնամի գինւոր մը Դուկասի գլխին վրայ յարձակեցաւ, գլուխը կտրեց, և յաղթանակաւ վեր առաւ, մինչդեռ ժողովուրդը իրարու վրայ խռնուած կը փախչէր՝ դիակներ թողլով ճամբուն վրայ։ Քաղաքին դռները գոցուած էին առաջուց. սպանելոյն կուսակիցներէն ոչ ոք կարող էր փախչիլ. երեք հազար հոգի ջարդուեցան։ Երկրորդ օրը Թագաւորահանջին գլուխը՝ ցիցի մը ծայր անկած մեծ հանդիսով շրջեցուցին քաղաքին մէջ։ Պարտեալներէն շատերը գլխատուեցան, կամ ածխուելով աքսորուեցան և ինչքերնին կորսնցուցին։ Խովիւարի ծովափի երկայնքէն

կախաղաններ շարուած էին Պուկասեանց համար պատրաստուած. շատեր հոն կախուելով ծով նետուեցան. այսպէս գինկներն անգամ չյանձնուեցան այն թշուաններուն՝ որ արտասուօք հրաման կը խնդրէին՝ գերեզման մը տալու իրենց սիրելեաց։

### Գ. — ԱՐՔՈՒՆԵԱՑ ՅԵՂԱՇՐՋՈՒՄԸ. — ՌՈՄԱՆՈՍ ԼԵԿԱՊԵՆՈՍ ԿԱՅՍՐ։

Զոյէ, Կոստանդինի մայրը՝ ի վաղուց հալածուած էր պալատէն։

Փոքրիկ կայսրը, մօրը կարօտցած, յամառութեամբ և արտասուօք զինքը կ'ուզէր։ Հարկ էր տեղի տալ. խնամակալները, հակառակ իրենց կամքին, Զոյէի թուղթ գրեցին որ Պալատ գայ։

Կայսրուհւոյն մուտքը՝ քաղաքական յեղափոխութիւն մ'եղաւ։ Կեանքի նոր շրջան մը կը բացուէր Կոստանդինի համար, որ ամենէն փափուկ հասակին մէջ որբ և թշնամիներէ շրջապատեալ՝ վերջապէս մայրական ձեռքի մ'անոյշ փայփայանքը կը վայլէր։ Եօթ խնամակալներն ալ վտարուեցան պալատէն։ Նիկողայոսի սանտալիքներ զրկուեցան՝ հրամայելով հանգչիլ իր եկեղեցւոյ սահմանէն, և իր ժամերգութիւններուն զբաղիլ՝ փոխա-

նակ տէրութեան գործերուն խառնուելու։ Պալատական բոլոր պաշտօնեաները փոխուեցան. այս ամէնը շանթահարիչ տպաւորութիւն գործեց ժողովրդեան վրայ, որ վերջապէս կ'իմանար թէ գլուխ մ'ունէր, ազդեցիկ և գիտակցաբար գործող։

Այս փոփոխութեանց ժամանակն էր՝ որ Դոմինիկոսի կատակերգական միջադէպը պատահեցաւ։

Տէրութեան ամենէն արդիւնաւոր անձինքներէն մին էր ասիկա, և օտարազգի թիկնապահներու զօրավար եղած՝ երկար ժամանակ։

Տեսնելով Զոյէի ատելութիւնը խնամակալաց դէմ, ուզեց նոյն ոգւով վառեալ երեւցնել զինք, և յիրաւի մեծ աշխուժութիւն ցցուց՝ Նիկողայոս հայրապետը պալատէն դուրս հանելու առթիւ։ Այս գործը այնքան հաճոյ անցաւ դշխոյին՝ որ պատրկութեան աստիճանը ուզեց շնորհել իրեն։

Թագուհւոյն սենեկապետը Կոստանդին, հազիւ լուրը առնելուն պէս, իսկոյն անոր ներկայացաւ. «Ի՞նչ կ'ընես հարցուց տագնապեալ. տէրութեան դաւաճան մը պատրի՞կ կ'անուանես. կ'ուզես Դոմինիկոսի ձեռք զէ՞նք տալ զքեզ սպաննելու. նա դաւ մը պա-

տրաստած է իր եղբայրը գահ հանելու համար. այս նոր պատուով օգնե՞լ կ'ուզես իր անզգամ դիտաւորութեանց»։

Զոյէ, առանց երկար քննելու, իսկոյն մարդ ղրկեց իմացնելու համար Դոմինիկոսի՝ թէ այլ եւս դիտում չունէր զինք պատրիկ ընելու։

Բայց արդէն Դոմինիկոս ամէն բան պատրաստած էր, պալատը զարդարած, ազգականները հանդէսին հրաւիրած և նոյն իսկ ճամբայ ելած դէպ ի Ս. Սոփիա՝ պատրկութեան կարգն առնելու համար։ Դշխոյի պատուիրակները ճամբան հանդիսական թափօրին հանդիպեցան և Դոմինիկոսի մօտենալով՝ ցած ձայնով իմացուցին թէ խաբուած էր ինքզինք պատրիկ կարծելով, չափազանց աճապարած, և թէ պէտք էր հիմա տունը դառնալ։

Թափօրը ամօթահար ետ դարձաւ, առարկայ ըլլալով բոլոր ժողովրդեան ծաղրածութեանց։

Սակայն եկեղեցւոյ մէջ ալ ամէն պատրաստութիւնք տեսնուած էին և հայրապետը կը սպասէր. երբ կայսրուհւոյն իմացուցին այս պարագայն՝ հրամայեց որ Գարիտաս անուամբ մէկը տանին և պատրիկ ընեն։ Այնուհետեւ Դոմինիկոսի պատրկու-

թիւնը, ժողովրդեան մէջ, անհաճոյ անակըն-
կալներ առակող դէպքն եղաւ։

Բացարձակ տէր պալատին, Զոյէ նե-
տուեցաւ զբօսանաց և հաճոյից մէջ։ Վասիլ
անուամբ Մակեդոնացի մը, պարագայներէն
խրախուսուած, գահ բարձրանալ փորձեց՝
հաւատացնելով թէ Կոստանդին Դուկաս է
ինք։ Նորասէրներէ շատեր իր դրօշին տակ
հաւաքուեցան. վտանգը չմեծցած՝ Զոյէ բռնել
տուաւ զինք, և այս անգամ ապահով կեր-
պով մեռցնելու համար զԴուկաս, ողջ ողջ
այրեց զանիկա։

Այս վիճակի մէջ էր ներքին կառավարու-
թիւնը. արտաքուստ Բուլղարներ կը սպառ-
նային. Զոյէ (917ին) Արեւմուտքի և Պաղ-
տատու Արաբաց հետ խաղաղութիւն ընելով՝
բոլոր բանակները Արեւմուտք փոխադրեց՝
Բուլղարաց ոյժը հիմնովին կործանելու հա-
մար։

Ցամաքի զօրավար ընտրուեցաւ Լեւոն
Փոկաս, ծովակալ՝ Ռոմանոս Լեկաբենոս
Հայազգին։ Յոյն բանակը Բիւզանդիոնի պա-
րիսպներուն առջեւ շարուեցաւ. քահանայ
մը, խաչը ձեռքին մէջ, հայրենասիրական
ճառ մը խօսելէ յետոյ, երդում ընել տուաւ
զօրաց՝ որ պիտի մեռնին՝ կամ պիտի յաղ-

թեն։ Խառնուրդին ժամանակ, — ան տեղի ու-նեցաւ Դանուբի եզերք, Աքելաուն գիւղակին մօտ, — Բուլղարներ, մեծագոյն զանգուածէն ճնշուած, նահանջել սկսան. լերան մը քով սպարապետը աղբիւր մը նշմարելով վար իջաւ ձիէն ջուր խմելու համար. ճիշդ այդ վայրկենին ձին փախաւ, և սկսաւ բանակին մէջէն վազելով երթալ. «Փոկաս մեռած է» աղաղակեցին ամէնք. սարսափը տիրեց Յու-նաց. ամէն մարդ, առանց երդումը յիշելու, փախչիլ սկսաւ։ Բուլղարաց Սիմէոն թագա-ւորը, շփոթութիւն մը տեսնելով հեռուն, ետ դարձաւ, յարձակողականը բռնեց, դիակ-ներով դաշտը ծածկեց և ձեռք բերաւ յաղ-թութիւնը՝ զոր Փոկասի ձին իրեն կը շնոր-հէր։

Ռոմանոս հայազգին որուն յանձնուած էր վարձկան Փացինաքները՝ Դանուբէն փո-խադրել, ոչ միայն այս բանս ի գլուխ չկրցաւ հանել, այլ և ոչ նաւերուն մէջ ընդունեցաւ փախստականները։ Իբրև մատնիչ, դատա-պարտուեցաւ կուրնալու. Զօյէ զինքն ազա-տեց։ Չէր ուզեր կայսրուհին՝ արքունիքը զարդէ մը զրկել. գեղեցիկ էր Ռոմանոս և վեհ արտաքինով։

Բուլղարաց յաղթանակը՝ վտանգաւոր չե-

դաւ Բիւզանդիոնի, որովհետեւ Լեւոն Փոկաս կրկին թշնամեաց վրայ յարձակելով՝ նահանջի ստիպեց զանոնք։ Իր Նիկողայոս որդին, դիւցազնական միջադէպերէ վերջ, ընկած գտնուեցաւ՝ պատերազմի դաշտին վըրայ։

Այս պատերազմէն յետոյ՝ բոլոր ժողովրդեան աչքը դարձաւ երկու ախոյեաններուն վրայ. Լեւոնի եւ Ռոմանոսի. նախանձորդ իրարու, երկուքին փափագն ալ՝ էր՝ գահ բարձրանալ, քանի որ այնքան դիւրին էր նուաճել թէ կայսրն եւ թէ Զոյէ, — մանուկ մը՝ եւ կին մը։

Ռոմանոս մրցանքին մէջ յաղթական ելաւ, աւելի կեղծաւոր եւ անխիղճ ըլլալով։ Իրեն օգնեց նաեւ Թէոդոր, Կոստանդնի դաստիարակը, որ կ'ըսէր թէ Կոստանդինեանց Ռոմանոսի օգնութեան՝ պիտի չկա, ըննայ գահը Լեւոնի մեքենայներէն ազատել։

Այս համոզմամբ Զոյէ եւ Կոստանդին հրաման ղրկեցին ծովակալին՝ պալատ գալու։ Ռոմանոս կայսեր հետ արքունական մատուռը գնաց, հոն երդում տուաւ իրեն օգնական ըլլալու մինչեւ մահ, եւ ստացաւ իբր պաշտօն, օտարազգի թիկնապահաց զօրավարութիւնը։ Պերփեռուժէն ամուսնացա,

Ռոմանոսի Հեղինէ դստեր հետ. դիւանագիտօրէն անխոհեմութիւն մ'էր ասիկա, բայց Կոստանդին աւելի կ'ընտրէր առանց թագի ապրիլ քան առանց Հեղինէի, որուն վրայ ամէն ձիրք կը տեղան պատմիչներ։

Քանի մ'ամիս վերջ Ռոմանոս կեսար կ'անուանուէր, քիչ վերջ գահակից Կոստանդնի, որ այդ պատիւները հայ գիւղացւոյն տուած ժամանակ, չէր գուշակեր թէ ինքզինքը կը խաւարեցնէր։

Եւ յիրաւի թագաւոր օծուելէն յետոյ, Ռոմանոս ինքզինք բացարձակ տէր նկատեց Հռոմէական տէրութեան, բոլոր որդիքները մի առ մի կայսր անուանեց, և Կոստանդնի ոչինչ թողուց՝ բաց ի իւր գրքերէն։ Իր արքունի պատմաբանը կը համարէր զայն, ուրիշ ո՛չինչ։

Ցորչափ Ռոմանոս թագաւորեց (920–944) Կոստանդին առանձնական կենօք ապրեցաւ, կրելով սակայն կայսր տիտղոսը։ Ռոմանոսի գահ բարձրացած պահուն՝ հնգետասանամեայ էր նա. կարող ենք ըսել ուրեմն թէ ծաղիկ հասակի մէջ կը մեռնէր։

Քսանեւհինգամեայ անգործութեան մէջ՝ Կոստանդին, յուսահատած պատմութեան առարկայ ըլլալէ, անոր հեղինակ ուզեց

հանդիսանալ, գրելով Վասլի կենսագրութիւնը, Եզեկիոյ պատկերին պատմութիւնը, բանակաթեմերու վրայ անգին գրութիւն մը՝ ուր այնքան տեղեկութիւնք կան շրջակայ ազգաց վրայ, և երկու ընդարձակ գլուխներ՝ Հայոց Տարօն և Այրարատ գաւառներուն վրայ, կայսերական արարողութեանց ծիսարան մը, բժշկական, երկրագործական երկեր, ինչպէս նաև բովանդակութիւնը այն գրքերուն՝ զոր հաւաքած էր իր մեծ գրատան մէջ, և կատարելագործեալ օրինագիրք մը։

Դպրոցական դաստիարակութիւնը բարւոքելու համար ամէն ջանք ի գործ դրաւ. մտացի աշակերտները կը վարձատրէր, անոնց բարձրագոյն պաշտօնները կու տար, մինչեւ ծերակուտի անդամ ալ կ'ընտրէր, յաճախ սեղանակից կ'ըլլար անոնց։ Այսպէս մտաւոր աշխարհի վրայ կը թագաւորէր Կոստանդին, մինչ Ռոմանոս արտաքին աշխարհը կը կառավարէր։

Դ. — ՌՈՄԱՆՈՍԻ ԵՒ ԻՐ ՈՐԴԻՈՑ ԱՔՍՈՐԸ. —
ՊԵՐՓԵՌՈՒԺԷՆ ՄԻԱՅՆԱԿ ԿԱՅՍՐ։

Երբ քառասուն տարեկան եղաւ, վճռեց

ձեռք ձգել կրկին փառքը՝ որ իր իրաւունքն էր և իր որդւոյն յանձնել Թագը՝ զոր իր մահէն առաջ արդէն կը կրէին Թոմանոսի որդիքներ։

Վասիլ Ճենձղուկ կոչուած ներքինի պալատականին միջոցաւ՝ Թոմանոսի Ստեփանոս որդւոյն յաջողեցաւ սա համոզմունքը տալ՝ Թէ աէրուԹիւնը երիտասարդ կառավարչի մը կարօտ է, ոչ Թէ իր հօր պէս հիւանդոտ բնաւորի մը և Թէ բոլոր ժողովուրդը երախտապարտ պիտի ըլլէր իրեն՝ եԹէ իր հայրը վանքի մը մէջ փակելով, ինքն անցնէր անոր տեղ։ Ո՛ գիտէ Թէ իր հայրը ե՛րբ պիտի մեռնէր. եԹէ այն ատեն Ստեփանոս գահ բարձրանար, ի՞նչ պարման պիտի կարենար ըլլել չափազանց խարխալեալ աէրուԹեան մը։

Ստեփանոս, Թագաւորելու անհամբեր, խիղճը լռեցնելու պատրուակն ալ գտնելով, և հօր հիւանդուԹիւնն ալ յարմար առիԹ, օր մը գաւակիցներու ընտրեալ խումբով մը՝ պալատ մտաւ, հայրը անկողնով միասին վար իջեցուց, նաւակի մէջ դրաւ, և ղրկեց փոքԹէ կղզին ուր նա ապրեցաւ այնուհետեւ իբրեւ պարզ կրօնաւոր։

Երբ երկրորդ դաւադրուԹիւն մը կը պա-

արաստէին կոստանդինի դէմ, կանխեց ասի-
կա, խնջոյքի ժամանակ երկուքն ալ բռնել
տալով՝ զրկեց իրենց հօր հետ ճգնելու։

Վերջապէս կոստանդին իրապէս կայսր
կ՚ըլլար Բիւզանդիոյ։ Այս դէպքը սակայն
պալատին պաշտօնէից համար աւելի կարե-
ւորութիւն ունեցաւ քան տէրութեան։ Հե-
ղինէ, դուստր Ռոմանոսի, – ամուսնացած
կոստանդնի հետ, – լիուլի իշխանութիւն
կը ստանար. բոլոր անոնք որ Պերփեռու-
ժէնի զաւակից եղած էին՝ վարձատրուեցան
մեծամեծ պաշտօններով։

Եթէ Սրբազան Պալատը, Պերփեռուժէնի
ամբողջ թագաւորութեան ժամանակ, անընդ-
հատ խռովութեանց մէջ եղաւ, տէրութիւնն
ալ ազատ չմնաց աւերիչ պատերազմներէ։

Բուլղարներէն զատ, Արաբացիք (945ին)
արշաւեցին Ասիոյ կողմէն, – Մարաթի քով
սակայն՝ չարաչար յաղթուեցան, – Հոնք
ալ մինչեւ Օթրանթոյ հասան եւ եւեւնին ա-
նապատներ թողլով (947). Արաբացւոց եր-
կրորդ արշաւանք մը (949ին) ի սկզբան յաղ-
թական, ծանր պարտութեան մ՚յանգեցաւ։

Այս պատերազմին առթիւ էր որ այնքան
քաջ հանդիսացաւ Հայէպցի քահանայ մը՝
Թէմէլ անուամբ։

Պատարագ կ'ըսէր նա՝ երբ աղմուկ մը լսեց եկեղեցւոյ դրան առջեւ ու տեսաւ ժողովուրդը տագնապալից յուզման մէջ. ի՞նչ եղած էր արդեօք. — Ներս խուժած էին Արաբացիք ։ Քաջասիրտ աբեղայն , իսկոյն սկիհն և աւետարանը խորանի վրայ ձգելով, պատարագի զգեստները դեռ վրան , վազեց զանգակատուն , առաւ մուրճը՝ որով զանգակը կը բաղխէին և ուղղակի թշնամեաց վրայ դիմեց. ոչ մէկ գիւղացւոյ վրայ նոյնչափ կատաղութիւն տեսնուած չէր. առաջին հանդիպած արաբացւոյն գանկը կը ջախջախէր կամ գէթ անդամներէն մին անգործածելի կ'ընէր. գետինը արեամբ ոռոգեց. արաբացիք իր զգեստներէն, դէմքի վայրագութենէն , բազկի հարուածներէն ազդուած , հեւալով փախչիլ սկսան և ոչ մէկը իշխեց մնալ եկեղեցւոյ մօտ ։

Երբ Թէմէլ շունչ առնելով յաղթանակաւ ետ կը դառնար, սպասելով գովեստներ լսելու, եպիսկոպոսը իր առջեւ ելաւ, յանդիմանեց զինք և ցմահ բանադրեց ։ Թէմէլը դառնացած որ ուրիշներու կեանքը ազատած ժամանակ՝ այնքան ապերախտութեան կը հանդիպէր, իսկոյն Արաբացւոց գնաց, մահմետականութիւն ընդունեցաւ, լախտ և սուր

խնդրեց, բանակի մը գլուխ անցաւ, և սկսաւ անխնայ ջախջախել զանկը բոլոր քրիստոնեայններուն՝ որոնց կը հանդիպէր։ Քաղաքներ և գաւառներ աւերելով՝ փոթորկի արագութեամբ մինչեւ Կապպադովկիա հասաւ. ոչ մէկ բան կարող էր դիմանալ իւր կատաղի եռանդեան. ատով ապացուցուց՝ որ եթէ աւելի կանուխ սկսած ըլլար զինուորական ասպարէզը՝ մեծագոյն աշխարհակալներէն պիտի ըլլար։

Մինչ Սարակինոսաց պատերազմին մէջ Բարդաս Փոկաս և իր Նիկեփոր որդին պարտութեան նախատինքը կը կրէին, Լեւոն, իր միւս որդին, յետ մեծ յաղթութեան մը գերի կը բռնէր Ապուլաշայիր անուամբ արաբացի սպարապետը (956ին)։

Կոստանդին կառքի մը մէջ պառկեցուց զանիկա, և անոր մարմինը իր ոտքին պատուանդան ընելով՝ յաղթանակաւ պտտեցաւ բոլոր քաղաքին մէջ։ Նոյն հանդէսը կրկնեց նաւամարտէ մը յետոյ՝ ուր յունական կրակով՝ Վասիլ ծովակալը այրեց Տարսոնի մէջ գտնուող սարակինոսներու բոլոր նաւատորմիղը. իր քառաձի կառքին կը հետեւէին սեւ գերիներու երկայն գիծ մը՝ շղթայակապ։ Նոյն Վասիլ Սիկիլիոյ մէջ ալ ծովային յաղ-

*թանակ մը տարաւ (958ին). Արաբացիք վրէժն առնելու համար Օթրանթոյի մէջ Մարիանոսի նաւատորմիղին վրայ յարձակեցան, վառեցին անոր և փախչելու ստիպեցին, բայց վերադարձած ժամանակ փոթորիկ մ'ալ զիրենք յաղթահարեց։*

*Այսպէս անընդհատ կռուի մէջ էին Արաբացիք Բիւզանդացւոց հետ, և բաղդը, որ ընդհանրապէս անիրաւ կը կոչուի, երկուքին ալ կ'օգնէր փոփոխակի։*

### Ե. — ԿՈՍՏԱՆԴԻՆԻ ՄԱՀԸ։

*Կոստանդնի կենաց պատկերը չներկայացներ մեզի զօրաւոր ստուերներ. եթէ իր կեանքը նախանձելիներէն եղաւ, իր մահը ամենէն թշուառներէն պիտի ըլլար։*

*Պիտի թունաւորուէր նա, և նոյն իսկ իր որդիէն։ Ռոմանոս Բ, ամուսնացած էր փառասէր աղջկան մը՝ Թէոփանոյի հետ։ Կայսրուհի ըլլալու անհամբեր, կը հարցնէր միշտ ամուսնոյն՝ թէ հայրը ե՞րբ պիտի մեռնի. օր մը յանդգնեցաւ աւելցնել. «Հայրդ մեռցո՛ւր»։*

*Թէոփանոյի սէրը՝ ուրիշ ամէն զգացում աւրած էր Ռոմանոսի սրտէն, բաց ի թերեւս փառասիրութենէն։*

Փոքրիկ տկարութեան մը պատճառաւ Կոստանդին դեղ կ'առնէր. Ռոմանոս կաշառեց Նիկողայոս անուամբ խոհարարը և անոր մէջ թոյն դնել տուաւ։

Կայսրը սովորական ժամուն գնաց դեղը առնելու. երբ թունաւոր բաժակը ձեռքը կուգար, ոտքը սահեցաւ, բաժակը գետին թափեցաւ։

Կոստանդին ազատած էր։

Փոքրիկ մնացորդը սակայն՝ զոր խմեց, առանց ազդեցութեան չմնաց. բժշկուելու համար՝ Բիւթանիոյ լեռները գնաց, ճգնաւորներուն այցելեց, անոնց սեղանակից եղաւ, ինքզինք անոնց աղօթից յանձնեց, Պրուսայի ջերմուկներուն մէջ բաղնիք ըրաւ, բայց երկուքէն ալ օգուտ չգտնելով՝ Պոլիս վերադարձաւ՝ սաստիկ ջերմէ բռնուած։

Ռոմանոս հօր մահը երագելու համար՝ կրկին թոյն դրաւ իր դեղին մէջ։ Բուզանդացիք կը պատմեն թէ իր հոգեվարքի ժամանակ՝ պալատին վրայ քարերու անձրեւ մը կը տեղար, ինչպէս թէ ամբողջ ժողովուրդը կայսեր դէմ ցոյց մ'ընէր։ Զինուորներ դուրս վազեցին յանցաւորները բռնելու համար, բայց ոչ ոք գտան. հետեւցուցին թէ քարերը երկինքէն թափած էին։

Կոստանդին որ ոչինչ կը կասկածէր որդիէն, կանչեց զԹոմանոս, լալով սրտագին զինքը օրհնեց, պատուէրներ տուաւ՝ և յետոյ աչքերը փակեց։

Ցուղարկաւորութեան ժամանակ յայտնի եղաւ՝ թէ ժողովուրդը որքան կը սիրէր զՊերփեռուժէն. ոչ ոք կու լար. ամէնքը կը հեծկլտային։

Բիւզանդիոյ կայսրներուն մէջ ամենէն թոյլ նկարագիրն եղած էր թերեւս, բայց ամենէն գողտր սիրտն էր և ամենէն բարձր միտքը՝ ապահովապէս։ Իր գրական անմահութիւնը բաւական պիտի ըլլար իրեն, եթէ չունենար փառքն ալ՝ զոր ծննդեան իրաւունքը իրեն կու տար։

Եթէ հաւատանք բիւզանդացւոց, անխուսափելի գիսաւորը կրկին յայտնուեցաւ. Կոստանդնի ծննդեան վրայ խորհելով, — որուն ականատես եղեր էր 55 տարի առաջ — մելամաղձիկ կերպով կը հետեւէր ոսկեղէն դագաղի մը՝ ուր ոսկեղէն սիրտ մը կը հանգչէր։

# Ը.

# ՌՈՄԱՆՈՍ ԼԵԿԱՊԵՆՈՍ

(920 – 944)

---

## Ա. ՔԱՋԵՐՈՒ ԸՆՏԱՆԻՔԸ. — ՅԱՂԹՈՒԱԾ ԱՌԻՒԾԸ. — ՌՈՄԱՆՈՍԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ։

*Արեւելքի մայրաքաղաքը, որ ամէն օր մրրկուելու դասեր կ'առնէր շրջակայ ալիքներէն, ամենէն ցնցող հակապատկերները տուաւ պատմութեան. գիւղացիներ ծիրանիի տակ տեսաւ, ոճրագործները՝ վանական սքեմի տակ, և ոսկի գաւազան այն ձեռքերուն մէջ, որ բահ բռնելու սահմանուած էին։*

*Վասն զի Բիւզանդիոյ ժողովուրդը իր առանձին իմաստասիրութիւնն յօրինած էր. հանրապետութեան սկզբունքը, միապետութեան ձեւն ունէր. կ'ուզէր այնպիսի իշխան մ'ունենալ՝ որ փորձառու եղած ըլլայ աղքատութեան տառապանքներուն և հետեւա-*

բար կարենայ ժողովրդեան ցաւերուն կարեկցիլ։

Այսպիսի ընկերութիւն մը սիրով կայսր պիտի ողջունէր Ռոմանոս Լեկաբենոսը. գիւղի մէջ ծնաւ, արքունեաց մէջ ապրեցաւ և վանքի մէջ մեռաւ. — այսպէս անցնելով մարդկային ընկերութեան բոլոր աստիճաններէն։

Վասիլ Արշակունի, ինչպէս տեսանք, 870ին Արեւելք գացած էր՝ Արաբացւոց դէմ կռուելու. պատերազմի խառնուրդին ժամանակ, անխոհեմ եռանդէ մը մղուած, բազմութեան մէջ նետուեցաւ և սկսաւ գետինը ողողել արաբացի արիւնով։ Իր զրահն և քաջութիւնը՝ զինք մատնեցին սակայն. յանկարծ անդրադարձաւ թէ պաշարուած է թշնամիներէն։ Այդ յուսահատ րոպէին, անծանօթ ձիաւոր մը, սուրը շողշողացնելով, — փայլակ մը՝ թշնամեաց ամպերուն մէջ, — հոն թռաւ՝ ճեղքեց թշնամիները, և կայսրը բռնելով դուրս հանեց վտանգէն։

Յաղթութեան գիշերը չլուսցած, Վասիլ իր վրանը կանչել հրամայեց գիւղացին. զինուորներ զունդագունդ կայսեր կը ներկայանային իւրաքանչիւրը երդուըննալով թէ այդ քաջութիւնն իրեն կը պատկանի։ Վա-

սիլ անոնցմէ ոչ մէկը կը յիշէր տեսած ըլլալ. ամենէն յետոյ ներս մտաւ Հայ մը և վասիլ իսկոյն իր ազատարարը ճանչցաւ. նոյն կրակոտ աչքերն էին, նոյն վիթխարի հասակը և նոյն խրոխտ դէմքը։

— Ո՞վ ես դու, հարցուց Վասիլ։

— Հայ գիւղացի մը, պատասխանեց նա. անունս է Թէոփիլակտոս Ավաստակտոս, Լեկաբենեանց ցեղէն։

Յունական բաժնի մէջ Հայք սովորութիւն ունէին կրկին անուն կրել, մին յունական (Թէոփիլակտոս) միւսը հայկական (Վաշտակ), իսկ Լեկաբենն ուրիշ բան չէ անշուշտ՝ բայց եթէ Գաբեղեանի աղաւաղումը։

— Խնդրէ՛ ինձմէ այն վարձքը որ կ'ուզես, աւելցուց Վասիլ։

— Արտ մը, պատասխանեց Վաշտակ։

Քաջը գոհ պիտի ըլլար այսու, բայց ոչ նաեւ Վասլի զգացումը։ Գիւղացին պատրիկ անուանեց, և հրամայեց որ իր որդւոյն հետ, որ կը կոչուէր Ռոմանոս, Պոլիս գայ։ Վաշտակ, կեանքի անհաւատալի յեղաշրջութեամբ մը, արքունական շրջանի մէջ մտաւ, իսկ Ռոմանոս՝ նաւային զինուոր գրուեցաւ, և ամուսնացաւ Պոլսոյ մէջ, Թէոդորա անուամբ տիկնոջ մը հետ։

Քաջութիւն մը հայրը փայլեցուցած էր․ ուրիշ մը իր որդին պիտի բարձրացնէր։

Օր մը Ռոմանոս, Լեւոն Իմաստասէրի հետ որսի գացած էր։ Իրենց կ՚ընկերէին զինուորներ, պատրիկներ, ծերակուտի անդամներ։ Երբ բոլոր իշխանները, իւրաքանչիւրն իր որսին զբաղած՝ ցրուած էին ճախճախուտին մէջ, յանկարծ զարհուրելի մռնչիւն մ՚օդը դողդղացուց․ առիւծ մը, բաշերը թոթվելով, դուրս ցատքեց եղէգներու մէջէն․ գազանաց թագաւորի բոցափայլ աչքերը իր պաշտօնակիցը փնտռել կը թուէին ։ Յոյն իշխանները փախչիլ սկսան․ անվախ Ռոմանոսը դէպ ի գազանը վազեց։ Ոյժը հաւասար էր․ կռիւը երկարատեւ եղաւ։ Ծառերու ճիւղերու մէջէն կ՚երեւային յոյն իշխաններու սարսափահար աչքերը, որ գէթ քաջութիւնն ունեցան մնալու՝ կռիւը դիտելու։ Յանկարծ հիացման աղաղակ մը բարձրացաւ ամէն կողմէն․ Ռոմանոս առիւծը գետին փռած էր։

Այս մենամարտութեան վրայ կայսրն ինքնին ափշեցաւ․ մեռած առիւծին քով՝ զՌոմանոս Բիւզանդիոյ ծովակալ անուանեց։

Երկրորդ օր, Ոսկեղջիւրի մէջ, համէական նաւատորմիղը, դրօշակներով զարդա-

րուած, իր հայազգի ծովակալը կ'ողջունէր։

Այս դէպքը, Ռոմանոսի համար, էր հանդիսաւոր մուտք մը քաղաքական կեանքի մէջ։

Անձի մը նկարագիրը ճանչնալէ յետոյ, դիւրին է գուշակել ապագան։ Նկարագիրը այն է գործերուն՝ ինչ որ աղբիւրը վտակին։ Բայց Ռոմանոս երկու նկարագիր ունէր, իրարու հակառական. անոնցմէ մին երիտասարդութեան ժամանակ գործածեց՝ միւսը ծերութեան։

Առաջինն էր անյագ փառասիրութիւն, նրբամիտ նենգութիւն, բացարձակ անխղճութիւն. ոչ մէկ խոստում, ո՛չ մէկ երդում կարող չէին զինքն արգիլել ձեռնարկէ մը՝ ուսկից շահ ունէր. կրօնքը կը յարգէր, բայց պայմանաւ որ իր քաղաքական գործոց չխառնուի։

Իսկ երկրորդ նկարագիրն եղաւ տարապայման խղճահարութիւն, սէր խոնարհութեան, մահացուցմանց, եռանդ՝ վանք և եկեղեցի շինելու,

Իր կեանքին մէջ սակայն՝ Ռոմանոս ունեցաւ միշտ առաքինութիւն մը, որ եթէ իշխանի մը գահակցի, մեծ արդիւնքներ կարող է յառաջ բերել.– գթութիւնը. և Ռոմանոս կարող չէր ողորմած չըլլալ աղքատ

դասակարգին քանի որ անոր պատկանած էր երբեմն։ — Հեզնող և զուարճախօս էր Ռոմանոս․ հեշտասէր, բայց խոնարհ․ օր մը Վասիլ անուամբ կրօնաւոր մը խստիւ յանդիմանեց զինք․ նա ոչ միայն չբարկացաւ, այլ իսկոյն դրամի մեծ գումար մը հանելով, հարցուց թէ ի՞նչ պէտք էր վճարել այդքան արդարացի յանդիմանութեանց համար։

Իր արտաքինովը՝ վսեմ էր Ռոմանոս․ ունէր բարձր հասակ, դէմքի վայելչութիւն և զինուորական վեհութիւն մը։

Այս ձիրքերը, որ ուրիշ պարագայի մէջ քաղաքական նշանակութիւն պիտի չստանային, ընդհակառակն փառքի ասպարէզ մը բացին Ռոմանոսի․ Թագաւորողն էր Զոյէ․ պաշտող հայ ծովակալին, յուսախաբ կ՚ընէր բոլոր անոր նախանձորդները ։ Զրպարտութիւնք ապարդիւն կը մնային, իրական յանցանքներ ալ՝ զրպարտութիւն կը համարուէին։ Այսպէս Ռոմանոս յամենայն դէպս անմեղ կը հռչակուէր, և յաճախ յանցանքէ մը վերջ, նոր պատիւ մը կը ստանար։

Տէրութիւնը երկու կողմէ վտանգուած էր․ յԱսիա Արաբներէն, յԵւրոպա Բուլղարներէն։ Զոյէ որոշեց առաջիններուն հետ խաղաղութեամբ վարուիլ, վերջիններուն հետ պատերազմիլ։

Բ. — ՌՈՄԱՆՈՍ ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԺԱՄԱ-
ՆԱԿ՝ — ՆԱԽԱՏՈՐՄԻՂԸ ՊԱԼԱՏԻՆ ԴԻՄԱՑ։

Մարմարան, դարերէ ի վեր բարբարոս-
ներու գետաբերանն եղած էր։

Ձոյէ Արեւելեան և Արեւմտեան բոլոր
բանակները միացնելով՝ Բուլղարաց դէմ
ղրկեց. ցամաքի վրայ կը զօրավարէր Լեւոն
Փոկաս, ծովու վրայ՝ Ռոմանոս։ Երկու մըր-
ցակիցներ՝ որոնց վրայ սեւեռած էր ժողո-
վըրդեան նայուածքը։ Ռոմանոս Բուլղարա-
կան պատերազմէն օգտուեցաւ՝ իր նախան-
ձորդը վարկաբեկ ընելու համար։ Երբ Դա-
նուբի վրայ նաւարկելով՝ կ'երթար պաշտա-
կից Փացինաքները պատերազմի դաշտ փո-
խադրելու, այնքան կոխ ըրաւ Ցոլհաննէս
Բոկաս պատրիկին հետ՝ որ բարբարոսները
գայթակղած հրաժեշտ տուին «անմիաբան»
ազգի մ'օգնելէ։

Ռոմանոսի փափագածն ալ՝ ճիշդ այս էր։
Լեւոն Փոկաս ստիպուեցաւ իր զօրքերով
միայն պատերազմիլ և յաղթուեցաւ։ Ռո-
մանոս իր նաւերուն մէջ կեցած՝ ուրախու-
թեամբ կը տեսնէր յոյն զինուորներու տագ-
նապն և փախուստը։ Մահուան երկիւղէն
սարսուռ, դէպ ի նաւերը կը վազէին ա-

նոնք, բայց ճիշտ այն վայրկենին ուր ազատած կը համարէին կեանքերնին, սպառնացող սուրը կրկին կը շողշողար իրենց գլխուն վրայ։ — Ռոմանոս չէր թողուր որ անոնք նաւերը մտնեն։ Կոտորածը օրինակ չէր ունեցած. զինուորներէն ոչ մին ազատեցաւ։

Անակնկալ պարտութիւնը լսելով, բոլոր ժողովուրդը ատելութեան ցոյցեր սկսաւ ընել Ռոմանոսի դէմ՝ որ Փացինաքները օգնութեան չէր բերած, յետոյ փախստականները՝ անսրտաբար թշնամեաց մատնած էր։ Ծերակոյտը վճռեց, իր երկու յանցանքներուն համար՝ երկու աչքերը կուրացնել։

Դատապարտութեան վճիռը լսելով թագուհին, շանթահարուած, ծերակուտին վազեց.

«Ի՞նչ կը խորհիք, կը գոչէր նա, տէրութեան սի՞ւնը, կայսերական գահին հի՞մը փլցնել։ Լեւոն Փոկաս, անյագ փառասէր, կայսր ըլլալու առիթը կը փնտռէ. եթէ կշիռքի հակառակ նժարէն Ռոմանոսը վերցնենք, եթէ առանց նախանձորդի մնայ, Կոստանդին վանքի մը մէջ պիտի ըլլայ երկրորդ օր, և Լեւոն արքունեաց մէջ։ Ոչ միայն պէտք չէ պատժել զՌոմանոս, այլ և պէտք է պալատ կանչել, վարձատրել, զինքը կայսեր պաշտպան հռչակել»։

Ո՛վ պիտի համարձակէր Թագուհւոյն դիմախօսել. իսկոյն պալատ գալու հրաւէր ղրկուեցաւ Ռոմանոսի։ Հայ ծովակալը, իր ոճիրներուն խորապէս գիտակից, հաստատապէս համոզուած էր թէ զինքը ձերբակալելու հնարք մ'էր որ կը փնտռէին. պատասխանի արժանի չհամարելով նամակը, յայտարարեց թէ իր նաւերով Կրետէ պիտի երթար, Արաբացւոց գլուխ պիտի անցնէր, և պիտի գար Բիւզանդիոնը հիմնայատակ ընելու։

Սարսափ տիրեց արքունեաց և քաղաքին վրայ։ Կայսրը իր ձեռքով երկրորդ նամակ մը գրեց. Ռոմանոս հաճեցաւ այս անգամ մերժողական պատասխան մը գրել։ Յուզումներ, պաշտօնեայներու յանկարծական փոփոխումներ, անընդհատ ժողովքներ կը յաջորդէին իրարու գիշեր ցորեկ՝ անհամբեր հետաքրքրութեան մը մէջ թողլով ժողովուրդը։

Ռոմանոս պալատին մէջ բարեկամ մը՝ և մեծ թշնամի մ'ունէր, երկուքն ալ իրենց դիրքով ազդեցիկ. առաջինն էր Թէոդոր, փոքրիկ կայսեր դաստիարակը, երկրորդը՝ Կոստանդին, Զոյէի սենեկապանը, որ վտանգը հեռացնելու համար, Արաբացւոց արշա-

ւանքներն առիթ առնելով, հրամայեց Թոմանոսի Սիկիլիա երթալ։

Խորամանկ ծովակալը հասկցաւ սենեկապանին գիտաւորութիւնը. չհնազանդեցաւ՝ պատճառ բերելով որ իր նաւաստեաց թոշակները դեռ չէին վճարուած։ Սենեկապետը իր հետ առատ դրամ և թիկնապահներու ստուար գունդ մ'առած՝ նաւատորմիղը գնաց հատուցումներն ընելու համար։

Այցելութեան լուրն առնելով առաջուց, Թոմանոս ամենէն վիթխարի և կորովի նաւաստիներն ընտրեց՝ և իրենց հրամայեց իսկոյն ձերբակալել զԿոստանդին՝ երբ իրենց նշան ընէ։ Յետոյ, բարեկամական ժպտով դէմքը ծպտելով, ընդ առաջ ելաւ սենեկապանին. «Կը ցաւիմ, կ'ըսէր Թոմանոս, որ անտեղի լուրեր կը պտտին քաղաքին մէջ. մեր ամենուս ջանքն է տէրութեան բարիքը, կայսերական գահին պահպանումը՝ և յարգանք ամէն անոնց՝ որ իշխանութիւնը կը ներկայացնեն»։ Յետոյ սկսաւ ոգեւորութեամբ իւրաքանչիւր նաւուն մասին իր հրամայած նորոգութիւնները պատմել, այսպէս նաւէ նաւ պտտցնելով զինք բերաւ մինչեւ անոր մէջ՝ ուր ինքը կը բնակէր։ Ընտրեալ նաւաստիները հոն էին. Թոմանոս, — որ

չէր դադրած դեռ Կոստանդնի գոլեստներ տեղալէ և կը շարունակէր զինքն՝ իր զինուորաց և նաւերու հետ միասին՝ Կոստանդնի խոնարհ ծառայներն անուանել, — յանկարծ ետ դարձաւ, ձայնը փոխեց և հրամայական կերպով գոչեց. «Բռնեցէ՛ք»։

Նաւաստի հսկայներ՝ ամէն կողմէն Կոստանդնի վրայ խուժեցան, շղթայի զարկին զինք և բանտեցին նոյն նաւուն սենեակներէն միոյն մէջ։ Այն ատեն միայն հասկցաւ Կոստանդին թէ ինչ դառն հեգնութիւններ էին Ռոմանոսի խօսքերը։ Յետոյ հայ ծովակալը սկսաւ խրոխտ քայլերով ճեմել այն տախտակամածին վրայ, որուն տակ արքունի սենեկապանը կը գտնուէր։

Զօյէ՝ պատրիարքն և մեծամեծ իշխանները դրկեց Կոստանդինը պահանջելու համար. անոնք հազիւ մօտեցած էին նաւատորմղին երբ քարերու կարկուտ մը սկսաւ տեղալ իրենց վրայ, փախչելու բռնադատելով։ Քիչ վերջ Ռոմանոս իր բոլոր զինուած նաւերով Արքազան Պալատին վրայ կը քալէր՝ և կանգ կ'առնուր անոր Պուքոլէոն նաւահանգստին մէջ։ Տագնապը, Ռոմանոսէն առաջ, տիրեց պալատին. ծովակալին թշնամիները փութացին փախչիլ. Զօյէ և կայսրը

ընդ առաջ ելան իրեն, յարգանօք պալատ ընդունեցան և յետ արքունի մատրան մէջ ճշմարիտ խաչափայտին վրայ երդուընցնելու զՌոմանոս որ կայսեր իրաւանց պիտի չվնա-սէ, զինքն անուանեցին զօրավար Թիկնապահ զօրաց։ Կայսեր կեանքը այնուհետեւ Ռոմանոսի ձեռքին մէջն էր․ իր մրցակիցը յաղթուած, խաւարած էր․ գահ ելնելու միայն մէկ արգելք կը մնար․— երդումը՝ որ սակայն շուտով պիտի եղծուէր Ռոմա-մանոսի յիշողութենէն։

Գ․ — ՓՈԿԱՍԻ ԲԱՆԱԿՆ Ի ՔԱՂԿԵԴՈՆ․ — ՌՈՄԱՆՈՍԻ ՃԱՌԸ՝ ԿԱՐՄԻՐ ԿՕՇԻԿՆԵՐՈՒՆ ԱՌԹԻՒ․ — ՌՈՄԱՆՈՍ ԿԱՅՍՐ։

Ռոմանոս, որ կայսրուհին իրեն գերի ընելով յաջողած էր այնքան բարձրանալ, նոյնպիսի շաւիղ մ'ընտրեց գահուն աւելի մերձենալու համար․— Հնդետասանամեայ Կոստանդինի սիրտը ջանաց իր Հեղինէ դստեր հետ կապել։ Այսու կայսերական սերունդ մը պատրաստած պիտի ըլլար՝ իր իսկ ցեղէն։ Ծրագիրը յաջողցնելու համար հարկ չեղաւ շատ հնարքներ մտածել․ Հեղինէ ունէր բարձրագոյն աստիճանով ամէն ձիրք մարմնաւոր, հոգեկան, և մտաւոր։ Կոստան-

դին որ զուրկ էր քաղաքական հեռատեսութենէ, փութաց Հեղինէի հետ նշանուիլ, և 919ի Զատկին շքեղօրէն կատարեց հարսանիքը, որով Հեղինէ՝ կայսրուհի, Ռոմանոս կայսերահայր տիտղոսը կ'առնուր և կարմիր մոյկեր գործածելու իրաւունք։

Սակայն ուրախանալու ժամանակ չկար. քանի որ Լեւոն Փոկաս և Կոստանդին սենեկապան արեւելեան գունդերով կու գային կայսրը «բռնաւորին ձեռքէն ազատելու»։ Ապստամբները բանակեցան ասիական ծովափին վրայ, - Խրիւսոպոլսէն մինչեւ Քաղկեդոն, — աչքերնին դէպ ի Պոլիս։ Ժամանակի սովորութեան համեմատ, բանակէ մ'առաջ՝ Ռոմանոս բանադրանքի թուղթ մը ղրկեց Փոկասի դէմ.

«Ով որ դաւադրութիւն մը կամ ապստամբութիւն մը կազմակերպէ, նզովեալ եղիցի։

Ամէն ոք որ իր հաւատուրացութեան մեղսակից կամ օգնական կ'ըլլայ՝ նզովեալ եղիցի։

Ով որ անոր խորհրդական և գրգռիչ կ'ըլլայ, նզովեալ եղիցի։

Ով որ իր դրօշակներուն տակ քալէ, նզովեալ եղիցի։

Այն քահանաները, որ զինքը կը խոս-

տոկանցնեն, ցորչափ չէ զղջացած իր հա-ւատուրացութեան վրայ, և չէ հրաժարած անկից, նզովեալ եղիցին»։

Ի՞նչպէս սակայն այս նզովքները Փոկասի բանակին մէջ շրջեցնել պիտի կարենային։ Այս բանին համար Ռոմանոս երկու հոգի ընտրեց. Միքայէլ անուամբ կղերիկոս մը, և Աննա անուամբ անհամեստ կին մը։ Ասոնք իրենց դերը յաջողութեամբ ի գլուխ հանեցին, թէ և կղերիկոսը վերջ ի վերջոյ բռնուելով՝ անդամատութեան դատապար-տուեցաւ. – քիթն և ականջները կտրե-ցին։ Երրորդ նամակ մը հասաւ նոյն իսկ Կոստանդինէն գրուած.

«Փորձով իմացած եմ, կ'ըսէր նա, Ռո-մանոսի արթնութիւնն և հաւատարմութիւնը. Աստուծմէ վերջ՝ ինքն է իմ պաշտպանս և պահապանս. համոզուած եմ որ զիս հայ-րական սիրով կը սիրէ, և անոր համար զինքը՝ իմ հայրս կը յայտարարեմ։

Գալով Լեւոնի, որ միշտ մեր տէրութիւնը կը խռովէ ծածուկ մեքենայութիւններով, և հիմակ ալ յայտնի պատերազմով, զինքը կը յայտարարեմ պաշտօնանկ, մատնիչ, դաւաճան, և բարկութեան արժանի։ Ուրեմն դուք որ իր սուտերով խաբուած էք, ճանչ-

ցէք ճշմարտութիւնը, բաժնուեցէք զզուելի ապստամբէն, և հնազանդեցէք ձեր օրինաւոր կայսեր»։

Արքունի քարտուղարներէն մին, Սիմէոն անուամբ, Քաղկեդոն տարաւ այս նամակը. կայսեր կողմանէ գրուած ըլլալով՝ ոչ ոք յանդգնեցաւ ընթերցումն արգիլել։ Բոլոր բանակը Լեւոն Փոկասի դէմ դարձաւ, կեցցէներ գոչելով Կոստանդնի և Ռոմանոսի։ Երբ Լեւոն տագնապալից բերդէ բերդ կը փախչէր, գունդ մ'իր եռեւէն հասաւ, բռնեց զինք և նաւակի մէջ գրաւ. Քաղկեդոնի և Պօլսոյ ճիշդ մէջտեղ նաւակը կանգ առաւ. երկու զինուոր ոտքի ելան, պառկեցուցին զԼեւոն, և տաքցած երկաթներ մխեցին իր բիբերուն մէջ։ Ռոմանոս,— որ քանի մ'ամիս առաջ բարեկամութեան երդում տուած էր Լեւոնի — այս պատժով ալ գոհ չեղաւ. կոյր Լեւոնը ջորիի վրայ հեծցնելով վազցնել տուաւ Պօլսոյ բոլոր փողոցներուն մէջ. սպարապետը, որ այնքան անգամ կեանքը հայրենեաց համար վտանգի մէջ դրած էր, ծիծաղի առեղ՝ ժողովրդեան արտասուքը շարժեց։

Հեղինէի հարսանեաց վրայ տարի մ'հազիւ անցած էր, (920 սեպտ.) երբ Ռոմանոս՝

կայսրը և ծերակոյտը հաւաքելով՝ հետագայ ճառն արտասանեց... իր կարմիր մոյկերուն վրայ շարադրուած։

*

«Դուք, ով ազնուականք և դիւցազունք. միաձայն հաւանութեամբ հրաման տուիք՝ որ ես կարմիր մոյկեր գործածեմ։

Շնորհակալ եմ ձեր թանկագին ընծային համար, բայց փափագելի էր որ քիչ մ'աւելի մտածէիք պարագաներուն վրայ։

Ի՞նչ բանի կը նմանիմ ես հիմա. — այն միմոսներուն և խեղկատակներուն, որ ժողովրդեան ծիծաղը դեռ աւելի շարժելու համար, գոյնզգոյն զգեստներ կը հագուին։

Ուրիշներուն պէս՝ ես ալ կը ծիծաղիմ ինքնիրենս վրայ, երբ կատարակութեան կը ներկայանամ՝ ոտքերովս միայն կայսր, իսկ գլխով՝ սովորական մարդ մը։ Ի՜նչ ծաղրական բան. աւելի լաւ հատակերգութիւն մը կարո՞ղ էիք մտածել։ Ուրեմն կամ ինձի թագ մ'ալ տուէք, և կամ հանեցէք ոտքէս այս կայսերական մոյկերը, որ զիս նիւթ կ'ընեն ժողովրդեան ծաղրածութեանց»։

Ամէնքը իրաւունք տուին Ռոմանոսի և Կոստանդինի յետ նախ զինքը Կեսար անուանելու, (24 սեպտ. 920) Նիկողայոս հայ-

րապետի ձեռամբ կայսերական թագ մը զե-տեղեց անոր գլխուն վրայ 920, դեկտ. 17)։

Ամէն երդում մոռնալով, Ռոմանոս սկսաւ գործել իբր միակ կայսր Հռոմէական պե-տութեան. Կոստանդին՝ անուն մ'էր միայն այնուհետեւ. նոյն իսկ անհրաժեշտ բաները կը զլացուէին իրեն. ապրելու համար ստի-պուեցաւ նա երբեմն իր նկարչութեան գոր-ծիքները, կամ գրքերէն մի քանին ծախե-լու։ Դրամները Ռոմանոսի պատկերը կը կրէին։

Գ. — ԿԱԼԻԳՈՒԼԱ՝ ՊԱՏՐԻԱՐՔ. — ԵԿԵՂԵՑԱԿԱՆՔ ՊԱ-ՐԵԼՈՎ, ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆ Կ'ԸՆԵՆ։ — ՁՈՒԱՐԹՈՒԹԵԱՆ ՊԱՐԸ։

Զոյէ և Թէոդոր, Ռոմանոսի մեծագոյն բարերարները, վանքի մէջ փակուեցան՝ հոն «իմաստասիրութեամբ զբաղելու համար», ինչպէս կ'ըսէին Բիւզանդացիք։

Այսու Կոստանդին դեռ աւելի անպաշտ-պան կը մնար։ Ռոմանոս յաջորդաբար գա-հակից անուանեց իրեն՝ իր Քրիսթոֆ (921), Ստեփան և Կոստանդին որդիները (927) և նոյն իսկ իր Ռոմանոս անուամբ թոռնիկը (Քրիսթոֆի որդին)։

Եկեղեցական կառավարութիւնն ալ ձեռք

բերելու համար՝ Ռոմանոս իր Թէոփիլակտոս որդին կղերիկոս ընել տուաւ, և քիչ յետոյ պատրիարք (940) երբ դեռ հազիւ տասն և վեց տարեկան էր։ Յետոյ իր որդւոյն երիտասարդութիւնը պատրուակ առնելով՝ սկսաւ եկեղեցական գործերը ինք կարգադրել։

Թէոփիլակտոս պատրիարքը՝ որուն մանրամասն կենդանագիրը կ'ընէ մեզ Կեդրենոս (յէջ 333, բոն տպ. Նիբուհրի) պատմութեան ամենէն եզական դէմքերէն մին է։ Եկեղեցւոյ վրայ մտածելու տեղ իր ախոռով կը զբաղէր. երկու հազար ձի ունէր. Կալիգուլան անգամ այնքան խանդաղատանք չէր ցուցած իր ձիերուն վրայ, որ պալատական իշխանուհեաց կեանքը կ'անցնէին. գարիի տեղ կու տային անոնց ազնիւ կերակուրներ անուշահոտ գինիներով եփուած. բալասան, կինամոմոն, ամէն տեսակ համեմներ կը դրկուէին պատրիարգարան, ուկից կը տարուէին ձիերուն։ Աւագ հինգշաբթի օր մը երբ նա ձայնաւոր պատարագ կ'ընէր, քուռակի մը ծնունդն աւետեցին իրեն. զգեստները մէկդի նետել, եկեղեցիէն դուրս վազելը մէկ ըրաւ. ուրախութենէն՝ չէր հաւատար եղածին. յետոյ դարձաւ

զուարթութեամբ զգեստները հագաւ, և ձայնաւորը շարունակեց։

Սակայն ինքնիրեն ալ ոչ նուազ խնամք կը տանէր. եկեղեցւոյ բոլոր պաշտօններուն սուղ գինը որոշած ըլլալով, բաւական դրամ շահեցաւ սրբապիղծ վաճառականութեամբ։ Եթէ մէկը դանդաղէր կամքը կատարելու, «Մտիկ ըրէ՛ ինձ, կ'ըսէր նա, քեզ եպիսկոպոս կը ձեռնադրեմ... ամենէն ընդարձակ թեմերէն մէկուն վրայ»։

Իր բոլոր հպատակաց մեղքերը թերեւս կրնային թուալէս քան իր գործածները գերազանցել, բայց ոչ նաև ըստ տեսակի։

Զուարթ բնաւորութիւն ունենալով, շատ կը ձանձրանար ժամերգութեանց լուրջ և տխուր հանդիսաւորութենէն։ Հնարք մը կը մտածէր՝ զանոնք աւելի զուարճաչելի և հրապուրիչ ընելու համար իրեն յանձնուած հաւատացելոց։ Այս նպատակաւ հրամայեց· պարելով ժամերգութիւն ընել, ինչ որ գրեթէ երկու դար հաւատարմաբար կատարուեցաւ։ Քանի մը շարական երգելէ վերջ, հարսանեաց երգ մը կը յաջորդէր, յետոյ քահանայք և աշխարհականք մեծ ոգեւորութեամբ պարել կը սկսէին։ — Այս եղելութիւնը տարակոյսի չկրնար ենթարկուիլ,

որովհետեւ ժամանակակիցներ կը պատմեն. զայն եւ Կեդրենոս կը գանգատի որ փոխանակ արտասուքով եւ զղջացեալ սրտիւ կատարելու ժամերգութիւնքը, անառակ երգելով, ծիծաղով, յիմարական աղաղակներով եւ «սատանայական պարերով» կը կատարուին անոնք։ Այսպիսի սովորութիւն մը, եկեղեցական իշխանութենէն հրամայուած, տէրութեան ամէն կողմը՝ մեծ ընդունելութիւն գտաւ։ Եւ Թէոփիլակտոս զուարթութեան գարպղուխ մը բացաւ։

Ձիերը, զորս այնքան սիրած էր պատրիարքը՝ իր մահուան պատճառ պիտի ըլլային։... Օր մը գեղեցիկ նժոյգի մը վրայ աշտանակած, իր սովորական շարժումներով՝ դիտողները կը հիացնէր, կը ճմլէր ծովափին վրայ պարիսպներու երկայնքէն. յանկարծ ձին սահեցաւ եւ հայրապետը նետուելով օդին մէջ՝ քարերուն զարնուեցաւ։ Յորդահոս արիւն սկսաւ վազել։ Իսկոյն անկողին տարին, ուր անշարժ մնաց երկու տարի. կարելի չէ գուշակել թէ ինչ ցաւութիւն պատճառեց իրեն այս հիւանդութիւնը, իրեն՝ որ քսան տարի հեծելութեամբ անցուցած էր կեանքը։ Յետոյ ջրգողութիւն ունեցաւ եւ մեռաւ (27 փետր. 956)։ Այն

Հայրապետը կենաց մէջ պալատական պաւաճանութիւններ ալ կազմակերպած էր, բայց պարելու ծրագրին պէս յաջողութիւն չգտան:

## Է. — ԹՈՄԱՆՈՍԻ ՆԵՐՔԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ. — ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆՔ՝ ԻՐ ԿԵՆԱՑ ԴԷՄ: — ՊՈՆՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆԸ:

Համոզումները բաղդին պէս բաժնուած են: Ընկերվարականութիւնը աղքատ դասակարգին կը պատկանի, ինչպէս ազնուապետութիւնը՝ հարուստներուն. և եթէ եղած են մեծամեծներ որ ռամկավար հանդիսացած ըլլան, ժողովուրդը իրենց գործիք ընելու համար եղած է յաճախ: Գաղափարի հսկայական ընդարձակութիւն պէտք է ունենալ ազնուական մը, որպէս զի, հակառակ իր շահուն, ռամկին դատը պաշտպանէ:

Թոմանոս սակայն երկու դասակարգին ալ պատկանած էր. իր հոգւոյն մէջ անկազմակալ կերպով ընկերական բարեշրջման մեծ գաղափարական մը կը սնուցանէր: Կալուածատիրութիւնը ժողովուրդը կը կեղեքէր դարերէ ի վեր. Թոմանոս յայտնի պատերազմ մղեց անոնց դէմ, գիտնալով հանդերձ թէ

իշխաններէ շրջապատուած, վանքի մէջ կը դնէր իր կեանքը։ «ԶԱստուած օրինակ առած եմ ինծի» կ'ըսէր նա։

Իր համոզմամբ պէտք էր միշտ թագաւոր մը աւելի ուշադրութիւն դարձնէր իր ժողովրդեան երջանկութեանը՝ քան արտաքին պատերազմներու։ Անոր պարտքն է նախ հպատակները պահպանել, յետոյ սահմանները. — հպատակները՝ սահմաններէն աւելի բան մըն են։

Նոր օրէնքներ հանեց նա ի նպաստ գիւղացւոց, տէրութեան պահանջը բարւոքեց, կանոններ դրաւ զինուորական ստացուածքներու մասին։

Յանդուգն մենամարտ մ'էր, զոր կը մղէր նա իր դարուն ոգւոյն հետ. վերջնական յաղթանակը դժուարին էր շահիլ. բայց Ռոմանոս այն քաջերէն եղաւ՝ որ իրենց թշնամին ալ կը հիացնեն։

Իր ողորմածասիրութիւնը սահման չունէր։ Ամէն օր իր հետ երեք աղքատ սեղանի կը նստէին. միայն պահոց օրերը, — կերակուրները չափաւոր ըլլալուն համար, — աղքատաց տեղ՝ երեք խստակեաց կրօնաւոր բերել կու տար վանքերէն։

Ռոմանոս եղաւ հնարող այն գոց և միայն

մէկ ծակ ունեցող տփիկներուն՝ որ փողոցի վրայ կը կախուէին՝ քաղաքացիները ողորմութեան հրաւիրելով։ Կայսեր օրինակը բոլոր իշխանաց վրայ ազդեց, նոյն իսկ հետաւորներուն. Աշոտ Ողորմած որ Ռոմանոսէն քանի մը տարի վերջ (952) Հայոց գահը կ'ելնէր, գթութեան նոյնպիսի սրտաշարժ ապացոյցներ տուաւ։

927ին հանդիպած մեծ սովին ժամանակ, արքունի գանձէն աղքատները կերակրեց. ամէն կողմ հիւանդանոց, աղքատանոց, որբանոց կը կանգնէր այն ստակով, որ Կոստանդնի ձեռքին մէջ մեծ գրատան մը շինութեան պիտի ծառայէր անշուշտ։ Ընտանիքներ կային՝ պարտքի տակ ճնշուած. բոլոր այդ պարտքերուն հաշիւը առաւ, ամէնքն ալ տէրութեան գանձէն վճարեց, յետոյ մուրհակները հրապարակաւ այրել տուաւ։ Նոր պարտէզներ կը շինէր ժողովրդեան զուարճութեան համար, իսկ նոր եկեղեցիներ՝ քաւելու նպատակաւ իր մեղքերը, — որ յիրաւի բազմաթիւ էին։

Կոստանդնի և ազնուապետութեան կուսակիցները կարող չէին սրանց երկար կեանք մաղթել կայսեր մը՝ որ երկուքին ալ կը վնասէր։ Եօթն դաւադրութիւն յաջորդե-

ցին իրարու՝ Ռոմանոսը գահէն կամ կեան-քէն զրկելու համար։ Բայց նա գիտէր պա-տիժը կանխել քան յանցանքի գործադրու-թիւնը, և կը վարուէր իր դաւաճաններուն հետ «Գիտակից, սկզբունքով եղած անգթու-թեամբ մը» ինչպէս կը վարդապետէ Գել-ցէր (էջ 983)։

Զոյէ Թունաւորել փորձեց զինք. իր սէրը ատելութեան փոխուած էր. հոգեկան խո-րունկ դառնութեամբ նա կ՚իմանար հիմա՝ թէ որքան խաբուած էր Ռոմանոսէն, որ ոչ թէ իր անձը՝ իր գահը սիրած էր միայն։ Երբ անհամբեր Թոյնի արդիւնքներուն կը սպասէր, յանկարծ դուռը բացուեցաւ և վար-սավիրայ մը՝ զինուորներու հետ միասին ներս մտաւ. — դաւը յայտնուած էր. գեր-ծեցին Թագուհին, ականակուռ զգեստներու տեղ՝ սեւ զգեստ մը նետեցին վրան, յետոյ ղրկեցին Փրինքիփոյ, կուսանաց վանքին մէջ ապաշխարելու համար։

Պալատականներէն ոմանք որ կեանքեր-նին վտանգի ենթարկել չէին ուզեր, գաղտնի ժողովքով որոշեցին քանի մ՚աւազակ կան-չել, առատ դրամ խոստանալ և անոնց մի-ջոցաւ, որսի ժամանակ սպաննել զՌոմա-նոս։ Դիւրին եղաւ Բիւզանդիոնի մէջ աւա-

զակ գտնել, և, փափագուած թուով։ Բայց կայսրը զայն իմացաւ իսկոյն. բազմաթիւ գունդերով անտառը գնաց... աւազակներն որսալու։ Ամէն կողմանէ պաշարեց զանոնք, և մի առ մի ձերբակալեց։ Յետոյ հանդիսաւոր կերպով քաղաքը բերաւ, ծեծեց, կուրցուց, ջորիի վրայ հեծցնելով, մէկ ձեռքի մէջ ագին՝ միւսին մէջ խարազան մը տալով, հրամայեց, ըստ սովորութեան ժամանակին, Պօլսոյ փողոցներու մէջ ձիարշաւ ընել. դաւը կազմակերպուած էր՝ Լեւոն Փոկասի վրէժն առնելու համար. ուստի կայր Փոկաս ալ ջորիի վրայ հեծած իբրեւ ընդհանուր սպարապետ, կ՚ընթանար աւազակաց աջեւէն (920)։

Յաջորդ տարւոյն մէջ (921) երեք դաւաճանութիւնք եղան Ռոմանոսի դէմ. յանցաւորները յայտնուեցան, գանակոծուեցան, կուրցան, իշու վրայ հեծած Պօլսոյ փողոցները թափառեցան, յետոյ դատապարտուեցան կրօնաւոր ըլլալու։

Յովհաննէս անուամբ իշխանը որ վեցերորդ դաւադրութեան մը հեղինակն էր, իր ծրագիրը մատնուած տեսնելով և գիտնալով միանգամայն Ռոմանոսի սովորութիւնքը, չսպասեց ատեանի վճռին. կրօնաւորի զգեստ

հագաւ, նստուեցաւ նաւակի մը մէջ և իշխանաց կղզիները դիմեց վանական ըլլալու։ Այսու արարողութեան անհրաժեշտ մէկ մասը — ծեծուիլ, կուրնալ, և ջորիով թափառիլ, — յաջողեցաւ կրճատել։

Ռոմանոս վեհանձն էր իր թշնամեաց նկատմամբ։ Աքսորեալներուն ներում կը շնորհէր շուտով, և այն օրը՝ ուր զինք վանքի մը մէջ կը բանտէին, միակ աքսորեալն էր իր ամբողջ պետութեան մէջ։

Այն օրէն ի վեր երբ հայ ազգի մէկ մասը Յունաց հպատակեցաւ, գաղթականութեանց անընդհատ հեղեղ մը կ՚երկարէր բնաշխարհէն մինչեւ Բիւզանդիոն։ Այս գըծին վրայ եղած բոլոր քաղաքները հայ բնակիչներով լեցուեցան, այնպէս որ Կեդրենոսի քով Հայաստան գործածուած կը գտնենք ոչ միայն Կապադովկիոյ, այլ և Պոնտոսի տեղ. իսկ ըստ Յովհ. Կաթող. (տպ. Երուս. 1867, էջ 88) Մօրիկ նոյն իսկ «զՊոնտոս՝ կոչէ մասն մեծ Հայոց»։

Տասներորդ դարու մէջ սակայն՝ Հայոց կեդրոնացումը հոն այնքան խտացած էր որ կարելի եղաւ ապստամբութեան փորձ մ՚ալ ընել (զոր կը պատմեն Թէոփանէս Շարունակողը, էջ 404, Սիմէոն Մագիստրոս 734, Գէորգ Կրօնաւոր, 896)։

Խաղդեաց և Պոնտոսի կառավարիչն էր այս ժամանակ հայ մը՝ Վարդ Բոյլ անուամբ (Βάρδα Βόϊλα). տեղացի հայ հարուստներուն ապստամբելու խորհուրդ տուաւ՝ խոստանալով այն ամէն օգնութիւն զոր իր պաշտօնին շնորհիւ կարող էր ընձեռել իրենց։

Քիչ յետոյ Տաճատ անուամբ մին, Ճանճ մականուանուած (յոյնք կը գրեն Τατξάκης և Τξάντξης πλούσιος πάνυ) և հարստութեամբը մեծահռչակ, Ապրիանոս Խաղտեացւոյն հետ միանալով՝ յարձակեցաւ Բաբերդի վրայ, տիրեց և հոն ամրացաւ։

Գուրգէն հայկազն, տասներորդ դարու մեծագոյն զօրավարը, արեւելեան բանակին հետ Կապպադովկիա կը գտնուէր. ապստամբութիւնը խեղդելու համար. բաւական էր ուրեմն պաշարման հրահանգ ղրկել անոր և Բիւզանդիոնէն ալ քանի մը գունդ. այսու երկու սուրի մէջ պիտի մնային ապստամբքը, և անձնատուր պիտի ըլլային։ Գուրգէն սակայն արդէն միայնակ յաջողեցաւ տիրել Բաբերդի, Ապրիանոսը կուրացուց, իր գլխաւորները ցրուեց. իր ընկերը որ գդեակ մ'ապաւինած էր, Ռոմանոսէն թողութեան գիր ստանալով, Պօլիս եկաւ. Ճանճը կայսեր Թիկնապահ անուանեցին. հպարտ վաճառա-

կանը ասորական զինուորի մը փոխուած տեսնելով ինքզինք, և պահապան այն մարդուն՝ զոր սպաննել կ'ուզէր, փախչելու փորձ ըրաւ. Ռոմանոս զինքը ձերբակալեց, կուրացուց ։ Ինչպէս յանցանքին, պատժին ալ մասնակից պէտք էր ըլլալ Վարդ Բոյլը, Ռոմանոս սակայն զինքը կը սիրէր. վրան գթալով, ծեծել տուաւ, ածիլեց, յետոյ վանքի մը մէջ փակեց։

Այսպէս Ռոմանոս, գթութեան մարմնացում, գիտէր թէ որքան վնասակար է նա՝ քաղաքականութեան մէջ, և հարուստներու աչքերը կը կուրացնէր այն պահուն՝ ուր զբաղած կը թուէր աղքատին արցունքը սրբելու։



Ջ.—ԲՈՒԼՂԱՐՔ ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ ՄՕՏ.—ՀԱՅԱԶԳԻ ԾՈՎԱԿԱԼ ՄԸ ԽԵՂԴՈՒԱԾ.—ՌՈՄԱՆՈՍ ԿԱՆԱՑԻ ՊԱՏՄՈՒՃԱՆ ՀԱԳՈՒԱԾ՝ ԴԷՊ Ի ԹՇՆԱՄԻՆԵՐ Կ'ԵՐԹԱՅ.—ԱՆՀԱՃՈՅ ԸՆԾԱՅ ՄԸ։

*Պօլսոյ արուարձաններն հրդեհել, իր բնակիչները կոտորել, հարստացած վերադառնալ, — այս ամէնը ազգային սովորութիւն մը դարձած էր Բուլղարաց. ամէն տարի պիտի կատարէին զայն ։ Ամէն Գարուն՝ — ծաղիկ-րէ զատ — Բուլղարներ ալ կը բերէր իր հետ։*

*Ռոմանոսի ժամանակ երեք մեծ արշաւանք ըրին անոնք* (922, 923, 924)։

*Յոյն զօրավարները որ թշնամեաց առաջին հեղեղին առջեւ թումբ դնելու ղրկուած էին, Բուլղարները հորիզոնի վրայ նշմարելով՝ այնքան խառնակ կերպով դէպ ի նաւեր փախչիլ սկսան, որ բազմութիւն մը ծով թօթափելով խեղդուեցաւ։ Ծովակալն էր այն ժամանակ հայազգի մը՝ Ալեքսիս Մոզելէ (Մուշեղ) կոչուած. կը ճեմէր իր նաւուն վրայ՝ արհամարհական նայուածքը դէպ ի թշնամիներ, երբ փախչող բանակի մը ահ-սարանը հանդիպեցաւ անոր։ Յոյներուն տեղ ինքը ամչցած, կատաղութիւնը չկրնալով*

զոպել, հրամայեց իր զէնքերն ու զրահները բերել. սուրը մերկացած՝ նետուեցաւ նաւակի մը մէջ, ցամաք ելաւ, և սկսաւ Բուլղարները կոտորել։ Ասոնք յառաջ եկած էին, գրեթէ այն երագութեամբ՝ որով Յոյները կը փախչէին։ Դիւցազնութիւնն անգամ այլ եւս անօգուտ էր. Մուշեղ, միայնակ մնացած, ստիպուեցաւ նահանջել. զինուորներու խուռն բազմութիւն մը կը շարունակէր տագնապաւ նաւու սանդուխներէն վեր մագլցել. այնքան շփոթութեան մէջ Մուշեղ սխալ քայլ մ'ըրաւ, և մեծ աղմուկով գլորեցաւ ծովուն մէջ։ Ի զուր լողալու փորձ կ'ընէր. ծանր զրահները զինք դէպ ի յատակ կը ձգէին. Հայազգի ծովակալը խեղդուեցաւ։

Այնուհետեւ զօրավարներէն ոչ ոք յանձն կ'առնէր Բուլղարաց դէմ երթալ. — Ի՞նչպէս քաջութեան խոստումներ առնել անոնցմէ. — Ռոմանոս այս հնարքը մտածեց։

Դիտած էր շատ անգամ՝ թէ իշխանները ոչ երբէք ա՛յնքան արիասրտութիւն ցոյց կու տան, ինչպէս խնջոյքներու ժամանակ և իրենց մեծագոյն դիւցազնութիւնները կը կատարեն՝ արքունական բաժակները դատարկելէ յետոյ։

Ամենաճոխ ընթրիք մը պատրաստել տուաւ

և բոլոր իշխանները հրաւիրեց. խոստակցութիւնը բնականաբար քաղաքագիտութեան վրայ դարձաւ. կայսրը իր բոլոր զուարճախօսութիւնը գործածեց՝ ժամանակակից դէպքեր ակնարկելու, նորերու վատութիւնը ծաղրածելու, փափաք յայտնելով հին քաջերու յարութեանը՝ որոնց պէտքը զգացնել կու տային Բուլղարք։ Բոլոր իշխանները մեծ ճարտասան, մեծ դիւցազներ դարձած, սկսան սպառնալիքներ տեղալ Բուլղարաց հացէին. Սակտիկիոս անուամբ մին, հանդիսաւոր կերպով խոստացաւ նոյն իսկ՝ քանի մը ժամէն Բուլղարներուն մեծ կոտորած մը տալու։ Եւ յիրաւի, նոյն գիշեր, առաւօտեան մօտ, գիշերապահ գունդով մը դուրս ելաւ Բիւզանդիոնէն, Բուլղարաց վրայ յարձակեցաւ, գերեց, ջարդեց, շփոթցուց, փախուց։ Լոյսը սակայն իր մատնիչն եղաւ. Թշնամիներէ պաշարուած՝ ետ նահանջեց. գետակէ մ՚անցած ժամանակ՝ ձիուն ոտքը տղմին մէջ խըրեցաւ, և ճիշդ մի և նոյն ժամանակ նիզակ մ՚ալ՝ իր կուրծքին մէջ։ Քիչ յետոյ մեռաւ, դիւցազնի համբաւը թողլով իր քաղաքակցաց մէջ։

Ռոմանոս իր այս հնարքէն ալ մեծ օգուտ չգտնելով, որոշեց Բուլղարաց Սիմէոն Թա-

գաւորին հետ տեսակցութիւն մ՚ընելով, զա-
նիկա խաղաղութեան յորդորել ։ Բայց կը
վախնար որ նենգաւոր Բուլղարք զինքը
չպատնեն։ Այս բանիս դէմ դիւա մը փըն-
տռեց. Մտածեց հրաշագործ զգեստ մը հա-
գուիլ, որմէն ոչ նետ, ոչ սուր կարենայ
անցնիլ։ Այս նպատակաւ՝ հրամայեց Պլա-
քեռնեանց Սուրբ Կոյս եկեղեցիէն՝ Աստուա-
ծածնայ պատմուճանը հանել. մեծ հաւատա-
քով հագուեցաւ զանիկա, և առանց թիկ-
նապահի, անվախ, դէպ ի Թշնամիներ սկսաւ
երթալ։ Բիւզանդացիք և Բուլղարք, որ փու-
թացած էին երկու թագաւորներուն հան-
դիպումը դիտելու, չկրցան ծիծաղնին զսպել՝
Հռովմէյեցւոց կայսրը տեսնելով կանացի
պատմուճանի մը մէջ, որ այնքան քիչ կը
յարմարէր իր քայլերուն, և այնքան լաւ՝
իր բնաւորութեան։ Բուլղարաց թագաւորը՝
թիկնապահներով ընդ առաջ ելաւ իրեն՝ և
սիրով ընդունեցաւ։ Մտիկ ըրաւ Ռոմանոսի
ճառին, որով պատերազմը կը ներկայացնէր
բռնաբարում մը քրիստոնէական և մարդ-
կային զգացմանց, թշուառութիւն ժողովրդոց,
պատուհաս ոչ միայն պարտելոց, այլ նաև
յաղթողաց. Սիմէոն համոզուեցաւ, և Ռո-
մանոսի անձնական ձիրքերուն վրայ հիա-

ցած, իսկոյն ստորագրեց խաղաղութիւն բառին, որ երջանկութիւնը պիտի ըլլար թէ՛ իր թշնամեաց և թէ՛ իր հպատակաց։

Հայ կայսրը սակայն շարունակեց գաղտնապէս Բուլղարաց վնասել։ Անոնց կուսակցութիւններէն մին կը զօրացնէր, երկպառակութեան կ'օգնէր, և այսու կը յաջողէր տկարացնել զանոնք։ Բուլղարաց Պետրոս թագաժառանգին դէմ դաւ մը պատրաստուած էր. յանցաւորները բռնագատուեցան կրօնաւոր ըլլալու. անոնք Բիւզանդիոն փախան։ Ռոմանոս մեծ հիւրասիրութիւն ցոյց տուաւ անոնց, գրեթէ եկեղեցական հանդիսաւորութեամբ կրօնաւորական սքեմը հանելով՝ աշխարհականը հագուեցուց, իշխանուհիներ՝ կնութեան տուաւ, և պալատներ բնակութեան համար։

Բուլղարք, որ փոքրագոյն առիթներու մէջ պատերազմ հրատարակած էին, իրենց լռութեամբ ցոյց տուին՝ թէ ո՛րքան վնասուած էին Ռոմանոսի նենգաւոր քաղաքականութենէն։

Իտալիոյ իշխաններուն նկատմամբ ալ՝ նոյն դրութիւնը կը գործածէր Ռոմանոս։ Իր կեդրո՛նը Պարի ընտրած էր։ Մանր տէրութիւնները իրարու դէմ հանելով քիչ ան-

գամ ասիթ կ'ունենար ինքը կռուելու. կայսերութիւնը ընդհանրապէս յաղթական կ'ելլար դքսութեանց դէմ։

Հուգոն, որ իբրեւ Թագաւոր Իտալիոյ, աւելի խոհեմութեան պէտք ունէր, բազմաթիւ ընծայներով Լուիթբրանդ եպիսկոպոսը ղրկեց՝ Ռոմանոսի բարեկամութիւնը խնդրելու համար։ Լուիթբրանդ իր նուիրակութեան պատմութիւնը գրած է, ուր զբօսալի ոճով դուրս ցայտեցուցած է Ռոմանոսի նկարագիրը։ Անոր բերած նուէրներուն մէջ կային նաեւ որսական երկու մեծ շուներ. կայսրը շքեղութիւն ցուցնելու համար բիւզանդական սարօրինակ տարազները հագուած էր. փայլուն գոյներէն կատղելով, և որսական կենդանի մը կարծելով զՌոմանոս, բարակները անպատկառ կայսեր վրայ յարձակեցան։ Թիկնապահներու զունդը հազիւ ազատելու յաջողեցաւ անոր կեանքը, զոր այնքան դաւադրութիւնք յաջողած չէին նոյնչափ վտանգի ենթարկել։

Թէպէտ Ռոմանոս շատ գոհ չեղաւ այդպիսի ընծայներէ, բայց ի վերջոյ դաշնակցեցաւ Հուգոնի հետ։

Է. ԳՈՒՐԳԷՆ ՀԱՅԿԱԶՆԻ ՔԱՋՈՒԹԻՒՆՔԸ.—ԱՐԱԲԱՑԻՔ ԲՌՆԱԴԱՏՈՒԱԾ ԻՐԵՆՑ ՀԱՅՐԵՆԱԿՑԱՑ ԴԷՄ ԿՌՈՒԵԼՈՒ.—ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ ՄԵԼԻՏԻՆԷԻ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ։

*Մինչդեռ Աշոտ Երկաթ, ծովափի ժայռէ մ'աւելի պինդ, արաբական յորձանքները կը փշրէր Հայաստանի մէջ, ուրիշ Հայ մը, որուն Պողպատ տիտղոսը պէտք էր տալ, անոնց պետութեան շրջագիծերը կ'աւրէր՝ թշնամի արեամբ նոր մը գծելու համար։*

*Գուրգէնն էր նա. զինքը ժամանակակիցներ Բելիսարիոսէն ալ վեր կը համարէին. իրեն կենսագրութեան՝ Մանուէլ անուամբ կոչուած պատմիչ մը ութ գիրք նուիրած էր։ Արեւելքի սպարապետը, Պոնտոսը խաղաղցնելէ յետոյ՝ Արաբացւոց դէմ գնաց։ Ասոնք կեդրոնացեր էին Մելիտինէի մէջ, որ մրցանակ մը կը թուէր երկու քաջերու մէջ դրուած, և ռազմագիտական կարեւորութեամբ կրնար զուգակշռել գալ Թէոդոսուպոլսի հետ անգամ։*

*Գուրգէն մերձակայ գիւղեր հիմնայատակ ընելով անկարելի ըրաւ ո՛ և է օգնութիւն հասցնել քաղաքին. պարիսպներու վրայէն դիտող մը բացալայն դաշտերուն վրայ կար-*

միր ծովու մը ալեկոծութիւնը տեսնել կը կարծէր։ Մեկիտինէ արաբական քաղաք մը կը թուէր՝ անապատի մէջ հիմնուած։ Կղզիացումէն վերջ, յարձակումը սկսաւ Գուրգէն։ Արաբացւոց կը հրամայէր Ապուխաֆս քաջ ամիրայն։ Ժամանակը, որ պաշարողներու լաւագոյն նիզակակիցն է, օգնութեան եկաւ Գուրգէնի. զուրկ կերակրէ, զինուորէ, Ապուխաֆս մեծամեծներուն հետ՝ Գուրգէնի վրանը գնաց, ծունր դրած, քաղաքին բանալիները ձեռքին մէջ, աղաչական նայուածքով մը՝ կեանք խնդրեց։ Հայը խոստացաւ իրենց թողուլ թէ կեանքն և թէ զէնքերը, եթէ զանոնք Արաբաց դէմ գործածէին։

Ապուխաֆս ամիրայն դիւցազնական քաջութեամբ կռուեցաւ . . . իր հայրենակցաց դէմ. Գուրգէն յաղթանակաւ Պոլիս դարձած ժամանակ՝ զինքն ալ իր հետը տարաւ։

Ամբոխը դիզուած էր պարիսպներուն, Ոսկեդրան աղջեւ՝ որ կարծես պիտի փլչէր կեցցէներու և ծաղիկներու ծանրութեան տակ։ Ջրահներ, սուրեր, նիզակներու անտառը հեռուն սկսաւ շողշողալ, և փողերու յաղթական երգը Արեւելքի երազկոտ տեսարանները գծեց Բիւզանդացւոց խանդավառուած հոգիներուն մէջ։ Շքեղ հեծելազօրնը

մօտեցաւ. Գուրգէն նստած էր քառաձի կառքի մը մէջ. անցաւ ոսկեզօծ քարերու և ծափահարութեանց կրկին կամարներուն տակէն ։ Իր ետեւէն կու գային հայկական և յունական գունդեր. անոնցմէ վերջ, արաբացի նժոյգներու վրայ, Մելիտինէի Ապուխաֆս ամիրայն և իր բանակը. իրենց արգիւնքը Բիւզանդացւոց ցուցնելու համար, կը բերէին իրենց ետեւէն արաբացի գերիներու թափոր մը, որ երկայն ճանապարհի մ'եզերք տըն֊կուած նոճիներու զուգահեռական շարք մը կը թուէին ։ Այս մարդիկ, որոնց մարմնոյն վրայ՝ շղթայն մինակ սպիտակ կ'երեւէր, կը կրէին սպիտակ դրօշակներ, որ իրենց պէս գերի, կ'երթային հայկազն կայսեր մ'ոտքին տակ փռուելու ։

Դէպքի բարոյական իմաստը շատ աւելի մեծ էր քան նիւթականը. Բիւզանդացւոց բորբոքուած երեւակայութիւնը օդին մէջ դղեակներ կը կառուցանէր ։ Իրենց աշխար֊հակալութեան ուղեգիծը, խնկենեաց և ար֊մաւենեաց մէջէն՝ մինչեւ Մէքքէ երկնցու֊ցին ... Գուրգէն զաւեշտական կերպով գոր֊ծածեց Հերակլ կայսեր խրատը. — ապա֊մանդը ադամանդով փշրեց ։ Այսպիսի փառք մը քրիստոնէութիւնը դեռ չէր ունեցած.

իբրեւ Գուրգէնի վերապահուած, ապագային մէջ ալ չկրկնուեցաւ։

Ապուխաֆսի մեռած ժամանակ, նախատինքը քաւելու համար, Արաբացիք ուք հանեցին Մելիտինէն։ Սակայն Գուրգէն և Մելիաս (Մեղրիկ) կոչուած ուրիշ հայ զօրավարի մը հետ հայկական գունդերով իսկոյն նուաճեցին զանիկա (934)։

Հայաստան արիւնհեղութեանց մէջ էր, Աշոտ Երկաթը մեռած (927)։ Հիւսիսէն Վրացիք կը յարձակէին, հարաւէն Արաբներ։ Աբաս, Աշոտի եղբայրը, Կարս կը փոխադրէր իր գահը, առանց զայն ապահովցնել կարենալու։ Ռոմանոս իրեն օգնութեան ղրկեց Գուրգէնը իր բոլոր բանակով։ Գուրգէն բարեպաշտ սովորութիւն մ'ունէր. որ քաղաքի յաղթէր, անոր մզկիթին վրայ խաչ մը կը տնկէր։ Բասեանի, Դուինի, Ախլաթի, Բաղէշի մզկիթներուն վրայ խաչ տնկեց։

Մինչդեռ Արեւմուտքի Արաբացիք Սիկիլիոյ կը տիրէին, քրիստոնեաները նաւերու մէջ կը լեցնէին, յետոյ ծովուն մէջ տեղ՝ նաւը ծակելով՝ զանոնք ջուրերու տակ կը թաղէին (934), յԱրեւելս ճգնաժամի մէջ էին։

Տիգրանակերտի շրջակայ երկիրներն ա-

ւերելով, բնակիչները ջարդելով, Գուրգէն
Եդեսիա հասաւ. Արաբացւոց խոստացաւ
քաղաքը և իրենց բոլոր գերիները ազատ
թողուլ եթէ Քրիստոսի դաստառակը իրեն
յանձնեն։ Ուրախացած այսքան թեթեւ պայ-
մանի վրայ, դաստառակը Գուրգէնի ուղար-
կեցին։ Ոչ մէկ լուր աւելի ցնցած չէր Բիւ-
զանդիոնը, ոչ մէկ յաղթանակ նոյնչափ ո-
գեւորութիւն չէր պատճառած. բոլոր ժողո-
վուրդը ոտք ելաւ. Բիւզանդական պատմիչ
մ'հարկաւոր էր հոս՝ արտասուախառն հըր-
ճուանքով տեսարանին յուզմունքը բացա-
տրելու համար։ Պատրիարքը, եպիսկոպոս-
ներ, քահանայներ, ծերակուտի անդամներ,
գործաւորներ Բիւթանիա սկսան երթալ՝ «ընդ
առաջ Յիսուսի». վերջին դատաստանի տե-
սարաններէն մին կը թուէր։ Անպատմելի
եղաւ այն վայրկեանը, ուր ժողովուրդը
Քրիստոսի սուրբ դաստառակը նշմարեց յաղ-
թական կառքի մէջ, ուր բազմիլ յանձն չէր
առած Գուրգէն։ Եկեղեցական շքեղութեամբ
աստուածային նկարը (օգ. 15, 944) տա-
րուեցաւ Պլաքեռնեանց եկեղեցին, ուսկից
Ս. Սոփիա, յետոյ արքունիք։ Բիւզանդացիք
որ իրենց դրամին մէկ կողմը Յիսուսի պա-
կերը կը գծէին, հպարտացան երկնքի թա-
գաւորը իրենց արքունեաց մէջ տեսնելով։

*Այս գործով Գուրգէն աւելի պաշտելի դարձաւ Բիւզանդացւոց քան իր բոլոր քաջութեամբք։*

*Գուրգէն պատմութեան մեծագոյն անձինքներէն մին կը համարուի, նոյն իսկ ըստ օտարազգեաց։*

*Արաբական պետութեան համար որ այնքան փառքերով և սարսափներով անմահացած էր, անկման դարագլուխ մը բացաւ. « Հայաստան այնուհետև դատուեցաւ բոլորովին արաբացւոց իշխանութենէն, Բիւզանդիոյ հետ սերտ կերպով դաշնակցեցաւ, և յառաջապահն եղաւ քրիստոնէութեան։*

*ԶԱրեւելք ներկայացնող Իսլամը, Պարթեւներու ժամանակին պէս, քաշուեցաւ Ատրպատականի լեռնային պատուարներուն մէջ։ Այն ժամանակ Հայերն էին, — ու շատ երկրորդաբար Վրացիներ, — որ կ'երեւային համաշխարհի պատմութեան տեսարանին մէջ։ Այս ազգերու քաջ և խոհեմ որդիքները, թէ՛ զօրավարութեան, թէ՛ տէրութեան ուրիշ պաշտօններու մէջ՝ ամենէն փառաւոր դիրքը բռնած էին, և զայն կը վարէին պատուաւոր կերպով »։ (Գելցեր)։*

*Ընդհանուր սպարապետը հայազգի մըն էր. հայ կայսեր մը կը հնազանդէր, հայ*

զինուորներու կը հրամայէր. հպատակութեան շուրջ հայ ազգը Բիւզանդիոնի տէրն էր դարձած, ինչպէս իրմէ քիչ առաջ՝ Յոյնը ըրած էր Հռովմայեցւոց։ Ռոմանոսի կայսրութիւնը՝ էջ մը կը թուի ազգային պատմութեան։

## Ը. ՌՈՒՍՔ ՎՈՍՓՈՐԻ ԱՌՋԵՒ. ԻՐԵՆՑ ՆԱՒԱՏՈՐՄԻՂԸ ՓՃԱՑԱԾ. — ՄԻՋԱՆԿՊԵՐ։

Ռուսերը, այս դարուն մէջ, թափառական ժողովուրդ մ'էին. Գոթաց նման՝ իրենց կոյս հանճարը նոր տանջանքներ գտնելու կը գործածէին։ Կը սիրէին մասնաւորապէս գերիները նիզակով գետին գամել, կամ ձեռքերնին մուրճեր առած գերիի մը շուրջ բազմիլ՝ և ժամանակ անցնել՝ գամեր անկելով անոնց գանկին մէջ։

Պերփեռուժէն իր որդւոյն խրատ կու տայ որ երբ Ռուս իշխան մը կայսեր վերապահուած զգեստներէն մին կամ յունական կրակը պահանջէ, հետեւեալ պատասխանը զրկէ. անոնք մարդկային ձեռքով կամ արուեստով շինուած չեն, այլ, « ինչպէս ամենահին գրքերու մէջ գրուած գտանք », հրեշտակ մը երկնքէն ընծայ բերաւ Կոստան-

գիանոսի և երկնքի ամենաբացայայտ հրամանով արգիլուած է զանոնք օտարի մը տալ. այս կանոնը չյարգեց Լեւոն Իսաւրացի, անոր համար յանկարծ ածուխ մը ցատքելով, ամբողջ երեսը այրեց, և այլն։

Հակառակ ամէն զգուշութեան, Ռուսեր պատերազմ բացին Բիւզանդացւոց դէմ. անոր միակ շարժառիթն այն էր՝ որ իրենք աղքատ էին, Յոյներ՝ հարուստ։ (941)։

Քառասուն հազար Ռուս զէնք առին. 2000 նաւակներով՝ տորմիղ մը կազմուեցաւ։ Ինգոր իշխանը՝ ծովակալը պիտի ըլլար։

Բարեպաշտ Ռոմանոսը, ենթադրելով որ անշուշտ իր մեղքերուն համար՝ Աստուած Ռուսերը աէրութեան դէմ կը դրկէ, ամէն միջոց ձեռք առաւ՝ նախ երկնքի բարկութիւնը իջեցնելու։ Արտասուեց, սուգ մտաւ, ծոմ պահեց, զղջացեալ սրտիւ աղօթեց, և յետոյ ինքզինք բոլորովին Աստուծոյ խնամոց յանձնեց։

Նոյն պահուն Գուրգէն, Ռուսաց գալուստն իմանալով, Հայաստանէն ճամբայ կ'ելնար Բիւզանդիոն. Թէոփանէս պատրիկն ալ Ռուսաց դէմ կ'երթար, որ Վոսփորի մուտքին առջեւ կանգ կ'առնէին։ Նա կը հրամայէր

տասն և հինգ նաւերու՝ որ փտտուած ըլլալուն պատճառաւ՝ Պօլիս մնացեր էին. բայց անոնք մեծագոյն ոյժ մ'էին թշնամւոյ մը հանդէպ՝ որ նաւակներով եկած էր Բիւզանդիոնի սիրելու: Յունական կրակի և մեքենայներուն տակ, իսկոյն կ'ընկղմէին ասոնք՝ իրենց բովանդակութեամբը միասին. Ռուսերը ջղաձգօրէն ծով նետուելով՝ կ'ազատէին բոցերէ, բայց ոչ նաև մահուանէ: Փախըստեան ճամբայն գոցուած գտնելով յոյն նաւատորմղէն, որ ուրիշ կէտի մը վրայ ալ կոտորածը երկրորդեց, ցամաքի ապաւինեցան. Գուրգէն հասած էր ճիշտ այդ վայրկենին. երրորդ կոտորած մը տուաւ և յաղթանակը վերջացուց. Իգոր սպանուած էր. գերիները գլխատուեցան. շատ քիչեր յաջողեցան հայրենիքնին տեսնել. Ռուսեր, սարսափած, երկայն ժամանակ անշարժ մնացին: Իրենց նաւատորմիղը բոլորովին փճացած էր: Ցեղակից Սքլաւոնները, որ, 926ին, ապըստամբութիւն մը փորձած էին Պեղոպոնեսի մէջ, յաղթուեցան Արոդրաս Քրենիթէսէն և ութ ամիս վերջ՝ բոլորովին անձնատուր եղան:

Հունգարները երկու անգամ մինչև Թրակիա արշաւեցին (934ին և 944ին). Ռո-

մանոս՝ առաջին անգամ ստակով, երկրորդ անգամ զէնքով խաղաղ մնալու բռնադատեց զիրենք։ Յաղթութիւններէ խրախուսուած, Ռոմանոս ծրագիր մը շինեց Եգիպտոսի տիրելու։ Հազար պատերազմի նաւակներ ճամբայ ելան, փոթորիկը զայն կիսեց, միւսները ետ դառնալ ստիպուեցան։ Ցոյն լրտես մը ձերբակալուած ըլլալով Եգիպտոսի մէջ՝ Արաբացիք կարող եղան հզօր դիմադրութեան մը պատրաստութիւնը տեսնել։

Այս պատերազմներուն ժամանակ՝ մի քանի միջադէպեր հանդիպեցան։ Վրաց Կիւրոպաղատը Պոլիս գալով՝ ընդունուեցաւ մեծ հանդիսով. մեկնեցաւ՝ հիացած Պոլսոյ և մասնաւորապէս Ս. Սոփիայի վրայ, որուն որմերը ծեփուած էին շքեղ գորգերով։ Հայաստանէն՝ հրէշ մը բերուեցաւ. երկու գլուխ ունէր չորս ոտք, մէկ իրանով միացած։ Իր ուտքն ի Բիւզանդիոն աւելի աղմկաւոր եղաւ քան թագաւորի մ'այցելութիւնը։ Ռոմանոս չար գուշակութիւն մը նկատելով զայն՝ Պոլսէն հեռացնել տուաւ, բայց Կոստանդին Պեռփեռուժէնի ժամանակ կրկին բերուեցաւ։ Տղաքներէն մին հիւանդանալով՝ մեռաւ. բժիշկներ այնպիսի ճարտարութեամբ վիրահատութիւնը կատարեցին՝ որ միւսը կարող

եղաւ դեռ երկայն ժամանակ ապրիլ ։ Մեծ դէպք մ՚է ասիկա, — բիւզանդացի պատմչաց համար։

Ռոմանոս՝ չորրորդ ամուսնութիւնը եկեղեցիէն դատապարտել տուաւ և այդ վճիռը հրատարակեց Պերփեռուժէնի ձեռամբ՝ որ չորրորդ ամուսնութենէ ծնած էր։ Այսու իր գահակիցը անգամ մ՚ալ կը նախատէր անգութ հեգնութեամբ ։ Եկեղեցական վէճեր պայրած էին․ Ռոմանոսի ժամանակ փոխանակ կայսերք աստուածաբանութեան մէջ նետուելու, եկեղեցականք ալ քաղաքականութեան տուած էին զիրենք, — ինչպէս տեսանք Նիկողայոս հայրապետին վրայ խօսելով․ մահուանէն վերջ այս նենգաւոր մարդը սուրբերու կարգ դասուեցաւ ․ կրնանք ասկից գուշակել թէ ի՞նչ եղած պիտի ըլլան բիւզանդացւոց մեղաւորները ։

Պղնձեայ երեք սափորներ գտնուեցան (922ին) ․ Ռոմանոս անոնց խորաքանդակներէն իմանալով՝ թէ Մօրիկի և իր որդւոց աճիւնը կը բովանդակեն՝ հանդիսով փոխադրել տուաւ Միւրելեան վանքին մէջ։

Յովհաննէս Ռատինոս պատրկի ձեռամբ ծովահէնները ջախջախեց, բայց անոնց գլխաւորը, Լեւոն Տրիպօլսեցին՝ մէկ նաւով փախչիլ յաջողեցաւ։

Խաղաղութիւնը կը տիրէր՝ թէ՛ ծովու, թէ՛ ցամաքի վրայ։ Միայն մէկ տեղ մը բացակայ էր. Ռոմանոսի սրտէն։

Երդմնազանցութեամբ ստացուած փառքերը՝ Դժոխքի բոցերը կը ճառագայթէին իր աչքին։ Արքունեաց մէջ ալ ձայն մը կար՝ որ շողոքորթել չէր գիտեր. — իր խղճմտանքը։

Թ. — ԴԱՒԱԴՐՈՒԹԻՒՆ ՌՈՄԱՆՈՍԻ ԴԷՄ. — ԴԻՒԱՆԱԳԷՏ ՀԱՅՈՒՀԻ ՄԸ. — ԱՔՍՈՐԱՆՔԻ ՃԻՇԵՐԸ. — ԴԷՊԻ ՓՌՈԹԻ։

Պալատական խուլ պայքարներու, դաւաճանութեանց ժամանակ, զգայուն հոգի մը կար՝ որ ամենէն աւելի կը տանջուէր. — Հեղինէ հայուհին, Պերփեռուժէնի ամուսինը։

Որո՞ւն կուսակից ըլլար. իր հօր և եղբայրներո՞ւն, թէ իր փեսային։ Ծնողակա՞ն սիրոյն աւելի կարեւորութիւն պէտք էր տալ, թէ ամուսնականին։ Այս տարակոյսներով տանջուած ժամանակ՝ պարագայները եկան որոշ բառերով իմացնելու՝ թէ ի՛նչ ուղղութիւն պէտք էր բռնել։

Իր Թոդէորա մայրը մեռաւ. Ռոմանոս, Հեղինէի տեղ, իր Քրիսթոֆ որդւոյն Սոփիա

կինը ծանոյց Հռովմայեցւոց կայսրուհի։ Տեսնելով որ իր բոլոր բաղդը Պերփեռուժէնի փառքէն կախում ունի, որ երբեմն հինգերորդ կայսր ալ համարուեցաւ, վճռեց Հեղինէ բացարձակապէս իր ամուսնոյն կուսակիցն ըլլալ։ Նախանձէն յուզեալ, արցունքի և անքնութեան գիշերներու մէջ, յանկուցն ծրագիր մ'յօրինեց. երեք կայսր կործանել։ Հրեշտակի անմեղութիւնը, որ կը փայլէր իր բոլոր անձին և իր վարմունքին մէջ, երեւոյթ մ'էր միայն։ Իրօք խռովայոյզ, մեքենայող, անհանդարտ ոգի մ'էր. համեմարեղ և գործունեայ։ Վերջապէս ունէր այն յատկութիւնները, որ կը պահանջուէին իր ամուսնէն։ Գրգռեց անոր անձնասիրութիւնը, գործունէութեան ասպարէզը հրաւիրեց, ըզգացնել տալով թէ ո՛րքան Ռոմանոս ծա՛ղրական ըրած էր զինք՝ մականը ձեռքէն յափշտակելով և գրիչ մը դնելով անոր տեղ։

Պերփեռուժէն անսովոր թափով գործելու սկսաւ։ Պէտք էր դաւադրութիւն մը կազմել Ռոմանոսի դէմ, բայց, — ո՛ և է վտանգի չենթարկուելու համար, — դաւը կազմել տալ նոյն իսկ իր որդւոց ձեռամբ, զանոնք համոզելով՝ թէ հայրերնին բաւականէն աւելի թագաւորած է, իրե՛նք պէտք են գահ ելնել։

Դժուարին դեր մ'էր այս, զոր սակայն սիրով ստանձնեց Թռչնիկ Վասիլ անունով պալատականը։ Ստեփանի վստահութիւնը շահելէ յետոյ, իմացուց իրեն՝ թէ ծածուկ խորհուրդ մ'ունէր տալիք, խորհուրդ մը որ կրնար ի սկզբան յանդուգն երեւել, բայց զոր ստիպուած էր տալ՝ պարզապէս տէրութեան բարւոյն համար, — իր հայրը վանքի մը մէջ փակել։ Նա ծերացած է, կ'ըսէր, տէրութիւնը պէտք ունի երիտասարդի մը՝ որու սուրի տակէն անցնին Բուլղարները, որու համբաւը Արաբները դողացնէ անապատին մէջ. յետ Ստեփանի ապագայ պատերազմներուն հմայիչ նկարագրութիւնն ընելու, աւելցուց. Ռոմանոս թագաւոր չէ, հայր անգամ չէ. բռնաւոր մ'է։ Փոխանակ նոր յանցանքներ գործելու՝ թող երթայ արդէն գործածները ապաշխարելու։

Ստեփան, որ արդէն ձանձրացած էր հօր երկարակեցութենէն, այս առաջարկը շատ անտեղի չգտաւ։ Անշուշտ Հեղինէ ալ քրոջ մը բոլոր խանդաղատանքը կեղծելով, օգնեց Վասիլի յաջողութեան։

Ռոմանոս Սարգիս անուամբ խոստովանահայր մ'ունէր, որ ըսած էր Ստեփանի և Կոստանդնի համար. « Հեղի քահանայա-

պետի որդւոց վերջը պիտի ունենան»։ Ինքը սուրբ կը համարուէր, իր ամէն խօսք՝ մարգարէութիւն։ Ռոմանոսի որդիք ենթադրելով թէ իրենց հայրը անշուշտ այդ խօսքը պիտի իրագործէ, զայն գահընկէց ընել մտածեցին։

Ըստ Բիւզանդացի և եւրոպացի պատմչաց՝ այս երկու պարագաները եղան շարժառիթ՝ Ռոմանոսի դէմ կազմուած դաւադրութեան։ Ըստ մեզ անբաւական էին անոնք՝ այդ արդիւնքը յառաջ բերելու։ Ի՞նչպէս յանձն պիտի առնէր Ստեփան, քիչ մ'աւելի շուտ թագաւորելու համար, արդէն հիւանդ և ծեր հայր մը աքսորել, նախ իր կեանքը վտանգի ենթարկելով։ Կրօնաւորի մը սպառնալիքը կրնա՞ր այդքան մեծ ոճիր ներշնչել, և Ռոմանոսի որդիք աւելի Պերփեռուժէնի վրայ պիտի չկասկածէի՞ն քան իրենց հօր։

Ռոմանոսի արքունիքէն հեռացած ժամանակ՝ գտնուեցաւ իր գրած կտակը, յորում մեծագոյն կայսր կը դնէր զՊերփեռուժէն, իսկ իր որդիներն՝ անոր ստորակարգեալ։ Կ'երեւի թէ Ստեփան և Կոստանդին այս կտակը կարդացած էին որ և իցէ կերպով և փութացին հայրերնին գահընկէց ընելու, անոր գործադրութիւնը խափանելու համար։ Ահաւասիկ դաւադրութեան իրական պատճառը,

որուն կրնային օգնած ըլլալ Պերփեռուժէն, Հեղինէ, Վասիլ, Սարգիս։

Լաբիւրինթոսի նմանող պալատներէն մէկուն խորը՝ ժողով մը կազմեց Ստեփան, յետոյ սկսաւ մակեդոնացի գունդեր հաւաքել, իր հօրը թիկնապահներուն տակ ցրուել։ Դաւակցաց մէջ Քուրդիկ անուամբ հայ մ'ալ կար, և Մարիանոս անուամբ կրօնաւոր մը։

Որոշեալ օրը Ստեփան և իր դաւակիցները տագնապի, սրտատրոփ անձկութեան մէջ էին։ Ամէն վայրկեան օր մը կ'երեւնար. ամենուէն չնչին պարագայն իրենց դատապարտութիւնը կարող էր բերել։ Անհամբեր՝ մէկու մը կը սպասէին. ո՞վ էր նա. — Գիշերը, դաւաճանութեանց հասարակաց մեղսակիցը։ Երբ ան ալ եկաւ, մակեդոնացի զինուորներով դէպ ի կայսեր սենեակը դիմեցին. Թիկնապահները, առաջուց կաշառուած, անհետ եղեր էին արդէն. Ռոմանոս վագրի մորթի մը մէջ փաթթուած կը քնանար։ Զինք շրջապատող այդ վերմակը խորհրդանշանն էր արքունիքի մը՝ ուր իր որդիէն ալ պէտք էր կասկածիլ։ Քնաթմաթախ կայսրը սաւանի մը մէջ փաթթեցին և ծրար մը կազմելով սկսան վար իջնել. սրահներուն մէջ անոնց հանդիպողը՝ լաթերու կոյտ մը միայն կը տես-

նէր, առանց գուշակել կարենալու՝ թէ Հռովմայեցւոց կայսրը կը գտնուէր անոնց տակ։ Կոստանդին, Ստեփանի եղբայրը, որ ի սկզբան տարտամ էր, իր եղբօր ծրագրի յաջողումը տեսնելով, ինքն ալ անոր հետ միացաւ։ Աճապարանօք թանկագին ծրարը նաւակի մէջ դրին, և հրամայեցին անոր դէպ ի Փռոթի դիմել։ Անուշակ գիշեր մ'էր, Ռոմանոսի համար միայն դառն. խաղաղ լուսընկայն՝ արծաթեայ ալեկոծութիւն մը կը յօրինէր Մարմարայի վրայ. լռութեան մէջ կը լսուէր միայն ճեղքուող ալիքներու ողբը, հովերու հառաչը որ կարծես Ռոմանոսի հոգիէն ելած՝ կորսուած կայսերութիւն մը կ'երգէին։ Ռոմանոս, ազատելով իւր ծածկոյթներէն, ալեզարդ գլուխը ետ դարձուց. վերջին անգամ մը տեսաւ իր պալատը որ լուսընկայի և կիսաստուերներու, շքեղութեանց երգող յիշատակներու մէջ, աւելի գեղեցիկ երեւցաւ քան իր ամբողջ կեանքին մէջ։ Վոսփորը, Ոսկեղէն քաղաքը, Քաղկեդոնը երագաբար կ'անցնէին իր քովէն, և անոնցմէ իւրաքանչիւրը ունէր միշտ երջանիկ յիշատակ մը՝ որուն «Մնաս բարով» կ'ըսէր Ռոմանոս։ Իշխանաց կղզիները երթալով կը մեծնային. նաւակը Փռոթիի առջեւ կանգ

առաւ. գիշեր ժամանակ վանքի մը դուռը բաղխեցին. կրօնաւորները տարաժամ աղմուկը լսելով՝ իմացան թէ նոր աքսորեալ մը կու գար. ո՛ գիտէ թէ ո՛ր իշխանը ընկեր պիտի ըլլար իրենց. ինչ մեծ եղաւ իրենց զարմանքը, երբ տեսան, նաւակին մէջ, կայսրը ինքնին (944, դեկտ. 19)։

Ռոմանոսի մազերը կտրեցին. կրօնաւորի զգեստները նետեցին վրան յետոյ փակեցին խուցի մը մէջ։ Կրկին թիերու ճողփիւնը լսուեցաւ ծովափին վրայ. աքսորեալոյն նաւակը, Ռոմանոսէն աւելի բաղդաւոր, երջանկութեանց պալատը կը վերադառնար։

Ժ.—ՌՈՄԱՆՈՍԻ ՎԱՆԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ։—ՀԵԳՆՈՒԹԵԱՄԲՔ ԻՐ ՈՐԴԻՈՑ ԸՆԴ ԱՌԱՋ Կ'ԵԼԼԱՅ։—ՏԱՐՕՐԻՆԱԿ ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔ ՄԸ.—ԱՔՍՈՐԵԱԼԻՆ ՄԱՀԸ։

Ռոմանոսի փառքը անհետացած էր անոյշ երազի մը, ստուերի մը նման. յաղթանակներ անոր նախերգանքն եղան, և աքսորն անոր վերջաբանը. մին է նա Մեծն Նափոլէոնի նախապատկերներէն, որ այնքան բազմաթիւ են Բիւզանդիոյ պատմութեան մէջ։

Փոոթի՝ Լեկաբենի Ս. Հեղինէն եղաւ։

Ի՞նչ կը զգար նա երբ երեկոյեան դէմ ծովափը կը նստէր, երբ հեռաւոր յիշատակներու պէս աղօտ, ուրուագծուած կը տեսնէր Բիւզանդիոնի պալատները, որուն գմբեթներէն ոմանք իր ձեռակերտներն էին։ Ի՞նչ կը մտածէր նա երբ յեղյեղուկ ալիքներու լեռնանալն և յանկարծական փշրումը կը տեսնէր. իւր ո՞ր յոյսը կը նշմարէր անոնց ոսկեզօծումին մէջ, կամ իւր ո՞ր վիշտը կը յիշէր՝ երբ անոնք կուլային գիշերուան քօղերուն տակ. գաղտնիք մ'է մեզի համար, մեզի՝ որ չենք փորձած թէ ինչ ըսել է առաջին օր գիւղացի ըլլալ, երկրորդ օր կայսր, և արեւը չմտած՝ վերադառնալ թշուառութեան ծոցը։

Աքսորեալը դեռ քանի մը շաբաթ կայսեր մը պատկառանքը կ'ազդէր իր վանքի կրօնաւորներուն. խաւարած արեգակ մը թուէր նա վանքի կամարներուն տակ թափառող. մինչեւ որ, մտքերու մէջ ալ գահընկէց, հաւասարեցաւ բոլորովին՝ իր դրացի ճգնաւորներուն։

Պալատին մէջ արդէն Ռոմանոս սկսած էր իր մեղքերուն վրայ ապաշխարել. յաւիտենականութեան մտածումը, Աստուծոյ դատաստանը՝ այնքան սարսափեցուցած էին

զինք, որ գրեթէ ուրախութեամբ ընդգրկեց վանական կեանքը, խորունկ դառնութեամբ յիշելով սակայն՝ թէ զինք մատնողները իր որդիքներն էին։

Ցես ազատելու իրենց հօր գերիշխանութենէն. կրկին դաւակցութիւն մը կազմեցին անոնք՝ Պերփեռուժէնն ալ գահընկէց ընելու համար. այն գիշեր՝ ուր զՌոմանոս աքսորեցին, Բիւզանդիոնի մէջ սխալ լուր մը տարածուեցաւ՝ թէ Պերփեռուժէն սպանուած է. ժողովուրդը ոտք ելաւ, ապստամբութիւն հրատարակելով պալատին վրայ դիմեց. ի զուր Ստեփան կ'ուզէր համոզել զանոնք թէ աքսորեալը Ռոմանոսն է. արիւնհեղութիւնը մօտ էր սկսելու. յանկարծ պալատի պատուհաններէն մին բացուեցաւ և Պերփեռուժէն արձանի մը դիրքով, կանգնեցաւ պատշգամին վրայ։ Անէծքները ծափահարութեանց փոխուեցան, կատաղութիւնը ուրախութեան. կարծես թէ սիրական մեռեալ մը՝ յարութիւն առած էր. և ժողովուրդը ցրուեցաւ, Ռոմանոսի մասին անհոգ, իբր թէ ոչինչ գործուած ըլլար նոյն գիշեր։

Այս դէպքը ցոյց տուաւ թէ ժողովուրդը զՊերփեռուժէն միայն կը ճանչնար իրեն օրինաւոր կայսր։ Ստեփան և Կոստանդին,

նախանձը յագեցնելու ուրիշ միջոց չգտնելով, մակեդոնացի գունդերով իրենց պալատները լեցուցին և որոշեցին օր մը զՊերփեուժէն սեղանի կանչել, յանկարծ զինքը ձերբակալել։

Այս դաւադրութիւնը պատմութեան ամենէն թատերական միջադէպերէն մին կը համարուի, և Լութերբրանդ ժամանակակից պատմաբանը կ'ըսէ թէ Եւրոպայի, Ասիոյ և Ափրիկէի մէջ բազմաթիւ երգեր շինուած էին անոր վրայ։

Սանփանի դաւակիցներուն մէջ կար նաեւ Գիավոլինոս անուամբ մէկը, նենգաւոր ու մատնիչ, որ իսկոյն Պերփեուժէնի գնաց, յայտնեց թէ խնջոյքի ժամանակ զինք պիտի կապեն՝ վահանի թնդիւնով ձերբակալման նշանը տալով. անշուշտ Հեղինէ, իբրեւ քոյր, այս անգամ ալ դեր մ'ունեցաւ և հանգոյցներ յօրինեց։ Պերփեուժէն որոշեց Սանփանն և Կոստանդինը սեղանի կանչել՝ ճիշդ այն օր՝ զոր անոնք սահմանած էին, և իրենց ծրագիրը իրենց վրայ գործադրել։

Ժամադրեալ օրը կը մօտենար. դաւակիցներ սարսափեցան՝ տեսնելով որ Կոստանդինն ալ իր պալատը կը լեցնէր մակեդոնացի գունդերով։ Պատրաստութիւնք յա-

ռաջ կ'երթային լուռ կատաղութեամբ. մէկ օր մնացած էր միայն գալը ի գլուխ հանելու՝ երբ յանկարծ Պերփեռուժէնէն՝ իրենց խնջոյքի հրաւիրագիր մ'եկաւ. կասկածեցան, արիւննին սառեցաւ իրենց երակաց մէջ, սարսամ աչքերով իրարու նայեցան, բայց զուգադիպութիւն մը համարելով՝ հրաւէրն ընդունեցան։

Խնջոյքը արտասովոր շքեղութիւն մ'ունէր, զուարթ խօսակցութիւնք՝ ամէն կասկած մոռցնել կու տային. դաւադիրները բաժակները անհոգաբար կը պարպէին՝ խոստանալով Պերփեռուժէնի փոխադարձ խնջոյք մը տալու։ Յանկարծ ցնցուեցան ամէնքը և մեռելական լռութիւն մը տիրեց խօսակիցներուն վրայ. վահանի ահաւոր թնդիւն մը լսուած էր, աղմուկ մը մերկացող սուրերու, բաղխուող զէնքերու, շղթայներու. դաւադիրները իրենց պատրաստած նշանը ճանչնալով՝ գոյներնին նետեցին. երկու հայ եղբայրներ՝ վիթխարի հասակով, Թոռնիկ անուամբ, Կոստանդնի և Ստեփանի վրայ յարձակեցան. չիշխեցին անոնք՝ փոքրիկ դիմադրութիւն մ'ալ ընելու. կապեցին զիրենք, նաւակի մէջ դրին, և ղրկեցին դէպ ի իշխանաց կղզիներ։

Աքսորեալները շնորհք մը խնդրեցին Պերփեռուժէնէն . — Փռոթի հանդիպիլ՝ իրենց հօրմէն ներում խնդրելու համար . Ռոմանոս, լսելով թէ իր որդիք իրեն կու գան, ծովափ վազեց հեղնական ժպիտ մը դէմքին վրայ. « Որդիս ծնայ և բարձրացուցի, գոչեց նա, և նոքա զիս անարգեցին », յետոյ աւելցուց.

« Ա՛հ, երջանիկ վայրկեան , յորում օգոստափառ կայսրներ կը հաճին մեզի պէս ոչինչ մարդիկներու այցելել. ես գիտէի արդէն թէ դուք զիս շատ կը սիրէք , և զիս հոս ղրկելէ վերջ , ձեր որդիական սէրէն բռնադատուած՝ պալատը պիտի թողուք և իմ քովս գայիք ։

Աղէկ որ զիս առաջուց հոս ղրկեցիք. սա իմ եղբայրներս , միամիտ կրօնաւորներ ըլլալով, և զբաղած իրենց երկնաւոր տեսիլներուն հետ , ի՞նչ պիտի գիտնային՝ թէ կայսրները ի՛նչպէս պէտք է ընդունիլ, եթէ ինծի պէս մարդ մը չըլլար որ պալատի բոլոր նուրբ արարողութիւնները գիտնար ։

Հիմակ նայեցէք. արդէն ամէն բան պատրաստուած է ։ Ջո՞ւր կ՚ուզէք . սառնատան ջուրէն աւելի պաղ. համով համով բակլաներ , թարմ կաղամբներ , նոր փրցուած

պրաներ։ Մի՛ վախէք. միշտ ձուկ ուտելով՝ մարդս չհիւանդանար, այլ միայն՝ քիչ մ'աւելի պահք պահած կ'ըլլայ։

Բայց միայն մէկ բանէ մը պիտի զրկուիք հոս. աղքատ ըլլալով՝ տեղ չունինք ձեր բազմաթիւ և փայլփլուն ծառայներուն. մենք զձեզ միայն կ'ընդունինք, վեհափառ կայսերք, որ եկաք ձեր հօր ծերութիւնը մխիթարելու »։

Կոստանդին և Ստեփան Փառթիէն հանուելով՝ զրկուեցան այլ և այլ կղզիներ. առաջինը բանտուեցաւ յԱնտերովկիթոս. անկից փոխադրուեցաւ Տենեդոս, յետոյ Սամոթրակէ, ուսկից փախչիլ փորձեց իր Նիկետաս պահապանը սպաննելով. այս յանցանքին համար ինքն ալ սպաննուեցաւ, յետ երկու տարի բռնի կրօնաւոր ըլլալու։ Նոյն գիշերը Ռոմանոս իր որդին դժոխքի բոցերուն մէջ տեսնելով, երկրորդ առաւ բոլոր իր ծանօթ կրօնաւորաց, Հռոմայ քահանայապետին և Երուսաղէմայ պատրիարքին նամակ գրեց՝ Կոստանդնի հոգւոյն համար աղօթք խնդրելով։ Իր եղբայրը Ստեփան աւելի համակամ եղաւ իր ճակատագրին, որ սակայն երբէք չժպտեցաւ իրեն։ Իսկ Ռոմանոս, անձնատուր եղաւ երկնաւոր խոկումներու և զառանցանքի մօտեցող խոր-

հրդապաշտութեան։ Երկչոտ ու ծիծաղական բնաւորութիւն մ'առաւ. ամէն տարօրինակ միջոց ձեռք կ'առնուր, իր մեղքերը ապահովապէս ջնջելու համար. Մակրէրի քնաշրջիկին նման, որքան լուար, դեռ արիւն կը տեսնէր իր ձեռքերուն վրայ։

Բիւզանդիոնի բոլոր վանքերուն շրջաբերական մ'ուղղեց. կը ծանուցանէր՝ թէ հրապարակաւ խոստովանանք պիտի ընէր. և կը խնդրէր որ ամէն եղբայրակից գայ այս հանդէսին։ Երեք հարիւր կրօնաւոր, հետաքրքրուած, փութի վազեցին։

Ռոմանոս շաբաթներով աշխատեցաւ, իր բոլոր մեղքերը գրի առաւ, ցանկի վերածեց։

Հանդէսը սկսաւ պատարագով. Սրբութիւն սրբոցը դարձուցած ժամանակ, մէկը դուրս ելաւ կրօնաւորաց կարգէն՝ վեղարին մէջ ծածկուած. սգաւորի կերպարանքն ունէր, մերթ կը հեծկլտար, մերթ կուրծքը կը բախէր. կանգնեցաւ ճիշդ եկեղեցւոյն մէջտեղ. փիլոնը վար նետած պահուն, ճանչցուեցաւ Ռոմանոսը, որ միայն սպիտակ շապիկ մը հագուած, տխուր և յուզեալ շեշտով, իր մեղաց ցանկը սկսաւ կարդալ. իւրաքանչիւր յանցանքէն յետոյ կը հեծկլտար. հանդի-

սականները կը պատասխանէին « Տէր ողոր-
մեա » գոչելով. ընթերցումը երկար տեւեց, առանց, իր պարունակութեանը շնորհիւ, ձանձրացուցիչ ըլլալու։

Ռոմանոս իւրաքանչիւր կրօնաւորի առջեւ ծունր դրաւ, իւրաքանչիւրէն արձակում առաւ, յետոյ հաղորդուեցաւ։

Պատարագէն յետոյ հանդիսականները ճաշի հրաւիրուեցան. քիչ վերջ ներս մտաւ Ռոմանոս և կանգնեցաւ սեղանատան մէջտեղ՝ միայն շապիկ մը հագուած. տղայ մը գաւազանի հարուածներ կ'իջեցնէր իր մարմնոյն վրայ, ըսելով. «Նստէ՛ կեր, անպիտան ծեր»։ Ամենէն յետոյ ինքն ալ սեղանի նստաւ, իրագործել ջանալով մարգարէին խօսքը թէ «Զմոխիր որպէս զհաց կերայ, և զըմպելին իմ արտասուօք խառնեցի»։ Ռոմանոս, իր մեղքերու ցանկէն մէկ մէկ օրինակ ղրկեց բոլոր այն կրօնաւորներուն, որ իր հրաւէրը չէին կրցած ընդունիլ։ Դըժբաղդաբար անոնցմէ ոչ մէկը չէ հասած մեզ. գիտութեան վրայ մեծ լոյս պիտի սփռէին, ամբողջ պատմութիւնն ըլլալով Ռոմանոսի կայսրութեան։

Այս բոլոր ապաշխարանքները կատարած ժամանակ, աքսորեալը դադրած չէր թագա-

ւորութեան փափագելէ. բայց անձկալի նաւակը չերեւցաւ։ Լսեց անգամ մը թէ իր Թէոփիլակտոս որդին, Կոստանդնուպոլսոյ պատրիարգ, դաւակցութեան մը գլուխն անցած է, աշխարհքս կրկին իրեն հպատակեցնելու համար. բայց երկրորդ լրաբերը՝ հայրապետի անյաջողութիւնն իմացուց։ Եւ երբեմնի կայսրը տեսաւ, որ վերջալոյսի ճառագայթներուն հետ, իր յոյսերն ալ դէպ ի ուրիշ աշխարհ մը կը մեկնէին։

Ապրեցաւ հոն, Փռոթի մէջ, խաղաղ, ինչպէս կղզւոյն միայնութիւնը, խորհրդաւո՜ր՝ ինչպէս փլած արքունիք մը՝ լուսընկային տակ։

Արքունեաց մէջ միայն Հեղինէ մնաց. անշուշտ նա չուշացաւ զղջալու այն թշուառութեանց վրայ՝ որոնց պատճառն եղաւ. և իր երկնագոյն աչքերը յաճախ ցօղամած մանուշակներու փոխուեցան, երբ պալատական հանդէսներու ժամանակ բացակայ կը գտնէր իր հայրն և իր եղբայրները, երբ արքունի երաժշտութեանց ժամանակ կը յիշէր՝ թէ անոնք հիմա վանքի մ'անկիւնը կը հեծեծեն։

Թ.

# ՌՈՄԱՆՈՍ Բ. ԿՐՏՍԵՐ

(939-963)

---

Ա. ԿԱՆԽԱՀԱՍ ԱԽՏԱՒՈՐ ՄԸ. — ՀՆԳԱՄԵԱՅ ԱՄՈՒՍԻՆԸ. — Վ‚ԵՑԱՄԵԱՅ ԿԱՅՍՐԸ. — ԳԻՆԵՊԱՆԻ ԴՈՒՍՏՐԸ ԹԱԳՈՒՀԻ. — ԿԵՆԴԱՆԱԳԻՐ ԿՐՏՍԵՐՆ ՌՈՄԱՆՈՍԻ։

*Քսան տարիներ անցած էին Պերփերուժէնի հարսանեաց վրայ, և դեռ կայսերական շառաւիղը նոր ծիլով մը չէր բողբոջած։ Թագաժառանգի տեղ՝ հինգ դուստր ունեցած էր։ Մինչդեռ կը տագնապէր՝ մտածելով թէ գահը իր նախանձորդներուն պիտի կտակուի, արեգակը խաւարեցաւ։ Արկածի մը նշանն էր անտարակոյս։ Եւ յիրաւի, քիչ յետոյ, ծնաւ Ռոմանոս Բ.* (939)։

*Զուարճասէր կայսրներու շարքը, որ վայրկեան մ'ընդհատուած կը թուէր, պիտի գըտնէր իր շարայարութիւնը այս անձին մէջ՝*

որուն արշալոյսն անգամ անսովոր գոյներէ բաղադրուած էր։

Հինգ տարեկան էր՝ երբ ամուսնացաւ Փրովանսի Հիւգոյ Թագաւորին՝ Բերթա ան-հարազատ դստեր հետ, որ Փասքալիոս զօ-րավարի ձեռամբ Պօլիս բերուեցաւ (944)։ Վեց տարեկան՝ երբ կայսր օծուեցաւ Թէո-փիլակտոս ձիասէր հայրապետէն՝ որ իր քե-ռին էր (945)։

Փոքրիկ Թագուհին շուտով վախճանեցաւ (949)։ Ռոմանոս Բ, տասը տարեկան այրի մնացած, անձնատուր եղաւ զուարճութեանց, թափառելով փողոցներու, գինետուններու, որսական անտառներու մէջ։

Արդէն տասն և մէկ տարեկան եղած էր, երբ սիրտը յարեցաւ Քրաթերոս գինեպանի՝ Անաստասիօ աղջկան։ Բոլոր արքունիքը գործունէութեան մէջ մտաւ, անպատիւ հար-սնիք մը խափանելու համար։ Բայց Պեր-փերուժէն, թոյլ ի բնէ, որդւոյն հիւանդա-գին վիճակին վրայ գթալով, անոր կամքը կատարեց. ամուսնոյն տեղ՝ անոր անունը փոխեց. Անաստասիան՝ Թէոփանօ կոչուե-ցաւ. — ինչպէս թէ անձը չըլլար վատա-համբաւեալ, այլ .. իր անունը միայն։ Այս վիպակը սկզբնաւորութիւնն էր արիւնոտ

ողբերգութեան մը, որուն գլխաւոր դերասանն եղաւ Թէոփանոյ, կին երեք կայսերաց. Ռոմանոսի, Նիկեփորի, Զմշկիկի։

Ռոմանոս Բ, որդի մեծ մատենագրի, թոռն մեծ քաղաքագէտի, ոչ մին պիտի ըլլար և ոչ միւսը։ Ժառանգութեան իրաւունքով նախանձելի ձիրքեր իր լուսապսակը պիտի կազմէին. և եթէ զուրկ եղաւ անոնցմէ՝ կրթութեան պակասէն չէր. ընդհակառակն, այս մասին ոչ ոք մեծազոյն բաղդ ունեցաւ։ Իր դաստիարակն՝ հայրն ինքնին էր, որ գրքերով ալ ուղեգիծը տուաւ իր ապագայ կեանքին։ Ռոմանոս Բ առեղծուած մ՚է, զոր այլասերման օրէնքը միայն կը մեկնէ։ Թեբեւս Լեկաբեն, որ քաջ ուսուցիչ կարող էր ըլլալ եպիկուրեան դպրոցի մը մէջ, չարիքի մէջ կը հրահանգէր զայն, — ինչպէս Պերփեռումէն՝ բարւոյն։

Ռոմանոս Բ, ժպտուն նկարագրով, ոճիրներ գործեց՝ որ միայն յուսահատ և մելամաղձոտ հոգիներէ կարող են յառաջ գալ։ Հակասութիւնը դիւրին է մեկնել. երկու կամք ունէր Ռոմանոս. նախ Թէոփանոյինը, յետոյ իրենը։

Մեղկ էր նա. ներողամիտ՝ ոչ միայն անձնական, այլ և տէրութեան թշնամինե-

րուն։ Բաղդը սակայն զինքը սրբագրելու համար, քաջ զօրավարներ ընծայեց իրեն։ Առատաձեռն էր. ցորեն կու տար ժողովրդեան, անկից ծափահարութիւն առնելու համար։ Բնութեան ոչ մէկ զգացում ունէր, բաց ի վատերէն։ Իր բարեկամութիւնքը անկեղծ էին և տեւական, — խեղկատակներու հետ։ Պէտք չէ մոռնանք իր բարեմասնութեանց մէջ նաեւ այն՝ որ գնդակախաղի մէջ ամենուն կը յաղթէր, եթէ բուզանդացի պատմչաց ազգային սնապարծութիւնը չէ ասիկա։ Ընդհանրապէս՝ մեղքերով կը զբաղէր։ Համառօտիւ կը պատկանի բիւզանդացի կայսերաց այն տիպարին, որու գլխաւոր ներկայացուցիչներն են Միքայէլ Արբշիռ, Լեւոն Իմաստասէր, Աղեքսանդր Արշակունի, թէպէտեւ պէտք է ըսել, — արդարութեան համար, — թէ ասոնցմէ ոչ մին մտածեց հայրը սպաննել, մայրը հալածել պալատէն, քոյրերը վանքի մէջ փակել։ Որսասէր էր. աւելի կ'ընտրէր կենդանեաց դէմ գործածել իր զէնքը, քան իր նմաններուն։ Թէոփանէս Տարայարող, ժամանակակից ու շողոքորթ պատմիչ՝ հետագայ միջադէպը կը պատմէ ցուցնելու համար՝ թէ ո՛րքան անխոնջ էր Ռոմանոս Բ։

Ամբողջ օր մը կրցաւ նա անընդհատ զուարճութեամբ անցնել։ Առաւօտը կրկէսի մէջ՝ կառարշաւի և այլ մրցանքներու մասնակցեցաւ. յետոյ խնջոյք մը տուաւ մեծամեծներուն. բայց, առանց յոգնած ըլլալու, հրապարակ իջաւ և գնդակախաղով բազմաթիւ յաղթանակներ տարաւ ։ Մեծաձորի շրջակայքը ծածկուած էին անտառներով, որոնց աւերակները դեռ կան՝ զուրկ իրենց գազան բնակիչներէն՝ և թագազարդ այցելուներէն ։ Ռոմանոս անոնց մէջ որսալու գնաց, յաջողելով չորս կինճ սպաննել։ Յետոյ երեկոյեան պալատը դարձաւ՝ հպարտացած՝ իբրև յաղթող մարդկան և կենդանեաց։

Ռոմանոս Բ. որ հոգեկան ոչ մէկ ձիրք չէր ժառանգած Պերփեռուժէնէն, դէմքով գիծ առ գիծ իր հօր կը նմանէր. լայն ճակատ մ'ունէր, աղեղնաձև քիթ, անոյշ աչքեր, նուրբ ու վերասլաց հասակ, ցորենագոյն մորթ։ Գեղեցիկ Տղայն (Քալոն փէտիոն) Բիւզանդիոնի մէջ Ռոմանոս Բ. կը նշանակէր։

Իր բոլոր ձեւերուն մէջ կը տեսնուէր կանոնաւորութիւն մը, որ բոլորովին բացակայ էր իր գործերէն։

Արտաքին նմանութիւնը՝ յաճախ մեծ ազ-

պեցութիւն կ'ունենայ հօր մը սրտին վրայ։ Պերփեռուժէն՝ իր մանկութիւնը, իր երկրորդ եսը կը տեսնէր Ռոմանոսի մէջ։ Խանդաղատանքը, որ յառաջ կու գայ արեան կապէն, աւելի գողտր դարձած էր իր մէջ՝ արհեստագէտի կրթութեամբ. Ներողամիտ իր որդւոյն, վարժեցուց զայն՝ իր ամէն քմահաճոյքը կատարուած տեսնելու։ Վարդը փուշէն կը ծնանի, կ'ըսուի ընդհանրապէս. ասոր հակառակն ալ ճշմարտութիւն մ'է, բարոյական կարգի մէջ. չարիքներ կան՝ որ ազնուականի մը անարժան որդւոց կը նմանին. — բարութենէ ծնած են։ Ռոմանոս Բ. զոր իր հակումները, արքունիքը, Լեկաբենը, հանգամանքները բաւական էին զեղծ երիտասարդ մ'ընելու, աւելի երագ յառաջեց իր թիւր շաւղին մէջ՝ հօրը գորովանքէն զեղծանելով։ Ու Պերփեռուժէնի վերապահուած էր՝ իր սխալին դառնագոյն հետեւանքը. յանցանքը ինքնին քաւեց՝ իր ողբերգական մահուամբ։



Բ. ՀԱՅՐԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ.—ՄԱՅՐ ԵՒ ՔՈՅՐԵՐ ԱՔՍՈՐԻ ՍԱՀՄԱՆՈՒԱԾ. — ԳԱՅԹԱԿՂԵՑՈՒՑԻՉ ՄԱՐԱՊԵՏՆԵՐ. ԿՐՕՆԱՒՈՐ ՄԸ՝ ԹԻԿՆԱՊԱՀ ԶՕՐԱՎԱՐ ԵՂԱԾ.—ԴԻԱՒԱԴՐՈՒԹԻՒՆ։

*Անակընկալ բաղդը, յանկարծական լոյսի մը պէս շլացնող, գոռոզ բնաւորութիւն մը կու տայ անոնց՝ զորս կը հովանաւորէ։ Գինեպանի դուստրը՝ այս անգամ փառքերով գինովցած, անհամբեր կը սպասէր այն վայրկենին, ուր իբրեւ կայսրուհի պիտի ողջունուէր՝ իր երբեմնի զուարթ յաճախորդներէն։ Համոզեց զՌոմանոս վերջ դնելու իր հօր երկայն թագաւորութեան. Նիկողայոս խոհարարին ձեռքով՝ թոյն դրին Պերփեռուժէնի դեղի բաժակին մէջ. երբ ան, սխալ քայլի մը շնորհիւ, գետին թափեցաւ, թոյնը կրկնեցին եւ Պերփեռուժէն, դանդաղ քայլերով, գերեզման գնաց։*

*Ոչ մէկ գահակալութիւն այնքան նախատինք չեղաւ առաքինութեան։ Հայրասպան մը եւ գինեպանի աղջիկ մը՝ թագի կ'արժանանային։ Չարութիւնն էր որ կը պսակուէր։*

*Բայց Ռոմանոս Բ. այն կայսրներէն պիտի չըլլար՝ որոնք, գահու սանդուխներուն վրայ ոճրագործ, կ'առաքինանան նանոր,*

վրայ բազմած ժամանակ։ Քսան և մի տարեկան էր, և դեռ կը յուսար ժամանակ ունենալ՝ նորագոյն ոճիրներ գործելու։

Հայրը սպաննելէն յետոյ՝ կարգը մօրը եկած էր։ Հեղինէն, աքսորի դատապարտուած, որդւոյն առջև վազեց, ու դառնագին ցաւէն ներշնչուելով՝ այնպիսի կրակոտ ճարտասանութեամբ որդւոյն ապերախտութիւնը յանդիմանեց, որ նա ետ կեցաւ սրբապիղծ մտածումը գործադրելէ։ Մօրը տեղ, միշտ Թէոփանոյէն դրդուած, իր հինգ քոյրերը վանք ղրկեց։

Ոչինչ աւելի գայթակղեցուցիչ կրնար ըլլալ քան այս իշխանուհիներուն վարքը՝ վանքին մէջ։

Հազիւ թէ հոն հասած էին, իրենց ընդառաջ ելաւ Քրիսթոֆի Սոփիա կինը, բայց ոչ գոյնզգոյն ու նուրբ կերպասներուն մէջ, ինչպէս վարժուած էին արքունեաց մէջ զինքը տեսնելու, այլ սեւ քօղի մը, սեւ զգեստներու տակ։ Այս հանդիպումը բաւական էր իշխանուհիներուն վրայ տխուր տպաւորութիւն մ՚ընելու։ Յետոյ նստան և ցաւերնին պատմեցին իրարու զայրոյթի մոլեգին շեշտերով. Հոն որոշեցին դիմադրել իրենց ճակատագրին։

Քիչ յետոյ դուռը բացուեցաւ և ալեւոր ծերունի մը ներս մտաւ։ Սթուտիոն վանքի աբբահայրն էր։ Աշխարհիս յեղափոխութեանց վրայ խօսելով, իմացուց թէ հարկ էր մերկանալ իրենց սնոտի զարդերէն, երկայն խոպոպներէն, հնացած ախտերէն։ Յետոյ սովորական ոճով կատարուեցաւ արարողութիւնը, որու ժամանակ անհամբերութեան նշաններ ցոյց կու տային, սեւ տարազը ծանր զգալով իրենց ուսին։ Ծերունին, իր խրատը կրկնելով, մեկնեցաւ։ Մարապետները, որ աչքով իրեն կը հետեւէին, դուռը գոցուած տեսնելով, վեր ցատքեցին, տժգոհ դպրոցականներու աշխուժութեամբ գետին նետեցին իրենց քողը, սկսան կրօնաւորական զգեստները կոխոտել։ Յետոյ, իշխանուհւոյ զարդերը հագուելով, մտան մարապետաց մէջ և ամբողջ վանքը խառնակութեամբ լեցուցին։ Մեծ հաճոյք կը զգային արդելք ըլլալով տեղւոյն սովորութեանց. ո՛չ մէկ կանոնի չէին հնազանդեր։ Վանքի մէջ շարունակեցին՝ ինչ որ կ'ընէին պալատին մէջ. — ամէն բան վեր ի վայր ըրին։ Ռոմանոսի իմացուցին թէ իր քոյրերը շատ օրինակելի մարապետներ չէին և թէ իրենց ապաշխարանքը ուրիշները կը կատարէին։ Կայսրը անոնց թոշակ կապեց

յանձն չառաւ աբբայուհւոյ պաշտօնը գործածել, և անտեղի չերեւցաւ իրեն, որ, ինչպէս իր տէրութեան ամէն կողմ, վանքերու մէջ ալ բարեկարգութիւն պակսի։

Այս ժամանակ էր՝ որ վանքէ կրօնաւոր մը բերել տուաւ՝ իրեն Թիկնապահ զօրավար ընտրելու համար։ Դարուն հանգամանքները նկատելով, զարմանալի չէ այս. աշխարհականաց մէջ քիչեր կը գտնուէին կրօնաւորաց չափ քաջասիրտ ու ռազմագէտ։ Աքսորուիլը՝ իշխաններու սովորական ճակատագիրն եղած էր. Բիւզանդիոյ ազնուականութիւնը՝ բաժնուած էր վանքերու և պալատներու վրայ։ Բիւզանդացիք կը տեսնէին յաճախ կրօնաւորներու խումբ մը՝ եկեղեցւոյ ճանապարհին վրայ տողուած, գլուխնին վայրահակ, աչքերնին դէպ ի գետին, կարծես դժոխքի տեսիլքի մը վրայ սեւեռուն. արդ, անոնցմէ մին պատրիկ եղած էր ժամանակաւ, միւսը զօրավար, ուրիշ մը գանձապետ։ Այսպիսի կրօնաւորներէն էր Յովհաննէս Քերինա, որ փայլուն անցեալի մը յիշատակը թողած էր արքունեաց մէջ, և փոքրիկ Ռոմանոսի մտերմութեանը արժանացած։ Միջին դարու ոգւոյն համեմատ, ամէն մարդ որ աբատ մը կը թուէր ազ-

նուական շրջանակի, արժանի կը համարուէր կրօնաւոր ըլլալու։ Յովհաննէս, իր գայթակղութեանցը պատճառաւ՝ վանք մը աքսորուեցաւ. բայց երբ Ռոմանոս գահու վրայ բարձրացաւ, յիշեց զինքը, և առանց անոր ուխտերուն կամ պատրիարքին բողոքներուն ուշ դարձնելու, զինքը Թիկնապահ և պատրիկ անուանեց։ Քերինա, նախորդ օրը, սեւ զգեստներու մէջ ծրարուած, — ուրուականի երեւոյթ մը, — հնազանդելու պատրաստ, ոչնչացած ես մը, երկրորդ օր զօրավարի գոյնզգոյն զգեստներու մէջ բարձրաձայն կը հրամայէր Թիկնապահ գունդերուն, կայսեր հետ կը շրջէր, սարսափ շնչելով ժողովրդեան, և նախանձ՝ փառասէր սրտերուն։

Ռոմանոսի ժամանակ երկու մեծ հանճարներ կը տեսնենք, երկու սիւներ որ ծառայեցին՝ նոյն մակարդակի վրայ պահելու Հռոմէական պետութիւնը. Յովսէփ Բրինգաս, ծովակալ և սենեկապետ. Նիկեփոր Փոկաս, զօրավար. կարող ենք մին ներքին գործոց, միւսը՝ պատերազմի նախարար կոչել։ Միոյն գործունէութիւնը արքունեաց մէջ սահմանափակուած էր. միւսինը կը զեղոյր՝ տէրութեան սահմաններէն ալ անդին։ Նիկեփոր անհամեմատ կերպով աւելի օգտակար պի-

տի ըլլար պետութեան։ Ռոմանոսի ընտրութեանց մէջ՝ այս երկուքը միայն դատապարտելի չէն. անոնք միայն, առանց ախտաւոր ըլլալու, յաջողեցան՝ հաճոյ անցնիլ կայսեր։

Նախկին պալատականները, հակառակ իրենց բոլոր արդիւնքներուն, խաւարեցան, տեղիք տալով նոր լուսաւորներու։ Վրէժխնդրութեան զգացմամբ դառնացած, դաւադրութիւն մը կազմեցին. — պիտի սպաննէին զՌոմանոս Բ. իրեն տեղ գահ հանելու համար Վասիլ Թռչնիկը՝ որ այնքան ճարտարութեամբ յաջողեցաւ երբեմն Լեկաբենը աքսորել տալ նոյն իսկ իր որդիներուն ձեռքով։ Սպանումը ժամադրուեցաւ այն օրուան վրայ՝ յորում մեծ հանդէսներ տեղի պիտի ունենային կրկէսին մէջ. արիւնհեղութիւնը՝ պալատի դրա՛ն առջեւ պիտի կատարուէր։ Առանց գիտնալու թէ Յովհաննիկ անուամբ մին՝ իրենց գաղտնիքը արդէն վաճառած էր կայսեր, աշխուժիւ կը պատրաստուէին՝ Վասիլի գահը խոր հիմունքներու վրայ դնելու։ Ռոմանոս Բ. կը կեղծէր ոչինչ գիտնալ. կը զբօսնոյր՝ հպատակութեան եռանդուն խօսքեր լսելով անոնցմէ, արհեստական միամտութեամբ մը՝ անոնց ծրագիրները խրախու-

սելով։ Միւս կողմէն, գաղտնապէս, յաղթական շքեղ կառք մը պատրաստել տուաւ. Հանդէսին օրը՝ զինուորներ գետեղեց հոն՝ ուր ոճիրը տեղի պիտի ունենար։ Դաւակիցները զինուած, պալատին մօտեցեր էին. յանկարծ գունդերը իրենց վրայ յարձակեցան, մի առ մի կառքին մէջ նետեցին, կապեցին. յետոյ Ռոմանոս Բ. իջաւ պալատէն և անխռով յաղթական կառքին մէջ նստաւ. Հոն կը գտնուէր նաև Վասիլ, որ գահէն զատ՝ բանականութիւնն ալ կորսնցուց։ Ռոմանոս, ժողովրդէն ծափահարուելով, քանի մը շրջան ըրաւ կրկէսին մէջ, յետոյ դաւակիցները աքսորեց։ Պատժի այս ընտրութեամբ ապացուցուց Ռոմանոս Բ. թէ առաքինութեան սերմերը՝ բոլորովին խղդուած չէին իր սրտին մէջ։

Այս միջադէպէն վերջ կրկէսի խաղերն սկսան, անոնց մէջ ամենէն նշանաւոր՝ Հայու մը ծառայն հանդիսացաւ (Կեդրենոս Բ, էջ 343)։ Մուշեղ անուամբ իշխանը, զոր Յոյներ Ռոմանոս ալ կը կոչէին, — այս երկու անունները իբրև համանիշ կը գործածուէին այդ դարուն, — ազգական՝ Լեկաբենեան մեծն Ռոմանոսի, ախոռապետ մ'ունէր Ֆիլորէոս (Φιλώραιος) կոչուած։

Սա կանգնեցաւ օղապարիկ նժոյգի մը վըրայ՝ որ արծուի նման կրկէսի շրջանը կ'ընէր. Նոյն վայրկենին հեծեալը, իբրեւ քարէ պատուանդանի մը վրայ կանգնած, արձանի մը պէս անզգայ, զինաշարժութեան հրահանգներով կը զուարճանար։ Այսպէս հիացման և զբօսանքի օր մ'եղաւ այն, ուր թըշուառութեան վիհը բացուեցաւ ոտքին տակ այնքան մեծամեծներու։ Յաղթը թեւեր խոստացեր էր անոնց. Ռոմանոս ստիպեց որ փոխանակ դէպ ի փառք, երկինք երթալու գործածեն զանոնք, — երկրաւորի տեղ՝ երկընքի թագաւորութեան միայն հետամուտ ըլլան։ Վասիլ Թոշնիկ, որ ցաւէն յիմարած էր, Փրոկոնեսոս կղզւոյն մէջ մեռաւ, երազած պալատին տեղ՝ գերեզմանի հանդիպելով։ Իր ընկերները հրաման ստացան Բիւզանդիոն դառնալու. Թագապահանջը թերեւս աւելի բաղդաւոր եղաւ այն եղերերգական յիշատակովը, զոր յաւիտենապէս աքսորեալ մը կ'ունենայ։



### Գ. — ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ՝ ԿՐՏՍԵՐՆ ՌՈՄԱՆՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ. ՀԱՅ ՈՃՐԱԳՈՐԾՆԵՐ. ՀԱՅ ՍՈՒՐԲ ՄԸ. — ՌՈՄԱՆՈՍԻ ՄԱՀԸ։

*Կրկին մեծ դժբաղդութիւններ ժամանակակից եղան Ռոմանոսի. հիւանդութիւն մը, որ կոլերը, և, — ինչ որ չարագոյն է, — Արաբացւոց արշաւանքը՝ որ քրիստոնեայները կը սպաննէր։*

*Նիկեփոր Փոկաս՝ Հայազգի, Թրակացի և Մակեդոնացի գունդերով Կրետէն պաշարեց* (960)*. բանակեցաւ հովիտի մը մէջ այնքան նկարչական՝ որ զինուորները կը կարծէին մահէն առաջ արքայութեան մէջ գտնուիլ։ Թէպէտ ծովային ճամբան գոցուած էր բազմաթիւ նաւերով, բայց մի քանի արաբացիներ, Ափրիկէի և Սպանիոյ խալիֆայներէն ղրկուած, յաջողեցան պարսպին մօտենալ։ Զուանէ սանդուխ մը վար իջաւ. պատուհանները, գիշերուան մթութեան մէջ ծածկուած, մագլցելով վեր ելան։ Իրենց նպատակն էր քննել՝ թէ օգնութեան ո՛ր և է փորձ պիտի կարենա՞ր քաղաքը փրկել. հակառակ բնակչաց թախանձանքին, իրենց վճիռն աննպաստ եղաւ։ Պաշարումը կ'անձկանար, կ'երկարէր. սովը տիրած ըլլալով տէրու-*

թեան մէջ, ոչ միայն քաղաքին բնակիչները, այլ նաեւ զայն պաշտպանողները զուրկ կը մնային հացէ։ Յոյն բանակը ապստամբելու կը պատրաստուէր. Պոլսէն ցորեն ուղարկուեցաւ պաշարումը շարունակելու համար. Կրետացիք սովէն կիսուած, իրենց Քուրուփ ամիրային հետ՝ անձնատուր եղան, տասն ամիս դիմադրելէ յետոյ։ — Այս պատերազմին մէջ էր որ նշանաւոր հանդիսացան հայ ոճրագործներ և հայ սուրբ մը։

Լուսընկայ գիշեր մը, Նիկեփոր, իմանալով քառասուն հազար թշնամեաց մերձակայութիւնը, որոնք լերան մը գագաթէ իրենց վրայ պիտի խուժէին, որոշեց յարձակում սկսիլ արշալոյսը չծագած։ Պէտք էր բանակը լեռն ի վեր տանիլ. դիրքը վտանգաւոր էր, յաղթութիւնն անապահով։ Բայց նոյն իսկ այս պատճառաւ, մտածեց Նիկեփոր, պէտք է թշնամիք անհոգ վիճակի մէջ ըլլան. յանդուգն ծրագիրը իրագործեց։ Բոլոր Արաբները ջարդուեցան. հայ և յոյն զօրքեր՝ պարկեր բռնած ձեռքերնին, սկսան լեռնէն վար իջնալ. տեսնողը պիտի կարծէր թէ աւարներ կը բերուէին. այդ պարկերը ուրիշ բան չէին պարունակեր՝ բայց եթէ մարդկային գլուխներ, որ վայրկեան մ'առաջ

կարուեր էին։ Նիկեփոր հրամայեց որ պարիսպներուն առջեւ ցուցահանդէսի դնեն զանոնք՝ Կրետացիները վախցնելու նպատակաւ. ամենէն աւելի Հայ զինուորներ աշխուժութիւն ցոյց տուին այս անգութ տեսարաններն յօրինելու մէջ. գլուխները քարաձիգ մեքենայներու մէջ կը դնէին և զանոնք դէպ ի քաղաք կը նետէին. Կրետացիք բաղխում մը կը զգային իրենց կուրծքին վրայ. քիչ յետոյ, սոսկումով, արիւնոտ գլուխ մը կը ճանչնային։ Գլուխներուն մէկ մասը, կարգ կարգ ցիցերու վրայ տնկուած, մեռեալներու բանակ մը կազմած էին, որ կը թուէր քաղաքին վրայ քալել։ Հայ ոճրագործները վրէժխնդրութեան անսահման հաճոյք մը կը զգային այդ անգթութեանց ժամանակ, որ սակայն ոչինչ էին անոնց քով՝ զոր Արաբացիք ըրած էին իրենց երկրին մէջ։

Կրետէ մահմետական երկիր մ'էր, մզկիթներով, մինարէներով զարդարուած. քիչ յետոյ քրիստոնեայ դարձաւ նա՝ Հայ սուրբի մը շնորհիւ։ Սա կը կոչուէր Նիկոն Ապաշխարեցէք. այս վերջին բառը (յն. Մէթանոյիթէ) այնքան կը կրկնէր իր քարոզին մէջ, որ իր մակդիրն եղած էր։ Պոնտոսի մէջ ծնած էր նա, Հայ նախարարական ցեղէ մը, և,

առանց իր փայլուն յոյսերէն զիւթուելու, մանկութենէ ի վեր Ոսկեքար վանքին մէջ կրօնաւորած։ Հոն բազմաթիւ ճառեր գրեց, որոնցմէ մին՝ ի վերայ Կրօնի Հայոց։ Անոնք մնացած են դեռ, և, անգին աւանդներ, կը պահուին Փարիզու գրատան մէջ։ Իբրև առաքեալ, թափառեցաւ ընդերկար Հայաստանի մէջ. երբ Նիկեփոր Կրետէն գրաւեց, ինքն ևս հոն եկաւ՝ հոգիները հաւատքի գերելու համար։ Այս դժուարին գործը՝ միայն քսան տարուան մէջ ի գլուխ հանեց։ Աքայիոյ և Եպիռոսի մէջ ևս քարոզչական ընթացքը կատարելէ յետոյ, մեռաւ ի Պեղոպոնէս 998ին։ Այս սուրբը, սիրելի լատինաց և յոյներուն, անծանօթ է իր ազգին. նոյեմբեր 26ին կը տօնուի յոյն եկեղեցիէն։

Կրետէի դարձը քաղաքական մեծ կարեւորութիւն ունեցաւ. յառաջ բերաւ արդիւնք մը՝ զոր պիտի չկարենային տալ ոչ տնտեսական և ոչ ալ ռազմական որ և է միջոցներ. Նիկոնի յաղթանակը աւելի մեծ եղաւ քան նոյն իսկ Նիկեփորինը։

Լեւոն Փոկաս արժանաւոր հանդիսացաւ՝ իր դիւցազն եղբօր. Գաղատիոյ մօտ այնքան արագ կոտորեց, որ դաշտին մէջ ոսկրեղէն բլրակներ ձեւացան։ Համաանեան

Սէյֆ-էտտուլահ զօրավարը հազիւ կարողացաւ փախչիլ. խառնուրդին մէջ կը գըտնուէր, երբ իր նժոյգը, լանջքէն խոցուած, գետին փռուեցաւ. Յոյներ դիմեցին իր վրայ. Սէյֆ-էտտուլահ հաւատարիմ զինակիր մ'ունէր, երբեմն քրիստոնեայ։ Զօրավարը օրհասական տագնապի մէջ տեսնելով, իսկոյն վար նետուեցաւ իր երիվարէն, անոր տուաւ զայն՝ և սուսերը մերկացած՝ յարձակողներուն դիմադրեց։ Բազմութենէն յաղթուած, մեռաւ. բայց գոհ էր նա. իր տէրը ժամանակ ունեցած էր փախչելու։ Հեծելազօրքը հետամուտ եղաւ Սէյֆ-էտտուլայի. Միհրդատայ նման, ոսկի ցանած էր ճամբուն վրայ. ո՛չ մէկ կախարդ լաւագոյն դիւթանք մը պիտի չգտնէր Յոյները անշարժ կապելու համար. Սէյֆ-էտտուլա ազատեցաւ։

Նիկեփոր յաջորդ տարւոյն մէջ Ասորեստան գնաց. տիրեց յիսուն և հինգ դղեակներու, Դուլիկէ, Հերապոլիս և Անարզաբա քաղաքներուն. այս վերջինին քով՝ այնպիսի կոտորած մը տուաւ Արաբացւոց, որ ռազմադաշտին արեան լճակի մը կերպարանքն առաւ։ Աւանները մի առ մի անձնատուր կ'ըլլային. Հալէպը միայն ա-

նաւիկ պիտի ըլլար՝ եթէ չնչին միջադէպ մը անոր կործանումը չերապէր։ Քաղաքին մէջ սով տիրած էր. պարսպապահ զինուորներու խումբ մը տուներ կը մտնէր կերակուր յափշտակելու. ժողովուրդը կատղած, աւազակներուն վրայ յարձակեցաւ. աշտարակներու մէջ գտնուող զինուորները կռուի աղաղակն և շփոթութիւնը լսելով, իսկոյն քաղաքը վազեցին։ Յունաց համար բերդապահներու բացակայութիւնը՝ ամենէն անակընկալ առիթն էր. գիտցան օգտուիլ անկից. քաղաքը խուժեցին, ուր կարքեդոնեան դիմադրութեան մը հանդիպեցան. երեք օր պատերազմը տեւեց՝ քաղաքին փողոցներուն մէջ. միջնաբերդը դեռ կը դիմադրէր. Նիկեփոր արաբացի զօրավարներու մերձենալը լսելով՝ միջնաբերդի պաշարումը դադրեցուց. երկու հազար տղաքներ գերի տարաւ. աւարը այնքան ճոխ էր, որ կարելի էր արեւելքի թագաւորի մը գանձատունը շինել անով. միայն մէկ պալատի մէջ՝ երեք հարիւր պարկ դրամ գտան։ Երկիրը խաղաղելով՝ դէպ ի մայրաքաղաք սկսաւ դիմել Նիկեփոր՝ իր յաղթանակը տօնելու համար։

Արքունիքը, այս պահուն, հանդիսատեղին եղած էր մթին դաւադրութեանց։ Թէո-

փանոյ. Նիկեփորի հեռաւոր փառքերովը գիւթուած, գաղտնի նամակներով իր հիացումը կը յայտնէր։ Դիւցազնը, վրանին առջեւ, կռուէն վայրկեան մ'առաջ, կը կարդար այդ նամակներէն մին՝ ուր կայսրուհին կը խոստացուէր իրեն. կը փակէր զայն և սուրը մերկացած՝ թշնամեաց մէջ կը նետուէր, արժանիքը ստանալու համար իր ապագայ փառքին։ Լսելով Թէոփանոյ թէ նա Պոլիս պիտի վերադառնայ, թոյն գրաւ կայսեր բաժակին մէջ. անիրաւութիւն մը՝ որ միանգամայն արդարութիւն կարող էր կոչուիլ. Ռոմանոս խղճած չէր նոյն մահը տալու անոր՝ ուսկից կեանք ստացած էր։ Թէոփանոյի այս ոճիրը դեռ ստուգուած չէ. ըստ ոմանց՝ Ռոմանոս իր անձնական ախտերուն զոհ գնաց, ոչ Թէոփանոյի։ Ռոմանոս Բ.ի վերջին գործը իր կեանքի գեղեցկագոյնն եղաւ. գիտցաւ յարգել հանճարն և առաքինութիւնը, որոցմէ զուրկ էր. հրամայեց իր որդւոց՝ որ Նիկեփորը միշտ իր զօրավարութեան մէջ մնայ։ Յետոյ աչքերը փակեց, հառաչելով իր յոյսերուն, երազներուն և կեանքին վրայ, որ քսան և չորս տարի միայն տեւած էր։ (15 մարտ 963)։

Մեծ պիտի ըլլար իր հիացումը, եթէ

յարութիւն առնուր նա իր մահուան տարեդարձին. որդիքներուն տեղ՝ Նիկեփորը պիտի տեսնէր գահուն վրայ, տէրութիւնը յաղթանակներով լեցուած, պատմութիւնը հիացման, թշնամիները սարսափի մէջ։ Կրկին անգամ գերեզմանը մտած պահուն, պիտի յանձնէր նա. «Նիկեփորը թող մնայ միշտ.. իր կայսերութեան մէջ»։ Փառքի ոսկեդար մ'էր, որուն շարայարութիւնը պիտի յանձնուէր ասպետի մը, առիւծի պէս անվեհեր, կուռքի մը պէս պաշտուած, որ ընկերած էր Նիկեփորի Արեւելքի պատերազմներուն մէջ, և որ կը կոչուէր — Զմշկիկ։



## Ժ.

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ՉՄՇԿԻԿ

(969–976)

---

Ա. — ՀԱՅ ԱՍՊԵՏԸ. — ԻՐ ԴԷՄՔԸ. ԻՐ ՀՈԳԻՆ. — ԱԿԱՆԱՏԵՍԻ ՄԸ ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ։

*Զինուորական անուններ կան՝ որ ռազմական քայլերգ մը, սրբազան դրօշ մը կը թուին. կենաց, մահուան ու փառքի՝ ամենէն սարսռուն զգացումները կը շնչեն։*

*Չմշկիկ մեր ազգի գաղափարագրութիւնն է, ինչպէս Արարատ մեր երկրին, մեծագոյն Հայն՝ օտարութեան մէջ, ինչպէս Տիգրան Բ. իր պետութեան։*

*Աշխարհակալ մ'էր որ մինչեւ Բաբելոն հասաւ, ռամկավար՝ որ զոհ գնաց ազգատոհմերու դաւին, սիրտ մը՝ թշուառութեանց առջեւ գողարիկ, կռուի մէջ անվեհեր։ Համազգային պատմութեան մէջ ալ քիչեր կան՝*

որ նոյնչափ գերազանց եղած ըլլան իբրեւ թագաւոր, իբրեւ ընկերութեան մարդ, իբրեւ անհատ։

Լաւագոյն տեղը՝ ուր Բիւզանդիոնի թագը բազմեցաւ, Զմշկիկի ոսկեհիւս ծամերն էին, որ ծիրանւոյն վրայ, նշոյլներ կը թուէին՝ իր բազկաւոր աստղէն կարուած։

Փոթորիկները որ իր կեանքին մէջ կ'ոռոտան, դաւաճանութեան գիշերը, չուանէ սանդուխը որ կը քակուի թագուհւոյ մը մատներէն, նոյն հմայքը կու տան իր կեանքին՝ ինչ որ ասպետական ձիրքերը՝ իր անձին։ Ու սիրելի է Զմշկիկ, այն բալէին մէջ ալ՝ երբ ծիրանի մ'ունենալու համար՝ իր զօրավարի պատմուճանը թագաւորի մ'արեան մէջ կը ներկէ։

Իր մասին վախ չունինք ազգային զգացումէ պատրուելու. ամբողջ պատմագրութիւնը կ'ընկերէ մեր հիացման։ Յոյն բանաստեղծներ երգ նուիրեցին իրեն, տարեգրողները գովեստ. Գեղցեր զինք իր դարու մեծագոյն զօրավարն ու քաղաքագէտը կը նկատէ, որուն երկայն կեանք միայն պակսեցաւ. Շլիւմպերժեր՝ «Բիւզանդիոնի կայսերաց մէջ ամենէն քաջը՝ եւ թերեւս ամենէն լաւը»․ նոյնը Զմշկիկի ընդարձակ հա-

*տոր մը կը նուիրէ՝ զայն « Բիւզանդական դիւցազներգութիւն » անուանելով. և յիրաւի նա մէկ բանէ միայն զուրկ է դիւցազներգութիւն ըլլալու համար. – կեղծիքէ։*

*Ժամանակը չէ սակայն՝ որ նուիրականութիւն տուած է Զմշկիկի. զինք տեսնողները՝ Հոմերոսի դիւցազները կը հեգնէին։ Ասոնցմէ մին, Լեւոն Սարկաւագ, որուն գրիչը վրձինի յստակութիւնն ունէր, Զմշկիկի հետեւեալ նկարագիրն աւանդած է մեզի, անցագրի մանրամասնութեամբ։*

*Հզօր գոյներ, արհեստագէտի ճաշակով նետուած ստուերներ, որոշ, շօշափելի շրջագիծեր։ Զմշկիկի նկարն՝ և արձանն է միանգամայն։*

*« Իր կերպարանքը՝ այսպիսի էր։*

*Դէմքը ճերմակ էր և բարեգոյն. մազերը դեղին էին, ճակտին վրայ ցանցառ։*

*Իր աչքերը սուր էին և երկնագոյն. քիթը սիրուն և չափակցեալ։*

*Մօրուքի վերին մասը՝ բոցագոյն էր, կողմնակի՝ չափէն աւելի առատ էր, բայց վարը՝ չափաւոր ու բնական մեծութեամբ, ոչ ցանցառ։*

*Հասակը կարճ էր. կուրծքը և թիկունքը լայն էին »։*

« Հսկայական ոյժ ունէր, ձեռաց ճարպկութիւն, և դիւցազնական անդիմադրելի կորով մը․ գերընական քաջասրտութիւն մը ցոյց կու տար՝ այն փոքրիկ մարմնոյն մէջ։

Չէր վախնար միայնակ թշնամեաց փաղանգին մէջ յարձակելէ․ շատերը ջարդելով, սրաթեւ երագութեամբ իր բանակը կը դառնար, առանց վնաս մը կրելու։

Ցատքելու, գնտակ խաղալու, նիզակ նետելու, աղեղը լեցնելու և արձակելու մէջ՝ իր ժամանակի բոլոր մարդիկները կը գերազանցէր։

Կ'ըսուի թէ չորս անթամբ ձիեր իրարու քով շարելով, թռչունի նման (ցատքելով) ամենէն ծայրը գտնուող ձիուն վրայ կը նստէր։

Նետ նետած ժամանակ այնպէս լաւ նշան կ'առնէր, որ մատանւոյ ծակին մէջէն՝ նպատակին կը զարնէր։ Այնչափ գերազանցած էր քան Հոմերոսի գոված կղզիաբնակը, որ տէգը տապարներուն մէջէն կ'անցընէր։

Ապակեայ գաւաթի մը յատակը՝ կաշիէ գնտակ մը դնելով, ձին կը խարազանէր, ընթացքը կ'երագէր, գաւազանիկով մը կը զարնէր գնդակին, և այնպէս կ'ընէր՝ որ նա թռչելով դուրս կը նետուէր․ իսկ գաւաթը

առանց շարժելու և առանց կտրելու իր տեղը կը մնար։

Բայց ամէն բանէ վեր՝ մեծապարգեւ և ամենառատաձեռն էր. վասնզի ոչ ոք խընդիրք մը կ'ընէր՝ և յուսախաբ ետ կը դառնար։ Բարեսէր և զուարթ կերպով ամենուն մարդասիրութիւն կ'ընէր, մարգարէաբար՝ ողորմութեան իւղը բաշխելով։ Եւ եթէ Վասիլիոս սենեկապանը արգելք չըլլար՝ իւր ցեղակիցներուն բարիք ընելու անյագ եռանդին, կայսերական գանձերն ալ շուտով պիտի սպառէր՝ կարօտեալներուն բաշխելով։

Յովհաննէսի պակասութիւնը այն էր որ՝ պատշաճէն աւելի կը խմէր և խնջոյք կը կատարէր, իսկ մարմնոյ․ հաճոյից մէջ ալ՝ չափը կ'անցնէր»։ — Լեւոն Սարկաւագ թերութիւն չէ համարած այն հաւատքը, զոր Զմշկիկ, իր նախորդներուն պէս՝ կ'ընծայէր աստեղագիտութեան։ Գիսաւոր մը տեսնելով երկնից մէջ՝ բոլոր մասնագէտները ժողովքի կանչեց, ուր տագնապաւ խորհուրդ ըրին՝ թէ քաղաքական ինչ հետեւանքներ կրնային յառաջ գալ անկից։

Ուրիշ տեղ մը՝ նոյն պատմիչը կ'ըսէ Զմշկիկի համար. (էջ 37)։

«Մարդ մը՝ եռանդուն հոգւով, տարօրի-

նակ կերպով յանդուգն և կրակուբոց, որչափ թերեւս ուրիշ ոչ ոք, թէպէտեւ չափէն աւելի կարճ էր, դիցաբանական քաջամարտիկ Տիդէային նման: Բայց դիւցազնական կորով և ոյժ կար՝ այն փոքրիկ մարմնոյն մէջ»:

Դարձեալ (էջ 85):

« Կրակոտ մարդ մ'էր ի բնէ, արիասիրտ, որչափ թերեւս ուրիշ ոչ ոք, և արտաքոյ կարգի գործեր ձեռնարկելու մէջ՝ ամենայանդուգն »:

Բայց Հայ ասպետի ձիրքերուն այս ցանկը՝ դեռ կատարեալ չէ: Իր փառքերէն մին կը պակսի հոն: Զմշկիկ մեծ հայրենասէր մըն էր: Իր թագաւորութեան երկրորդ առաւօտուն, հրամայեց որ իր տէրութեան բոլոր Հայերը ազատ ըլլան տուրքէ:

Իր զինուորական ճառերու մէջ՝ Վարդանայ շեշտը կայ. « Մանկութենէ ի վեր կռիւներու մէջ մտած եմ, և ինչպէս գիտէք, բազմաթիւ պսակներ և յաղթանակներ տարած »: Թերեւս, պատերազմի դաշտին վրայ, Վարդանանց Պատմութիւնն ունէր իր ձեռքին մէջ: Անմահներու գունդ մը կազմեց, — Եղիշէի յիշած մատեանին պէս, — որուն ինք կը զօրավարէր: Պատմութեան մէջ մնացած են այդ անմահները, և հոն ալ Զմշկիկ կ'ա-

ռաջնորդէ անոնց...: Կրօնական գողտր զգացում ունէր, բայց գործնականին մէջ կ'արհամարհէր ամէն արգելք, ինչ տեսակի ալ պատկանէր:

Յաճախ աղքատներ և հիւանդներ իր ձեռամբ խնամեց: Բուզանդացիք աներեւոյթ զինակից մը կ'ընծայէին իրեն, Ս. Թէոդորոսը. այսպէս հայ ասպետին քաջութիւնքը՝ երկնային էակի մը միայն արժանաւոր կը տեսնուէին: Ճարտասան էր, երբ զինուորներ ունենար ունկնդիր՝ և խօսակցութեան նիւթ՝ զէնքերն ու փառքը:

Բ. — ՀԱՅ ԿԱՅՍԵՐ ԾՆՈՒՆԴԸ. — ԶՄՇԿԻԿԻ ԳՊՐՈՑԸ. — ԻՐ ԱՆՈՒԱՆ ԾԱԳՈՒՄԸ. — ԴԻՒՑԱԶՆԵՐՈՒ ՑԵՂԸ. — ԶՄՇԿԻԿԻ ՀԱՐՍԱՆԻՔԸ:

Եփրատի ափունքները, քաջերու գերեզմանոց, հայ դիւցազին ծննդավայրը պիտի ըլլային:

Յերապոլիս, որ հելլենական շրջանի մէջ՝ նուիրական դարձած էր իր մեհեաններուն համար, և մայրաքաղաքն եղած Զորրորդ Հայոց Խոզան գաւառի, դեռ աւելի պիտի սրբագանուէր հայ կայսեր մը ծնունդով: Հոն Զմշկիկ իր առաջին արեւն ողջունեց (924ին):

Ցերապօլիս, իր պարծանքն յաւերժացնելու համար, Զմշկածագ անունն առաւ։

Գաղտնիք մնացած է անունը այն ամուսիններուն՝ որ այնքան հռչակաւոր անձ մը կ'արտադրէին։ Այս լռութիւնը սրբազան մառախուղն է, որ կը շրջի մեծ խանձարուրքներու շուրջ։

Իր պապը Թէոփիլոս կը կոչուէր և եղբայրն էր մեծահամբաւ Յովհաննէս Գուրգէնին, որ վերջնական հարուածը տուաւ Արաբական պետութեան։ Այս երկու զօրավարներն ալ, 924ին, Փոքր Հայոց մէջ կը գտնուէին. Զմշկիկի առաջին նայուածքը՝ յաղթանակի մը հանդիպեցաւ։ Մանկութենէ ի վեր, Աննիբաղի պէս, յանդգնութեան դասեր առաւ. խուժանի մէջ կը մտնէր, քաջութիւններ կ'ընէր, դափնեպսակներ կը շահէր։ Ընտանեկան հարստութիւնը, որուն մի մասն էր համբաւը, շուտով աճեցաւ կայսեր ընծայներով, ու թշնամեաց աւարով։

Պատերազմի դաշտը՝ Զմշկիկի դպրոցն եղաւ, զինաշարժութիւնն՝ իր ուսում, դիւցազներ՝ իրեն դաստիարակ։

Հասակը սակայն կարճ կը մնար, և աւելի ուշադրութիւն կը գրաւէր՝ իր ամենօրեայ քաջութեանց հակադրութեամբը։ Մրրկի

պէս աշխոյժ, կենդանի հրաշք մը, գերբնական ոյժ մը կը թուէր ։ Հայ զինակիցներ հեգնութեամբ՝ Յովհաննէսը Չմշկիկ անուանեցին ։

Սա « Հայոց գաւառաբարբառին պատկանող բառ մ'է, և յունարէն կը թարգմանուի Μουζακίτης (Պատանեակ), վասնզի հասակաւ ամենակարճ ըլլալով՝ այս մակդիրն առած էր » ։ (Լեւոն Սարկաւագ, էջ 92)։

Սոյն հայերէն բառը, — զոր առաջին անգամ յոյն պատմիչ մը կ'ուսանինք, — կ'ելնէ պարսկերէն Չէմշ բառէն, որ « վայելուչ հասակ » կը նշանակէ, իկ փոքրացնող մասնիկն է. յիրաւի Չմշկիկ՝ փոքր բայց վայելուչ հասակ ունէր (ստուգաբանութիւն Պրոսէ գաղղիացւոյն)։

Ամէն բացառիկ անձ, հին Յունաց քով, դիւցազներու ցեղէ մը յառաջ կու գար։ Չմշկիկ այս ծագումն ունենալու համար՝ կարօտ չէ առասպելի։ Իր ապագայ քաջութիւնը մեկնելու համար՝ հարկ է նախ իր ցեղաբանութիւնը ընել։

Վասիլ Արշակունւոյ ժամանակ կը տեսնենք Բիւզանդիոնի մէջ Գուրգենեան ընտանիք մը, որոնց մէջ ժառանգական էր զօրավարութիւնը՝ ինչպէս Մամիկոնեանց քով,

ժառանգական էին նաեւ Գուրգէն, Յովհաննէս անունները՝ ինչպէս Բագրատունեաց մէջ։ Անշուշտ այս նախարարութեան մէկ ճիւղն էր ան՝ օտար հողի վրայ անկուած։

Իրենց նախահայրը, Յովհաննէս Ա. Գուրգէն, Հիքանատեանց զօրավարն էր. կայսերական գահուն՝ Վասլէն աւելի արժանաւոր տեսնելով ինքզինք, վաթսուն և վեց իշխաններով դաւակցութիւն մը կազմեց։

Կուսակիցներու թիւը բաւական է ցուցընելու՝ թէ ինչ վարկ ունէր ժողովրդեան առջեւ. դժբաղդաբար, այնքան բազմութեան մէջ, խղճահար մ'ալ կը գտնուէր։ Մատնութիւնը իրեն պարտք համարելով, պատճառ եղաւ այնքան իշխանաց աքսորման՝ և Յովհաննէսի կուրանալուն։

Այս ողբերգութիւնը տեղի ունեցաւ 886ի մարտ 25ին, Աւետման օրը, խառն կատակերգութեամբ, ինչպէս սովորութիւն էր Բիւզանդիոնի մէջ։ Մերկացուցին վաթսուն և վեց իշխանները, — շատերը ծերակուտի անդամ, մինչեւ այն ատեն պատկառելի, — և խարազանելով կը պտտցնէին Ս. Սոփիայի հրապարակին վրայ՝ ամբողջ ժողովրդեան առջեւ՝ ուր միայն շատ մերձաւոր ազգականները չէին նախատեր զիրենք։ Թագապա-

հանջը, — ծերունի կոյր մը, — խարխափելով կ'անցնէր այն ամբոխին մէջէն, որուն հրամայել երազած էր. բայց իր թշուառութեանց մէջ մեծ սփոփանքներ ունեցաւ. — իր երկու որդւոց յաղթանակները։

Անոնցմէ մին Յովհաննէս Գուրգէն (Բ) կը կոչուէր, Արեւելքի սպարապետ, միւսը՝ Թէոփիլոս, Խաղտեաց կառավարիչ։

Քաջութեան և յաղթանակի ընկերներ, Պոնտոսը նուաճեցին, Արաբացւոց յաղթեցին, Եդեսիոյ սուրբ դաստառակը բերին, և բիւզանդական դրօշը պարզեցին հազար դղեակներու վրայ։

Կեդրենոս պատմիչը նոր Տրայիանոս կ'անուանէ զԳուրգէն Բ. բայց նա սովորաբար երկրորդ Բելիսարիոս կը կոչուէր, ինչպէս Թէոփիլոս ալ, անոր եղբօրը անուամբ՝ Արեւելքի Սողոմոն։

Զմշկիկ, որ թոռն էր այս Թէոփիլոսին, մօր կողմանէ մերձաւոր ազգական էր Նիկեփոր կայսեր։ Զինուորական ազնուականութիւնը իր մօրմէն պիտի ստանար, եթէ հայրը տուած չըլլար արդէն։ Ոչ մէկ նախնեաց յիշատակը՝ անոնց օրինակն ունեցաւ աչքին առջեւ. — զարմանալի չէ որ պատերազմը իր մանկութենէն սկսաւ։ Յաղթանակ-

ներ առիթ եղան Զմշկիկի Բիւզանդիոն գա֊լու՝ ուր իրեն արժանաւոր հարսանիք մը կատարեց։

Իր զինակիցներուն մէջ կար Հայ պա֊տրիկ մը Վարդ Փոկաս կոչուած, որդի Նի֊կեփորի, որուն պալատը կ'իջնէր Զմշկիկ՝ մայրաքաղաքին այցելած ժամանակ և որուն հետ կ'երթար իր աասպելական ճարտա֊րութիւնը ցուցնելու՝ վարիորի անթառամ անտառներուն։ Մարիամ, Վարդ Փոկասի քոյրը, թագուհւոյ մը համբաւն ունէր քաղա֊քին մէջ։ Նա Զմշկիկի հետ ամուսնացաւ. բայց միշտ հեռի ապրեցաւ ամուսնէն, պա֊լարագեղ ամարանոցներու մէջ. կ'ընդու֊նէր միայն անոր միակերպ նամակները՝ ուր նա միշտ յաղթութեան մը վրայ կը խօսէր։ Ծաղիկ հասակի մէջ մեռնելով, զա֊հակից չեղաւ իր ամուսնոյն՝ որուն սակայն Յովհաննէս անուամբ որդի մ'ընծայած էր։ Սա միանգամ կը ներկայանայ պատմութեան թատերաբեմին վրայ. երբ քառասուն հազար զօրքով Անտիոքայ զղեակները՝ անձնատուր ըլլալու բռնադատեց։ (969 նոյեմբ. 1ին)։

Պատմիչներ զանց կ'ընեն մեծագոյն քա֊ջութիւններն ալ, երբ անոնք զինուորի մը կը պատկանին։ Զմշկիկի գործերուն մանրա֊

մասին նկարագրութիւն կ'ընծայեն այն ժամանակ, երբ արդէն երեսուն և չորս տարեկան է, զօրավար ընտրուած (958ին) Արեւելեան բանակին, և Արաբացւոց դէմ կ'երթայ։

Սէյֆ–Էտտուլահ, որ անոնց կ'առաջնորդէր, արժանի է Չմշկիկի հետ զուգակշռի գալու։ Երբ թշնամեաց մէջ կը նետուէր, իր ամեհի նժոյգին վրայ, իր ճերմակ տարազին մէջ պատատուած, կը թուէր բիւզանդացւոց՝ դեւ մը՝ լոյսերու մէջ, ահիծ մը, արիւնարբու վագր մը. բայց նա քաջ զօրավար, մեծ արհեստագէտ մ'ալ էր. հաւասար ճարտարութեամբ կը գործածէր զէնքն ու տաւիղը. բանաստեղծներ կը բոլորէին իր շուրջ, երբ զինուորներէ պատուած չէր. ոսկեղէն քսակներով կը վարձատրէր լաւագոյն ոտանաւորը՝ կամ մեծագոյն քաջութիւնը։

Առաւօտ յաղթութիւն կը տանէր, երեկոյ՝ վրանին տակ՝ զայն կ'երգէր։

### Գ. — ԶՄՇԿԻԿԻ ԴԵՐԸ ՊԵՌՓԵՌՈՒԺԷՆԻ ԺԱՄԱՆԱԿ. — ԾԵՐՈՒՆԻԻ ՄԸ ՔԱՋՈՒԹԻՒՆՔԸ. — ՅԱՂԹԱՆԱԿ ԵՒ ՍՈՒԳ. — ԱՐԱԲ ՀԵԾԵԼԱԶՈՒՆԴԸ՝ ԶՄՇԿԻԿԷՆ ԳԵՐԻ ԲՌՆՈՒԱԾ։

*Հալէպի այդ ամիրայն, որ կ'ուզէր Աքիլլէսն և Հոմերոսն ըլլալ միանգամայն, Կապպադովկիա մտաւ հզօր բանակով մը և բազմաթիւ բանաստեղծներով՝ որ եկած էին իր քաջութիւնքը տեսնելու և զանոնք յաւէժացնելու համար։*

*Յուսախաբ չեղան անոնք. յունական քաղաքները՝ ծուխի փոխուած, գերեզմանները՝ որ գոցուեցան երեսուն հազար Յոյնի վրայ, բանտերը՝ երկու հազար նոր բնակիչներու առջեւ բացուած, իրենց ներշնչեցին մարգարէութիւններ՝ մսլիման հաւատքի վերջնական յաղթանակին։*

*Յունաց սպարապետը, Վարդ Փոկաս, արաբական ուրախութիւնը վաղամեռիկ ըրաւ հաւասարակշիռ հարուածով մը։ Երբ կ'անցնէին անոնք Տաւրոս լեռներէն, յանկարծ, ժայռերու ծոցէն, դուրս ժայթքեց փողերու գոչիւն մը, ռազմի աղաղակ մը և Վարդի բանակը, որ դարանի նստած՝ այդ րոպէին կը սպասէր։ Ի զուր էր դիմադրել. դիակ-*

ներ ծածկեցին ժայռերու կատարները՝ և հոն կերակուրն եղան արծիւներու . անթիւ էին աւարն ու գերին։ Վարդ Փոկաս , յաղթութենէն օգտուելով, առանց ժամանակ տալու թշնամւոյն՝ որ իր ույժերը հաւաքէ, հասաւ Ասորեստան, ուր հինգ հազար հոգի սուրէ ենթարկեց, երեք հազար՝ շղթայի։ (950)։ Իր ագահութեամբը սակայն՝ ատելի դարձաւ բանակին . երբ Համտան , — որ անկարող էր իր պարտութեան վրայ համոզուիլ, — նոր բանակով մ'իրեն առջեւ կանգնեցաւ, Վարդ և իր թիկնապահները թշնամեաց կեդրոնը մնացին՝ չորս կողմէն պաշարուած և զուրկ ո՛և է օգնականութենէ. զինուորները, խառնուրդին սկիզբէն ի վեր , նախապէս պատրաստուած ծրագրի մը համեմատ՝ փախուստի դիմած էին ։ Վարդի մազերը ճերմկած էին, սիրտը դեռ չէր ծերացած. կորովի երիտասարդներ գետին փռեց իր հարուածներուն տակ։ Վայրկեան մը՝ և ահա ազատած էր անվնաս՝ երբ ծանր սուր մ'իջաւ դէմքին վրայ , արեան հեղեղներ բանալով ։ Վէրքը սակայն մահացու չէր. սուրին հետքը, ծերունոյ ճակտին վրայ, փառապանծ հակապատկերն եղաւ ամօթին՝ որ իր զինուորաց ճակատը կը ստուերէր։ (953)։

Այս դիպուածէն յետոյ՝ ծերունին հրաժարական տուաւ իր պաշտօնէն, զոր իր երեք որդիները ժառանգեցին. — Լեւոն, Նիկեփոր, Կոստանդին։

Լեւոն Ապու-լաշայիրի դէմ գնաց. անոր բանակը ոչնչացուց, զօրավարը գերի բռնելով, Պոլիս ուղարկեց։ Պերփեռուժէն, գոռոզութեամբ մը, որ գրագէտէ մը դժուարաւ կը սպասուէր, Ապուլաշայիրը կառքի մէջ դրաւ, իր ոտքերուն տակ պառկեցուց և շըրջեցաւ բիւզանդական ամբոխին առջեւ, ցուցընելու համար՝ թէ իր բոլոր միւս ձիրքերուն հետ՝ աշխարհակալութեան փառքն ալ ունէր։ Դժբաղդաբար, ճիշդ այդ բոպէին, սուրհանդակ մը հասաւ. «Նիկեփոր յաղթուած է Համտանէն, գոչեց նա, Կոստանդին գերի բռնուած, և յանձն չառնելով մահմետական դառնալ՝ թոյնով սպանուած։ Նիկեփորի զօրաց մէկ մասը մեռած է, միւսը գերի»։ Այս անակընկալը՝ յուսախաբութեան մը նման հիասթափ ըրաւ գիտնական կայսրը, և անոր խրոխտանքը ցրուացուց։

Սուգը, յանկարծական մրրկի պէս, տըխրեցուց քաղաքը և մանաւանդ ծերունի Վարդը, որ ներկայացաւ կայսեր՝ վերջին շնորհք մը խնդրելու համար. — գլխատել բոլոր այն

*գերիները որ ո՛ և իցէ ազգականութիւն մ՚ունէին Համտանի հետ։ Խնդիրքը կատարուեցաւ. դիւանագիտական սխալ մ՚էր այս Պերփեռուժէնի կողմանէ, որ խաղաղութեան ո՛ և է փորձ՝ ապարդիւն պիտի ընէր։* (954)։

*Զմշկիկ մասնակից եղած էր բոլոր այս պատերազմներուն, բայց դեռ բարձր դեր մը չէր յանձնուած իրեն։ Վասիլ Սենեկապան, Արեւելք ուղարկուելով, իբրեւ բարձրագոյն հրամանատար, նոր կազմակերպութիւն մը տուաւ բանակին. կենդանի էակներու այդ ծովը երեք մեծ գնդերու վերածեց, որ Փոքր Ասիան պիտի ողողէին։ Առաջին թեւին ինք կը հրամայէր, երկրորդին՝ Լեւոն Փոկաս, երրորդին՝ Զմշկիկ։ Յետ մասնական բաղխումներու՝ վճռական պատերազմը սկսաւ Շամուշատի շուրջ. նա պաշտպանուած էր անառիկ պարիսպներէ և Համտանէ։ Յաղթութիւնը Յոյներուն մնաց. պէտք էր օգտուիլ նպաստաւոր վայրկեանէն, դաշոյնի հարուածը թշնամւոյն սրտի խորերը հասցնել, ո՛ և է բժշկութիւն անհնարին դարձնելու համար։ Յոյն զօրքերը խոնջ և ջլատուած ըլլալով, Վասիլ Զմշկիկի հրամայեց յառաջ անցնիլ, փախուստը արգիլել, նոր ապացոյց մ՚ընծայել իր կայծակնանման երագութեան։*

Երբ ամիս մը յետոյ զօրավարները յաղթանակը տօնելու համար Պոլիս դարձան, անոնց մէջ մեծագոյն փայլը Զմշկիկն ունեցաւ. հազար եօթն հարիւր հեծեալ, արաբական տարազով կը հետեւէին իր կառքին. իրենց ոսկեձոյլ զէնքերը նոր նշոյլ մը կ՛արձակէին իրենց նախատական պայմանին վըրայ։ Անապատի նժոյգները չէին կրցած խուսափել Զմշկիկի երագութենէն. նա կտրած էր փախստականներու ճամբայն, դիմադրողները սպաննած, և ամբողջ հեծելազունդ մը գերի բռնած։

Հանդիսատես բազմութեան մէջ կային ծերունիներ՝ որ ժամանակակից եղած էին բազմաթիւ կայսերաց։ Զմշկիկը մատնանիշ ընելով իրենց որդիքներուն՝ կ՛ըսէին անոնց. « Այսպիսի տեսարանի մի անգամ կը յիշենք ներկայ եղած ըլլալ. — երբ վերադարձաւ Եդեսիայէն Յովհաննէս Գուրգէն՝ . . . որուն թոռն է Զմշկիկ »։

## Դ. — ԶՄՇԿԻԿԻ ԴԵՐԸ ԿՐՏՍԵՐՆ ՌՈՄԱՆՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ։ — ՈՍԿՐԵՂԷՆ ԲԼՈՒՐՆԵՐԸ. — ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՄԸ ԱՆՁՆԱՏՈՒՐ։

*Երբ Պերփեուժէնի յաջորդեց Ռոմանոս Բ, Լեւոն Փոկաս իր նոր ինքնակալին հովանւոյն արժանանալու համար՝ ուզեց որ իր հաղորդած առաջին լուրը՝ յաղթութեան աւետիք մ'ըլլայ։*

*Բայց Համտան, Բիւզանդական երեւակայութեան մէջ, ահռելի վիշապ մ'էր, որ միշտ նոր գլուխներ կը ծնանի։ Այնքան պարտութենէ յետոյ՝ լերանց մէջ առանձնանալու տեղ՝ մէկ թափով մինչեւ Գաղատիա հասաւ։ Անդրասի մօտ ընդհարում մը տեղի ունեցաւ յոյն բանակին հետ. արաբացիք աւելի զօրք գործածեցին հոս, Յոյներ՝ աւելի նենգութիւն. վերջինները յաղթական ելան։ Արիւնհեղութեան ամենէն եռանդուն վայրկեանին, սպաննուեցաւ Համտանի նժոյգը՝ որուն գեղեցկութիւնն և ոյժը անմահացուցած են արաբացի բանաստեղծներ։ Համտան գետին ինկաւ, նպատակ դառնալով բիւրաւոր հարուածներու. իր զինակիրը իսկոյն վար իջաւ իր ձիէն, զայն արաբացի դիւցազին յանձնեց՝ զէնքով անոր փախուստը ա-*

պահուեց։ Զինակիրը, մահացու հարուած մ'ընդունելով, ուրախութեամբ փակեց իր բիբերը, որոնք իր ամբողջ ազատումը տեսած էին։ Նա ուրացեալ մ'էր. ապացուցուց, թէ մարդկային ոյժը, միայնակ, դիւցազնութեան մինչեւ ո՛ր աստիճան կարող է հասնիլ երբեմն։

Աւարը զինուորներուն խոստացուած ըլլալով՝ արտասովոր եռանդով կռուեցան անոնք։

Արաբացի զօրաց ճակատագիրն եղաւ սպանուիլ կամ գերի ընկնալ։ Լեւոն Պօլիս վերադարձաւ՝ յաղթանակի հանդէսներ կատարելու համար։

Ժամանակակից պատմիչներ, յաղթութեան մեծութիւնը ցուցնելու համար կ'ըսեն թէ՝ մայրաքաղաքի ամէն տան համար գերի մը գտնուեցաւ, և աւելնալով՝ ցրուեցան շրջակայ աւաններու մէջ։

Կոտորեալներու թիւը սակայն՝ աւելի մեծ եղաւ։ Գաղատիայէն ճամբորդողը՝ դաշտին մէջ կը նշմարէր ճերմակ բլուրներ. Արաբացւոց ոսկրներն էին անոնք։ (961)։

Համտանի բանակը կը նմանէր այն ծառերուն՝ որոնք որչափ ճիւղատուին՝ այնքան աւելի կը մեծնան։ Անկարող հաստատուն

աշխարհակալութեան մը, քաջ՝ երկիրներ աւերելու մէջ, Համտան աւելի յելուզակ մը կը թուէր քան ռազմագէտ մը։ Այս աւերող մրրիկը կրկին երեւցաւ յունական պետութեան սահմանածայրերուն վերեւ։ Այս անգամ Նիկեփոր ընտրուեցաւ իրեն ախոյեան. երկու հարիւր հազար զօրքով տիրեց Դոլիխէի, Մեմբիկի, Անազարբայի, նոյն իսկ Հալէպի, որ Համտանի մայրաքաղաքն էր։ Միջնաբերդը միայն անառիկ մնաց. Նիկեփոր, արաբական նոր բանակէ մը պաշարուելէ վախնալով, նահանջեց։

Զմշկիկ և իր եղբօրորդին Ռոմանոս, Նիկեփորի բազուկներն եղան՝ այս փառապանծ դէպքերու ժամանակ։ Արեւելքի քաղաքականութեան ընթացքը տեւական և նոր ուղղութիւն մը պիտի առնէր, եթէ Ռոմանոս Բ.ի մահը (963) յեղափոխութեան մը չափ չկերպարանափոխէր զԲիւզանդիոն։

Նիկեփոր մոռցաւ Արաբները. Պալատին մէջ մեծագոյն թշնամիներ ունէր. Բրինգաս, տէրութեան ամենէն ազդեցիկ իշխանը, Նիկեփորի շիրիմը կը պատրաստէր։

Ե. — ՆԻԿԵՓՈՐ՝ ԿԱՅՍՐ. ԶՄՇԿԻԿ՝ ԱՐԵՒԵԼՔԻ ԶՕՐԱՎԱՐ. — ԱՐԻՒՆԷ ՋՐՎԷԺԸ. — ԲՆԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ ՀԱԿԱՊԱՏԿԵՐ ՄԸ. — ԱՆՏԻՈՔԱՅ ԱՌՈՒՄԸ. — ԶՄՇԿԻԿ ՍՈՒՐՀԱՆԴԱԿԱՑ ԳԼԽԱՒՈՐ. — ԶՄՇԿԻԿ՝ ԱՔՍՈՐԵԱԼ։

*Ժողովուրդը բազմաթիւ երգեր յօրինած էր Նիկեփորի քաջութեանց վրայ. զինքը կ'անուանէին «աստղ առաւօտեան, ծագող Արեգակ, պատուհաս Սարակինոսաց»։*

*Թէոփանոյ կ'երկրպագէր առաւօտեան աստղին. իր զգացումը լիապէս կը ներդաշնակուէր դիւանագիտական պահանջներու հետ. իր կարծեօք, եթէ Նիկեփորի հետ ամուսնանար՝ երջանկութիւն պիտի տար միանգամայն՝ թէ՛ իր անձին և թէ՛ իր պետութեան։ Երբ այս մտածմանց մէջ էր թագուհին, Բրինգաս երկու նամակ ղրկեց Արեւելք. մին ուղղուած Զմշկիկի, միւսը՝ Ռոմանոս Գուրգէնի։ Երկուքն ալ նոյն բովանդակութիւնը ունէին. կը յորդորէր դաւաճանութիւն մը կազմակերպել Նիկեփորի դէմ, զայն սպաննել, և ստանալ, իբր վարձք, զօրավարութեան բարձրագոյն աստիճանը։ Զմշկիկ և Ռոմանոս՝ նամակը Նիկեփորի ցուցին. յետոյ սուրերնին անոր կուրծքին վրայ դնելով՝ գոչեցին. «Պիտի կատարենք յանձնա-*

րարութիւնը՝ եթէ յանձն չառնու կայսր ըլլալ »։ Ազգականութեան և ռազմական յիշատակներու կապը՝ խանդավառ սէր մը արծարծ կը պահէր Զմշկիկի սրտին մէջ՝ առ Նիկեփոր։ Բոլոր բանակը բռնադատեցին՝ զինքը կայսր ճանչնալու, և դիմեցին Կոստանդնուպոլիս, ուր ժողովուրդը ուրախութեամբ ընդառաջ ելաւ իր դիւցազին։

Քիչ յետոյ կայսր օծուեցաւ Նիկեփոր Ս. Սոփիայի մէջ, և ամուսնացաւ Թէոփանոյի հետ։ Զմշկիկ այսպէս թագ մը և կայսրուհի մը կ՚ընծայէր Նիկեփորի.— օր մը երկուքն ալ պիտի առնուր իրմէն։ Վարձատրութեան համար՝ Զմշկիկը Արևելքի սպարապետ անուանուեցաւ։ Արաբացիք՝ Նիկեփորի բացակայութիւնը՝ յաղթութեան հաւաստիք մը կը նկատէին. այս պատրանքը շուտով փարատեցաւ. Ատանայի շուրջ ա՛յնքան կոտորած կրեցին Զմշկիկէն՝ որ Սարակինոս մայրերը, իրենց տղաքները սարսափեցնելու համար՝ այնուհետև Ծումուշտիկինի (= Զմըշկիկի) անունը կու տային։ Հինգ հազար արաբացի հեծեալներ՝ անմատոյց գագաթ մը ապաւինեցան. կարելի չէր անպատիժ իրենց դէմ երթալ։ Զմշկիկի յանդգնութիւնը կը փնտռէր ճիշդ այն՝ ինչ որ անկարելի կը

թուէր սովորական մահկանացուի. սուրը մերկացուց, «Ետեւէ՛ս եկէ՛ք» գոչեց իր զօրքերուն՝ և սկսաւ լեռն ի վեր ելնել: Սարակինոսներ քար, նետ, սուրի հարուածներ կը տեղային վերէն. Չմշկիկ անվախ, վահանը գլխուն վրայ, կը բարձրանար ժայռէ պարիսպներէն վեր. բոլոր Արաբացիք ջարդուեցան. արիւնը ջրվէժի պէս կը հոսէր լեռնէն. այդ տեղը մինչեւ ցարդ Գաճ տէրէսի կը կոչուի:

Յաջորդ տարին (965) Նիկեփոր Արեւելք գնաց, զինուորական մեծագործութեամբք փարատելու համար ձանձրոյթը՝ զոր կը զգար պալատին մէջ: Պարսիկ շահնշահներու նման, իր հետը կը տանէր կայսրուհին, ինչպէս նաեւ Վասիլ ու Կոստանդին փոքրիկ թագաւորները՝ զորս Չմշկիկ Հանձիթ գաւառի Վոստակաւանին մէջ պահեստի դրաւ՝ Սպրամիք իշխանուհւոյն քով: Ատանայի, Անազարբայի, Հռեսոսի, Մոպսուեստիոյ տիրելէ վերջ, Տարսոնը պաշարեց չորս հարիւր զինուորներով, որուն ձախ թեւին Չմշկիկ կը հրամայէր: Արաբացիք դիւրաւ պիտի ջախջախուէին պատերազմի դաշտի վրայ, զուրկ ըլլալով նոյնչափ բազմաթիւ բանակէ և նոյնչափ քաջ զօրավարներէ: Բայց

պարիսպներու մէջ առանձնացած, վստահացած եգիպտական նաւատորմղին վրայ, ուկից զէնք և ցորեն պիտի ընդունէին, ամէն յարձակում ընդունայն հանեցին, յետոյ սովէն բռնադատուած՝ անձնատուր եղան։ Ճիշդ այս պահուն եգիպտական նաւատորմիղը Տարսոն հասաւ։ Յուսախաբ, ետ դառնալ փորձելով, Յունաց նաւերէն կռուի բռնադատուեցաւ. — յաղթուելէ ու կիսատուելէ վերջ միայն կարող եղաւ Եգիպտոս վերադառնալ։ Այս յաջողութիւններէն վերջ, կայսրը Պոլիս եկաւ յաղթանակի հանդէսներ կատարելու համար. ժողովրդեան աչքը ամենէն աւելի գրաւեցին՝ երկու դռներ, որ իբրեւ աւար, Պոլիս բերուած էին. անոնք երկու պարտեալ քաղաքներու կը պատկանէին. Տարսոնինը՝ միջնաբերդի յատկացուեցաւ, Մոպսուեստիայինը՝ Ոսկեղէն մուտքին։ Այսպէս Նիկեփոր, իր առած քաղաքներուն բնակիչներուն հետ՝ ամբողջ դռներն ալ կը փոխադրէր, որպէս զի մայրաքաղաքի մը վրայ բացուելով՝ հոն մտնող ազգերուն իր քաջութիւնները յիշեցնեն։

Բիւզանդացիները Արեւելք գտնուած ժամանակ՝ տէրը կ'ըլլային Ասորիքի, բայց հազիւ Բիւզանդիոն հասած՝ անոնց կորստեան

գոյժը կը հասնէր իրենց տունէն։ Փոքր Ասիան, գարնան ժամանակ, Ցունաց կը պատկանէր, ձմեռ ժամանակ՝ Արաբացւոց։ Երկու ազգերն ալ զուրկ էին հռոմէական ձիրքէն՝ դանդաղ, բայց հաստատուն աշխարհակալութիւն մ'ընելու։ Գիտէին տիրել՝ բայց ոչ պահել. և այս՝ աղետալի յիմարութիւն մ'էր, որուն զոհ կ'երթային այնքան երիտասարդ կեանքեր։ Երկու հեղեղներ էին, որ թափ ունէին և աղմուկ, բայց յաճախ կը ցամքէին։ Նիկեփոր շահածները չկորսնցնելու՝ և նոր տիրապետութեանց ճանապարհը հարթելու համար, Անատոլիքայ շրջակայքը թողուց երկու զօրավարներ. — Վարդ, և Պետրոս Փոկաս։

Երկու հակառակ նկարագիրներ էին անոնք, բարոյական երկու տարբեր տիպարներ։

Վարդ ձեռնարկող էր, մտածութեամբ՝ իրեն հրամայողներէն աւելի յառաջ վազող, զանոնք սրբագրող, գործունէութեան առիթ փնտռող, աւելի պարագայներու հնազանդող՝ քան իրեն տրուած հրահանգներուն։

Պետրոս Փոկաս, ընդհակառակն, ցուրտ էր բնաւորութեամբ. կարգապահութեան՝ անողոք պաշտպան, դատապարտելի կը գըտ-

նէր ո՛ և է գործ որ չէ հրամայուած . — սկըզ-բունք՝ որ յառաջ կու գայ յաճախ պատասխանատուութեան երկիւղէ ։ Մեքենական հնազանդութիւնը իր սեւեռումն և գաղափարականն էր , և ո՛ և է ճարտասանութիւն կարող չէր զինքը շարժել դէպ ի ամենէն յայտնի օգուտն անգամ, ... եթէ չէր հրամայուած ։

Այս երկու հակասական բնաւորութեանց հանդիպումը՝ կարող էր մեծ դժբաղդութիւն մը յառաջ բերել ։

Եւ յիրաւի Վուրց, անգործութենէ ձանձրացած , հակառակ ձմեռնային եղանակին և հակառակ կայսեր հրամաններուն , երբեք հարիւր զինուորով գնաց դէպ ի Անտիոք՝ աշխարհակալութիւններ ընելու ։ Զօրքերու պակասը կը թելադրէր իր մտքին՝ միշտ նորանոր հնարքներ փնտռել ։ Արաբացի մը գերի բռնելով , ստակով՝ բազմաթիւ տեղեկութիւններ գնեց անկէց , որոց մէջ նաեւ Թուաբանական հաշիւներ՝ Անտիոքայ պարիսպներու բարձրութեան մասին ։ Աշտարակներու հասակակից սանդուղներ շինելէ յետոյ , սպասեց գիշերուան մը՝ ուր քաղաքացւոց ուշադրութիւնը նիրհէր ։

Ձմեռ էր . Վուրց դիւրաւ գտաւ ամպոտ

երկինքը, անթափանց խաւարը՝ որոց կ՚անձ-
կար։ Անտիոք որ մարմարեայ քաղաքի մը
երեւոյթն առած էր, կորսուեցաւ գիշերային
սեւութեանց մէջ, լռութիւնը պատեց ամէն
կողմ, և սառած հով մը, դաշտին մէջ, ա-
մէն կենդանի իր որջը հալածեց, ամէն
թռչուն՝ իր բոյնը։ Կեանքն իսկ այս պա-
հուն, ձիւներու վրայ, հրաշք մը կը թուէր.
ոչ ոք կրնար գուշակել թէ կարող է գտնուիլ
մէկը՝ որ պատերազմի վրայ մտածէ։

Վուրց արթնցուց իր զինուորները, հանեց
վրաններէն՝ ուր դժնդակ քուն մը կը քա-
շէին, և նորակերտ սանդուխներով պարսպին
վրայ զինեց։ Հոն ոչ մէկ լոյս, ո՛չ մէկ ձայն
պահպանութեան նշան չտուաւ. Վուրցի զի-
նուորները լռելեայն վեր ելան, սանդուխը
զետեղեցին աշտարակներուն ծայր, ներս
խուժեցին, Արաբները սպաննեցին։ Արդէն
երկու աշտարակ ամբողջապէս գրաւած էին,
երբ յարձակումը յայտնուեցաւ. բարաննե-
րով քաղաքացիք Վուրցի դէմ ելան. պա-
շարեալները՝ այժմ Յոյներն էին. մեքենայ-
ներու ծանր հարուածներ սկսած էին վէր-
քեր բանալ աշտարակներուն վրայ. պէտք
էր անոնց փլատակներուն տակ վտանգաւոր
հրդեհը մարել, պէտք էին քաղաքացիք ի-

րենց սրով վիրահատութիւնը կատարել՝ ամբողջ մարմինը փրկել կարենալու համար։ Վուրց անընդհատ սուրհանդակ կը հասցնէր Պետրոս Փոկասի՝ իմացնելով թէ ինչ մեծ յաղթութեան և ինչ մեծ վտանգի մէջտեղ կը գտնուի և եթէ իր օգնութիւնը զլանայ, կ'ըսէր նա, տէրութիւնը քաղաք մը՝ և իր բանակներէն մին պիտի կորսնցնէ։ Փոկասի պատասխանը հատու եղաւ. առանց այլայլելու, հանդարտ ձայնով մը յայտարարեց՝ թէ ինքը այդ մասին՝ հրահանգ մը ստացած չէր։ Վուրց իր աշտարակներուն մէջ կը կռուէր, մերթ Փոկասի ցրտութիւնը, մերթ իր չափազանց աշխոյժը անիծելով՝ որոնց պատճառաւ անել դրութեան մը մէջ կը գտնուէր հիմա. Նորանոր սուրհանդակներ կը հասցնէր. և անհամբեր, աշտարակներու պատուհաններէն դաշտերը կը դիտէր, նայելով՝ թէ արդեօք յոյն բանակը կու գա՞յ. — ոչ մէկ նշան, կամ յուսախաբող նշաններ միայն։ Քաղաքացիք միշտ կը փոփոխուէին, մինչ իր զօրաց՝ և ոչ վայրկեան մը հանգիստ շնորհուած էր։ Երկու օր անցաւ, Փոկասի բանակը դեռ չէր երեւեր. վերջապէս սոյն տարտամ զօրավարը, վախնալով որ մի գուցէ պատասխանատուութենէ մը

խոյս տուած պահուն, ծանրագոյն պատասխանատուութեան մէջ ընկնայ, իր հեղգութիւնը, այս պարագային մէջ, անհնազանդութեան չափ դատապարտելի համարուի, ու չկարծուի նախանձու համար՝ Վուրցի օգնականութիւն զլացած ըլլալ, որոշեց բացառութիւն մ՚ընել իր ամբողջ կենաց մէջ. իր բանակովը միասին՝ Անտիոքայ ճանապարհը բռնեց։ Երրորդ օրը ծագած էր արդէն, և Վո՛ւրց, իր պաշտօնակցի անխախտ ընաւորութիւնը գիտնալով, արդէն ամէն յոյս կորուսած, երբ հեռուն՝ յունական բանակը տեսնուեցաւ։ Արաբացիք, մոլեգնած, քաղաքին քրիստոնեայներուն վրայ յարձակեցան. իրենց զօրավարը, Քրիստոփոս Հայրապետին հանդիպելով՝ նիզակը քաշեց և զայն գետին փռեց։ Վուրց այս վայրկենին քաղաքին դռները խորտակած էր կացինով, և յոյն բանակը ներս ընդունած։ Անտիոքայ փողոցները՝ արեան ջրանցքներու փոխուեցան։

Նիկեփոր չվարձատրեց անհնազանդութիւնը թէպէտ և նա յաջողութեամբ պսակուած էր. եթէ տեղեակ ըլլար հանգամանքներուն՝ նոյնը պիտի հրամայէր, ինչ որ Վուրց գործեց։ Յանդգնութիւն մը գործած չէր

ան, այլ կայսեր դիտումներուն մէջ թա-փանցած. և յանցաւոր չէր՝ քանի որ կայ-սեր խօսքերուն տեղ՝ անոր մտածումներուն հնազանդած էր։

Նիկեփոր, իր զօրավարներուն յաղթու-թիւնը մոռցնելու համար, Արեւելք արշա-ւեց։ Թէպէտ յաջողութենէ զուրկ մնաց՝ Տի-գրանակերտի և Մծբնայ առջեւ, բայց իր սարսափը յաղթանակի մ'արդիւնքն ունե-ցաւ՝ տարածուելով մահմետական աշխարհ-ներու հեռաւոր սահմանները։ Եղեսիան այ-րելով Հայաստան մտաւ և տիրեց Մանազ-կերտի ու Տարօնի։

Զմշկիկի փառքը, այս պատերազմներուն ժամանակ, զօրավարներու նախանձը գրգռեց. այնքան կ'ատէին զինք՝ որքան զօրքերը կը սիրէին։ Լեւոն Փոկաս, իբրեւ սպարապետ՝ կրցաւ զրպարտութեան առիթ մը գտնել և իբրեւ կայսեր եղբայր՝ զանոնք ընդունելի ընել։ Զմշկիկ պաշտօնանկ եղաւ, սուրհան-դակաց գլխաւոր անուանուելու համար։ Աս-պետ մը, որ այնքան եռացող արիւն կը կրէր իր երակներուն մէջ, կարող չէր այդ նախատանաց և այդ պաշտօնին հանդուրժել։ Վրէժխնդրութիւն երդուընցաւ կայսեր և անոր եղբօր դէմ. իր զայրոյթը, որ անշուշտ դա-

ւադրութիւն մը ներշնչած էր իրեն, գաղափար չմնաց. Զմշկիկ, իր նոր պաշտօնէն ալ զըրկուելով, աքսորուեցաւ Ցերապոլիս։ Ի՛նքը ընծայած էր կայսեր այն իշխանութիւնը՝ որ իր պատուհասն էր արդ. ապերախտութեան մարմնացումը միայն կը տեսնէր այնուհետեւ Նիկեփորի մէջ, ու կը ցաւէր որ իր ձեռքով այդ սեւ ախտին՝ ծիրանի հագուեցուցած էր։ Միայնութեան մէջ, իր հայրենեաց բլուրներուն վրայ նստած, տխրօրէն կը նայէր ընդարձակ դաշտերուն՝ որոնց ամէն մէկը իր քաջութիւններէն մին կը յիշեցնէր, հիմա բոլորովին անտես եղած։ Իր հառաչանքները կ՚ընդհատէին սպառնալիքներէ, ցաւի կը յաջորդէր վրէժխնդրութեան յանկարծական բորբոքում մը։ Այսպէս կ՚անցնէր միակերպ օրերու շարք մը՝ անգործութեան ձանձրոյթը միայն բերելով իրեն։ Դառնութիւնը տիրած էր իր հոգւոյն, ու խաւարն՝ ապագային վրայ։ Զմշկիկ ինքզինք այլ եւս մոռցուած կը համարէր աշխարհէ. բայց մէկը կար, արքունեաց մէջ, որ դեռ զինքը կը յիշէր...

— Թագուհին։

**Զ. — ԹԷՈՓԱՆՈՅ ԵՒ ԶՄՇԿԻԿ. — ԳԻՇԵՐԱՅԻՆ ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ. — ԶՈՒԱՆԷ ՍԱՆԴՈՒԽԸ. — ՔԱՂԿԵԴՈՆԻ ԾՈՎԱՓԻՆ ՎՐԱՅ. — ԴԱՒԱԴՐՈՒԹԻՒՆ։**

*Քաղաքական հանդէսներու ժամանակ, Թէոփանոյ, իր արքունեաց պատշգամէն՝ տեսած էր յաճախ Բիւզանդիոնի զօրավարներուն անցքը. ոչ ոք անոնցմէ այնքան փայլ ունէր իր անձին վրայ, և այնքան համբաւ իր անձին շուրջ՝ ինչպէս Զմշկիկ։*

*Թէոփանոյ՝ իր գաղտնի պաշտամունքը ներկայացուց Զմշկիկի, խնդրելով իրմէն՝ ամէն իրիկուն պալատին մէջ տեսակցիլ։ Թագուհւոյն աղերսը ընդունեցաւ Զմշկիկ։*

*Այս պարագայն անշուշտ մին է այն պատճառներէն՝ որոց համար հայ զօրավարն աքսորուեցաւ։*

*Թէոփանոյ, կայսեր կասկածները արդարացնելէ վախնալով, ոչ մէկ արգելք դրաւ անոր հրամանին. բայց հազիւ քանի մ'ամիս անցած էր, ժամանակակից դէպքեր առիթ առնելով. «Տէ՜ր արքայ, գոչեց, ի՞նչպէս կարող եղար աքսորել մարդ մը՝ որ այնքան կարեւոր էր տէրութեանդ, որ քեզի այնքան մերձաւոր ազգական էր, որ զքեզ գահու վրայ բարձրացուց. եթէ իր յանդգնութիւնը*

քեղի կասկածներ կը շնչէ, կանչէ՛ զինք աքսորէն, հրամայէ՛ իրեն Քաղկեդոն ապրիլ, և երբէք Պօլիս չմանել»։

Այս վերջին պայմանը յօրինուած էր կայսեր ուշադրութիւնը փարատելու դիտամամբ։ Զմշկիկ ազատեցաւ աքսորէն՝ Քաղկեդոն բնակելու և Պօլիս չմանելու հրամանագրով։

Տօվը հիմա թագուհին կը բաժնէր սպարապետէն. նա հսկողութեան ենթարկուած էր. կայսրը հանգստացաւ և աւելի հանգարտ սրտով ըսաւ այնուհետեւ ամենօրեայ ժամերգութիւնները, որոց շնորհիւ սուրբի համբաւ կ'ուզէր վայելել, առանց աէրութիւնը կեղեքելէ դադրելու։

Մինչդեռ Զմշկիկ Քաղկեդոնի մէջ կ'ապրէր, — մայրաքաղաքի հեռանկարին առջեւ, որ այնքան զգացումներ կ'արթնցնէր իր խոցուած սրտին մէջ, — պալատի ծառայներէն մին նամակ մը ներկայացուց իրեն. թագուհւոյն սարապրութիւնը կը կրէր. կը ծանուցանէր թէ ծովն անկարող է իրենց սրտերը բաժնելու և թէ այնուհետեւ, ամէն իրիկուն, աստղերու լոյսով, պալատի պատուհանէն՝ իր նաւակը պիտի փնտռէր ծովուն մէջ։

Զմշկիկի համար՝ վտանգը հրապոյր մ'էր

միայն։ Աչքը նամակէն դէպ ի մայրաքաղաք բարձրացուց․ ոսկեզօծ փառքեր կը ճառագայթէին հանդիպակաց ափունքին վրայ, մոռցնելով սպառնալից անդունդը՝ որ զինքը անոնցմէ կը բաժնէր։ Վճռեց Զմշկիկ կայսր ըլլալ կամ մեռնիլ։

Ամէն իրիկուն, երբ արեգակը խղդուիլ կը թուէր արեան լճակի մը մէջ, — խորհրդապատկեր՝ փառաց մէջ ապրողի մը եղերական մահուան, — Զմշկիկ, անժպիտ ու մտածկոտ, կը շրջէր Քաղկեդոնի այն պալարազարդ ափունքին վրայ, որուն մէկ կողմը Իշխանաց կղզիները կ՚ուրուագծուէին, միւս կողմը՝ արքունական պալատներ. աչքը մերթ միոյն ուղղելով, մերթ միւսին, կը հարցնէր ինքնիրեն. «Երկուքէն ո՞րը պահուած է ինձի»։ . . .

Ու կը շարունակէր շրջիլ, մտքով՝ փառքի յաւիտենականութեան մէջ նետուած, եթերին վերեւ սաւառնող արծուի մը նման։ Եւ մտածութեանց ստուեր մը, առանց վերջին ճառագայթներէն եղծուելու, կը թափառէր իր վեհ ճակտին վրայ։ — Սրբազա՜ն դաշտեր, որոց վրայ արդ կոխելու համար պէտք է երկնքի թագաւորութեան պատկերը ունենալ մտքին մէջ, կամ պատմական Նմահու-

թեան տենչը՝ սրտին. — վասնզի կարելի չէ ունայն խորհուրդներով շրջագայիլ հոն՝ ուր Զմշկիկ թագաւորութիւն մը երազեց....

Յետոյ, երբ գիշերը կ'իջնար և լռութիւնը կը տիրէր ամէն կողմ, Զմշկիկ կը մօտենար ծովափին, կը հրամայէր իր նաւավարին՝ զինքը դէպ ի պալատ տանիլ ։ Այդ ուղեւորութեան ամէն վայրկեան՝ մահուան սպառնալիքն ունէր իրեն մէջ. պէտք էին մեծ յուզումներ անցնիլ այդ պահուն՝ Զմշկիկի հոգիէն, ծովու մէջտեղ, աստղազարդ երկինքին ներքեւ ։ Երբ պալատին կը մօտենար, նաւակը կանգ կ'առնուր լռութեամբ, և չուանէ սանդուխ մը, մութի մէջէն, աներեւոյթ ձեռքէ մը՝ դէպ ի վար կը սահէր ։ Զմշկիկ, որ այնքան պաշարումներու մէջ գտնուած էր, քաջավարժ էր այսպիսի վերելքներու. աշխուժիւ բարձրանալով՝ պատուհանէն ներս կը մտնէր, և թագուհւոյն սենեակին մէջ, ազատ շունչ մը կ'առնէր ։

Գիշերուան ժամերը թանկագին էին այնքան վտանգներէ յետոյ. երբ աստղերու դիրքը առաւօտեան մերձակայութիւնը կ'աւետէր, չուանէ սանդուխը կրկին կ'իջնար պատուհանէն, և Զմշկիկ կրկին նաւակը մտնելով, կը դիմէր Բաղկեդոն. երկրորդ օր իր պա-

յաւէն եղած ժամանակ, ոչ ոք իր գիշերային ուղեւորութիւնը կարող էր գուշակել։

Այսպէս ամէն երեկոյ Չմշկիկ ծովը կ՚անցնէր, պալատ կը մտնար, յետոյ, առանց իր արկածախնդիր վարմունքին վրայ կասկած մը տալու, կը վերադառնար Քաղկեդոն։ Բոլոր բանակէն սիրուած ըլլալով, իր պահապանները գործակից ըրած էր իրեն։

Սակայն փոթորկալից գիշերները, պալատական հանդէսները՝ յաճախ Չմշկիկի գալուստը կը խափանէին, և կայսրուհին, զինք տեսնելու անհամբերութեան մէջ, մեծագոյն ոճիր մը մտածեց. Նիկեփորը սպաննել, Չմշկիկը գահու վրայ բարձրացնել։ Թէոփանոյ երբէք չէր տարակուսած զօրավարին անկեղծութեան վրայ, քանի որ նա, ամէն երեկոյ, յանձն կ՚առնուր իր կեանքը վտանգի մէջ դնել։ Անգութ յուսախաբութիւն մը պատրաստուած էր իրեն։ ....

Հայ սպարապետը սիրով ընդունեցաւ առաջարկը. — Թագուհիէ մը կու գար։

Պէտք էր նախ դաւակցութիւն մը կազմել. գլխովին էր Նիկեփորը սպաննել, ներկայ պարագայներուն մէջ, բայց նոր կայսր մը ընդունելի ըլլալու համար հարկ էր սպառնալ ժողովրդեան՝ զինուորական ոյժերով. պէտք

էր նուիրական տաճար մը քանդել, նոր մը կանգնել, և այս՝ մէկ գիշերուան մէջ։

Զմշկիկ այնքան բարեկամ ունէր՝ որքան Բիւզանդիոն՝ ռազմիկներ։ Անոնց մի մասը դժգոհ էր Նիկեփորէն, իրենց անձնական արժանիքները անվարձ տեսնելուն համար, ուրիշներ՝ Զմշկիկի կրած արհամարհանքներուն պատճառաւ։

Հայ սպարապետը անտեղեակ էր անոնց տրամադրութեանց. իր դիտաւորութիւնքը յայտնեց նախ Վուրց զօրավարին, որ յանցուցն ի ընէ, անհաճոյ եղած էր Նիկեփորի՝ Անտիոքայ առած ըլլալուն համար։ Ուրիշ զօրավար մը, Թէոդոր անուամբ, Սեւ մակդիրով, և Լեւոն Վալանէս (անշուշտ Վահան), ինչպէս նաեւ բազմաթիւ սպայներ՝ երդում ըրին Զմշկիկի փառաց համար մեռնելու։

Դաւակիցներու խումբը հետզհետէ ճոխացաւ. Նիկեփորի անժողովրդականութիւնը օրէ օր դեռ աւելի կը շեշտուէր. արքունիքը, բանակը, ժողովուրդը պատրաստուած կը թուէր նոր կայսր մ՚ողջունելու, մանաւանդ եթէ ան Զմշկիկի արժանիքներն ունէր։

Նոյն իսկ կայսերական պալատին մէջ՝ դաւակիցները վերջին ժողովք մ՚ըրին, որուն

թագուհին կը նախագահէր. հոն իր ամուսնոյն դատապարտութեան վճիռն արտասանեց։ Դաւակիցներու խումբը երկուքի պիտի բաժնուէր. կէսը պալատին մէջ ծածկուած պիտի մնար, կէսը պալատ պիտի մտնէր ժամադրութեան օրը։

Ամէնքը բացարձակ գաղտնապահութիւն երդուեցան։ Մեռնիլ կամ սպաննել Նիկեփոր. ահաւասիկ բոլոր խօսակցութեանց վերջին բառը։ Արիւնոտ տեսարանի նախագաղափարը, կեանքի և հոգւոյ կորստեան վտանգը, տարտամութիւններ կը ձգէին մի քանի ոճիրի անփորձ հոգիներու մէջ, բայց Զմշկիկի խօսքերուն կրակը, վճռականութիւնը, և շեշտը՝ որով «Վրէժ» բառը կը հնչեցնէր, կ'ամրապնդէր ամէն սիրտ։ Եղեռն պահուն, ինչպէս պատերազմի, օրինակը կ'ոգեւորէ, կ'արբեցնէ, կը ձգէ դէպ ի արիւնհեղութիւն։

Վճռեցին սպանութիւնը կատարել՝ դեկտեմբեր 10ին, գիշեր ատեն։

## Է։ — ԴԱՒԱԴՐՈՒԹԻՒՆԸ ՅԱՅՏՆՈՒԱԾ. — ՆԻԿԵՓՈՐԻ ՀԵՏԱՔՕՏՈՒԹԻՒՆՔ. — ՏԱԳՆԱՊԱԼԻՑ ԻՐԻԿՈՒՆ ՄԸ.— ԱՐԻՒՆՀԵՂՈՒԹԵԱՆ ԳԻՇԵՐ։

*Որոշեալ օրը, երեկոյեան դէմ, դաւակիցները, կին ձեւանալով, զգեստներուն տակ զէնքեր ծածկած, Թագուհւոյն ներկայացան։ Թէոփանոյ կեղծ իշխանուհիները տարաւ մութ սենեակ մը, որ իրեն կը պատկանէր, և յետ զիրենք այլ և այլ անկեանց մէջ ծածկելու, դուռը կղպեց և հեռացաւ։ Թագուհին դաւակցութեան մասնակից ըրած էր ոչ միայն զօրականներ, այլ և իր նաժիշտները և պալատական ներքինիներէն շատեր։ Թէոփանոյի սիրտը ուժգին կը բաբախէր։ Անհամբեր կը դիտէր իր պատուհանէն՝ թէ Զմրշկիկի նաւակը կ'երեւնա՞յ։ Պալատի աշտարակներուն վրայ բազմաթիւ ուրիշ կուսակիցներ նոյն սեւ կէտը կը փնտռէին ծովուն մէջ։*

*Վայրկեանները տարուան մը դանդաղ քայլերով կը յառաջէին. փոքրիկ դէպք մը, մոռցուած պարագայ մը՝ կարող էր նշոյլ մ'ըլլալ եղեռնաւոր գաղտնիքին համար։ Դաւակիցները, թէպէտ միշտ երկիւղի մէջ, չէին գիտեր սակայն թէ ի՛նչ վտանգի մէջ*

կը գտնուէին. — արդէն մաշուած էին ...։

Նոյն իրիկուն, երբ կայսրը, սենեակին մէջ առանձնացած, իր ժամերգութիւնքը կը կատարէր, դուռը յանկարծ բացուեցաւ. քահանայ մը, ուրուականի մը պէս համր, կանգ առաւ կայսեր առջեւ, նամակ մը նետեց, յետոյ, առանց բառ մ'ըսելու, անհետ եղաւ։

Կայսրը նամակը վեր վերցուց. հազիւ մի քանի տող կարդացած էր, գոյնը նետեց. հոն կ'ըսուէր թէ դաւակցութիւն մը պատրաստուած է իր կենաց դէմ, նոյն իսկ այս գիշեր պիտի սպաննուի, և թէ դաւակիցներու մէկ խումբը՝ թագուհւոյն սենեակին մէջ կը գտնուի։

Նիկեփոր իսկոյն Վասիլ Մենեկապանը կանչեց և հրամայեց իրեն՝ պալատին բոլոր սենեակները, բոլոր անկիւնները քննել, զո՛վ գտնէ՝ շղթայակապ իր առջեւ բերել։

Կարելի չէ երեւակայել տագնապը՝ դաւակիցներուն. կը լսէին դուրսը պալատականներուն աղմուկը, որ սպառնալից խոսակցութիւններով քննութիւնը կը կատարէին։ Մահը անխուսափելի էր. Զմշկիկի գահը այժմ ծաղրական երազ մը կը թուէր իրենց. յանդուգն ձեռնարկին վրայ զղջա-

ցած, վայրկենէ վայրկեան ձերբակալուելու կը սպասէին. աղմուկը երթալով կը մօտենար. տագնապի գերագոյն րոպէն եղաւ այն՝ յորում Սենեկապանն և իր ընկերները կանգ առին իրենց դրան առջեւ. ոչ ոք այլ եւս շունչ կ'առնուր. ահա դուռը կը բացուի, կը մտածէին, ահա շղթայն, ահա սուրը. բայց վաշտը յանկարծ ճանապարհը փոխեց, և դաւակցաց սենեակը զանց ընելով, ուրիշ մը սկսաւ քննել: Վտանգը անցած էր. Սենեկապանը, Թէոփանոյէն կաշառուած, այժմ դաւակիցներու թիւին կը պատկանէր:

Նիկեփոր, այս միջոցին, կ'աւարտէր նամակ մը, որով իր Լեւոն եղբօր կը հրամայէր իսկոյն քանի մը գունդով պալատ գալ, որովհետեւ մեծ վտանգ մը կը սպառնայ իր կենաց. խաղամոլ էր Լեւոն. երբ նամակը յանձնուեցաւ իրեն, նա զբաղած էր ճրագի դիմաց, իր սիրած զուարճութեամբ. և ճիշդ խաղին ամենէն հետաքքրքրական վայրկեանն էր, մեքենաբար նամակն առաւ, առանց հասցէին իսկ ակնարկ մը տալու, աջակողմը դրաւ. «Այս յաղթութիւնն ալ շահինք, ըսաւ, յետոյ կը կարդանք»: Եւ սկսաւ ոգեւորութեամբ խաղը շարունակել: Փոքրիկ պարագայ մը՝ ո-

րուն աղետալի հետեւանքները պիտի տեսնենք քիչ յետոյ։ Նիկեփոր գոհ չեղաւ ձեռք առած իր այս կրկին միջոցներով։ Որ և իցէ դաւադրութիւն ապարդիւն հանելու համար, իր պալատին մօտ դղեակ մը շինել տուած էր խորհրդաւոր ուղիներով, և որ մէկ օր առաջ՝ աւարտեր էր։ Կայսրը նախ իր սովորական սենեակին մէջ պառկեցաւ. հոն Թէոփանոյ երեկոյեան ողջոյնները տալով՝ մեկնեցաւ, — որովհետեւ Նիկեփոր ճգնաւորաբար ապրիլ առաջադրած էր, — դուռը կիսաբաց թողլով։ Կայսրը, իր կնոջ չափ նենգաւոր, քիչ յետոյ ելաւ անկողնէն, դուռը նոյն դիրքի մէջ թողուց՝ անյայտացաւ իր նոր դղեակին մէջ. հոն, յետ ժամերգութիւնքը ըսելու, խաղաղ սրտով նիրհեց։

Թէոփանոյ և իր կուսակիցներ՝ սեւեռուն աչքով ջրեղէն հօրիզոնը կը դիտէին։

Ծովը, ձմեռնային հողմերէն տանջուած, մինչեւ անդունդները կ'ալեկոծէր։ Ո՞վ կարող էր այդ պահուն ալիքներուն իր կեանքը վստահիլ։ Թագուհին յուսահատօրէն կը մտածէր թէ Չմշկիկ անկարող պիտի ըլլայ գալու, կամ եթէ փորձէ՝ նաւաբեկուելու համար միայն պիտի ըլլայ։ Դաւադրութեան յետաձգումը՝ ուրիշ արդիւնք պիտի չունե-

նար՝ բայց եթէ չարիքը մեծցնել։ Ջմշկիկի հետ՝ բոլոր դաւակիցները պիտի մեռնէին․ — չափազանց յառաջեր էին, յետադարձը անկարելի էր։ Ու Թէոփանոյ, թագակապ գլուխը հակած՝ ապարանջաններով և մատանիներով զարդարուն ձեռքին վրայ, որ այնչափ անգամ թոյնի բաժակը բռնած էր, զայրոյթի արցունքով կ'անիծէր ալիքները, — որոնք հակառակ դաւադրութիւն մը կազմած կը թուէին՝ ի՛ր սիրելւոյն կեանքին դէմ։

Ջմշկիկ, իր կուսակիցներուն հետ՝ Քաղկեդոնի ծովափին վրայ կանգնած կը հարցընէր նայուածքով՝ թէ կարելի պիտի ըլլա՞յ փոթորկին յաղթել։ Վճիռը յանդգնութիւնը տուաւ․ իջաւ նաւակին մէջ, ինքզինք իր բաղդին յանձնելով։ Ամպերը կը թանձրանային մթնոլորտին վրայ․ երկինքի ոչ մէկ բեկոր կը տեսնուէր, — բաց ի Ջմշկիկի աչքերէն։ Նաւակը ալիքներու կատարէն կը գահավիժէր անոնց հովիտներուն մէջ․ հողմը կարծես արգիլել կը փորձէր եղեռնաւոր մտածման գործադրութիւնը․ ամէն քայլ՝ գերեզման կը թուէր։ Այս գիշերուան մէջ պիտի հասնէր Ջմշկիկ կամ ծայրագոյն երջանկութեան կամ աղէտներու չարագոյնին․ կամ կայսրը պիտի ըլլար Արեւելքի, և կամ,

— զոհ ալիքներու, — պիտի կորսնցնէր միան-գամայն իր կեանքն և երկինքը։ Իր բիւ-զանդացիի երեւակայութիւնը, մերթ ան-դունդները ճեղքելով, դժոխքի բոցերը կը ցուցնէր և մերթ, հեռուն, արքունեաց գի-շերները, որ իր փառքերով պիտի լուսաւո-րուէին։ Բայց սփոփանք մ՚է ինքնին՝ յան-դուգն գաղափարի մը զոհն ըլլալ և Զմշկիկ կը յառաջէր, ալեկոծութիւնը՝ իր շուրջը միայն ունենալով։

Ուրախութեան հառաչ մ՚արձակեց Թէո-փանոյ թիերու ձայն մը լսելով հեռուն. գի-տակները աշտարակներէն նաւակը տեսած էին. Թագուհւոյն շուրջ հաւաքուեցան։ Ծած-կուած դաւակիցները ոտնաձայն մը լսելով սրահին մէջ՝ կրկին մատնուելու կասկածը առին, տագնապը տիրեց իրենց վրայ՝ երբ բանալի մը մխուեցաւ նոյն իսկ իրենց դրան մէջ. բարեբաղդաբար Թագուհին էր։ Զմշկիկի հանիքն առնելով, հրամայեց անշշուկ ի-րեն հետեւիլ։ Կեդրոնացան Թագուհւոյ սե-նեկին մէջ, որ Պուքոլէոն նաւահանգիստը կը դիտէր։ Զուանէ սանդուխ մը երկնցաւ դէպ ի վար, և քիչ յետոյ Զմշկիկ տեսնուեցաւ պատուհանին վրայ. միւս դաւակիցները կարգաւ ներս մտան կամ նոյնպիսի սան-

դուխներով կամ զամբիւղներու մէջ նստելով՝ զորս վեր կը քաշէին Թէոփանոյի նաժիշտները։

Դաւակիցներու թիւը ամբողջ էր հիմա։ Միասին Թագաւորի սենեակը դիմեցին. Թէոփանոյի դէմքին վրայ գոհունակութեան ժպիտ մը փայլեցաւ՝ դուռը գտնելով այնպէս՝ ինչպէս թողած էր։ Դաւակիցները, սուրերնին պատրաստած՝ ներս մտան։ Ոչ ոք կար. ի՞նչպէս կայսրը կրնար փախած ըլլալ, եթէ դուռը մատնուած չէր։ Մինչդեռ կը խորհէին փութալ, կեանքերնին ազատել, պարիսպներէն վար նետուիլ, մութին մէջէն ձայն մը «Կեցէ՛ք» գոչեց. — ներքինի մըն էր։ Պատմեց նա Թագուհւոյն՝ թէ կայսրը իր նորակերտ դղեակը ապաւինած էր, և թէ այս պահուն կը ննջէր խաղաղիկ։ Ներքինին տեղեակ ըլլալով դղեակի լաբիւրինթանման շաւիղներուն՝ լապտեր ի ձեռին յառաջ անցաւ. դաւակիցները լռիկ իրեն հետեւեցան։ Ներքինին դուռը բանալով, ճանապարհ տուաւ Զմշկիկի և Թագուհւոյն։

Անզարդ սենեակը դատարկ անկողին մը միայն կը պարունակէր։ Մատնութեան կասկածը արթնցաւ ամենուն մէջ՝ ու զայրոյթ ներքինիին դէմ, երբ յանկարծ, անկողնոյն

քով, վագրի մորթի մը վրայ, Զմշկիկ մարմին մը նշմարեց. Նիկեփորն էր. աքացի մը տալով նիրհող կայսեր՝ բազմեցաւ անկողնին վրայ՝ իբրեւ դատաւորական գահու մը վրայ. կայսրը, հարուածէն արթնցած, աչքերը բացաւ, և ափշած, գլուխը վեր հանեց՝ նորօրինակ տեսարանը ըմբռնելու համար. նոյն րոպէին Լեւոն Վահանի սուրը իր գանկին վրայ իջաւ և զայն պատռեց. «Տէր ողորմեա, Ս. Աստուածածին» կ'աղաղակէր Նիկեփոր հեւալով. դաւակիցները՝ յանցաւորը Զմշկիկի ոտքը բերին. վրէժխնդրութենէ բորբոքած՝ հայ զօրավարը Նիկեփորի կը յիշեցնէր իր ապերախտութիւնը, իր ագահութիւնը, և կ'ուզէր գիտնալ, զինքը մեռցնելէ առաջ, թէ ինչ պատճառաւ իր տէրութեան ամենէն արդիւնաւոր զօրականը՝ պաշտօնընկէց կ'ընէր, կ'աքսորէր: «Տէր ողորմեա, Ս. Աստուածածին» կը պատասխանէր Նիկեփոր որուն մեծագոյն տանջանքն եղաւ՝ Թէոփանոյի ներկայութիւնը իր դահիճներուն մէջ: Զմշկիկ, առանց իր զոհին յորդահոս արիւնէն ողոքելու, իր լռութենէն աւելի կատաղած, անոր մօրուքը փետտեց, ծնօտը ջախջախեց. Սեաւ Թէոդորը նիզակը մխեց Նիկեփորի սրտին մէջ, որ դադրեցաւ բաբա-

խելէ։ Կայսեր գլխակը պատուհանէն վար նետեցին ձեան վրայ․ հոն անթաղ մնաց ամբողջ օր մը, ժողովրդեան տեսարանը դառնալով։

Առաջուց պատրաստուած էր խումբ մը՝ որուն պաշտօնն էր աղաղակել փողոցներու մէջ․ «Սպանուեցաւ Նիկեփոր․ կեցցէ կայսրն Զմշկիկ»։ Ամէնքը գիշերային զգեստներով դուրս կ՚ոստնուին իրենց տունէն՝ ու պալատ կը վազէին եղելութիւնը ստուգելու, անգթութեան վրէժն առնելու համար։ Թիկնապահ գունդը արթննալով՝ դաւադիրները պաշարելու փորձ մը կ՚ուզէր ընել։ Լեւոն, կայսեր եղբայրը, իր խաղը կը լմնցնէր այս պահուն և կը սկսէր նամակը կարդալ․ փութաց հրամանը կատարելու. երբ կրկէսէն կ՚անցնէր, ափշեցաւ՝ զայն բազմութեամբ խռնուած տեսնելով, և լսեց թափառական ձայներ՝ որ կ՚աղաղակէին. «Մեռաւ Նիկեփոր, երկա՜յն կեանք Զմշկիկի»։ Վախնալով իր կեանքն ալ կորսնցնել, ճանապարհը փոխեց ու Ս. Սոփիա մտաւ։

Ամբոխը հետզհետէ կը խռնէր պալատին առջեւ՝ զայրոյթով մը որ կ՚ընդհանրանար, կը բորբոքէր, և մոլուցքի աղաղակներով կը յայտնուէր։

Զմշկիկ տիրած էր բոլոր պալատին. ոչ մէկ վախ ունէր այնուհետեւ։ Պատուհանը բացաւ և արձանի դիրքով, ջահերէ լուսաւորուած, Նիկեփորի արիւնոտ գլուխը ժողովրդեան կարկառեց։

Ամբոխը, սարսափահար, ցրուեցաւ։

## Ը. — ԶՄՇԿԻԿ ԿԱՅՍՐ ՕԾՈՒԱԾ. — ԹԷՈՓԱՆՈՅԻ ՅՈՒՍԱՀԱՏՈՒԹԻՒՆԸ։ — ԻՐ ԱՔՍՈՐԸ։

Գիշերուան չորրորդ պահը դեռ չէր հնչած. մեռելական լռութիւնը կը տիրէր փողոցներուն մէջ. միայն «Կեցցէ Զմշկիկ» աղաղակը քաղաքին շուրջ կը թափառէր, մերթ մերձենալով՝ և մերթ հեռանալով։ Բուզանդացիք, իրենց տան մէջ փակուած, ճրագի դողդոջուն լոյսով իրարու կը նայէին, համր և ափշած. արիւնը սառած էր իրենց երակներուն մէջ. վտանգ չկար տէրութեան՝ քանի որ նա Զմշկիկի մը կը յանձնուէր, բայց կարելի չէր չարտասուել սպանեալին վրայ՝ որ լաւագոյն բաղդի մ'արժանի էր։

Բիւզանդիոնի աւազակները հանրածանօթ սովորութիւն մ'ունէին. յեղափոխութեան գիշերները՝ տօն էր իրենց համար. հասարակաց շփոթութենէն և մթութենէն օգտուե-

լով՝ տուներու վրայ կը յարձակէին, կ'առեւանգէին, քաղաքական պատրուակով անձնական ոխերու վրէժը կը հանէին։ Բայց այս անգամ բաղդը չժպտեցաւ իրենց. Զմշկիկ զօրագունդեր կը հանէր ամէն փողոց, աւազակները հալածելու և ընտանիքներու վրայ տիրած սարսափը փարատելու համար։

Նիկեփորի սպանութիւնը կատարուեցաւ գիշեր մը, ուր շաբաթ կը լուսնայր։ Արշալոյսին հետ՝ Զմշկիկ իր ծիրանին հագուեցաւ, և կայսերական թիկնապահներէ շրջապատուած, քաղաք իջաւ Ս. Սոփիա երթալու։

Ժողովուրդը խռնուած էր հրապարակին վրայ, իր նոր կայսրը՝ և անոր օծման հանդէսը տեսնելու համար։ Զմշկիկի երեւումը՝ միահամուռ ծափահարութեանց և կեցցէներու ժայթքումը եղաւ։ Դեռ եւս Նիկեփորի մարմինը անթաղ կեցած էր ձիւներու վրայ, բայց ամբոխը զայն կը մոռնար, և այնքան յոյսեր կը նշմարէր Զմշկիկի ապագային մէջ, որքան հարկ էր Նիկեփորի անցեալին վրայ այլ եւս չմտածելու համար. կայսրը յանկարծ կանգ առաւ. եկեղեցւոյ սեմին վրայ, նշանաւոր եկեղեցականներու մէջտեղ՝ կանգնած էր Պոլիքտոս հայրապետը. — զայրացկոտ նայուածք մը պատրաստած էր նա և

մաքէն կը կրկնէր այն խօսքերը, որով Զմըշկիկի խիղճը պիտի ցնցէր։

Կայսրը Ս. Սոփիայի դրան մօտեցաւ. — Ո՛չ, գոչեց նա, պիտի չմտնես. այդ ձեռքերդ, որ ներկուած են քու տիրոջդ և քու ազգականիդ արեամբ՝ արժանի չեն դեռ արքունի գաւազանը բռնելու։

Սուրի մէկ հարուածով իր պատուոյն վրէժը պիտի առնէր Զմշկիկ, բայց հոս քաղաքագիտութիւն հարկ էր։

— Տիրասպանը ես չեմ, պատասխանեց նա, այլ Լեւոն Վահան ու Սեւ Թէոդոր։

— Երեք պայման կը դնեմ քու վրադ, աւելցուց Պօլիեւկտոս, զքեզ ձեռնադրելու համար։ Աքսորել Լեւոն ու Թէոդորը որ իրենց տէրը սպաննեցին, աքսորել Թէոփանոյն, որ իր ամուսինին դաւաճանն եղաւ, ջնջել Նիկեփորի այն հրովարտակը՝ որով կ'արգիլէ եկեղեցականներուն կտակ ընել։ Քանի որ չես կատարած այս պայմանները, եկեղեցւոյ սեմը պիտի չկոխես, և դժոխքի դուռը միայն բաց պիտի ըլլայ քու առջեւդ»։

Զմշկիկ, որուն ուղղուած էր բոլոր ժողովրդեան աչքը, և որ խորապէս անոր տրամադրութիւնքը կը ճանչնար, աչքերու համեստ ակնարկէ մը վերջ՝ բեկեալ ձայնով

յայտարարեց թէ գիտակից էր իր ոճիրին մեծութեան, և յանձն կ'առնուր պատժել ամէն անոնք՝ որ զինքը առ այն մղեցին։

Չմշկիկ հոս դարձաւ դէպ ի արքունիք, դեռ լսելով ականջին մէջ անողոք եկեղեցականին ձայնը՝ որ դատապարտութեան ամենէն անգութ ոճիր կու տար. — կամ հրաժարիլ գահէն, յետ այնքան աշխատութիւն և վտանգ կրելու, կամ իր սիրելիները պատժել ։

Նիկեփորի սպաննողները աքսորուեցան, Թէոփանոյ ղրկուեցաւ Փռոթի. կղերին դէմ հրատարակուած օրէնքը վերցուեց. և մէկ շաբաթուան մէջ՝ ագահ Նիկեփորի վսեմ հակապատկերն հանդիսանալով՝ իր հպատակաց բոլոր սրտերը գրաւեց ։ Ո՛չ մէկ արգելք կար այնուհետև օծումը կատարելու. Հայրապետն ու տէրութիւնը պատրաստ էին ոճիրին արդիւնքը՝ եկեղեցական հանդիսով սրբագանելու ։ Ծննդեան օր, 25 դեկտեմբեր 969, Չմշկիկ, Ս. Սոփիայի մէջ, ընդունեցաւ Հայրապետէն՝ կայսերական թագը, օրինաւոր կայսր ծանուցանելով զՎասիլ Բ և Կոստանդինը, իսկ ինքզինքը՝ անոնց խնամակալ ։ Երբ պալատը վերադարձաւ ծերակոյտի անդամներու, զօրագունդերու հետ,

որ գոյնզգոյն նկար մը կը կազմէին, — բայց կենդանի և շարժուն, — ժողովուրդը հեռացաւ իրեն՝ անդադար ծափահարելով և կեցցէներ գոչելով։ Զմշկիկ իսկոյն հրամայեց իր անձնական գանձը աղքատներուն բաշխել, հիւանդանոցներուն մեծամեծ գումարներ ղրկեց, Հայերը ազատ հրատարակեց տուրքէ, ծերակոյտին համար սահմանուած ընծայները ճոխացուց, ցորեն բաժնեց ժողովրդեան՝ որ երեք տարիէ ի վեր կը տանջուէր։

Թէոփանոյ, Փոոլթի կղզիին մէջ պատապարտեալի մը կատաղութեամբ կը տանջուէր։ Սիրել այնքան կոյր անձնուիրութեամբ, զոհել անոր իր ամուսինը, իր առաքինութիւնը և համբաւը, զայն գահու վրայ բարձրացնել, և այն պահուն ուր իր փափագներու լրման կարծէր հասած ըլլալ, աքսորի վճիռը լսել անկէ։ Թէոփանոյի սէրը անծայր ատելութեան փոխուած էր, կ՚ուզէր վայրկեան մը միայն իր նախկին իշխանութիւնն ունենալ, անօրինակ վրէժխնդրութիւն մ՚ընելու համար, բայց ի զուր։ Զմշկիկի թագաւորութեան ամէն րոպէ հեգնութիւնն էր իր պատրանքներուն. իր կրած նախատինքին՝ բոլոր ազգերն էին հանդիսատես։

Ցուսահատ ժամեր անցընելէ վերջ միայնութեան մէջ, յաջողեցաւ իր կուսակիցներուն հետ բանակցիլ, փախստեան ճամբայ մը գտնել։ Գիշեր ժամանակ անծանօթ նաւակ մը կանգ առաւ վանքին առջեւ. Թէոփանոյ գաղտնապէս դուրս ելաւ իր սենեակէն, նաւակ մտաւ և դիմեց դէպ ի Պոլիս. ուղղակի ապաւինեցաւ Ս. Սոփիա, յուսալով որ իր ներկայութիւնը բաւական պիտի ըլլար քաղաքական յեղափոխութիւն մը յառաջ բերելու։

Երկրորդ առաւօտ բոլոր քաղաքացիք յուզմամբ կը խօսէին Թէոփանոյի վերադարձին վրայ. կը խուժէին եկեղեցին՝ թագուհին տեսնալու համար. յանկարծ գունդ մը, զօրավարի մ'առաջնորդութեամբ, ներս մտաւ. Վասիլ Սենեկապանն էր։ Բռնի դուրս հանեց Թէոփանոյն. նա խնդրեց՝ երկրորդ աքսորէն առաջ՝ Զմշկիկի հետ տեսակցիլ։

Պատմութեան մէջ չկայ թերեւս տեսարան մը, որ առանց արիւնհեղութեան, այնքան յուզումնալից եղած ըլլայ, ինչպէս Թէոփանոյի և Զմշկիկի հանդիպումը։ Եւ ոչ մէկ պատերազմի մէջ այնքան քաջասիրտ չհանդիսացաւ կայսրը, ինչպէս այն վայրկենին՝ երբ հանդուրժեց Թէոփանոյի առաջին սեւե-

ուն ակնարկին, ակնարկ մը որ Զմշկիկի կը յիշեցնէր իր երբեմնի խանդավառանքը, աստղազարդ գիշերները, երջանկութիւնը՝ որուն ի զուր յուսացեր էր։ Կայսրը անտարբեր կը մնար. բոցեր ցոլացին Թէոփանոյի աչքին մէջ, սանձուած հրաբուղխը դուրս ժայթքեց իր սրտէն. «Դաւաճան, գոչեց, նենգաւոր, մատնիչ» և կայսրը նախատելու համար՝ սկսաւ բարձրաձայն պատմել բոլոր այն մեղքերը՝ զոր ինքն հետ գործած էր։ Կայսրը, անտարբեր լռութեամբ մտիկ կ'ընէր. չկարենալով կոյր կատաղութիւնը զսպել, դժոխային ոգիի մը պէս, մազերը օդին մէջ ցցուած, բազուկները վեր բարձրացուցած, նետուեցաւ Վասիլ Սենեկապանին վրայ և սկսաւ բռնցիներ իջեցնել երեսին. Թիկնապահներ հազիւ յաջողեցան հեռացնել Թագուհին, որ խոժոռ նայուածքներ ուղղելով՝ կը շարունակէր զինքը նախատել, «Սկիւթացի և բարբարոս» անուամբ, Վասլի անհարազատ ծնունդը ակնարկելով։ (Սենեկապանը, ինչպէս տեսանք, որդի էր Լեկաբենոսի՝ և Բուլղար գերիի մը)։

Նիկեփոր Հայկական բանակալթեսին մէջ Դամիս անուամբ վանք մը շինած էր. Զմըշկիկ, երգիծանքի նրբութեամբ մը՝ որ խո-

ցոտիչ էր՝ սրածայր դաշոյնի մը պէս, Դամիս վանքը աքսորեց զԹագուհին. այսպէս Թէոփանոյ՝ Նիկեփորի գերեզմանը շինեց. Նիկեփոր՝ իր բանտը։

Ցիրուի արտասուք պիտի շարժէր Թագուհւոյն Թշուառութիւնը, եթէ անով իր կեանքն աւարտէր. բայց նա, Զմշկիկի մահէն վերջ՝ վերստին պալատ պիտի դառնայ, և պիտի շարունակէ ապրիլ նորանոր փառաց և հաճոյից մէջ։

Թէոփանոյի մայրը, որ դեռ կ'ապրէր խոր ծերութեան մէջ, և չէր կարող քաղաքական յանցանքի մէջ գտնուիլ, Կապադովկիոյ Մանտինէա վանքը աքսորուեցաւ։ Զմշկիկ ուզեց Թագուհւոյն զգացնել այսու՝ թէ ինքնին ոճիր մ'էր Թէոփանոյի պէս էակ մը ծնանիլ։

Թ. — ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ. — ՃԳՆԱՒՈՐ ՄԱՐԳԱՐԷՆ։ — ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐՈՒ ԴԱՒԱԿՑՈՒԹԻՒՆԸ։ — ԱՂԱՆԴԱՒՈՐՆԵՐՈՒ ՓՈԽԱԴՐՈՒԹԻՒՆԸ. — ԶՄՇԿԻԿԻ ՆԵՐՔԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ։

Թագուհւոյն դառնութիւնքը դեռ վերջացած չէին. իրեն՝ դեռ աւելի անգութ տանջանք մը պատրաստուած էր. նախանձորդ մը իրեն տեղ, Զմշկիկի գահակից պիտի ըլլար։

Իբրեւ դիւանագէտ, Հայ կայսրը մտածեց այնպիսի ամուսնութիւն մը կատարել, որով իր որդիքները իրաւունք ունենային օրինաւոր կերպով թագաւորելու։

Այս հեռատեսութեամբ կայսրուհի անուանեց իրեն զԹէոդորա, դուստր Պերփեռուժէնի, առաքինութեամբը նշանաւոր։ Հարսանեաց առթիւ (971 նոյեմբ.), քաղաքը աղմկաւոր հանդէսներ կատարեց և Զմշիկ առիթ գտաւ ժողովրդեան իր առատաձեռնութիւնը ցուցնելու։

Զմշիկ աքսորեալները ազատեց պատժէ և բոլոր իր կուսակիցներուն պաշտօններ բաշխեց։

Երբ նա Փոքր Ասիա կը գտնուէր, առիթ ունեցաւ ծանօթանալու ճգնաւորի մը հետ՝ Թէոդոր անուամբ. քաջութեանց համբաւը մտած էր մինչեւ մթին քարայրը՝ ուր նա երկնից արքայութեան վրայ կը մտածէր։ Իր սրբութեան համբաւէն ձգուած, Հայ զօրավարը օր մ'անոր ուխտի գնաց. ճգնաւորը իրեն կայսրութիւն մարգարէացաւ, յորդորելով որ առանց ոճիրի անոր հասնի, այլապէս կարճատեւ փառք մը միայն պիտի ունենայ։

Գահուն վրայ բարձրանալէն յետոյ, Զմըշ-

կիկ յիշեց ճգնաւոր մարգարէն, զայն Պօլիս կանչեց, և Անտիոքայ եպիսկոպոս ձեռնադրել տուաւ։

Պօլիքտոս Հայրապետը մեռնելով (16 յունուար 970) Զմշկիկ անոր յաջորդ ընտրեց կրօնաւոր մը, որ Ոլիմպոս լերան կատարը միայնացած, սրբութեան համբաւ կը ճառագայթէր Կոստանդնուպօլսոյ վրայ. նա կը կոչուէր Վասիլ Սքամանդրեցի, Սքամանդր գետոյն եզերք վանք մը շինած ըլլալուն պատճառաւ։ Զափազանց խիստ և անողոք, եպիսկոպոսներու անհաճոյ անցաւ. անոնցմէ ոմանք միանալով, դաւակցութիւն մը կազմեցին իրեն դէմ՝ զինքը գահազուրկ ընելու և բարոյապէս սպաննելու համար։ Կայսեր ամբաստանեցին թէ Հայրապետը կայսեր դէմ դաւակցութիւն մը կազմած է. Զմշկիկ դատաստանի կանչեց զինք. Վասիլ պատասխանեց՝ թէ իր աստիճանի արժանապատուութեան դէմ գործած պիտի ըլլար, իբրև սովորական յանցաւոր, աշխարհական իշխանութեան ներկայանալով։ Զմշկիկ, որ շատ հաճոյք չէր զգար եկեղեցականներու հետ վիճելէ, փութով վերջ տուաւ խնդրոյն, Վասիլը աքսորելով Սքամանդրի վանքը զոր ինքնին շինած էր, և անոր տեղ ընտրելով

ուրիշ կրօնաւոր մը Սթուդիոն վանքէն, Անտոն անուամբ. նա սրբութեան համբաւով հաւասար էր նախորդին՝ իսկ գիտութեամբը գերազանց (974)։ Պոլիեքտոս Հայրապետը նշանաւոր է պատմութեան մէջ՝ աղանդաւորներու զաղթականութեան պատճառ ըլլալուն համար։ Իր թելադրութեամբ հրամայեց Չմշկիկ՝ Ասիոյ մէջ Մանիքեցիները փնտռել, հաւաքել և Թրակիոյ Փիլիպպոպոլիս քաղաքը փոխադրել։ Այսու կզկիացնել կը յուսային զանոնք, բայց Մանիքեցիք միտս չկրեցին. փոխանակ Ասիոյ՝ Եւրոպայի մէջ տարածուեցան։

Նիկեփոր ծուխի վրայ անգամ տուրք դրած էր. ամէն վառարանի համար պէտք էր հարկ վճարել. Չմշկիկ «ծուխի տուրք»ը ջնջեց։

Այսպէս Չմշկիկի ներքին կառավարութիւնը միշտ բարեբար եղաւ ազգերու, և ներքին խաղաղութիւնը միայն մէկ անգամ վրդովուեցաւ. — Փոկասեանց յարուցած քաղաքական պատերազմով։

Ժ. — ՓՈԿԱՍԵԱՆՑ ԸՆՏԱՆԻՔԸ. — ԹԱՓԱՌԱԿԱՆ ԴԱ-ԽԱԴԻՐՆԵՐ. — ՄԱՏՆԻՉ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԸ. — ՉՄՇԿԻ-ԿԻ ՎՍԵՄՈՒԹԻՒՆԸ ԴԷՊ Ի ԻՐ ԹՇՆԱՄԻՆԵՐ:

*Փոկասեանց ընտանիքը, որ Նիկեփորէն վերջ կը յուսար կայսրներու շարք մը եւս արտադրել, իր բոլոր յոյսերը Չմշկիկի սու-րով խորտակուած տեսաւ: Վրէժխնդրութեան պարտք մը կը զգային. Չմշկիկ զիրենք ա-զատեց անկից՝ ամէնքն ալ մի առ մի աք-սորելով:*

*Լեւոն, Նիկեփորի եղբայրը, ինչպէս տե-սանք, սպանութեան գիշերը Ս. Սոփիա ա-պաւինեցաւ. այնքան հարուստ էր, որ եթէ ագահ չըլլար, կարող էր ինքզինք կայսր հրատարակել նոյն իսկ այն գիշեր՝ դրամ բաշխելով հրապարակին մէջ հաւա-քուած ժողովրդեան: Լեւոն, երկրորդ օր բռնի հանուեցաւ եկեղեցիէն և աքսորուեցաւ Լես-բոս կղզւոյն Մեթիմնոս կոչուած վանքը:*

*Լեւոն երկու որդի ունէր. Վարդ, որ աք-սորուեցաւ Ամասիա, և Նիկեփոր՝ որ ուղար-կուեցաւ Իմբրոս կղզին: Այսպէս Փոկասեան բոլոր ընտանիքը ցրուեցաւ վանքերու մէջ. դաւակցութեան ամէն փորձ անկարելի կը թուէր այնուհետեւ: Բայց, բարեկամներու*

շնորհիւ, Լեւոն և իր կրսեր որդին յաջողեցան փախչիլ իրենց կղզիներէն. եկան Թրակիա՝ իրենց կուսակցութեան գլուխն անցնելու համար։ Ժամանակի սովորութեան համեմատ՝ կուսակցութեան մաս կը կազմէին կրօնաւորներ, քահանաներ, եպիսկոպոսներ։ Բիւզանդացի պատմագիրները կ՚ըմբռնէին թէ եկեղեցական մը ինչ խոր ազդեցութիւն կրնայ ընել ժողովրդեան վրայ, և թէ իրենց խօսքը որքան աւելի բեղնաւոր կրնայ ըլլալ երբ ներկայացուի՝ Աստուծոյ կողմանէ եկած։ Լեւոն և Նիկեփոր, ծպտեալ, ամենուրեք կը թափառէին գաղտնապէս, ատելութիւն քարոզելով Զմշկիկի դէմ. այս պաշտօնը յանձն առաւ նաեւ Աբիդոսի եպիսկոպոսը, որ սակայն շուտով ձերբակալուեցաւ, չկարենալով իր դերը ըստ բաւականի ճարտարութեամբ գործածել։ Զմշկիկ տանջանքի մեքենայները պատրաստել տուաւ, յետոյ եպիսկոպոսը ներս հրաւիրեց. զանոնք մատնանիշ ընելով, սպառնացաւ զինք ըկտտամահ ընել՝ եթէ իր դաւակիցները չյայտնէ։ Եպիսկոպոսը, որ մինչեւ այն ժամանակ դիւրակեցութեան մէջ ապրած էր, այնքան տանջուիլը իր արժանապատուութեան դէմ տեսնելով, անկեղծ խոստովանութեամբ ապացուցուց՝ թէ հարկ

չկար խիստ սպառնալիք ընել իրեն։ Լեւոն և Նիկեփոր դեռ չէին գիտեր թէ արդէն իսկ մատնուած են. գլխաւորներու գունդ մը, յանկարծ, իրենց տունը մտաւ, շղթայի զարկաւ զիրենք և բերաւ պալատ։ Մահը անխուսափելի կարծեցին անոնք. Չմշկիկ հրամայեց միայն կուրացնել զիրենք։ Ցանցաւորները դուրս ելած էին ատեանէն, երբ Չմշկիկ դահիճը ներս կանչեց և ցած ձայնով մ'ըսաւ. «Ձեւացուր թէ կը կուրացնես. և ոչ ոք թող գիտնայ թէ իմ հրամանաւս այդ կեղծիքը կատարեցիր»։

Բիւզանդացի ոչ մէկ կայսր նոյնչափ ծայրայեղ եղած էր իր գթութեան, և այնքան նուրբ՝ համեստութեան մէջ։ Չմշկիկի այս վսեմութիւնը դէպ ի իր թշնամիներ, ինքնին բաւական էր՝ իր նախկին ոճիրը քաւելու։

ԺԱ. — ՄԵԾԱԳՈՅՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ ՄԸ. — ՎԱՐԴ ՓՈԿԱՍ ԿԱՅՍՐ. — ՄԵՆԱՄԱՐՏ. — ԽԻՈՍԻ ԿՐՕՆԱՒՈՐԸ։

Փոկասեանց ընտանիքը դեռ եւս իր դատը չէր կորսուած։

Վարդ Փոկաս, իր վանդակը կոտրելով, արծուի թեւերը պարզած էր դէպ ի կռիւ ու փառք։ Իմանալով թէ նա յանդուգն դի-

տումներ ունի, բազմաթիւ իշխաններ իր շուրջ հաւաքուեցան. Դիոգենէս Ատրալեստոս, Թէոդուլեան եղբարք, Սիմէոն Ամփելաս։ Բիւզանդիոյ մէջ, ո՛ր և իցէ նոր կայսր՝ պաշտօնեայներու հասարակաց փոփոխութիւն մը կ'ընէր՝ իր գաղափարակիցները վարձատրելու համար։ Գլուխը չէր միայն որ կը փոխուէր, այլ ամբողջ վարչական մարմինը։ Անոնք որ Նիկեփորի հետ իրենց արեամբ պատերազմի դաշտեր ներկեր էին, կամ իր անուան տակ նահանգներ կառավարեր, չհանդուրժելով հիմա այլոց՝ ինչպէս սուսերի մէջ ծնած մանուշակներ, Նիկեփորը փընտռեցին՝ իր եղբօրորդւոյն մէջ։

Կուսակիցներու թիւը օրէ օր կ'աճէր. ամբողջ բանակ մը կազմուած տեսնելով, Վարդ Փոկաս կայսր հրատարակեց ինքզինք՝ Կեսարիոյ մօտ, և դիմեց դէպ ի Պոլիս։

Զմշկիկի զօրավարներուն մէջ ամենէն աւելի հռչակուած էր իր սրտովը ու նենգութեամբ՝ հայազգին Վարդ, որ Սքլերոս մականունը կը կրէր իր խստաբարոյ բնաւորութեանը համար։ Սքլերոս հնազանդեցաւ կայսեր հրամանին, բայց ակամայ. — Փոկասի Սոփիա քոյրը՝ իր Կոստանդին եղբօր հետ ամուսնացած էր. հոգեկան տագնապներ

կրելէ վերջ միայն յանձն առաւ զէնք գործածել այն անձին դէմ՝ որուն հետ կապուած էր խնամութեամբ ու բարեկամութեան յիշատակներով։

Վարդ Սքլերոս խաղաղութեան ճառ մը պատրաստեց և զայն արտասանել տուաւ իր նուիրակներուն։ Զինքը աւելի դիւրաւ նուաճելու համար՝ կայսեր կողմանէ կը խոստանար իրեն՝ ներում, հարստութիւն, փառք։ Սակայն իր գործածած համեստ լեզուն՝ վախի ու տկարութեան նշան կարծուելով, նոր խրախոյս մ'եղաւ ապստամբներուն։ Փոկաս՝ Սքլերոսի առաջարկը մերժեց, նախատինքներ աւելցնելով Զմշկիկի դէմ, որուն «բոլոր դիւցազնութիւնը կը կայանար՝ միայն քնացող» կայսրները սպաննելու մէջ։

Սքլերոսը, խօսքը անօգուտ գտնելով՝ զէնքի դիմեց. վերջալոյսի նշոյլներով՝ ապստամբներ հորիզոնի վրայ նշմարեցին կայսերական բանակը՝ որ յառաջ կու գար, ահագին ընդարձակութիւն մը ծածկելով. սարսափը տիրեց զինուորներուն վրայ. կռուիլ այնքան մեծ բանակի և այնքան մեծ ռազմագէտի մը դէմ, և այս՝ ստանալու համար Փոկասէն, — յաջողութեան պարագային, — ինչ որ արդէն առանց արեան կը խոստացուէր իրենց։

Գիշեր ժամանակ տագնապալից մրմունջ մը կը պտտէր բանակին մէջ. զինուորներ կը կրկնէին իրարու՝ անունը այն իշխաններուն՝ որ Սքլերոսի բանակը անցած էին. անոնք որ ապստամբութեան ոգին կը կազմէին, պատալիք եղած ըլլալով, բոլոր զինուորները պահանջեցին իրենց ոպայներէն՝ Սքլերոսի կողմն անցնիլ: Թագապահանջը լուսնին տակ կեցած, մտածկոտ և յուսահատ, կը տեսնէր իր զօրաց աղմկաւոր մեկնումը. լռութիւնը պատեց իր շուրջ. միայնակ մնացեր էր, սակաւաթիւ հաւատարիմներու հետ: Փոկաս դարձաւ և յաղթութեամբ հարցուց՝ թէ իրենք ալ փափագ չունէի՞ն մեկնելու: Յետոյ իր նժոյգին վրայ հեծաւ և սկսաւ դիմել դէպ ի Թիյրանոն կոչուած գղեակը:

Սքլերոս, այս պահուն, Քարոն զօրավարին առաջնորդութեամբ հեծելազունդ մ՚ուղարկած էր, Փոկասը ձերբակալելու համար: Քարոն, ճանապարհին ծայրը, փախստական ապստամբը նշմարելով,

— Կեցիր, ով վատ, գոչեց, եթէ զօրավարի սիրտ ունիս, կանգ առ, մենամարտինք: Քեզի պատիւ պիտի ըլլայ իմ ձեռքովս մեռնիլ:

Ետ դարձաւ Փօլսօ, ուղղեց շանթահար նայուածք մը, ուր իր հոգւոյն բոլոր դառնութիւնը նկարուած էր, և պատասխանեց։

— Նախատինքի տեղ արտասուք կը յուսայի քեզմէ, որ իմ զօրավարին եղած ես։ Կեսարու թոռ մը, կիսաստուածի որդին, կայսեր մը եղբօրորդին, մանրիչներու պատճառաւ, փախչելու բռնադատուած է. Հարկ կա՞ր իր թշուառութիւնը աւելցնել։ Բայց քանի որ զիս նախատեցիր, ես գիտեմ վրէժս առնել։

Լախտի մէկ հարուածով՝ Թարոնը գետնի փռեց։ Իր հեծելազունդը սարսափահար փախաւ։ Փօլսօ, իր դղեակին մէջ Աքլերօսի ամբողջ բանակէն պաշարուելով, անձնատուր եղաւ, յետ խոստում առնելու որ իր կեանքին չվնասեն։ Զմշկիկ զինքը Քիօ կղզին աքսորեց բռնի կրօնաւոր ընելով։

Այսպէս Զմշկիկի ներքին քաղաքականութիւնը երեք նպատակ ունեցաւ իրեն. Թէօփանոյի ազդեցութիւնը աքսորել արքունիքէն, անոր որդւոց վրայ կատարելապէս իշխելու համար. Նիկեփորի ընտանիքը ցրուել՝ թագաւորահանջէ ազատ մնալու համար. ու վերջապէս ժողովրդեան սիրտը գրաւել՝ առատաձեռնութեամբ անոր ցաւերը սփոփելով։

Յետ հպատակաց սրտին տիրելու, — որ ամենէն մեծ աշխարհակալութիւնն է, — Ձմշկիկ որոշեց թշնամի երկիրներու ալ տէրն ըլլալ։

## ԺԱ. — ՌՈՒՍԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ. — ՉՄՇԿԻԿԻ ՅԱՂԹԱՆԱԿՆԵՐԸ ՌՈՒՍԱՑ ՎՐԱՅ. — ՎԱՐԴ ՍԿԼԵՐՈՍ. — ԳԱՐԱՆԱԾ ԲԱՆԱԿԸ. — ՌՈՒՍ ԳՈՂԻԱԹԸ. — ՄԵՆԱՄԱՐՏՆԵՐ։

Նիկեփոր, Բուլղարաց արշաւանքներէն ազատելու համար՝ քաղաքագիտական մեծ սխալ մը գործած էր։ Ռուսերը յորդորած էր Բուլղարիա արշաւել (969ին), և անոր կողոպուտովը հարստանալ։ Այսու կը յուսար երկու վտանգներ իրարու բաղխել, սպառացնել, փշրել. բայց Ռուսեր այնքան շուտով տիրեցին Բուլղարիոյ, որ Նիկեփորի ծրագիրը բոլորովին հակառակ կերպով իրագործուեցաւ. փոքր սպառնալիքին՝ մեծը յաջորդեց, Բուլղարներու տեղ՝ իրենց դրացի ունեցաւ Ռուսերը, որ աւելի քաջ, ընչաքաղց և յանդուգն էին։

Քալոքիւրոս անուամբ յոյն իշխանը, որուն յանձնուած էր Սլաւներուն դէպ ի Բուլղարիա արշաւանքի մը հրաւիրագիրը տանիլ, զեղծաւ իր պաշտօնով։ Յետ զանոնք

Բուլղարիա հասցնելու, յորդորեց Պոլիս դալ, տիրել, յունական գանձերով հարստանալ, պայմանաւ որ զինքը Բիւզանդիոնի կայսր ընեն։

Ո՛ր և իցէ թշնամւոյ յաղթելու համար՝ հարկ է նախ նիւթական ոյժ ունենալ, յետոյ լաւ առաջնորդ ըլլալ անոր ներքին վիճակին։ Ռուսեր՝ ոյժն ունէին, Քալոքիր՝ գիտութիւնը. երկուքը միացած էին Յոյներուն դէմ։ Բիւզանդիոն, որ շատ ճգնաժամեր ունեցած էր, աւելի ահեղ վտանգ մը չէր յիշեր։ Բարեբաղդաբար Բիւզանդիոնի Զմըշկիկ մը կ'իշխէր, և իրեն հրամանին տակ Անմահներու գունդը պիտի պատերազմէր։

Զմշկիկ, Ռուսաց իշխանին՝ Վինցէսլաւի հրահանգ ղրկեց, շուտով Բուլղարիան պատարկելու և հեռանալու։ Ռուսեր դիւրաւ չէին թողուր երկիր մը, ուր ո՛ր և է պատրուակաւ մնած էին։ Վինցէսլաւ պատասխանեց. «Պատասխանս տալու համար՝ Պոլիս պիտի գամ»։

Զմշկիկ պատերազմ հրատարակեց (970) և արեւելեան բանակը փոխադրելով յԱդրիանուպոլիս, հրամայեց թշնամութիւնքը սկսիլ. սպարապետ ընտրուած էր Հայ մը՝ Վարդ Սքլերոս։ Ռուսեր, աւելի պատրաստ,

Բուլղարներու, Հունգարներու, Փացինաքներու բազմախնդիրներով աճած բանակով մը, որ ընդ ամէնը երեսուն հազար զինուորներէ կը բաղկանար և երեք թեւի բաժնուած էր, անցաւ Հեմոս լեռնէն, հեղեղօրէն Թրակիոյ դաշտերուն մէջ գահավիժեցաւ, լայնցաւ, ողողեց, աւերեց, գիւղներ փակեց և բանակեց Սքլերոսը, իր բանակովը միասին, Ադրիանուպոլսի մէջ։ Պաշարեալները ամէն օր գիշերային նուագահանդէսներ կը վայելէին. որովհետեւ Ռուսները դափ ու թմբուկով, սրինգներով, քնարներով կ՚երգէին, կը պարէին պարիսպներուն առջեւ, և Վարդի անգործութիւնը կը ծաղրէին։ Վարդ քաջասիրտ էր, բայց միանգամայն նենգաւոր. չէր ուզեր զոհեր տալով յաղթել, երբ փառքը աւելի աժան գնով կրնար առնել։ Ահա թէ ինչ խորհեցաւ։ Տեսնելով որ թշնամիք համոզուած են իր անկարողութեան վրայ, — ինչպէս ինքը կը փափաքէր, — դարանի նստաւ, հրամայելով իր Յովհաննէս Ալակաս զօրավարին՝ թշնամեաց ներկայանալ և կեղծ կռուէ մը վերջ փախչիլ՝ թշնամիները իր հետ ձգելով։ Առաւօտ էր. Թրակիոյ դաշտերը հազիւ սկսած էին լոյսով ճերմկնալ, երբ արթնցող հսկայաձեւ բարբարոսները թշնա-

մինչեւ զունդ մը նշմարեցին իրենց դիմաց։ Ի՛նչ ուրախութիւն. կռուի կարօտցած էին։ Փացինաքները, որ բանակի առջեւը կը գըտնուէին, ամենէն առաջ զէնք կ՚առնուն, կարգի կը մտնան և կը յարձակին Յունաց վըրայ։ Յովհաննէս Ալակաս մի քանի վայրկեան կանոնաւոր դիմադրութիւն կ՚ընէ, յետոյ աստիճանաբար կը մեղմացնէ, և հուսկ ուրեմն փախուստ կը սկսի։ Ահռելի ազաղակներով իրենց կը հետամտին բարբարոները. յանկարծ, իրենց ետեւը, թմբուկներ, փողեր, վահաններ կը գոռան, կը խառնուին հազարաւոր աղմկիններու մեծագոչ ձայնին հետ, և Վարդի բանակը գազանաբար կը սկսի Փացինաքները ջարդել։ Սարսափ, շփոթութիւն, յուսահատ կատաղութիւն տիրեցին թշնամեաց վրայ. կը ջանան կարգի մտնել, դիմադրել, յաղթել, բայց նոյն վայրկենին յանկարծ երրորդ բանակ մ՚ալ կը հասնի, արիւնհեղութիւնը կ՚աճի, Փացինաքներ կը սպաննուին, կը գերուին, առանց բացառութեան։

Զօրաց կատաղութիւնը չմարած, Վարդ կը դիմէ ուղղակի Ռուսաց բանակին վրայ. իր նպատակն էր երկու թեւերը առանձինն փշրել. բայց անոնք, սարսափահար,

ձուլուած էին, կեդրոնացած ։ Խառնուրդը սկսաւ՝ երկինքը լեցնող փոթորկալից փուշիով և աղաղակներով ։ Վսեմագոյն տեսարանն եղաւ առաջինը, Հեծելագունդերու բաղխումը, երբ պատերազմը կարծես օդոյ մէջ տեղի կ'ունենար, երբ ռազմիկներ և երիվարներ կ'իյնային, կը կռուէին իրարու վրայ ու զէնքերու տակ կը թաղուէին ։ Վարդ, մերկացած սուրը օդին մէջ բարձրացուցած, շանթը բռնող Արամազդ մը կը թուէր . արհաւիրքներու կեդրոնը կը նետուէր, կը խրախուսէր, կը հրամայէր, նախ ինքը՝ իր հրամանը կատարելով ։ Իր հետ կը սլանար իր եղբայրը՝ Կոստանդին . նա իր ծնողներէն՝ հաւասար ժառանգութիւն մը առած էր ուժի և արութեան ։ Վարդ կոտորածի զբաղած էր, երբ հսկայ թշնամի մը աչքերը սրած՝ ինչպէս սուր դառած արծիւ մը, ուղղակի ասպարապետին վրայ կը դիմէ և վաղակաւորի հարուած մը կ'իջեցնէ սաղաւարտին . սա կը ծռի, բայց չի փշրիր ։ Վարդ Սքլերոս կը փութայ հարուածին պատասխանը տալ . սուրը կ'իջեցնէ Ռուսի գանկին, որ երկուքի կը ճեղքուի, գլխուն մէկ մասը թոյլ կերպով մէկ ուսին վրայ կ'իյնայ, ու մէկը՝ միւսին . մինչ սարսափա-

*Հար նժոյգը՝ անգլուխ հսկայն առած՝ կը պարայնէ ռուսական բանակին մէջ: «Վրէժ» կ'աղաղակէ ուրիշ Ռուս մը և կը դիմէ Վարդի վրայ. յօգնած է նա, ուժաթափ. իր տեղը՝ իր դիւցազն եղբայրը յառաջ կը նետուի իբր ախոյեան. ուժգին հարուած մը պատրաստած է նա բարբարոսին համար՝ որ մէկ շարժումով սակայն զինք յուսախաբ կ'ընէ: Հարուածը կը վրիպի, բայց ձիուն կը հանդիպի, որուն գլուխը կը թռցնէ. բարբարոսը՝ իր ձիուն հետ գետին կ'իյնայ. Վար կը նետուի Կոստանդին, կը սպաննէ, վերստին թամբին վրայ կ'ելնէ և աներևոյթ կ'ըլլայ թշնամեաց բազմութեան մէջ, ուր իր սուրը՝ մանգաղ մը կը թուի՝ Մահէն գողցուած: Իր շուրջը մեծագոյն քաջութիւններ կը գործուէին, որ չարձանագրուեցան, որովհետև զօրավարի մը չէին պատկաներ: Յոյներէն ոչ ոք առանց վէրքի դարձաւ այս կռուէն. բայց մեռեալները հարիւրէն աւելի չեղան. մինչդեռ Ռուսերէն՝ սպաննուեցան 25,000 հոգի:*

*Զմշկիկ, այսպիսի յաղթութեան մը լուրն առնելով, խորապէս արտմեցաւ. մասնակից եղած չէր անոր:*

### ԺԳ. — ԶՄՇԿԻԿԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ. — ՓԱՌԱՍԹԼԱՒԱ՝ ԵՐԿՈՒ ՕՐՈՒԱՆ ՄԷՋ ԱՌՆՈՒԱԾ. — ԱՐՔՈՒՆԻՔԸ ԲՈՑԵՐՈՒ ՄԷՋ. — ՅՈՎՀԱՆՆՈՒՊՈԼԻՍ:

*Բոլոր ձմեռ՝ պատրաստութեամբ անցուց Զմշկիկ, զօրացնելով մանաւանդ Բիւզանդական նաւատորմիղը։ Երբ եկաւ գարունը, պատերազմի եղանակը, Զմշկիկ, զէնքերը օրհնել տալէ վերջ, խաչի գրօշը ձեռքին, Հեմոս լեռնէն Բուլղարիա դիմեց։ Բանակին առջեւէն՝ Անմահից գունդը կ'երթար, յետոյ կու գային հինգհարիւր հետեւակներ, և երեքտասան հազար հեծեալներ։*

*Թմբուկներու, ծնծղաներու, փողերու ռազմագրգիռ աղմուկով՝ Փառասթլաւա քաղաքին վրայ յարձակեցաւ։ Յանկարծ դռները բացուեցան և Ռուսերը — հեծեալ, հետեւակ, ու ռամիկ ամբոխը, — միանգամայն Զմշկիկի բանակին վրայ խուժեցին։ Մինչդեռ անոնք կոյր եռանդով կը կռուէին, Զմշկիկ զօրագունդ մը անցուց իրենց ետեւ, քաղաքին մուտքը արգիլեց, և ութ հազար հոգի սպաննեց։ Երկրորդ օր, բարձր բլրի վրայ կանգնած, Վասիլ Սենեկապանի նոր բերած բանակը ցուցնելով՝ Զմշկիկ պերճ ճառախօսութեամբ մը՝ Ռուսերը անձնատուր ըլլա-*

լու յորդորեց։ Անոնք մերժեցին. յարձակողականի նշանը տուաւ. սանդուխներ բարձրացան. քաջեր վեր խուժեցին, ներս մտան, դռները բացին։ Անխնայ կոտորած մը սկսաւ. տուները՝ բոցերով ծածկուած էին, փողոցները՝ արեամբ։ Արքունիքը սակայն միջնաբերդի պէս ամուր էր, և ութ հազար Ռուս հոն կեդրոնացեր էին։ Ի սկզբան դուռը բաց թողուցած էին, որպէս զի աւարառու զինուորներ ներս մտնեն, բռնուին, սպաննուին։ Զմշկիկ, նենգութիւնը իմանալով, չորս կողմէն պաշարեց զայն. առաջին յարձակողն ինքն եղաւ։ Ռուսեր յամառաբար կը դիմադրէին։ Տեսնելով Զմշկիկ՝ որ զէնքով արքունեաց տիրելու համար՝ շատ զոհեր պէտք է տալ, կրակ տուաւ արքունեաց. բոցեր շրջապատեցին զայն. ամէն Ռուս, որ փախչիլ փորձեց, սրախողխող եղաւ։ Վարդի գունդը միայն՝ եօթն հազար Ռուս սպաննեց։ Բուլղարաց Բորիս արքայն և իր ընտանիքը՝ անշուք տան մը մէջ գտնուելով՝ ուրիշ աւարներու հետ՝ Զմշկիկի բերուեցաւ։

Փարասթլաւա, իր տէրերուն հետ՝ անունն ալ փոխեց. ի յիշատակ երկու օրուան մէջ տարուած մեծ յաղթանակին՝ կոչուեցաւ Յովհաննուպօլիս։

ԺԴ. — ՏՐԻՍԹՐԱՅԻ ՊԱՇԱՐՈՒՄԸ. — ՄԵՆԱՄԱՐՏ ԱՐԱԲԱՑԻՈՑ ԵՒ ՌՈՒՍԻ. — ՉՄՇԿԻԿ՝ ՌՈՒՍԱՑ ԻՇԽԱՆԸ ՄԵՆԱՄԱՐՏԻ ԿԸ ԿԱՆՉԷ. — ՊԱՏԵՐԱԶՄ. — ՅԱՂԹԱՆԱԿ։

*«Դէպ ի Տրիսթրա» ըսաւ Չմշկիկ իր զօրքերուն՝ առանց անոնց հանգիստ շնորհելու։ Հոն ամրացած էր Վլինցէսլաւ, Ռուսաց ընդհանուր հրամանատարը։*

*Ճանապարհին վրայ՝ աւրեց Չմշկիկ բերդերու, գիւղերու, աւաններու. իր յառաջապահները, — երեք հարիւր հեծեալ, — յաղթեցին եօթն հազար Ռուսի։ Քաղաքէն քիչ հեռու՝ երկու մեծ բանակները բաղխուեցան իրարու. պատերազմը տեւեց առաւօտէն մինչեւ խոր գիշեր. բաղդը՝ տատանելով անգամ փոխուեցաւ։ Չմշկիկ, սուր ի ձեռին, ամենուն առջեւէն թշնամեաց մէջ կը նետուէր ու կը հնձէր. ամենէն ահեղ կատարածը իր շուրջ կ'ըլլար, իր համար։ Յաղթանակը Յոյներ տարին. կայսրը շնորհակալութիւն մատոյց Ս. Գէորգի, որուն տօնն էր, իր գինակցութեանը համար։ Կոստանդիա, շրջակայ քաղաքները, ահաբեկ, իրենց բանալիները ղրկեցին Չմշկիկի։*

*Մինչդեռ կայսրը նաւատորմիղին կը սպասէր Տրիսթրայի վրայ ընդհանուր յարձա-*

կռուոյ սկսելու համար, Ռուսերու բազմու-թիւն մը դուրս խուժելով յանկարծ՝ զինք կռուի բռնադատեցին։ Յանդգնութեան պա-տիժը ահաւոր եղաւ. մեծագոյն մասը ջար-դուեցաւ, անոնց մէջ՝ Սփաքէլ, Վինցէսլաւէն վերջ՝ ամենէն նշանաւոր զօրավարը։ Ռու-սեր քաղաք փախչիլ ուզեցին, բայց Զմշկիկ գունդ մ'անցուցած էր իրենց ետեւ և քա-ղաքին մուտքը արգիլած. ամէնքն ալ սպա-նուեցան։

Վինցէսլաւ, իր պաշարին անբաւականու-թիւնը տեսնելով, փոթորկալից գիշերուան մը հովանւոյն տակ, երկու հազար հոգւով նաւակ մտաւ, անցաւ Յունաց նաւատորմղի մէջէն, շրջակայ գիւղերու կողոպուտով ա-ռատ պաշար հաւաքեց՝ և նոյն վտանգալից ճամբով քաղաք մտաւ։ Յոյն ծովակալը հա-զիւ ազատեցաւ Զմշկիկի զայրոյթէն։ Վրէժ առնելու համար՝ յարձակման սկսաւ. մե-քենայները՝ պարիսպներ կը փշրացնէին, իր զինուորները՝ ռազմիկներ։ Յովհաննէս Գուրգէն, կայսեր հօրեղբօրորդին, մեքենայ մը Ռուսերու յարձակման դէմ պաշտպանած ժամանակ, նիզակի հարուած մ'ընդունեցաւ լանջքին վրայ, և անշնչացած ինկաւ։ Ա-նեմաս Արաբացին, թշնամեաց գունդերը

ճեղքելով, յարձակեցաւ Իգմոր ոսոխ զօրավարին վրայ. երկու բանակները, վայրկեան մը գործադուլ ըրած, քաջաց բաղխումը դիտեցին. յանկարծ ցուպին ապտակ մը բարձրացաւ Ռուսերէն. Անեմասի մէկ հարուածը՝ գետին փռած էր Իգմորի գլուխն և մէկ ուսը: Այս միջադէպը վհատեցուց Ռուսները, որոնց կոտորածը դադրեցաւ՝ գիշերուան միջամտութեամբ: Մթութեան մէջ կը լսուէին անդադար՝ ոռնալու ձայներ, որ սաստիկ տխուր տպաւորութիւն մը կը գործէին յոյն ռազմիկներուն վրայ. Իգմորի թաղման հանդէսը կը կատարուէր. մարդիկ և աքաղաղներ զոհեցին իր գերեզմանին վըրայ: Պաշարի պակասը բռնադատեց զՎինցէոլաւ վերջին և յուսահատ յարձակում մ'ընելու. գետնի անհաւասարութիւնը աննպաստ ըլլալով Յունաց, Զմշկիկ կեղծ փախուստով մը՝ զիրենք դաշտը ձգեց, յետոյ ետ դարձաւ, և ամենէն առաջ նետուեցաւ թշնամեաց մէջ: Վայրկեան մը կայսեր կեանքը կորսուած համարուեցաւ. Հայկական գունդ մը սակայն զինք շրջապատեց, բուռն կռուէ վերջ ազատեց: Յուլիսի օր մ'էր, խղդուկ տաք. տակառներով ջուր և գինի կը հասցնէին Զմշկիկի ռազմիկներուն՝ որոնց ծա-

բանը սակայն՝ միայն արիւնհեղութեամբ կը մարէր։ Մինչ ամէն ոք իր ախոյեանին հետ կ'ոգորէր, Թէոդոր, հեծեալներու զօրավարը, գլորեցաւ իր ձիուն ներքեւ. սպանուելու վըտանգի մէջ՝ Ռուսի մը գօտիէն բռնեց եւ զայն քաշկռտելով՝ գործածեց իբրեւ վահան՝ մինչեւ որ օգնութեան հասան։ Խառնուրդը ժամերով տեւեց. երկու բանակներն ալ յոգնեցուց, բայց յաղթութիւնը ո՛չ մէկուն ընծայեց։

Զմշկիկ, դիւցազներգական քաջութեամբ վառուած, Ռուսաց Վինցէսլաւ իշխանին հրաւէր ղրկեց միայնակ իրեն հետ մենամարտի գալու, եթէ ասպետական հոգի ունի, եթէ կ'ուզէ մէկ հարուածով երկու բանակներու բաղդը վճռել։ Վինցէսլաւ՝ որուն հասած էր Զմշկիկի առասպելական ճարպկութեան եւ անձնական քաջութեան համբաւը, այսպէս պատասխանեց. « Թշնամիէս խորհուրդ չեմ ընդունիր. եթէ Յունաց կայսրը ձանձրացած է կեանքէ, կրնայ մեռնելու ուրիշ միջոցներ գտնել »։

Զմշկիկ, զայրացած, թշնամեաց կեդրոնին վրայ յարձակեցաւ այնպիսի թափով՝ որ չանդրադարձան անոնք թէ նոյն պահուն Վարդ Սքլերոս իրենց բանակին ետեւը կ'անց-

նէր և քաղաքին մուտքը կ'արգելուր : Կա-
տապուլթինը երբէք բարձրագոյն աստիճանի
հասած չէր՝ երկու թշնամեաց մէջ ալ : Ա-
նեմաս Արաբացին, իր առաջին յաջողու-
թենէն խրախուսուած, Վինչէսլաւի վրայ
յարձակեցաւ, և զայն ձիէն վար գլորեց.
բայց թշնամիներէն պաշարուելով՝ սպանուե-
ցաւ : Իր զօրքերուն՝ վհատելու ժամանակ
չառաւ Զմշկիկ. գոռաց, կայծակի նման սլա-
ցաւ գունդերու մէջէն, սկսաւ Ռուսերը կո-
տորել. նոյն պահուն փոթորիկ մ'ալ ելաւ,
որոտում, կայծակ, փայլակ, անձրև, հողմ՝
որ ջուրով և փոշիով Ռուսերը կը կուրա-
ցնէր : Տեսան Բուզանդացիք օդին մէջ ճեր-
մակ ձիաւոր մը, Ս. Թէոդորը, որ կայսեր
աջ կողմը անցած՝ կ'օգնէր անոր՝ Ռուսեր
ջարդելու : Յուսահատաբար սկսան դէպ ի
քաղաք փախչիլ. ճամբան գոցուած էր. Վարդ
նոր ջարդ մը տուաւ : Տասն և հինգ հազար
Ռուս մեռան. քիչեր, որոց մէջ Վինչէսլաւ,
լեռներու և դաշտերու մէջ ցրուելով, կրցան
կեանքերնին պահպանել : Ամէն յոյն վէրք
ընդունած էր, բայց մեռան՝ միայն 350 հո-
գի. (971):

Ռուսեր հաշտութիւն խնդրեցին Զմշկիկէն՝
խոստանալով յանձնել ոչ միայն Տրիսթրան,

այլ ամբողջ Բուլղարիան, միայն թոյլ տալու իրենց՝ անվտանգ հայրենիքնին դառնալ։ Վլինցէոլաւ և Զմշկիկ, պարտեալն և յաղթականը, նշանաւոր տեսակցութիւն մ'ունեցան, ուր Հայ կայսրը խոստացաւ ամենայն պաշտպանութիւն ընել Ռուսաց։ Բայց Պացինակները՝ ճանապարհին վրայ սպաննեցին զՎլինցէոլաւ։ Յետ զՏրիսթրան Թէոդորուպօլիս անուանելու, որովհետև Ս. Թէոդոր մեծ մասն ունեցած էր այս յաղթութեան մէջ, կայսրը դիմեց ի Բիւզանդիոն։

Անպատմելի եղաւ ժողովրդեան խանդավառութիւնը՝ երբ լսեցին թէ կայսրը յաղթած է և կը դառնայ Պօլիս։ Բոլոր Բիւզանդիոն զարդարուեցաւ՝ խռնելով Ոսկեղէն դրան առջև։ Ոսկեշող յաղթական կառքը, որուն չորս ճերմակ նժոյգներ լծուած էին, կը սպասէր կայսեր։ Այն պահուն երբ Զմըշկիկ երևցաւ, պսակ ի գլուխ, ճերմակ օդապար նժոյգի վրայ հեծած, շրջապատուած պատերազմական դրօշակներէ, զօրավարներէ, գերիներէ, վաշտերէ, երկու կողմէն աղաղակներ մթնոլորտը թնդացուցին. ժողովուրդը կը ծափահարէր, կեցցէներ կ'աղաղակէր. զօրքեր յաղթութեան և ռազմի երգեր կը հնչեցնէին, արթնցնելով Զմշկիկի

սրահին մէջ փափագը՝ փոխելու ճամբան, պանդալու դէպ ի պատերազմ, դէպ ի փառաց դաշտը։ Զմշկիկ չկրցաւ առանց սարսափի տեսնել սիրոյ այն ցոյցերը՝ զոր ժողովուրդը կ'ընէր. բոլոր Բիւզանդիոն արքունիքի երեւոյթ առած էր, ամէն փողոց՝ պաճուճի. ամէն կողմ փռուած էին գորգեր՝ և անոնց վրայ դափնիներ։ Զմշկիկ յաղթական կառքին մէջ դնելով Բուլղարիայէն բերած Ս. Աստուածածնայ արձանը, նժոյգով շրջան ըրաւ բոլոր քաղաքին մէջ, կոխելով միշտ գորգեր, ծաղեր, դափնիներ. յետոյ Ս. Սոփիա մտաւ, շնորհակալ եղաւ Աստուծոյ, և Բուլղարաց արքունական թագը՝ եկեղեցւոյ նուիրեց։

Բուլղարիան, հին և ահեղ թշնամին, իր անկախութեան նահանգներէն մին եղաւ։ Այս աշխարհակալութիւնը նշանաւոր է պատմութեան մէջ՝ իր քաղաքական կարեւորութեամբն և կէս տարուան մէջ՝ այնքան երագարար կատարուած ըլլալուն համար։ Զմշկիկ՝ Բարիոս գահազուրկ հռչակելով՝ իր պալատականներէն մին ըրաւ զայն, ինչպէս ըրած էր նախնիքներէն մին՝ Տիգրան Բ. իր յաղթած թագաւորներուն։

ԺԵ. — ԱՐԱԲԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ. — ՀԱՅ ԿԱՅՍՐԸ ԵՒ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԸ. — ԶՄՇԿԻԿ ԲԱԲԵԼՈՆԻ ՄՕՏ. — ԵՐԿՐՈՐԴ ԱՐՇԱՒԱՆՔ. — ԱՍՈՐԵՍՏԱՆ, ԼԻԲԱՆԱՆ, ՊԱՂԵՍՏԻՆ ԸՆԿՃՈՒԱԾ։

Այս դարուն, ուր ամէնէն տիրապետողը — գաղափարներուն մէջ — կրօնականն էր, Արեւելքի պատերազմը նկատուած էր ոչ այնքան իբրեւ քաղաքական խնդիր մը, որքան պայքար մը՝ քրիստոնէութեան և իսլամութեան։ Պաղտատու Արաբներ, Եգիպտացիք, Պարսիկները դաշնակցութիւն մը կազմաւորած էին, համիսլամական ձկտումներով, և 100,000 զօրք ուղարկած Անտիոքայ վրայ։ Զմշկիկ կը ծրագրէր, իր կարգին, աշխարհակալութիւն մը, որուն համեմատ նախ պիտի առնէր Երուսաղէմայ, Քրիստոսի սուրբ գերեզմանը պիտի ազատէր, պիտի առնէր Պաղտատ, որ Արաբացւոց քաղաքական կեդրոնն էր, և անկից Մեքքէ։

Անտիոքը Արաբացիներէն ազատելու համար՝ Միջագետքի զօրքերը հոն կեդրոնացուց, նոր բանակ մ'ուղարկեց Նիկողայոս պատրիկին հետ, և մէկ պատերազմով ոչնչացուց թէ՛ թշնամեաց բանակն և թէ՛ դաշնակցութիւնը (970)։

Բուլղարական պատերազմէն յետոյ կրկին յարձակողականը սկսաւ Արաբացւոց դէմ. Մլեհ սպարապետը՝ Եդեսիան աւերեց, Մծբինը առաւ, Տիգրանակերտը պաշարեց. տասը բնակիչներէն 400 հոգի, օգտուելով փոթորիկէ մը՝ որ յոյն վրանները Տիգրիս կը թափէր, և փոշիէ մառախուղ մը կը սփռէր օդին մէջ, յոյն բանակին վրայ յարձակեցան և անոր մէկ մասը կոտորեցին։ Այս գործը առնելով՝ կայսրը պատերազմի դաշտը իջաւ։ Կ՚ուզէր Միջագետք մտնել՝ Տարօնի ճամբով։ Հայ ժողովուրդը հաշտ աչքով չէր տեսներ՝ յոյն բանակին անցքը իր երկրէն։ Աշոտ Ողորմած՝ 80,000 զօրքով Եփրատի ափանց վրայ բանակեցաւ. իրմէ զատ՝ կային հոն ուրիշ չորս թագաւորներ. Փիլիպպէ՝ Կապանի, Գուրգէն Ա՝ Աղուանից, Աբաս՝ Կարսի, Սենեքերիմ՝ Արծրունեաց. Հայ թագաւորը պատրաստուած էր պատերազմ մղել հայ կայսեր դէմ, եթէ նա ո՛ և է վնաս հասցնէր իր երկրի ամբողջականութեան։ Զմշկիկ՝ Մուշ քաղաքը մտաւ և բանակը դրաւ Այծեացբերդի առջեւ. ամբողջ գիշեր, Սասունի հետեւակայունը յարձակումներով նեղեց յոյն զօրքերը։ Երկրորդ օր բանակցութիւնք սկսան. Զմշկիկ ծանոյց՝ թէ իր նպատակն

ուրիշ բան չէր՝ բայց եթէ անհաւատից դէմ կռուիլ։ Աշոտ տասն հազար ընտիր զօրքեր ընծայ բրաւ կայսեր՝ առատ պաշարի հետ։ Զմշկիկ՝ Մուշէն ելնելով, կայծակի երագութեամբ կը յառաջէր. տիրեց Տիգրանակերտի, Նփրկերտի, Մէլտինի, Մծբնայ. մօտեցաւ Պաղտատի. Հոս կ'իշխէին Պուխթիար ամիրապետը և Ալ-Մոթի խալիֆայն, երկուքն ալ զուարճասէր և անկարող։ Կայսեր մերձաւորութիւնը այնքան սարսափ, յուզում, ապստամբութիւն պատճառեց, որ խալիֆայն ստիպուեցաւ հրաժարական տալ։ Պաղտատի գրաւումը Զմշկիկի առաջին արշաւանքին պսակը պիտի ըլլար. բայց կայսրը նահանջեց՝ ջուրի և պաշարի պակասութենէն բռնադատուած։ Իր քաջագործութիւնքը այնքան հռչակուած էին՝ որ արաբացի կանայք «Զըմըշկիկ»ի անունը կու տային, իրենց տղաքը սարսափեցնելու համար։

Զմշկիկ յաղթանակաւ Պօլիս մտաւ. թէպէտ Բաբելոնի բանալիները իր հետ չէր բերեր, ինչպէս կը փափաքէր, բայց տէրութիւնը երբէք աւելի զօրաւոր եղած չէր Ասիոյ մէջ. — Պաղտատու ամիրապետը՝ հարկատու գրուած էր կայսեր։

Զմշկիկ, բարեկամ Գերմանիոյ, որուն

կայսրութիւն անուանուած էր Թէոփանոյի (համանուն նշանաւոր Թագուհւոյն դստեր) հետ, Արեւելքէն վերադարձած պահուն՝ քաղաքականութեան դիրքը փոխուած գտաւ։ Գերմանացիք Հռոմայ գահուն վրայ դրած էին զԲենեդիկտոս Է. հալածելով զԲոնիփակիոս Է. որ Յունաց ընտրեալն էր։ Զմշկիկ, մրէժխնդրութեամբ վառուած՝ կ'ուզէր իր տէրութիւնը բաժնել Հռոմէն, և այս պատճառաւ, — ինչպէս գիտել կու տայ Նֆէրը գերմանացին, — պաշտօնընկէց ըրաւ Վասիլ պատրիարքը, որ համամիտ չէր իրեն՝ զայն ամբաստանելով կայսերական կեանքին դէմ դաւաճանած։

Բայց եկեղեցական խնդիրները՝ ձմեռ ժանակ միայն կրնային զբաղեցնել զԶմշկիկ. գարունը պատերազմի փողերը հնչեցուց, ու նա մեկնեցաւ Արեւելք՝ իրագործելու համար աշխարհակալութիւնը՝ որ իր գաղափարականն եղած էր։

Պաղեստինի արշաւանքը, զոր յետոյ ամբողջ Եւրոպա հազիւ կրցաւ միացեալ ոյժերով ի գլուխ հանել, և զոր Թասսոյ պիտի դիւցազներգէր, եղած էր այն նպատակը՝ որուն պիտի հասնէր Զմշկիկ, իր զէնքերու շնորհիւը միայն։ Այս երկրորդ ար-

շուանքի թէ՛ դիւցազնը և թէ՛ պատմագիրը՝ է Զմշկիկ ինքնին ։ Նա երկայն նամակ մը ուղղեց Հայոց Աշոտ Թագաւորին (ցարդ մնա- ցած՝ Մատթէոս Ուռհայեցւոյ քով) ուր կը պատմէ մի առ մի իր պատերազմները։

Ցեա փոքր աւաններու և գիւղերու տի- րելու, որոնք իրեն բացակայութեան ժամա- նակ Արաբացւոց անցած էին, յարձակեցաւ Մծբնայ վրայ, տիրեց անոր, հարկ և գե- րիներ առաւ, ու բազմաթիւ գանձերով, — որոնց մէջ Ս. Յակոբայ նշխարները, — մտաւ անապատ՝ զոր ընդարձակեց։ Բայց Ամիր- էլ–Մումնի եգիպտացին կը սպասէր Զմշկիկի ճանապարհին վրայ՝ ինչպէս ոռնալլուկ ա- ռիւծ մ'իր որսին ։ Խառնուրդը գազանային մոլեգնութեամբ տեղի ունեցաւ. ի սկզբան յաղթական էին Արաբացիք. Յոյներ վտան- գուեցան, բայց հուսկ ուրեմն յաղթեցին։ Եմեսացիք, Զմշկիկի հաւատարիմ, ուրախու- թեամբ ընդառաջ ելան իրեն. Պաալպէք, Հաւրուան, երեւելի և ամուր քաղաք, յանդըգ- նաբար դիմադրելու պատրաստուեցաւ ։ Բնա- կիչները, նոյն իսկ քաղաքէն հեռու, պա- տերազմ մղեցին Զմշկիկի դէմ, բայց յաղ- թուելով՝ պարիսպներու մէջ ամփոփուեցան. Յոյներ տիրեցին Պաալպէքի և ա՛յնքան կո-

տարած ըլլին, որ Դամասկոսցիք, ընդառաջ ելան իրեն. Աֆթէքին ամիրային, որ կու գար ժողովրդեան առջեւէն, վար իջաւ ձիէն՝ գետինը համբուրեց։ Զմշկիկ սիրով ընդունեցաւ և հրամայեց իր հեծեալներուն հետ՝ ձիախաղ մ՚ընել դաշտին մէջ։ Հանելով Աֆթէքինի ասպետական ճարտարութեանց՝ անոր նիզակը և նժոյգը յիշատակ ուզեց. Արաբացի էմիրը, այս պատուին համար՝ յուզուած, վար նետուեցաւ ձիէն ու նորէն գետինը համբուրեց։ Փոխադարձ ընծաներ տրուեցան իրարու։ Հաւատարմութեան խոստումներով և 40,000 պահեկանով՝ Զմշկիկէն խաղաղութիւն ստացան։ Զմշկիկ՝ քրիստոնեայ դարձած Պաղտատցի մը, Թուրք անուամբ, Դամասկոսի իշխան դրաւ. յետոյ մտաւ Ս. Երկիրը։ Ուխտի և աշխարհակալութեան կ՚երթար միանգամայն. թող չտուաւ որ իր զինուորները աւարառութիւն ընեն Տիբերիոյ, Նազարէթի, Դեկապօլսոյ, Գեննեսարեթի մէջ՝ որ անձնատուր եղան. նոյնը ըրին Ռամլէ, Պտղոմայիս, Կեսարիա։ Արաբացիք, Զմշկիկը դարանի մէջ ձգելու համար, հետագայ ռազմագիտութիւնը գործածեցին. միջնաշխարհի ճանապարհը ազատ թողլով, ծովեզերեայ քաղաքները ամրացան.

այսպէս եթէ կայսրը Երուսաղեմի վրայ դի-մէր, որուն բնակիչները արդէն նուիրակ ղրկած էին՝ հարկատու գրուելու համար, զինքը պիտի պաշարէին նախէն ու փակէին անապատին մէջ։ Կայսրը անդրադարձաւ ի-րենց դիտումները, և յետ հիւսիսային քա-ղաքները նուաճելու, ծովեզերքի գիծը բռնեց։ Յարձակեցաւ Պէրութի վրայ, տիրեց, հա-զար Արաբացի գերի բռնեց, որոնց մէջ Նա-սըր. Ամիր-էլ-Մումնի զօրավարը։ Սիդոնա-ցիք, իր մերձենալը լսելով, քաղաքին ծե-րերը նուիրակ ղրկեցին. Բիբլոսն կամ Գիւ-պլոս բերդաքաղաքը՝ կռուով առնուեցաւ։ Տրապօլսի շրջակայ այգիներն և ձիթաստան-ները արմատախիլ եղան. Արաբացիք աւե-րածը արգիլել ջանացին, բայց կատաղա-ծով քաղաքը փախան։ Անձնատուր եղան Սիհուն, Բալանէա, Ջուրզա, Աքըր, Գա-բաւոն, ուր Զմշիկ Քրիստոսի սրբազան հո-ղաթափը, Քրիստոսի հրաշագործ պատկեր մը, և Ս. Յովհաննէս Մկրտչի մազերը գտաւ. զանոնք որոշեց Պօլիս տանիլ՝ մայրաքաղա-քը թշնամիներէն անառիկ ընելու համար։ Բոլոր Պաղեստին, Ասորիք, Լիբանան ընկ-ճուած էին եօթն ամսուան մէջ, ի բաց ա-ռեալ Տրիպոլիսն և Երուսաղէմը։ Արաբացի-

ները այս տեղերէն հանելու համար՝ Զմշկիկ Սկիպիոնի հնարագիտութիւնը գործածեց․ ուղղակի դիմեց անոնց կեդրոնին՝ Պաղատանի վրայ։ Կլիմայի ջերմութեան պատճառաւ՝ հիւանդանալով, ստիպուեցաւ, յետ այնքան մօտ հասնելու նպատակին, դառնալ դէպ ի Բիւզանդիոն, իրեն տեղ՝ Վարդը թողլով Արեւելքի մէջ։

ԺԶ․ — ՏԽՈՒՐ ԳՈՒՇԱԿՈՒԹԻՒՆ․ — ԹՈՒՆԱՒՈՐ ԲԱԺԱԿԸ․ — ԶՄՇԿԻԿԻ ՄԱՀԸ։

Յաղթանակներու այս տարեշրջանին մէջ գիսաւոր մ'երեւցած էր երկնքին վրայ, և ութսուն օր, իր ներկայութեամբ, քաղաքացիները սարսափեցուցած։

Կայսրը խորհուրդի կանչեց ժամանակին ամենէն հեղինակաւոր աստղագէտները, որոնց գլխաւորն էր Սիմէոն, Նիկոմեդիոյ եպիսկոպոսը, իմանալու համար՝ թէ ինչ դիտումով եկած էր ան։ Ամէնքը կայսեր մահը կը նախազգային, բայց տխուր ճշմարտութիւնը ծածկեցին իրմէ։

Զմշկիկ սակայն հրամայեց իր գերեզմանը շինել՝ արքունեաց Ս․ Փրկիչ եկեղեցւոյն մէջ։ Փոխանակ ժամանակաւոր պալատներու՝

լուացոյն կը համարէր յօրինել, իր ճաշակին համեմատ, այն ապարանքը՝ ուր ընդ միշտ պիտի բնակէր։ Գերեզմանը աւարտելու մօտ էր՝ երբ նա կը դառնար Բիւզանդիոն։ . . .

Կիլիկիոյ դաշտավայրերը հմայիչ պատկերներ են, երբ մին Տաւրոսի բարձունքէն՝ մէկ նայուածքով հորիզոնը կ'ընդգրկէ։ Մշակուած արտեր, արծաթափայլ գետեր, հովուական տեսարաններ՝ անոնց ափունքին վրայ, կը զմայլեցնէին Զմշկիկը իր ամէն քայլին։ Յաճախ կը հարցնէր՝ թէ որո՞ւն կը պատկանէին այդ գեղեցիկ պարտէզներն և արտերը։

— Վասիլ Սենեկապանի, կը պատասխանէին միշտ։

— Ի՞նչ. գոչեց հուսկ ուրեմն Զմշկիկ բարկութեամբ, անպիտան ներքինիի՞ մը համար է որ կայսրներ և բանակներ այնքան նեղութիւն կը կրեն. ներքինի մը հարստացնելո՞ւ համար է որ ժողովուրդը կ'աղքատանայ, և այնքան երիտասարդներ իրենց կեանքը կու տան։ Այս երկիրներուն մէկ մասին՝ Նիկեփոր տիրեց, միւսին՝ ես, ու միւսին՝ սպարապետն Մլեհ. Վասիլի՞ մը համար ուրեմն այնքան աշխատեցանք օտար երկիր-

ներու մէջ ։ Անարգ ներքինի մը հարստա-նա՛յ, ու տէրութիւնը աղքատութենէ սա-տակի՛ » ։

Վասիլ Մենեկապանի լրտեսները՝ այս խօսքը իսկոյն հաղորդեցին անոր ։ Ժողովըր-դասէր էր Զմշկիկ, աղքատներու բարեկամ, կալուածատէրերու թշնամի ։ Մենեկապանը՝ միակ միջոց մը կը տեսնէր փրկութեան. — Զմշկիկը սպաննել ։

Կայսրը, Բիւթանիա հասնելով, ուզեց իր այցելութեամբ պատուել զԹոմանոս՝ Լեկա-բենոսի թոռը ։ Նիկոմիդիոյ ծոցին վրայ, որ հին ժամանակ Ասքանիոյ լճակ կը կոչուէր, նա ունէր շքեղ ամարանոց մը Աբրաս կո-չուած ։ Բիւզանդացի կալուածատէրը, ի պա-տիւ իւր յաղթական կայսեր, խնջոյք մ'ը-նել տուաւ իր գլխաւոր պարտէզին մէջ ։ Ծառերու կանաչ խումբերու մէջէն ի յայտ կու գար, խաղաղ ու ժպտուն, Աս-քանիոյ լճակը, որ կ'երկարէր, բիւրեղեայ գետի մը նման, ալեձեւ կանաչութեանց եր-կու հեղեղներու մէջէն ։ Խնջոյքի ամենէն զուարթ պահուն՝ սեւ ոճիր մը կը կատա-րուէր. — երբ ամէն ոք բաժակը կը բարձրա-ցնէր ի կենդանութիւն կայսեր, Զմշկիկ կ'ըմ-պէր թոյնը՝ զոր վարձուած ներքինի մը դրած

նր իր բաժակին մէջ։ Երկրորդ օր Զմշկիկի հոգեվարքը սկսած էր. անդամները ընդարմացեր էին. կ'այրէր ջերմով, աչքերէն առատ արիւն կը ժայթքէր, ուռեցքներ ելած էին ուսին վրայ։ Հրամայեց փութով Կոստանդնուպոլիս տանիլ զինք և իր գերեզմանին շինութիւնը աւարտել։ Պալատ հասնելով՝ ողորմութիւն բաժնել տուաւ աղքատաց, հիւանդաց, բորոտներու. յետ խոստովանելու Ադրիանուպոլսոյ Նիկողայոս եպիսկոպոսին, հոգին աւանդեց (10 փետր. 966)։

Ժողովուրդը՝ Վասիլ Սենեկապանէն թունաւորուած կը համարէր զինք. յայն և արդի պատմիչները այդ կարծիքն ընդունած են։ Աւելի հաւանական չէ՞ սակայն որ Թէոփանոյի որդիքները, թագաւորելու տարիքին հասած, իրենց մօրը վրէժխնդիր թելադրութեամբ, դաւաճանած ըլլան հայ կայսեր դէմ, — իր բացակայութենէն օգտուելով, — և Վասիլ Սենեկապան, իր ապագայ տէրերուն հաճոյ ըլլալու համար, գործակցած ըլլայ անոնց, մանաւանդ որ Ապուլֆարաճ յայտնապէս կ'ըսէ թէ Զմշկիկի թունաւորողն եղած է Թէոփանոյի եղբայրներէն մին։ Սակայն Շլիւմպէրժէ, — արուեստով՝ բժիշկ, — Զմշկիկի հիւանդութեան արդիւնքները ի նը-

կատի առնելով, անկարելի՛ կը համարի որ թունաւորուած ըլլայ, որովհետեւ այդ երեւոյթները ո՛չ մէկ թոյնի յատուկ չեն. Հետեւաբար իր հիւանդութիւնն ուրիշ բան չէր, բայց եթէ մին՝ ջերմի այն արատանջ տեսակներէն, զոր Ասիայէն իր հետ բերած էր։

Մեռած պահուն՝ յիսուն և մէկ տարեկան էր Զմշկիկ. Թագաւորած էր վեց տարի և մէկ ամիս։ Այս փոքրիկ ժամանակամիջոցը բաւական եղած էր իրեն՝ պատմութեան մէջ անմահանալու, իբրեւ Բիւզանդիոնի Աղեքսանդրը։ Մեծ ու Փոքր, կ'ըսէ Ապուլֆարաճ, լացին իր մահուան վրայ։ Յովհաննէս Երկրաչափ իր դամբանականը խօսեցաւ։ Ժողովուրդը աղմկաւոր ընդունելութեան մը պատրաստուած, յուղարկաւորութիւն կը կատարէր. — բայց անշուշտ ամենէն շքեղ յաղթանակն է, թագաւորի մը համար, այն յուղարկաւորութիւնը՝ ուր կ'արտասուէ ամէն աղքատ և ամէն զինուոր։



# ԺԱ

# ՎԱՍԻԼ Բ. ԲՈՒԼՂԱՐԱՍՊԱՆ

(976–1025)

---

ՆԻԿԵՓՈՐ ԵՒ ԹԷՈՓԱՆՈՅ. — ԹԱՏՐԵՐԳԱԿԱՆ ՏԵՍԱՐԱՆ ՄԸ ՊԱԼԱՏԻՆ ՄԷՋ. — ԱՐՀԱՒԻՐՔԻ ԳԻՇԵՐ ՄԸ. — ՆԻԿԵՓՈՐ ԿԱՅՍՐ։

*Վասիլ Բ. մին է այն ճարտարապետներէն՝ որ պալատ մը ատարտման մօտ կը գտնեն, և յետ պսակը աւելցնելու, իրենց անունը կ'անմահացնեն՝ ճակատին վրայ զայն արձանագրելով։*

*Իր դարու մեծագոյն գործը ըրաւ, թէպէտ մեծագոյն հանճարը չէր։*

*Բիւզանդիոնի քաղաքական Ոսկեդարու նախերգանքը՝ որ սկսած էր լուսիլ Նիկեփորի ժամանակ և որ տակաւ կը զօրանար Զմշկիկի գահուն շուրջը, յաղթական երգի*

ուժգնութիւնը պիտի առնուր. — մին արշալոյսը տեսած էր, միւսն առաւօտը, բայց Վասիլ Բ.ի պահուած էր ամբողջ օրը վայելել։

Թշնամեաց մտքին մէջ նա կը ներկայանար իբրեւ Մահուան անձնաւորումը, իբրեւ գերագանցօրէն դահիճ և պատմութեան մէջ ալ պիտի յաւէրժանար՝ Բուլղարասպան տիտղոսով։ Այս բառը, իբրեւ գովեստ գործածուած, կը պատկերէ քստմնեցուցիչ եղանակաւ, մարդկութեան վայրենագոյն նախապաշարումներէն մին. — սպանութիւնը կը պարսաւուի, երբ անոր զոհը եզակի է, կը գովուի՝ երբ բազմաթիւ է. այսպէս չարիքը կը պատժուի՝ քիչ եղած ժամանակ, և պէտք է աճի՝ վարձատրութեան արժանանալու համար։ . . . Այս դիտողութիւնը կարելի է ընել, մասնաւորապէս Վասիլի առթիւ, որուն քաջութեանց հետ՝ անգթութեան հաճոյքը միացաւ միշտ։

Վասիլ Բ. այն խառնուածքներէն մին էր, որ կրակէ մարդիկ կը նկատուին ժողովրդենէն, իսկ ընտապատումներէ՝ առհաւութիւն մը՝ մարդկային զազանային անսանձ վիճակին։ Ծայրայեղ եռանդուն էր ան, գործունէութեան ամենէն ընդարձակ ասպարէզին մէջ նետուած,

քոց մը՝ բայց ոչ անապատի, այլ անտառի մը մէջ։ Իր հոգեկան այս տրամադրութեան վրայ՝ երկու ազդակք ներգործեցին. իր արիւնը, և իր դաստիարակութիւնը։

Որդի Ռոմանոս Կրտսերի և Թէոփանոյի, իր նախկին տարիներու մէջ՝ վայելքի բնազդը միայն կը զգար։ Հինգ տարեկան էր նա՝ երբ Ռոմանոս Բ. մեռնելով, Վասիլ Բ. կայսր հրատարակուեցաւ հռոմէական պետութեան, (963ին). կառավարութիւնը Թէոփանոյի յանձնուեցաւ. այն թագաւորները, որ խնամակալներու տակ կը մեծնան, անհոգ բնաւորութեան մը կը դաստիարակուին, ո՛չ միայն պարագայներու բերմամբ, այլ նոյն իսկ իրենց խնամակալներու փառասիրութեանը պատճառաւ։ Այսպէս եղաւ նաև Վասիլ Բ.ի. փոխանակ իր բնական եռանդը դէպ ի բարին ղեկավարելու, զինքը մղեցին դէպ ի հաճոյքներ. և Վասիլ, երջանկութեան արբեցութեանը մէջ, մոռցաւ ամէն մտածում՝ ապագայի և համբաւոյ։

Թէոփանոյ սակայն՝ որ իր սիրելիները փառքէն վեր կը դասէր միշտ, վճռած էր Նիկեփոր Փոկասի հետ ամուսնանալ։ Տէրութեան բարիքը յիրաւի ճիշդ այն կը պահանջէր՝ ինչ որ Թէոփանոյի սիրտը։ Նիկե-

փոր ամենէն ատելի մարդն էր, — Բիւզան-դիոնի թշնամեաց համար։ Բայց Բրինգաս, հզօր պալատականը, Նիկեփորի նախանձորդ, Թագուհւոյն զգացումները անդրադառնալով, լոյսին դառնալու վախէն շանթահար, մեքենայեց եղեռնաւոր ծրագիր մը՝ որուն երկու պարբերութիւնները աւանդուած են մեզի. — Նիկեփորը կուրացնել, պաշտօնանկ ընել, աքսորել։

Թագուհւոյն հոմանիին բաւական չէր՝ Նիկեփորը այնքան ազդեցիկ ախոյեանէ մ՚ազատելու. և Արաբացւոց յաղթականը, որ, ինչպէս ամէն բիւզանդացի, աւելի կը փափագէր սուրբ և ճգնաւոր անուանուիլ քան դիւցազն, կեանքը ազատելու համար՝ կատակերգական դեր մը ստանձնեց։

Մարմնոյն վրայ խարազ մը հագուեցաւ, անոնց վրայ նետեց իր զօրավարի շքեղագոյն զարդերը, յետոյ տեսակցութիւն մը խնդրեց Բրինգասէն։ Վտանգ մը կասկածելով՝ սա միայն մէկ թիկնապահի հրաման տուաւ Նիկեփորի ընկերել։ Բիւզանդացի զօրավարը, իր դերը բնական կերպով կատարելու համար, նուազկոտ դէմք մը առաւ՝ ուր կեանքի խոր ձանձրոյթ մը կը զգացուէր։ Ցետ իշխանին ներկայանալու, յայա-

նեց իրեն թէ խնդիրք մ'ունէր ընելիք. խընդիրք մը՝ որ անշուշտ չէր զլացուեր իրեն՝ յանուն Բիւզանդիոնի մատուցած բազմամեայ ծառայութեանց։ Աշխարհքիս ունայնութիւնքը՝ զզուեցնելու տեղ, ըսաւ նա, անյատակ պաղութիւն մը կը պատճառեն իրեն. կ'ուզէր հրաժարիլ անոնցմէ, և միայն երկնաւոր Թագաւորին ծառայել։

Տարիներէ ի վեր զգացեր էր այդ փափագը, բայց տէրութեան բարւոյն համար՝ յետաձգած. հիմա ժամանակն էր իր մարմինը մահացնելու, և իր մեղքերուն վրայ արտասուելու։

Այս խօսքերէն վերջ՝ զգեստը պատռեց և ցցուց լանջքին վրայ՝ խարազը։

Բրինգաս, որուն համար սեւեռում մ'եղած էր՝ Նիկեփորի վրայ երեւակայած չարութիւնն ու նենգութիւնը, սթափեցնող անակընկալի մ'առջեւ կը գտնուէր հիմա. ո՜հ, ի՜նչ եղեռներ ընծայած էր այդ զօրավարին, որ այնքան հակառակ մտածումներ կը սնուցանէր, որ այնքան անմեղ էր, երկինքը միայն երազող, բարեպաշտ ու սուրբ։ Ու Բրինգաս զգաց՝ որ ծունկերը կը թուլնային և աչքերը կը սքօղուէին արցունքով, իսկոյն գետին ընկաւ և Նիկեփորի ձեռքին վրայ

ճակատը զետեղելով, յուզեալ շեշտով մը՝ «Նե՛րէ՛» աղաղակեց։ Նիկեփոր մեծապէս գոհ իր գտած յաջողութեանը վրայ, յանպատրաստից կատարեց թագաւորութեան մնացեալ մասը՝ զոր կարող եղած չէր գուշակել։

Քանի մ՚օր յետոյ Բրինգաս, Պոլիքտոս Հայրապետը և ծերակոյտը՝ մեծ ժողովքէ մը վերջ՝ Նիկեփորը կը հաստատէին Արեւելքի զօրավար, և կառավարութիւնը իրեն կը յանձնէին։ Այս առթիւ իմացաւ Բրինգաս՝ թէ Նիկեփոր շատ միտում չունէր կրօնաւոր ըլլալու, և թէ իր վրայ ծիծաղած էր միայն՝ զանիկա առաջարկելով։ Տենդոտ կերպով գործունեայ, անցեալին վրայ ցաւելու տեղ, նորագոյն հնարք մը փնտռեց։ Չունենալով ի բնէ այնքան արժանիք՝ որ ուղղակի մըրցանքի մէջ նետուէր, երրորդ անձի մը վրայ ուզեց ձգել՝ իր միտումներէն ծնանելիք վըտանգներն և դժուարութիւնները։ Իրեն գործիք ընտրեց երկու հայ զօրավարներ, իրկու եղբօր որդիք, Յովհաննէս Ձմշկիկ և Ռոմանոս Գուրգէն. առաջինոյն՝ Արեւելքը կը խոստանար, երկրորդին՝ Արեւմուտքը, իրենց զօրավարի հանճարը՝ աշխարհիս առջեւ դեռ աւելի փայլեցնելու համար։

Հայ զօրավարները՝ մէկ ձեռքին մէջ բա-

ցուած նամակը, միւսին մէջ մերկացած
սուրը բռնելով, Նիկեփորի վրանը մտան,
ու գոչեցին. «Մեռի՛ր, կամ կայսր եղիր»։
Յետ ի սկզբան դիմադրութիւն ցուցնելու,
ինչպէս սովորութիւն էր Բիւզանդացւոց մէջ,
Հուսկ ապա յանձն առաւ անոնց առաջարկը,
և սրարշաւ Խրիւսոպոլիս հասնելով՝ բանա-
կեցաւ Բիւզանդիոնի դիմաց։ Գիշեր էր. քնոյ
և լռութեան տեղ՝ Բիւզանդիոնի ամէն փո-
ղոցի մէջ ամբոխի մ'աղաղակը, զէնքերու
ձայնը, մեռնողներու հառաչը կը լսուէր.
քաղաքին այլեւայլ կեդրոններու մէջ հըր-
դեհներ կը ճարակէին յանկարծ։ Բիւզան-
դիոն զէնք առած էր Բրինգասի դէմ. նա
մէկը կը փնտռէր՝ անոր կայսրութիւն տա-
լու համար, բայց ոչ ոք զայն կ'ընդունէր՝
... իր ձեռքէն։ Միայնակ մնացած, այս
կորովի մարդը, յուսահատելու տեղ, բոլոր
քաղաքին սպառնաց սովամահ ընել զիրենք։
Ժողովուրդը դեռ աւելի կատղեցաւ, և Վաս-
լի — Լեկաբենի անհարազատ որդւոյն — ա-
ռաջնորդութեամբ, յարձակեցաւ Բրինգասի
կուսակիցներուն վրայ։ Խումբ՛ խումբ կը թա-
փառէին փողոցներու մէջ, «Մահ Բրինգա-
սի» կը գոռային, «Մահ իր կուսակիցնե-
րուն», մինչդեռ հեռուն կը լսուէր ուրիշ

երիտասարդ բազմութեան մը ձայնը, որ կը նուագէր Հայրենասիրական երգեր՝ Նիկեփորի Արաբացւոց դէմ տարած յաղթանակներուն վրայ շարայրուած. և աստղերը, կապոյտին մէջ խոնուած, իրենց գլխուն վերեւ, կարծես այդ յաղթանակները կը համրէին։ ... Վասիլ Լեկապենեանը, որ աւելի գործ ընել կ'ուզէր քան խանդավառութեան ցոյցեր, խռովութեան վայրկեանէն օգտուելով, նաւահանգստին վրայ յարձակում կ'ընէ, կը տիրէ մի քանի նաւերու և կ'անհետանայ Խրիսոպոլսի ուղղութեամբ։

Քաղաքին մէջ կը շարունակուին աղմուկները, հրդեհները, սպանութիւնները. ամէն ոք իր անձնական վրէժը կ'առնու՝ Բրինգասի կուսակից անուանելով իր թշնամին՝ զոր ժողովուրդը կտոր կտոր կ'ընէ։ Յանկարծ աղմուկը կը բիւրապատկի, և թափառական խումբերը կ'աւետեն իրարու Նիկեփորի գալուստը. «Կեցցէ կայսրն Նիկեփոր» պատասխանը կ'ըլլայ այդ աւետիքին. Ժողովուրդը կը յորդէ, կը խռնի, կը կեդրոնանայ նաւահանգիստը, ուր յիրաւի դարձած էր Վասիլ՝ Նիկեփորը իր հետ բերելով։

Մահուան քրտինքը ցուրտ կաթիլներ կը սրսկէ Բրինգասի ճակտին վրայ. ո՞ւր փախ-

չիլ. նոյն իսկ եթէ կեանքը կարենար փրկել,
ի՞նչ բանի պիտի ծառայէին իր օրերը. — ա-
խոյեանին փառքը ցուցնելու: Ցետ մի քանի
վայրկեան տարտամ կենալու, ուր իր սիր-
տը «Ըլլա՞լ թէ չըլլալ» մենախօսութիւնն
ըրաւ յանպատրաստից, կեանքի սէրը յաղ-
թեց իր հոգւոյն մէջ: Իսկոյն ծպտեցաւ և
մի քանի հաւատարիմներու հետ դիմեց դէպ
ի Ս. Սոփիա, անցնելով այն բազմութեան
մէջէն՝ ուր ամէն մարդ իր պահիճն էր: Ջու-
գադիպութիւն մը՝ իր փրկութիւնը ապահո-
վեց: Երբ Նիկեփորի ապստամբութիւնը լը-
սուեցաւ, իր Վարդ հայրը՝ վախնալով Բրին-
գասէն՝ Ս. Սոփիա ապաւինած էր: Բազմու-
թիւնը յաղթանակաւ զինք դուրս կը հանէր
մայր եկեղեցիէն, երբ Բրինգաս ներս մտաւ:
Ոչ մէկ դէպք աւելի լաւ կերպով չի բացա-
տրեր բիւզանդական բաղդի յեղափոխութիւն-
քը, քան այս երկու թշնամեաց հանդիպումը՝
Ս. Սոփիայի սեմին վրայ: Ամբոխը, որ գրա-
ւած էր Վարդին ցոյցեր ընելու, չանդրադար-
ձաւ թէ կը թողուր որ իր մեծագոյն թշնա-
մին փախչի:

Նիկեփոր կայսր հրատարակուեցաւ. Բրին-
գաս աքսորուեցաւ Փոքր Ասիա: Թէոփանոյ
իր հարսանեաց վրայ կը մտածէր, բայց եր-

կու մեծ արգելքներ կ'ընէին ընդառաջ․ կրկին ամուսնութիւնը արգիլուած էր Յունաց մէջ, և Նիկեփոր կնքահայր եղած էր Թէոփանոյի որդիքներէն միոյն ։ Այս երկու պարագաները եկեղեցական մեծ յուզումներ յառաջ բերին, բայց ամուսնութիւնը կատարուեցաւ հաստատապէս, և զայն վաւերական ընելու համար՝ պալատականք ուրացան՝ թէ Նիկեփոր երբէք Թէոփանոյի որդիքներէն միոյն կնքահայրն եղած ըլլայ ։ Հարսանեաց շքեղութիւնը եպականութիւն մը կ'երևար նոյն իսկ այդ արքունեաց մէջ, որ կարող էր, պարսկականին նման, Երջանկութեանց պալատը կոչուիլ ։ Բուզանդացի պատմիչներ, որ ծիծաղելի պառնալէ չեն վախեր, մանրամասնութիւն մը կը յիշեն․ խնջոյքը շատ զուարթ երևոյթ ունէր, և Նիկեփոր, որ ուխտած էր միս բնաւ չուտել, զամէնքը գերազանցեց այդ մասին, և վրէժն առաւ այնքան երկար ծոմապահութեանց ։

Այս արհաւրալից օրերուն մէջ, Վասիլ Բ․ անշուշտ յաճախ դողաց իր կեանքին վրայ, որուն շուրջը կը կատարուէին այդ արիւնհեղութիւնք ։ Բարեբաղդաբար Բիւզանդիոյ բոլոր ժողովուրդը կը պաշտէր Արշակունեաց հարստութիւնը, Վասիլի տոհմը․ և Նիկեփոր՝

գահու վրայ բարձրանալու ուրիշ միջոց չը-գտաւ, բայց եթէ ծանուցանել ինքզինք՝ փո-քրիկ արքային խնամակալը։

Բ. — ՎԱՍԻԼ Բ.Ի ԱՆՈՒԱՆԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ. — ՀԱՅ ԹԻԿՆԱՊԱՀՆԵՐՈՒ ԿՌԻՒԸ. — ՀԱՅ ՁԻՆՈՒՈՐՆԵ-ՐՈՒՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ. — ՏԱՐՕՆԻ ԻՇԽԱՆՆԵՐՆ ԵՒ ՆԻ-ԿԵՓՈՐ. — ՎԱՍԻԼ Բ. ՄԻԱՅՆԱԿ ԳԱՀՈՒՆ ՎՐԱՅ։

Վասիլ Բ. Պերփեռուժէնի պէս, այնուհե-տեւ երկու իրաւունք միայն ունեցաւ. կայսեր անունը կրել՝ և պալատին մէջ բնակիլ։ Կը ձգար իրեն՝ իր անհատական երջանկութիւնը մտածել։ Պերփեռուժէնի և իրեն մէջ այս խտիրը կար միայն՝ որ նա գրագէտի բնա-ւորութիւն ունէր, մինչ Վասիլ անհանդարտ և կենսասէր ոգի մ'էր, և իր զբաղումներն ալ պէտք էին անոր համապատասխանել։ Հանդիստատեսն եղաւ Նիկեփորի գործերուն, որոնց օրինակը այնքան գեղեցիկ արդիւնք-ներ պիտի ունենար իրեն համար։

Նիկեփոր ժողովրդեան կուռքն եղած էր՝ ցորչափ պատերազմի դաշտին վրայ կը գըտ-նուէր. պալատին սեմը հազիւ կոխած էր՝ սկսաւ ատուիլ։ Իր ագահութիւնը բաւական էր իր բոլոր ձիրքերը մոռցնելու. ժողովուր-

գը, զոր իր թշնամիներէն կ'ազատէր, իր տուրքերէն կը տանջուէր. Արաբացիները կը հալածէր նա՝ որպէս զի կողոպտելու նիւթ մնայ իրեն։ Բիւզանդիոնի կայսր մը շրջապատուած էր միշտ՝ Արեւելքի և Արեւմուտքի ճոխութիւններէն. Նիկեփոր սակայն, խնայողութեան համար, խարդախ դրամ կը գործածէր։ Ուրիշ ոչ մէկ կայսր մտածած չէր այսպիսի օրինակ մը տալ իր հպատակաց...։ Իբրեւ պատերազմի բարեկամ, և դրամի սիրահար, կը համապատասխանէ Մօրիկի. իր անունն ալ նոյնպէս, միշտ անիծուեցաւ ժողովուրդէն. երկուքն ալ կը յայտարարէին՝ թէ տէրութեան բարւոյն համար այսպէս կը վարուէին, բայց արդէն ոչ մէկ չարիք աշխարհիս կը ներկայանայ՝ առանց բարւոյն դիմակն անցուցած ըլլալու։ Հոգեկան ուրիշ նմանութիւն մ'ունէր Մօրիկի հետ. — հակադրական էր. արգիլեց՝ եկեղեցականաց կատակ ընել. «Ինչո՞ւ եպիսկոպոսներուն տալ այն գումարները, կ'ըսէր նա, և ոչ աղքատներու և հայրենեաց զինուորներուն. նոր զարդարանքի՞ կարօտ են այժմեան եպիսկոպոսները . . .»։ Եկեղեցւոյ կալուածները գրաւեց, պատճառ բերելով թէ վանականներ և քահանայներ կը գեղձանին անով, և

յայտարարեց թէ այնուհետեւ տէրութիւնը թոշակ պիտի կապէր եկեղեցականաց:

Աղքատութիւնը տիրած էր ժողովրդեան մէջ, յանդուգն ծերունի մը հանճարեղ կերպով կայսրը հեգնեց այս բանին համար:

Օր մը երբ նա բանակին առջեւ անցած իր զինուորները կը հրահանգէր, գողգոջուն ծերունի մը՝ գաւազանի մը վրայ յեց, կայսեր մօտեցաւ.

— Կը փափաքէի զինուոր գրուիլ, ըսաւ, նա:

Այս առաջարկը ամբողջ բանակը զուարթացուց, որուն չափազանց ուշ կը թուէր այդ հասակին մէջ՝ փառքի ասպարէզին մէջ նետուիլ:

— Գովելի փափաք, ըսաւ Նիկեփոր, կը կատարեմ զայն՝ թէ որ բաւական ոյժ կը զգաս դեռ պատերազմի մէջ մտնելու:

— Տէր արքայ, ըսաւ նա, ես կ՚անդրադառնամ՝ որ ոյժս տարիքիս հետ կ՚աճի: Ըստացուածքներս, զորս առաջ երկու էշ բաւական չէին կրելու, հիմակ ես միայնակ կարող եմ ուսիս վրայ կրել:

Երկու օրէնք ուզեց հաստատել Նիկեփոր, որ շատ չէին տարբերիր իրարմէ. եպիսկոպոսները կ՚ուզէր ինք որոշել, և արքայութեան բնակիչներն ալ ինքն ընտրած ըլլա-

լու համար , հրամայեց պատերազմի մէջ մեռնողները սրբացնել և տօնել ։

Նիկեփոր ուսեալ էր, բայց զինուորական նիւթերու վրայ միայն կը գրէր ։ Պատերազմական արուեստի վրայ գիրք մը ունի որ հասած է ձեռքերնիս, և որուն մէջ հետաքրքրական կտորներ ունի՝ հայ զինուորներուն մասին ։ Նա կը գանգատի հայ պահապաններուն վրայ , որոց վրայ կարելի չէ վստահիլ . կը ձանձրանան իրենց պաշտօնէն, անհոգութիւն կ'ընեն. նա յաճախ Հայաստանի քաղաքի մը մօտ կռուած ժամանակ՝ բնիկներէն մասնաւոր գունդեր կազմած է՝ պահպանութեան համար . բայց անոնք ալ թոշակը կ'առնուն, և պաշտօնին անուշադիր կը մնան ։ Նիկեփոր իրաւունք ունի այս գանգատը ընելու որովհետև Լևոն Հայկազն, — ուրիշ դէպքերուն մէջ այնքան քաջ, — պահպանութեան մէջ լաւագոյն ձիրք մը ցոյց չէր տար ։ Եւքայիտեանց գիւղին մէջ գտնուած ժամանակ՝ այնքան զբօսանքի անձնատուր եղաւ , որ Արաբացիք յարձակեցան, գրաւեցին ամբողջ գումարը որ ամիսներ առաջ պէտք էր բաժնուած ըլլալ զօրքերուն՝ իբրև թոշակ ։

Ընդհակառակն Նիկեփոր՝ յարձակման

համար հարկաւոր կը տեսնէ հայկական գունդեր։ Խառնուրդի նախորդ օրը պէտք է այդ ուժով և կորովի մարդիկները՝ թշնամեաց բանակը ղրկել. ա՛յնքան թափով և ճարտարութեամբ կը կռուին, որ ողջ ողջ թշնամիները բանակը կը բերեն և զանոնք տանջելով՝ կարելի է տեղեկութիւններ ստանալ։ Հայկական այն գունդերը՝ Նիկեփոր Թասինարիի (τασινάριοι) կամ Թասինաքիա կը կոչէ, որ ըստ իրեն, հայերէն բառ մ'է և լրտես կը նշանակէ։ Տեսանողք բառէն մերձաւորագոյն մը չենք գտներ՝ այս խօսքը լուսաբանելու համար. արաբ և պարսիկ բառարանները նման ձայն մը չունին՝ «զինուորական լրտես» իմաստով։

Նիկեփոր որուն հայազգի ըլլալը կարելի չէ հաստատել որոշակի, բայց կ'ընդունուի իբրեւ հաւանականութիւն մը՝ եւրոպացի գիտնականներէն — մանաւանդ որ մօր կողմէն ազգական էր Զմշկիկի և իր հայրը Վարդ կը կոչուէր, — բազմաթիւ դէպքերու մէջ՝ իր հայասիրութիւնը ցցուց։

Կայսեր թիկնապահ գունդը, զոր կը կազմէին հայազգի հսկաներ, գժտած էր նաւական զօրաց հետ. տարբեր ցեղերէ ձուլուած բանակի մը մէջ բնականաբար պիտի

չպակսին ատելութիւն, մրցակցութիւն և նախանձ։ Այս անգամ սակայն խնդիրը՝ քաղաքական կռուի կերպարանք առաւ. փողոցի մը մէջ իրարու հանդիպեցան Հայ և նաւասորմղի զօրքերը, երբ կը դառնային Ս. Սոփիայէն, ուր նոր կատարած էին զատկական արարողութիւնները. նախատեցին զիրար, յետոյ սուրերը մերկացուցին՝ և իրարու վրայ յարձակեցան. արիւնը փողոցը կ'ողողէր. դիակներ կ'ընկնային երկու կողմէն. ոչ ոք կը համարձակէր՝ զինուած խումբերուն մէջ նետուելու։ Նիկեփոր Հայոց կողմը բռնեց, և այնքան որոշ եղանակաւ որ Բիւզանդացիք սկսան վախնալ թէ միգուցէ կայսրը՝ Հայոց վրէժը հանելու համար քաղաքացիները ջարդել հրամայէ, որովհետեւ ժողովուրդն ալ յաճախ փողոցի մէջ առիթ կ'ունենար հայ թիկնապահներու և զինուորներու հետ կռիւ ընելու. ասոնք իրենց ամեհի քաջութեան հետ՝ ունէին անգութ զեղծումներ. Յոյներ չէին հանդուրժեր անոնց ձեռք բերած չափազանց իրաւունքներուն։ Արդէն երբ դեռ զօրավար էր Նիկեփոր, Միջագետքի մէջ, առիթ ունեցած էր անոնց բնաւորութիւնը ճանչնալու. նա տիրեց արաբական քաղաքի մը՝ որուն բնակ-

չաց ներում խստացած էր. գերիներուն մէջ կային երեք հարիւր կանայք։ Հայ զինուորներ յարձակեցան անոնց վրայ. արաբները՝ իրենց կանայքը պաշտպանելու համար զէնքի դիմեցին, արիւնհեղութիւնը սկսաւ երկու կողմէն. Նիկեփոր հայերուն իրաւունք տուաւ, և թողուց որ բոլոր Արաբացի գերիները ջարդեն։

Այս անգամ ալ ժողովրդեան մէջ սարսափեցնող մրմունջ մը կը թափառէր՝ թէ կայսրը Բիւզանդացւոց յանդգնութիւնը պիտի պատժէ։

Քաղաքական հանդէսի մ'առթիւ՝ Նիկեփոր ուզեց պատերազմ ձեւացնել կրկէսին մէջ։ Ամբողջ ժողովուրդը խռնուած էր, առանց սակայն նախապէս հանդէսին այս նոր մասը գիտնալու։ Յանկարծ փողերու ձայնը հնչեց, դրօշակներ պարզուեցան օդին մէջ, և հեծեալներու երկու բանակներ՝ զենին պլպլեցնելով, սուրեր շողացնելով օդին մէջ՝ իրարու վրայ սկսան դիմել։ Այս յանկարծական տեսարանը սարսափ ձգեց կանանց վրայ, և ամէն կողմ ձայն մը սկսաւ լսուիլ. «Կոտորածը սկսաւ»։ Ամէնքը բազմոցներէն վար վազեցին, ծերք, տղայք, կանայք խառնիխուռն ու գոռալով՝ սկսան փախչիլ.

հովը մինչեւ հեռաւոր ափունքներ կը հասցնէր կանանց ճիչը, մարդկանց աղաղակը։ Ի զուր Նիկեփոր՝ ձայնին բոլոր ուժգնութեամբը կը գոչէր թէ վտանգ չկայ։ Ամէն ոք փախչելու զբաղած, ժամանակ չէր գըտնար ետեւ դառնալու և եղելութիւնը ստուգելու։ Ծերեր ու պատանիներ ոտնակոխ եղան, և հրապարակին վրայ մեռան. առջեւէն վազողները՝ անոնց ձայնը լսելով՝ դեռ աւելի կը հաստատուէին իրենց այն համոզման վրայ՝ թէ կոտորած սկսած է։

Վտանգը անցնելէն յետոյ՝ ժողովուրդը իր վրէժը առաւ՝ քարկոծելով ու նախատելով զՆիկեփոր անընդհատ՝ ամէն փողոցի մէջ՝ ուսկից կ՚անցնէր։ Կայսրը, երբեմն նիւթ ժողովրդական երգերու, հիմա անոնց երգիծաբանութեանց առարկայն եղած էր։ Կայսերական զգեստները միջակ անձի համար չափուած էին. Նիկեփոր այնչափ կարճ էր՝ որ կը թաղուէր անոնց մէջ, և ժողովուրդը կը հեգնէր այն դերձակները՝ որ չէին կրցած գուշակել թէ ինչպիսի անշուք կայսր մը կրնար գալ ապագային։

Արտաքին քաղաքականութիւնը հակապատկերն էր ներքինին։ Կայսրը անձամբ Արաբացւոց դէմ գնաց, նոր հարուածներ

տալու։ Երբ Մանազկերտի քով կը գտնուէր, Տարօնի իշխանները Գրիգոր և Բագրատ, որդիք Աշոտի, իրեն ներկայացան և իրենց գաւառը կայսեր ընծայելով պատրկութեան աստիճան և մեծամեծ կալուածներ ստացան թէպէտ Ռոմանոսի ժամանակ արդէն Տարօն, Հռովմայեցւոց հպատակած էր և իրենց Գրիգորիկ իշխանը, այս պատճառաւ, առատ թոշակ ստացած էր Լեկաբենոսէ՝ և ամուսին մը՝ կայսերական ընտանիքէ, հանդերձ ուրիշ բազմաթիւ առանձնաշնորհութիւններով՝ որ Աշոտ երկաթի նախանձը կը շարժէին, ինչպէս կ՚իմանանք Կոստանդին Պերփիւրոժէնի՝ Տէրութիւնը ինչպէս պէտք է կառավարել մատեանէն։

Նիկեփոր Եփրատայէն անդին անցաւ, Միջագետքի մէջ աւերակներ սփռեց, Արաբիոյ մէջ սարսափ, յետոյ Պոլիս դարձաւ՝ յաղթանակը կատարելու։ Բուլղարներուն պատերազմն ալ՝ յաղթութեամբ վերջացաւ։ Բայց Նիկեփորը, որ պալատին մէջ ճգնութեամբ կ՚ապրէր, ատելի եղաւ Թէոփանոյի. ու Զմշկիկի կայսրութիւն խոստացաւ, անոր սպաննել տալու իր ամուսինը, և զայն գահու վրայ բարձրացուց։

Վասիլ Բ.ի կեանքը փոքրիկ փոփոխու-

թլուն մ'ալ չէր կրած. Նիկեփորի տեղ՝ Զմշկիկի պիտի հնազանդէր։ Միայն իր մայրը, Թէոփանոյ, աքսորուեցաւ պալատէն, որովհետեւ հայրապետը այդ պայմանաւ միայն յանձն կ'առնուր կայսր ճանչնալ զԶմշկիկ։ Առանձինն խօսեցանք սոյն դիւցազին փառահեղ կեանքին վրայ, որ այնքան եղերերգական մահով վերջացաւ։ — Զմշկիկի վերջին վայրկեանին՝ ազատութեան ժամը հնչեց Վասիլ Բ.ի համար (976)։ Դեռ երեքտասան տարի իբրեւ անուն մը ապրելու, հուսկ ապա կ'անձնաւորուէր, և ինքզինք միայնակ կը գտնէր իր գահուն վրայ։ Այդ պահուն նոր հոգի մը, (որ եթէ Նիկեփորինը չէր կամ Զմշկիկինը՝ գէթ անոնց կը նմանէր), դիւցազնական հոգի մը, — փառքերու օրինակէն ստեղծուած, — կը մտնէր իր մեղկ մարմնին մէջ՝ և զայն պղնձի կը փոխարկէր։ Ազգունի նիրհած էր, տոհմ արթնցաւ։ Զուարթ պալատականը՝ բիրտ զինուորի փոխուած էր։ Զօրավար դարձաւ այն պահուն՝ երբ իրապէս կայսր կ'ըլլար։

Գ. — ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ. — ՀԱՅ ՍՊԱՐԱՊԵՏ ՄԸ ԿԱՅՍՐ ՀՌՉԱԿՈՒԱԾ. — ՎԻՊԱՍԱՆԱԿԱՆ ԴԵՐ ՄԸ. — ԼԵՌՆԱՅԻՆ ԱՒԱԶԱԿԸ. — ԽՆՁՈՅՔ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄ։

*Վասիլ Բ.ի Թագաւորութիւնը ապստամբութեամբ սկսաւ։*

*Վարդ Հայազգին, Սքլերոս կոչուած, սպարապետ Արեւելեան գունդերու, պաշտօնանկ հրատարակուեցաւ։ Հայ զօրավարը, առանց վրդովելու՝, փոխադարձաբար կայսրը պաշտօնանկ յայտարարեց։ Զինուորական ոյժը իր ձեռքին մէջն էր, բոլոր շրջակայ իշխանները իրեն կուսակից էին. ամէն պարագայ կը նպաստէր իր դիտումներուն, բաց ի մէկէ մը. իր Ռոմանոս որդին Պոլիս կը գտնուէր. Վարդ Սքլերոսի սիրտը կը ճնշուէր այն մտածման տակ՝ թէ իր փառքին համար՝ սիրելի որդւոյն կեանքը զոհ պիտի երթայ։ Պէտք էր նախ զայն գաղտնապէս ազատել իր թշնամեաց ձեռքէն. Անթէս անուամբ զօրավար մը, ճարտար ու տիրասէր, ստանձնեց այդ վիպասանական դերը։ Գունդի մը հետ Բիւզանդիոն փախաւ, և հոն սկսաւ ժողովուրդը պատերազմի գրգռել Սքլերոսի դէմ։*

*Ամէն տեղ դաւաճան ու բռնաւոր կ'անուանէր զայն, և իշխաններուն կը բացատրէր՝ թէ Հայ ապստամբը ինչ ծրագրի պի-*

տի ջետեւի։ Բոլոր Բիւզանդացիք այն հա-
մոզումը կազմեցին՝ թէ Անթէս տժգոհ է Սքլե-
րոսէն, օրինաւոր կայսեր դատը կը պաշտ-
պանէ, և իբրեւ տեղեակ հանգամանքներուն՝
պէտք է վստահիլ իր խորհուրդներուն վրայ։
Անթէս, իր հաւատարիմներու ձեռքով՝ իմա-
ցուց Ռոմանոսի որ փախստեան պատրաս-
տուի, յետոյ շարունակեց իր եռանդուն քա-
րոզները հայրենեաց վտանգաւոր թշնամւոյն
դէմ։ Ամէն կասկած քնացած տեսնելով,
յափշտակեց Ռոմանոսը և իր գունդովը միա-
սին Սքլերոսի բանակը հասաւ, ուր ընդու-
նուեցաւ մեծ ոգեւորութեամբ։

Վարդ Սքլերոս երկու բան հարկաւոր կը
տեսնէր յաջողութեան համար. — զինուոր
և դրամ։ Առաջինը առատօրէն տուին իրեն՝
Արաբացիք և մանաւանդ Հայեր որ առաջինն
եղան զՎարդ Սքլերոս կայսր ճանչնալու, և
որոնց կ՚առաջնորդէին Անդրանիկ Մոկացին
և Գրիգոր ու Բագրատ և Ռոմանոս Տարօ-
նեցիները։ Դրամը հայթայթելու համար ձեռք
առաւ այն միջոցը՝ զոր միայն լեռներու գա-
գաթը բնակող աւազակները սովոր են ընել.
կը յարձակէր հարուստներու վրայ, գերի կը
բռնէր և մեծ գումարներ ստանալէ վերջ
միայն զանոնք կ՚արձակէր։ Նիկոմիդիոյ ե-

պիսկոպոսը միջամտելու եկած ըլլալով, Վարդ Սքլերոս իր կարմիր մոյկերը ցցուց և ըսաւ.

-- Այս մոյկեր հագուողը՝ այլ ևս անկարող է զանոնք հանելու. — բոլոր աշխարհս իրեն կը նայի։ Քառասուն օր ժամանակ կու տամ կայսեր՝ որ իր ընելիքը մտածէ։

Վասլի բանակը յառաջ կու գար՝ Պետրոս Փոկասի հրամանատարութեան տակ. մասնական բաղխումի մը պահուն սպանուեցաւ հաւատարիմ Անթէս, Սքլերեանք յաղթուեցան, և հայ գերիները սպանուեցան՝ անգութ չարչարանքներով։

Սքլերոս այս պարտութեան վրէժն առաւ տիրելով Լիկանդի, ուր հայ գաղթականութիւն մը կը բնակէր։

Ախոյեան բանակները իրարու հանդիպեցան՝ առանց յանդգնելու յարձակողականը սկսիլ։ Վարդ, թշնամիները խաբելու համար մեծ խնջոյքի մը պատրաստութիւն սկսաւ տեսնել. Պետրոս Փոկասի լրտեսները իսկոյն հաղորդեցին սպարապետին՝ այս դիտումը։ Ծանր պարագայ մը թուեցաւ իրեն. իր Բուզանդացի զօրքերը, հեռուէն խորտիկներ և ըմպելիքներ տեսնելով՝ կըրնային հրապուրուիլ, և թշնամեաց կողմը

անցնիլ։ Վտանգին առջեւն առնելու համար՝ փութաց մեծագոյն խնջոյք մը պատրաստել։ Վարդ ալ ճիշդ այս բանիս կը փափագէր։ Յարձակեցաւ թշնամեաց վրայ, կոտորեց, փախուց։ Անտիոք քաղաքը և բազմաթիւ իշխաններ, անձնատուր եղան, նոյնպէս Ատալիոյ նաւատորմիղը՝ որուն ծովակալ անուանեց Քուրդիկ անուամբ հայ մը․ սա Յունաստանի կղզիներուն տիրեց և արգիլեց Պոլիս պաշար տանել. միայն այս հնարքը բաւական էր Սքլերոսի յաղթանակը ապահովելու, եթէ կայսերական նաւատորմիղը Աբիդոսի քով՝ Քուրդիկի նաւերը՝ բոցերու տակ չոչնչացնէր։

Վասիլ Բ. անբաւական տեսնելով Պետրոս Փոկասը՝ միայնակ Սքլերոսի դիմադրելու, Լեւոն զօրավարը ղրկեց Յովհան պատրկին հետ։ Անոնք զէնքերէ աւելի՝ ընծաներ բերած էին հետերնին, սպառնալիքի հետ՝ խոստումներ։ Վարդ՝ դեղթափը գտաւ անոնց ազդած հրապոյրին. բանակին մէջ կը պտտէր «Զօրականք իմ, գոչելով, թշնամեաց խոստումները մէկ մէկ քաջալերական պէտք են ըլլալ ձեզի մեր սկսած գործը ի գլուխ հանելու համար։ Ապստամբներու ընծայ բաշխելը՝ ուրիշ բան չնշանակեր, բայց եթէ զա-

նոնք նուաճելու ուրիշ միջոց չունենալ։ Ուրեմն, զօրականք իմ, եթէ այսպէս, մեծագոյն պատիւներ պատրաստ են ձեզի, փոքրագոյնին համար՝ մի՛ զարտուղիք ձեր ընտրած ճանապարհէն »։

Վարդի զինուորները՝ մեծաւ մասամբ Փոքր Հայքէն՝ և Կապադովկիայէն էին. Լեւոն, զիրենք պատժելու համար՝ յարձակեցաւ իրենց ծննդավայրին վրայ, գիւղեր, քաղաքներ կ'այրէր, ընտանիքներ գերի կը տանէր։ Ծնողական զօրովը մեծ ազդեցութիւն ըրաւ Վարդի կուսակիցներուն վրայ. որով յանձն կ'առնէին իրեն համար մեռնիլ. բայց երբէք խոստացած չէին իրենց եղբայրներուն կեանքն ալ իրեն զոհել։

### Դ. — ՌՈՄԱՆՈՍ ՏԱՐՕՆԵՑԻԻՆ ՊԱՐՏՈՒԹԻՒՆԸ. — ՀԱՅ ԶԻՆՈՒՈՐՆԵՐՈՒ ՍՊԱՆՈՒՄԸ. — ԲՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ ՋԱԽՋԱԽՈՒԱԾ։

Հայ սպարապետը, Լեւոնի հնարագիտութիւնը յաջողութեամբ պսակուած տեսնելով, անոր արշաւանքին առջեւ թումբ մը կանգնել որոշեց. Ռոմանոս Տարօնեցին և Վուրց իշխանին հրամայեց ընդ առաջ ելնել անոր՝ միայն արգելք ըլլալու համար անոր

ընթացքին, և ոչ եթէ պատերազմ տալու։

Ռոմանոս, թեթեւազէն գունդերով, հողմերու երագութեամբ, Կապադովկիա մտաւ՝ Լեւոնի բանակը փնտռելով։ Նա լերան մը ծայր կը գտնուէր. հանդիպակաց գագաթ մը իրեն բանակեաղ ընտրեց. Օքսիլիթոս դղեակը երկու բանակները կը բաժնէր իրարմէ։

Ռոմանոսի լրտեսները, այլեւայլ տարազներով ծպտած, կը թափառէին շրջակայ գիւղերու և լեռներու մէջ։

Երեկոյեան դէմ անոնցմէ մի քանին ներկայացան զօրավարի վրանին առջեւ՝ իմացընելով թէ կարեւոր լուր մը ունին հաղորդելիք։

— Հալէպի Արաբները վաղը պիտի անցնին մեր քովէն՝ կայսեր տանելու համար տուրքերը՝ զոր խոստացած են վճարելու։ Զինուորներու բազմութիւն մը գանձը կը պաշտպանէ ճամբուն վրայ։

— Եթէ կայսրը Վարդն է, ըսաւ Ռոմանոս, սխալ տեղ կը տանին տուրքերնին։ Իրաւունքը մեզ կը պատկանի. և այս պարագային մէջ՝ այդ գումարները մեզի մեծ ծառայութիւն կարող են մատուցանել։

Իսկոյն Ռոմանոս ժողովքի կանչեց իր ստորակարգեալ զօրավարները, ու խորհուր-

կը առաջարկեց անոնց քննութեան․ ընչա-
քաղցութենէ ոգեւորուած, ոչ ոք հակառակ
կարծիք յայտնեց․ որոշեցին թէ երբ պիտի
սկսէին յարձակումը, ինչ եղանակաւ, և
ինչ մեքենայութեամբք․ այնքան ապահով
էին իրենց յաջողութեան վրայ, որ, ապա-
գային ո՛ և է գժտութեան առիթ չտալու հա-
մար, որոշեցին նաև թէ իւրաքանչիւր զօ-
րավար և զինուոր ինչ բաժին պիտի ունե-
նար այդ գրաւումներէն։ Բաղդը սակայն այ-
լապէս վճռած էր։ Լեւոն գուշակած էր Ռո-
մանոսի դիտումները, ու պատրաստուած՝ ա-
նոնցմէ օգտուելու։ Երկրորդ առաւօտ արա-
բական բանակը կը նշմարուի հորիզոնին
վրայ․ Ռոմանոս կը սպասէ որ մօտենան․
հազիւ անոնք դղեակին քով հասած էին,
փողերու գոռումով, զէնքերու շառաչով, կա-
տաղութեան աղաղակներով, արիւնհեղու-
թեան գրօշակներով, լեռնային ժայռի մը
նման՝ կը գահավիժի Արաբացւոց վրայ։ Լե-
ւոնի սպասած վայրկեանն էր․ փողերու և
ռազմիկներու աղաղակով Ռոմանոսի բանա-
կին վրայ կը յարձակի, կը շրջապատէ, կը
շփոթեցնէ, կը ջարդէ։ Նա հրամայած էր
մասնաւորապէս հայ զինուորներուն բնաւ
չխնայել, որովհետև «Հայ» բառը, այս

շփոթութեան տարիներուն մէջ, Վարդի կուսակից կը նշանակէր։

Այս պարտութիւնը բարոյական մեծ ազդեցութիւն ունեցաւ Սքլերոսի հպատակներուն վրայ, անհրաժեշտ էր որ նա մեծ յաղթանակ մը տանէր, ոյժերու հաւասարակշռութիւնը գտնելու, իր զինուորներուն սիրտը վերստին ոգեւորելու, վերջապէս իր հաւատարիմներու մահուան վրէժն առնելու համար։ Ջախող դիպուած մը, որ մարդուն անվստահ ըլլալ՝ ապագային որոշ կերպով ծրագրել կը սովրեցնէ՝ յաճախ յաջողութենէ մը աւելի կ'արժէ։ Սքլերոս տագնապով կը գործէր, Լեւոն՝ անհոգաբար։ Եւ երբ երկու մեծ բանակները իրարու խառնուեցան, վճռական պատերազմը Սքլերոսի նպաստաւոր եղաւ։ Բիւզանդական բանակը, գարնանային կանաչութեանց մէջ, գեղջկական զերեզմանոցի մը երեւոյթն առաւ։ Յունաց բոլոր զօրավարները Օքսիլիյթի քովը մեռան, կամ գերի ընկան։ Վարդ Սքլերոս ոչ մէկ արգելք կը տեսնէր այնուհետեւ՝ իր ճանապարհին վրայ։ Հասաւ Բիւթանիա, պաշարեց Նիկիան. հոս կը հրամայէր Մանուէլ Կոմնենոս։ Մեքենայներէն յուսախաբ, սովի օգնութեանը դիմեց Վարդ. իր նպատակին

մօտ էր արդէն, երբ զայն կորսնցուց Մանուէլի մէկ հնարքէն խաբուելով։ Նա բազմաթիւ շտեմարաններ լեցուց աւազ պարունակող պարկերով՝ որոնց երեսը միայն ցորենով ծածկուած էր։ Յետոյ շրջեցուց Վարդի զինուորներէն մին, որ գերի բռնուած էր, իր աւազի շտեմարաններուն մէջ. «Տե՛ս, ըսաւ նա, ո՛րքան ցորեն ունինք դեռ, և դեռ ո՛րչափ կարող ենք դիմադրել. բայց որովհետեւ միշտ սիրով ապրած եմ Վարդի հետ, յանձն կ'առնում քաղաքը իրեն մատնել, պայմանաւ որ քաղաքէն կարենամ ելնել անվտանգ, հետս տանելով ինչ որ կ'ուզեմ»։ Եւ քիչ յետոյ ցոյց տուաւ թէ ինչ կը սքօղէր այս բացատրութեան տակ։ Որչափ զինուոր և հարստութիւն կար քաղաքին մէջ, Կոմնենոսի հետ Բիւզանդիոն գաղթեց։ Վարդ՝ Նիկիա մտաւ։ Իր գերիին առաջնորդութեամբ դիմեց նախ ցորենի շտեմարանները, զոր իր յաղթանակի լաւագոյն աւարը կը համարէր, և ուր մեծաքանակ աւազ միայն գտաւ։

Բիւզանդիոնի ժողովուրդը, տագնապալից անձկալութեան մէջ սուրհանդակներու կը սպասէր, կը խռնէր անոնց շուրջ՝ տեղեկութիւն մը կորզելու համար։ Գոյժերը երթալով կը մեծնային։ Օքսիլլյթի արիւնահեղ

խառնուրդէն յետոյ, երբ ժողովուրդը կը հարցնէր անոնց թէ ի՞նչ եղաւ պատերազմը, կը ստանային իբր պատասխան.

— Կայսերական բանակը ջախջախուած է։

— Պետրոս Փոկա՞ս.

— Սպանուած։

— Յովհաննէս պատրի՞կ.

— Սպանուած։

— Թէոդոր և Նիկետաս զօրավարնե՞րը.

— Կուրցած։

— Լեւոն, ընդհանուր սպարապե՞տը.

— Գերի բռնուած։

Այսպէս ո՛չ մէկ անուանի զօրավար ազատած էր նախատական ճակատագրէ մը. յուսահատ լքում մը տիրած էր ժողովրդեան վրայ. յանկարծ Նիկիոյ առումը գուժուեցաւ։ Մայրաքաղաքի աշտարակներէն՝ Բիւզանդացիք նշմարեցին Վոսփորի բլուրներուն վրայ ճերմակ վրաններու բազմութիւն մը որ աղաւնիներու երամ մը կը թուէր, կանաչութեանց մէջ թառած։

Հայ Թագապահանջը Պօլիս հասած էր։

## Է. — ԿՐՕՆԱՒՈՐ ՄԸ՝ ՎԱՐԴ ՍՔԼԵՐՈՍԻ ԴԷՄ ԴՐԿՈՒԱԾ. — ՎՐԱՑԻՆԵՐՈՒ ՔԱՋՈՒԹԻՒՆԸ. — ԵՐԿՈՒ ՍՊԱՐԱՊԵՏՆԵՐՈՒ ՄԵՆԱՄԱՐՏԸ։

*Առագաստանաւը՝ յունական արշիպեղագոսի եզերքէն սահած ժամանակ, կը նշմարէր՝ Քիոսի ծովափին վրայ՝ թափառական ստուեր մը, դալկահար դէմք մը, ուր ներանձնացման մելամաղձիկ նշոյլին հետ՝ յուսահատ կատաղութեան ամպը կը թափառէր։*

*Կրօնաւորի զգեստը կը կրէր ան, բայց զինուորներ կը պաշարէին իր շուրջ, հսկելով իր ամէն քայլերուն վրայ։*

*Աքսորեալ մ'էր ան։ Նաւորդները յուզմամբ մատնանիշ կ'ընէին Վարդ Փոկասը, Բիւզանդիոնի մեծագոյն զօրավարներէն մին, որ փորձած էր Չմշկիկը գահընկէց ընել, անոր թագը գրաւել, բայց բաղդէն մատնուած՝ դատապարտուած էր միայնութեան։*

*Աքսորեալ զօրավարը յաճախ անէծքներով կը կրկնէր «Վարդ Սքլերոս» անունը, որովհետեւ նա գործիք եղած էր Չմշկիկի՝ զինքը թշուառութեան խորը ձգելու համար։*

*Տարիներ անցան. նա արդէն ընտանեցած էր խաղաղ միակերպութեան, երբ նաւ մը կանգ առաւ կղզւոյն առջեւ. կայսեր սուր-*

Հանդակներ ծովափ ելան և յանուն Վասիլ Բ.ի զինքը ազատ հրատարակեցին պատժէ, սպարապետ անուանեցին, և հրամայեցին երթալ Վարդ Սքլերոսի դէմ, որ ապստամբած էր։ Վրէժխնդրութեան զգացումը ցոլաց կրօնաւորի դէմքին վրայ. ողջունեց սպարապետի զգեստները՝ որոնցմէ այնքան տարիներ բաժնուած մնացեր էր. նաւ մտաւ և գնաց Բիւզանդիոն։

Հոն սակաւաթիւ գունդեր միայն գտաւ, որոնք անկարող էին Սքլերոսի դիմադրել. յունական մեծ բանակը Կեսարիա կը գտնուէր, և անոնց մօտ երթալու համար՝ պէտք էր իր կեանքը վտանգի դնել. Սքլերոս ցամաքի ճամբաները գոցած էր, իր որդին՝ ծովու։ Վարդ Փոկաս, որ իր վրէժը յագեցնելու համար որոշած էր ոչ մէկու կեանքին խնայել, և ոչ իսկ իրենին, մութ գիշեր մ'ընտրեց, ծպտեցաւ, և նաւ մը մտնելով՝ թշնամիներու մէջէն և ամէն վայրկեան ձերբակալուելու և ծրագիրը կորսնցնելու վտանգի մէջ՝ անցաւ Վոսփորէն, և ցամաքէն սրարշաւ Կեսարիա գնաց։ Հաւաքեց գունդերը, բարեկարգեց, իր ներկայութեամբ ոգեւորեց զանոնք, և գնաց դէպ ի Վոսփոր՝ Սքլերոսը նաւէն պաշարելու, և մայրաքաղաքին կողմը մղելով երկու սուրի մէջ ձգելու համար զանիկա։

Բայց Վարդ Սքլերոսի լրտեսներն ամէն շարժում իմացուցած էին իրեն. լաւագոյն կը թուէր իրեն՝ թշնամի բանակներուն հետ առանձին կռուիլ և ջախջախել զանոնք՝ միանալէ առաջ։ Պաշարման բոլոր պատրաստութիւններն ընդհատելով՝ դիմեց Փոկասի դէմ, որ Ամորիում՝ քաղաքը հասած էր։

Հայկական գունդերը՝ որ Վարդ Սքլերոսի դատը կը պաշտպանէին, նախորդ բաղխումներու մէջ այնքան կոտորած տուած էին Յունաց, որ ասոնք իրենց բոլոր եռանդը կորսնցուցին՝ հեռուէն հայ ռազմիկները նշմարելով։ Որքան Փոկաս դիւցազն հանդիսացաւ, նոյնքան իր զօրքերը՝ վատ։ Ասոնք՝ տկար դիմադրութենէ մը յետոյ՝ փախչիլ սկսան։ Փոկաս միայն թշնամեաց մէջ նետուած՝ անոնց բանակը կ'ակօսէր. հեծեալներ գետին կը փռէր, վիրաւորներ ու դիակներ թողլով ետեւէն՝ նոր ճանապարհ մը կը բանար։ Մինչ զբաղած էր արիւնհեղութեան, ձիու մը քառատրոփ արշաւանքը լսեց իր ետեւէն. ետ դարձաւ նայելու. ճանչցաւ Կոստանդին Գարրասը, թշնամի զօրավարներէն մին, որ խառն մէջ զինք կը փնտռէր. երկու ախոյեաններն իրարու ուղղեցին խոժոռ նայուածքներ, սպառնալիքներ, հարուած-

ներ. մինչդեռ զիրար բռնած դաշոյնի տեղ մը կը փնտռէին զրահներու բացուածքին մէջ, Փոկաս ծռեցաւ, խոյս տուաւ և ետ դառնալով լախտի ծանր հարուած մ'իջեցուց Գաբրասի սաղաւարտին վրայ. զրահներու շառաչ մը լսուեցաւ և Գաբրաս գետին փռուեցաւ, քարի պէս անշարժ։ Սքլերոսի զօրքերը անկեալին շուրջը խուժեցին, անոր մարմինն ազատելու և վրէժ առնելու համար, բայց Փոկաս արդէն անհետացած էր. Գաբրասը վերուցին և իր վրանը տարին՝ ուր ուշաբերեցաւ և բժիշկներու յանձնուեցաւ։

Կայսերական բանակն արդէն սկսած էր կանոնաւոր նահանջ մը. յոյն զօրաց մէկ մասը ետ կը քաշուէր, միւսը՝ շարունակելով պատերազմիլ՝ անոնց փախուստը կ'ապահովէր։ Փոկաս գրաւեց Խարձեանի բերդը և հոն ամրացաւ։

Յետ նորանոր պատրաստութեանց՝ երկրորդ պատերազմ մը տուաւ Սքլերոսի դէմ, և երկրորդ պարտութիւն մ'ալ կրեց։

Փոկաս՝ Խաղտեաց իշխան եղած ժամանակ՝ բարեկամացած էր Դաւիթ Կիւրապաղատին հետ, զոր Ասողիկ հայազգի կը ներկայացնէ և Տայոց իշխան, իսկ Կեդրենոս՝ Վրաց իշխան (էջ 431)։

Սուրհանդակներ ղրկեց Դաւթի, խնդրելով Վրացի գունդերով օգնութեան գալ իրեն, և ըստ կարելւոյն շուտով։

Քիչ յետոյ հասաւ Դաւիթ քաջերու՛ բանակով մը՝ որ խրախոյս շնչեց պարտեալներուն։ Աքլերոս բանակած էր Փանքալիա ընդարձակ դաշտին մէջ, ուսկից Ալիւս գետը կ'անցնէր, և որ շատ յարմար էր հեծելագունդի շարժումներուն։ Իմանալով Փոկաս որ ապստամբը Արաբացիներէն օգնութիւն ուզած է, փութաց պատերազմ տալ՝ քանի որ նա դեռ զուրկ էր օգնութենէ։

Պատերազմը տեղի ունեցաւ անսովոր կատաղութեամբ։ Վրացի և յոյն գունդեր, մրցանքի մէջ գրուած, իրարու քաջութիւն կը ներշնչէին։ Խառնուրդը յանկարծ ընդհատեցաւ. երկու բանակները հաւասար քայլերով ետ սկսան նահանջել. զիրենք բաժնող անջրպետն երթալով կը մեծնար, կազմելով կրկէս մը. երկու ասպարապետները զիրար մենամարտելու հրաւիրած էին՝ այնքան երիտասարդներու անպարտ արիւնը ձրի տեղ չթափելու համար։

Թշնամի բանակներն անհամբերաբար երկու ախոյեաններուն կը նայէին, որ իրենց շքեղ տարազին մէջ, ոսկեզարդ նժոյգներու

վրայ, մոլեգնաբար իրարու վրայ յարձակած պահուն, գիւցազնի գաղափարը իրենց մէջ կը մարմնացնէին վսեմութեամբ։

Զինեալ հանդիսականներն աչքերնէն չէին վրիպեցներ ամենէն փոքրիկ շարժումը, ամենէն փոքրիկ հնարագիտութիւնը, և աղաղակներով իրենց վախը, ուրախութիւնը կը բացատրէին։ Մենամարտը քանի մը վայրկեան տարտամ մնաց երկու սպարապետներու ճարտարութեան շնորհիւ. բայց Փոկասի բանակը սարսափի բացագանչութիւն մ'ըրաւ, երբ Աքլերոս, որուն բանականութիւնը խուարած կը թուէր կատաղութենէն, ահեղ թափով մը դաշոյնը Փոկասի կուրծքին մղեց։ Փոկաս ծռեցաւ. «մեռա՜ւ» գոչեցին ամէնքը, մինչ նա յանկարծ վերականգնելով՝ թշնամւոյն վրիպած հարուածը հեգնեց, և լախտով այնպիսի հարուած մը տուաւ Աքլերոսի՝ որ նա անշշունչ իր ձիուն վզին վրայ ընկաւ և իր արիւնով երիվարը ներկեց։ Իր զօրականները փութացին զինք վար առնելու. դաշտին մէջ աղբիւր մը կը բղխէր. անոր մօտ տարածեցին Աքլերոսը. Ջրով ուշաբերել ջանացին զինքը և յորդահոս արիւնը լուացին։ Բայց իր արիւնաներկ ձին, Եգիպտոս անուամբ, սկսաւ բանակին մէջ

վազել միայնակ։ Հեռաւոր գունդերը՝ որ ե-
ղելութեան չէին կրցած ականատես ըլլալ,
Սքլերոսը մեռած կարծելով, տխուր դու-
շակութիւններով զիրար սարսափեցուցին և
փախչիլ սկսան։ Փոկաս բլրան մը կատարը
կանգնած՝ իր բանակը կարկառելու զբաղած
էր։ Թշնամեաց տագնապը տեսնելով հե-
ռուն, «Վայրկեանն է, ով քաջեր, գոչեց
նա, իջէ՛ք, ապահնեցէք. յաղթանակը թո՛ղ
մեր նախորդ պարտութիւնները քաւէ»։
Սքլերոսի բանակը՝ որ արդէն առանց թշնա-
մին իր եռեւն ունենալու տագնապալից կեր-
պով կը փախչէր, աննկարագրելի շփոթու-
թեան մէջ ընկաւ՝ Փոկասի բանակին աղմու-
կը լսելով։ Բազմութեամբ Ալիւս գետը կը
նետուէին և իրարու ճամբան գոցելով՝ միասին
կը խեղդուէին. գետափին վրայ տատամսող-
ները յանկարծ մահաբեր հարուած մը կ՚ըն-
դունէին, կամ կը տարուէին՝ շղթայի պար-
նուած՝ Փոկասի առջեւ։ Այսպէս շահեցաւ
Փոկաս յաղթութիւն մը, որ Եգիպտոս ձիուն
անունը պիտի անմահացնէր։

Փոկաս՝ փախստականներուն մէջ Վարդ
Սքլերոսը կը փնտռէր, բայց նա արդէն ա-
զատած էր, և իր Կոստանդին եղբօր և ե-
րեք հարիւր զինուորաց հետ կը դիմէր Նփըր-
կերա։

Թագապահանջը ամենախոր տխրութեամբ կը մտածէր ճանապարհին վրայ իր կորսուած կայսրութիւնը, փառքը, զորս շօշափելու չափ մօտեցած կը կարծէր։ Այնուհետեւ միայն մէկ յոյս մը կը մնար. — Պաղտատու ամիրային օգնութիւնն ուզել. այս նպատակաւ իր Կոստանդին եղբայրը ղրկեց առ Խոսրով ամիրայ Բաբելոնի (այս սխալ անունը կը գործածէ Կեդրենոս, յէջ 433), բայց պատասխան չը ստանալով, որոշեց՝ Թեմիստոկլի նման՝ անձամբ իր թշնամւոյն ներկայանալ (976)։

## Զ. — ՎԱՐԴԻ ԳԵՐՈՒԹԻՒՆԸ. — ՊԱՂՏԱՏՈՒ ԲԱՆՏԸ. — ԲՌՆԻ ԵՐԿՐՊԱԳՈՒԹԻՒՆԸ։

Պաղտատու ամիրան իր քաղաքականութեան համար ոչինչ կը տեսնէր աւելի փափաքելի՝ քան Սքլերոսի ապստամբութիւնը. թշնամւոյն ներքին երկպառակութիւնը նոյն արդիւնքը պիտի տար իրեն, և առանց զոհողութեան, ինչ որ երկարատեւ պատերազմներ, զորս պէտք էր իր ծախուք և իր զօրքերով մղել։

Արքունական պալատին մէջ՝ սարսափ ազդեց այն լուրը՝ թէ Վարդ Պաղտատու ամի-

րային դիմած է ։ Տէրութիւնը միացած կը տեսնէր երկու թշնամի, որոնց իւրաքանչիւրին առանձինն յաղթելու կը տարակուսէր։ Վասիլ Բ. իր փրկութիւնը հեռագայ քաղաքականութեան մէջ կը տեսնէր. — Պաղտատու ամիրային՝ մեծագոյն խոստումներով իր կողմը ձգել ։ Խոստացաւ անոր՝ բոլոր արաբ գերեալներն արձակել, միայն մէկ գերի մը խնդրելով իրմէն՝ իբր փոխանակութիւն. — Վարդ Սքլերոսը ։ Ամիրային յանձնառու եղաւ ապստամբը յանձնելու՝ եթէ Վասիլ Բ. ոչ միայն գերուած զինուորներն, այլ նաեւ գերուած քաղաքներն իրեն դարձնէր. խիստ պայման մը, որուն համակերպիլ չկարենալով Վասիլ՝ հռետորութեան դիմեց, գրելով ընդարձակ նամակ մը, որով կը պաշտպանէր՝ թէ թագաւոր մը պէտք է սկզբունքով հակառակ ըլլայ ո՛ և իցէ ապստամբի, և թէ՝ անհնազանդութիւնը պատուհասելը շահաւոր է միշտ իրենց, և հասարակաց պարտք թագաւորաց։ Պատգամաւորը՝ որ կը կոչուէր Նիկեփոր Ուրանիոս, այս նամակէն զատ՝ կը բերէր երկրորդ մ'ալ՝ Վարդ Սքլերոսի հացէին, լի յորդորներով՝ իր ապստամբութեան վրայ ապաշխարելու ։ Վարդ՝ ամիրապետը յորդորեց պատգամա-

ուրը ճերբակալել տալու, զրպարտելով թէ ան՝ ուրիշ նպատակաւ չի գար՝ բայց եթէ սպաննելու ինքնին ամիրապետը։ Սա Ուրանիոսը քննութեանց ենթարկեց, և անոր վրայ կրկին նամակները գտնելով՝ բանտ դրաւ զայն։ Առ Սքլերոս գրուածն յայտնապէս կ'ապացուցանէր՝ թէ նա եկած է՝ ոչ թէ միութիւն մը կազմակերպելու ամիրային հետ, այլ Սքլերոսը անկից բաժնելու։ Պատգամաւորը բանտարկուեցաւ՝ պատժուելու համար, Սքլերոսն ալ՝ որպէս զի փախչիլ չկարենայ։

Բանակցութիւնք կը շարունակէին կայսեր և ամիրապետին միջև, իւրաքանչիւրը ջանալով ոչ մէկ կէտի մէջ իր պատւոյն վիրաւորանք մը յանձն առնելու։ Այս զգացումը ծիծաղելի միջադէպերու կը յանգէր։ Արաբացի պատգամաւորը, օրինակ իմն, չէր ուզեր կայսեր ներկայանալէ առաջ, սովորութեան համեմատ, գրան առջեւ անոր երկրպագել։ Բիւզանդացիք՝ որոնց հանճարեղ գլուխներ չէին պակսեր, իր կամքը փոխել չկարենալով՝ կայսեր դուռը փոխել մտածեցին։ Մի քանի ժամուան մէջ այնչափ ցածցուցին զանիկա՝ որ անկարելի էր անցնիլ՝ առանց բանի երկրպագութիւն ընելու։ Բայց այս հնարագիտութիւնը սպասուած յաջողու-

թիւնը չզատ. որովհետեւ արաբացին, նախանձախնդիր իր պատւոյն, թիկունքը կայսեր դարձուցած՝ ներս մտաւ:

Աբլհրաթ հանճարը այնքան վստահութիւն ներշնչած էր իր կուսակիցներուն, որ իր բանտուելէն վերջ ալ՝ չորս տարի անոնք հաւատարմութեամբ իր գահին համար կռուեցան: Հուսկ ուրեմն յուսահատած՝ յետ կայսեր ներումն ստանալու՝ անձնատուր եղան (976):

Պաղտատու բանտը՝ մետասան տարի Աբլհրաթ հառաչանքներուն ունկնդիրն եղաւ և հանդիստես իր տանջանքներուն: Խորխոս զօրավարը, որուն քայլ մը միայն մնացած էր գահուն վրայ բարձրանալու, իբրեւ սովորական յոյն գերի մը, կ'ապրէր մթութեան մէջ: Քաղաքական միջադէպ մը սակայն՝ պատճառ պիտի ըլլար իր փրկութեան:

Պարսիկներն՝ Խմարդոս զօրավարի մ'առաջնորդութեամբ ապստամբած էին, Արաբներուն յաղթած, անկախութիւն ձեռք բերած: Ամիրապետը յուսահատած էր զանոնք նուաճելէ. իր խորհրդականները յիշեցուցին իրեն՝ թէ մետասան տարի առաջ՝ Պաղտատու բանտին մէջ փակուած էր Հռոմէական պետութեան ամենէն քաջ զօրավարը, որ

թերեւս կարող ըլլար պարսկական ապըստամբութիւնը նուաճելու։ Ամիրապետը բանտէն հանել տուաւ զՍքլերոս, որուն դէմքը իր տառապագին կեանքին հետքը կը կրէր, հագուեցուց իրեն զօրավարի պատմուճանը, և իր արքունեաց բոլոր վայելքներուն մասնակից ըրաւ զանիկա։ Յետ այսպէս անոր վշտերը մոռցնելու, առաջարկեց իրեն՝ Պարսիկներուն դէմ պատերազմիլ։ Սքլերոս՝ որ մինչքան կարօտ կը զգար իր հայրենեաց, փախստեան առիթը կը գտնէր իր առջեւ՝ նոյն ինքն ամիրապետէն ընծայուած։ Կեղծ դժկամակութեամբ յետոյ՝ յանձնառու եղաւ, պայմանաւ՝ որ փոխանակ Արաբներու, որոնց հրամայել չէր վարժուած, իրեն զինուոր տրուին քրիստոնեայ բանտեալները։ Այսպէս՝ երեք հազար հոգւով՝ յաղթեց Պարսիկներուն, Խնարգսան սպաննեց, յետոյ յաղթանակաւ գնաց դէպ ի Պոլիս։ Ամիրապետը՝ Սքլերոսի փախուստը արգիլելու համար, հեծելագունդ մ'ուղարկեց, որ չարաչար պարտութիւն մը կրեց։

Վարդ գնաց Մելիտինէի վրայ, գերի բռնեց Բասիլիկոս զօրավարը, և քաղաքին մէջ պաշար և ռազմական մթերք գտնելով՝ ինքզինք վերստին կայսր հրատարակեց։ Տէ-

րութեան մէջ միաժամանակ՝ երեք կայսր հրատարակուած էին. Վարդ Սքլերոս, Վարդ Փոկաս, և Վասիլ։ Ամենէն նուրբ քաղաքագիտութիւնը հարկաւոր էր իւրաքանչիւրին՝ երկու թշնամիներէն եւս ազատ մնալու համար։ Սքլերոս յաղթանակի ուրիշ հնարք չէր գտներ՝ բայց եթէ երկու ախոյեանները՝ իրարմով ջախջախել. իր Ռոմանոս որդին փախստական ձեւանալով Վասիլի ապաւինեցաւ, և սկսաւ կեղծ գործունէութիւն մը ցոյց տալ իր հօր դէմ։ Սքլերոս՝ միւս կողմէն՝ պատգամաւորներով դաշնակցիլ կը խոստանար Փոկասի, պայմանաւ որ յաղթանակէն յետոյ՝ տէրութիւնը իրարու մէջ բաժնեն, ինչ որ ամենայն պատրաստականութեամբ խոստացաւ Փոկաս։ Վստահացած Փոկասի երդման վրայ, Սքլերոս Կապպադովկիա գնաց՝ ուր կը գտնուէր Փոկաս։ Նա զինքը սիրով ընդունեցաւ բանտի մը մէջ, Թիւրոփեան դղեակը, ուր փակեց զինքը՝ յետ մերկացնելու կայսերական զգեստներէն։ Այսպէս Սքլերոս երկրորդ անգամ կայսր՝ և երկրորդ անգամ գերի կ'ըլլար։

Փոկասին մահէն յետոյ, զոր պիտի պատմենք, իր կինը՝ զուրկ վրէժխնդրութեան ուրիշ միջոցէ՝ բարեկամացաւ Սքլերոսի հետ,

միայն այն պատճառաւ՝ որ Վասլի թշնամին էր ան. զինքը բանտէն ազատեց. բացած էր վանդակին դուռը, ոչ նժէ արծիւին ազատութիւն տալու՝ այլ իր մագիլներէն պատառոտուած տեսնելու համար զՎասիլ: Փոկասի մահուամբ՝ երկու ապստամբ կուսակցութիւնք կը միանային Սքլերոսի դրօշին ներքեւ: Բայց նա կորուսած ըլլալով թէ՛ առողջութիւնն և թէ՛ քաղաքական կորովը, կռուոյն ելքն անորոշ տեսնելով ու վայելքի ժամանակը՝ սուղ, խաղաղութեան մէջ կ'ուզէր անցընել իր վերջին տարիները: Իր որդին հաշտարար հրեշտակի դեր կատարեց հօրը և կայսեր միջեւ. Սքլերոս՝ անձնատուր ըլլալու համար՝ մէկ պայման ունէր, անպատիժ մնալ: Վասիլ ոչ միայն զայն՝ այլ և կը խոստանար Սքլերոսի՝ իր երկրորդն ընել զինքը, կիւրոպաղատի տիտղոսը տալ, և վերջապէս, այնքան պատիւներ, որ կարծես Սքլերոս վարձատրութեան արժանացած էր ապստամբած ըլլալուն համար:

Կայսեր և Թագապահանջի տեսակցութիւնըն՝ վսեմ տեսարան մ'եղաւ:

Վարդ՝ գէր էր մարմնով, և այնքան՝ որ միշտ երկու հոգւոյ օգնութեան կը կարօտէր տեղափոխուելու համար. աչքերը կուրացած

էին. Ծերութիւնն՝ իր ոյժերը սպառած էր։ Վասիլ հեռուէն տեսնելով կոյր Վարդը, «Ո՜վ ունայնութիւն աշխարհի, ըսաւ նա՝ զինքը շրջապատող իշխաններուն, ո՞ւր է ուրեմն այն մարդը՝ որ այնքան սարսափ կը սփռէր պետութեան վրայ։ Աշխարհս կ'ուզէր կառավարել, և հիմա կարող չէ քայլափոխ մ'ընել՝ առանց ուրիշներու օգնութեան»։

Կայսրը՝ երկու յատկանիշ զարդեր ունէր. գլխուն վրայ՝ թագը, ոտքին վրայ՝ կարմիր կօշիկը։ Այս երկուքը հոմանիշ էին։ Սքլերոս անձնատուր ըլլալու կու գար... բայց ծիրանեգոյն ոտքերով. — հակասութիւն մը՝ անշուշտ։ Վասիլ աչքերը զայրոյթով մէկդի դարձուց, և երկու ձեռքերը Վարդի կողմը ուղղած՝ հրամայեց որ զինքը հեռացնեն։ Իմացուցին Սքլերոսի՝ թէ անհրաժեշտ էր հրաժարիլ իր կարմիր մոյկերէն. Թագապահանջը հնազանդեցաւ, և քիչ յետոյ կայսեր բերուեցաւ։ Վասիլ այս անգամ ընդառաջ ելաւ Սքլերոսի, ողջունեց, բազմեցուց իր քով, և ընդերկար խօսակցեցաւ։ Յաջորդեց խնջոյք մը՝ ուր կայսրն և ապստամբը՝ մի և նոյն բաժակը գործածեցին։

Այսպէս արկածալից կեանքէ մը յետոյ՝ Սքլերոս կու գար խաղաղ ծերութիւն մ'ան-

*ցընելու, բայց կը մեռնէր նոյն տարին* (990) *թողլով պատմութեան մէջ անգութ, քաջ, աւելի խռովարարի քան դիւանագէտի յիշատակը. իր գործունէութեան հիմն էր մի միայն անձնական վայելքը։ Կանգ կ'առնուր յանկարծ՝ յաջողութեան այնքան մօտ, նըշմարած ըլլալուն համար գերեզմանը՝ որմէ անդին ոչինչ երազած էր։*

## Է. — ՎԱՍԻԼ ՍԵՆԵԿԱՊԱՆԻ ՄԱՀԸ. — ՎԱՐԴ ՓՈԿԱՍԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆԸ։

*Սքլերոսի քաղաքական մեծ պատերազմէն յետոյ, Վարդ Փոկասի ապստամբութիւնն եղաւ՝ որ տէրութիւնը ամենէն աւելի տագնապի ենթարկեց։*

*Մարդիկ կան, որոնք գիտակից իրենց գործին, բացարձակ անկախութիւն կը փնտռեն անոր մէջ, ազատութիւն՝ ո՛ և է ազդեցութենէ, ո՛ և է թելադրանքէ, և չեն խնայեր ո՛ և է միջոցի՝ հեռացնելու համար երկրորդական անձնաւորութիւններ՝ որ կարող են եթէ ոչ խաւարեցնել՝ գէթ նուազում մ'ըլլալ իրենց փայլին. մթութիւնը կը փընտռեն իրենց շուրջ՝ փայլերնին դեռ աւելի դուրս ցայտեցնելու համար։*

Վասիլ տիպարն էր այս կարգի անձնաւորութեանց. կայսերական իշխանութեան հասած, նա ունէր ամէն միջոց՝ կղզիանալու և իր շուրջը հաւաքուող գործունեայ և փառասէր անձինքները հալածելու համար։ Դիւրին էր արքունեաց մէջ նոր մուտ գործողներէն ազատիլ, բայց կային որ արմատացած էին, տիրած, և կայսեր հաւասար հեղինակութիւն ստացած։ Այսպիսի էին, օրինակ իմն, պալատին մէջ՝ Վասիլ Սենեկապան, բանակին մէջ՝ Վարդ Փոկաս։ Կայսրը՝ որ ինքզինք մեծագոյն դիւանագէտը և մեծագոյն ռազմագէտը կը համարէր, և ոչ մէկուն կարօտութիւն կը զգար, ջանաց երկուքն ալ մերկացնել իրենց հեղինակութենէն։

Վասիլ Սենեկապան՝ միշտ կը քննադատէր կայսրը իր չափազանց գործունէութեան համար. խորհուրդ կու տար պատերազմի մէջ չմտնալ, «որովհետեւ կայսերական կեանքը վտանգի կ'ենթարկուի». դիւանագիտական գործերէ հեռու մնալ, «որովհետեւ անոնք կայսեր մ'արժանապատուութեան դէմ են»։ Սենեկապանը կ'ուզէր այն համոզումը տալ՝ թէ ինքնակալն է այն՝ ինչ որ կ'երեւակայէին Արեւելցիք. անշարժ կուռք մը՝ որ խունկերէ պիտի շրջապատուի, և ո֊

րուն կը պատկանէին միայն փառք ու վայելք։

Վասիլ Բ.ի համար, փառքը՝ գործն էր, վայելքն՝ աշխատանքը։ Սենեկապանի հայրական խրատներուն խորը թափանցելով, որոնց նպատակն էր զինքը իրական իշխանութենէ զրկել, զայն բանտել տուաւ նախ իր իսկ տանը մէջ, և յետոյ աքսորեց զինք, ստացուածքները գրաւեց, իրագործեց՝ ինչ որ Չմշկիկ սպառնացած էր միայն։ Վասլի ատելութիւնն այնքան էր Սենեկապանին դէմ, որ վանք մը կործանել տուաւ պարզապէս այն պատճառաւ՝ որ նա եղած էր անոր հիմնադիր։ Սենեկապանը, քիչ յետոյ, սրտին ցաւէն մեռաւ (987)։

Մնացած էր այժմ Վարդ Փոկաս։ Վասիլ ցոյց տալու համար իրեն՝ թէ կը մերժէ ո՛ և է գործակցութիւն, Բուլղարաց դէմ արշաւանք մը ըրաւ՝ առանց նիւթական կամ բարոյական ո՛ և է օգնութիւն ուզելու Փոկասէն։ Աւելի ծանր վիրաւորանք չէր կարող ըլլալ սպարապետին և իր բանակին համար, որոնք լաւ ըմբռնած ըլլալով Վասլի բոլոր վարմունքին շարժառիթը, ապստամբութեան դրօշը պարզեցին։ Վարդ Փոկաս կայսր հռչակուեցաւ (15 օգոստ. 987) ի Կապադովկիա։

Նոյն տարւոյ մէջ Սքլերոս, Պաղտատու բանտէն ազատած, եկած էր Վասլի դէմ.

Փոկասի կ'առաջարկէր միութիւն՝ ընդդէմ բռնաւորին, հասարակաց թշնամւոյն։ Փոկաս ի նպաստ իրեն գործածելով Սքլերոսի բարեկամական ցոյցերը, անգամ մը՝ երբ նա Կապադովկիա եկած էր անձամբ հաշտութիւնն ի գլուխ հանելու համար, դաւաճանութեամբ ձերբակալեց, և դրաւ բանտի մէջ։

Ամբողջ տարի մը պատերազմի պատրաստուելէ յետոյ, զինեց Կոստանդնուպոլսի վըրայ, բանակը յերկուս առաջս բաժնելով. առաջինը՝ որուն կը զօրավարէր Քալոքիրոս, Վոսփորի կողմանէ մայրաքաղաքին հաղորդակցութիւնքը պիտի կտրէր, բանակելով Խրիսոպոլսի մէջ, իսկ ինք Փոկաս՝ Աբիւդոսի մօտ կանգ պիտի առնուր, և թոյլ պիտի չտար՝ որ Տարտանէլիի անցքէն պաշար և զէնք հասնին։ Այսպէս եթէ ոչ յաղթութեան, գէթ սովի առջև տեղի պիտի տար Վասիլ։

Կայսրը սակայն՝ ապստամբութեան սկիզբէն ի վեր պատերազմի պատրաստութեամբք զբաղած էր, ոչ միայն երկայն պաշարման համար հարկ եղած մթերքը հաւաքած էր նա, այլ և բարեկամ ըլլալով Ռուսաց, որոնց վրայ կ'իշխէին Վլատիմիր և Աննա, քոյր Վասիլի Բ, հզօր գունդ մ'անոնցմէ օգ-

նութեան առած։ Թշնամեաց երկու թեւերը հասած ըլլալով ի Խրիսոպօլիս և յԱքրիդոս, կայսրը Քալոքիյրոսի խոստումներ ղըրկեց. չյաջողելով կաշառել, վճռեց ռազմական գործողութիւններն սկսիլ։ Գիշեր էր. թշնամիք՝ յաղթանակին վրայ արդէն վստահ՝ անհոգաբար ցրուած էին իրենց բանակետղին մէջ. ծով մը զիրենք կը բաժնէր Վասիլի զօրքերէն, և ոչ ոք կարող էր գուշակել գիշերային յարձակում մը, որուն կասկածը ցամաքի վրայ՝ անքուն կը պահէր զիրենք։

Վասիլ ռազմական նաւերը լեցուց Ռուսերով. յաջող հողմով թեւաւորուած, մթութեան մէջ ծովը կտրեցին անոնք, և մօտեցան Խրիսոպոլսի ծովափին. լռութիւնը կը տիրէր թշնամեաց բանակին մէջ, լռութիւն մը՝ որ քիչ յետոյ իրապէս ալ գերեզմանական պիտի ըլլար։ Յանկարծ բարբարոսները գոռացին, և խուժելով վրաններուն մէջ՝ սկսան կոտորածը. դիմադրութեան ո՛ և է փորձ չափազանց ուշ էր այլ եւս. ամէն անկողին՝ շիրիմ դարձաւ, քունը՝ մահ։ Նշանաւոր անձնաւորութիւնք գերի տարուեցան, անոնց մէջ՝ նոյն իսկ Նիկեփոր, Վարդի եղբայրը, որ կոյր էր արդէն, և ոչ մէկ տարբերութիւն զգաց մթին բանտին մէջ փոխա-

գրուելով ։ Ռուսեր՝ ջարդելով՝ հասած էին Քալոքէյրոսի վրանը․ ձերբակալեցին զինք և նոյն տեղը կախաղան հանեցին։

Ապստամբ բանակին մէկ թեւը ջախջախեց յետոյ, Վասիլ Բ. իր Կոստանդին եղբայրը և Կիրակոս ծովակալը զինեցին յԱբիւդոս, որ պաշարուած էր, Փոկասի դէմ։ Վասիլ ջանաց Փոկասի կուսակիցները կաշառել․ Թագապահանջ զօրավարը սովորութիւն ունէր՝ խառնուրդի մէջ չմտած՝ գաւաթ մը պաղ ջուր խմելու․ իր ծառայներէն մին, որ կայսերմէն մեծ գումարի մը խոստումն ստացած էր, այս անգամ թոյն աւելցուց անոր մէջ։

Լամփսակոնի մօտ, ոչ հեռի Աբիւդոսէ, երկու բանակները կանգնած էին իրարու հանդէպ․ Վասիլ իր գունդերուն առջեւէն կ՚անցնէր, կարգաւորելով, խրախուսելով։ Փոկաս՝ մենամարտով մը միայն կռուին բաղդը վճռելու համար, սուր ի ձեռին՝ շեշտակի դէպ ի Վասիլ խոյացաւ․ ռազմիկները՝ հանդիսատեսի փոխուած՝ երկու կայսերաց բախման կը սպասէին․ յանկարծ Փոկաս ճանապարհը փոխեց, բլրան մը վրայ ելաւ, գլորեցաւ ձիէն, անշարժ մնաց․ ապստամբը մեռած էր։ Թոյնը՝ որուն տանջանքները կը

զգար, վճռած էր յանկարծ անէրութեան աղաղումը եղբայրասպան պատերազմէ ։ Ամանք յանկարծակիան կաթուածով աղըտամբը մեռած համարեցան, ուրիշները ձիէն գլորելուն համար․ Վասիլ՝ իր նետին զօրութեան կ'ընծայէր անոր մահը, ինչ որ չէր կրնար սոյգ ըլլալ՝ քանի որ վէրքի ոչ մէկ նշան գտնուեցաւ Փոկասի մարմնոյն վրայ։

Թագապահանջին բանակը իսկոյն փախըստեան դիմեց․ իր մեծագոյն մասը գերի ընկաւ․ իշու վրայ հեծած, թափառեցան Պոլսոյ մէջ։ Ապստամբներուն մէջ՝ կային երկու եղբայրներ Թէոդոսոս և Լեւոն Մելիսենեան։ Թէոդոսոս Վասիլի դէմ նախատինքներ կը տեղար․ Լեւոն սաստեց իրեն որ չափաւորէ լեզուն․ և երբ անսաստեց, նիզակին բունով գանակոծել սկսաւ զայն։ Երկրորդ օր երբ Փոկասի կուսակիցները գերի բռնուեցան, Լեւոն անպատիժ մնաց, Վասիլի պատուոյն նախանձախնդիր եղած ըլլալուն համար։ Այս փոքրիկ միջադէպը ցոյց կու տայ թէ Բիւզանդացի բաղդախնդիրները՝ որքան կասկածելի դիրք կը բռնէին։ Կ'ընկերէին Թագապահանջին՝ անակընկալ փառքերու յոյսերով, բայց միւս կողմէն ծառայելով օրինաւոր կայսեր՝ անյաջողութեան պարագային՝ անոր ներման արժանանալու համար։

Ամբաւ աւար և պաշար բաժին ընկան Վասլի զօրքերուն։ Փոկասի վրանին մէջ գըտնուած բոլոր առարկայները բերուեցան կայսեր, որ մի առ մի զննութեան ենթարկեց զանոնք։ Թագապահանջի զգեստներուն մէջ նամակ մ'ալ գտնուեցաւ։ Վասիլ Բ. անձկոտ հետաքրքրութեամբ կարդաց զայն, կատաղութեան նշաններ ցոյց տալով ամէն բառի. Հոն կը գովուէր, կը խրախուսուէր Փոկասի ապստամբութիւնը, և ստորագրողն էր անձ մը՝ որ պատիւներ միայն գտած էր Վասլէն. — Ագապիոս, եպիսկոպոս Անտիոքայ։ Հայրապետը կը պատրաստուէր ուրախակցութիւններ յայտնել Վասլի, երբ իրեն ներկայացուեցաւ մատնիչ նամակը, և շղթայի զարնուելով՝ բանտուեցաւ վանքի մը մէջ։

Ը. — ԵՐՐՈՐԴ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ. — ՆԻԿԵՓՈՐ ՓՈԿԱՍ (Բ) ԵՒ ՍԵՆԵՔԵՐԻՄ ԱՐԾՐՈՒՆԻ. — ՏՐԴԱՏ ՃԱՐՏԱՐԱՊԵՏ. — ՑՈՑՆ ԵԿԵՂԵՑԻՆ՝ ՎԱՍԼԻ ԺԱՄԱՆԱԿ։

Վարդ Փոկաս կը թողուր որդի մը՝ Նիկեփոր անուամբ. ժառանգ՝ հօրը ախտղաներուն և վրէժխնդրութեան պալատուց, նա կը սպասէր նպաստաւոր առթի մը՝ ապստամբութեան դրօշը պարզելու համար։

Այս առիթը պիտի ներկայանար 1022ին։ Վասիլ Բ. Վրաստան արշաւանքի գնացած ըլլալով, առանց իրեն հետ տանելու գնիկեփոր, նա Նիկեփոր Քսիփիասի և Սենեքերիմ Հայ Թագաւորին հետ, որ նոր գաղթած էր Սեբաստիա, միանալով՝ ապստամբեցաւ։

Վասիլ՝ մայրաքաղաքէն հեռի՝ գահազուրկ ըլլալու ծանր վտանգի մէջ կը գըտնուէր։ Երկու կողմէն պաշարուած էր ապըստամբներէ. — Վրացիներէն և Նիկեփոր Փոկասի բանակէն։

Տագնապալից դիրքէն ազատելու համար՝ խորհեցաւ գժտութիւն ձգել Փոկասի և Քսիփիասի մէջ. այս նպատակաւ՝ նամակ մ'ուղղեց Փոկասի՝ ուր մեծամեծ պատիւներ կը խոստանար իրեն՝ եթէ Քսիփիասի կեանքին դէմ դաւաճանէ. ուրիշ նամակ մը գրեց՝ Քսիփիասի՝ ուր նոյն խոստումները իրեն ալ կ'ընէր, պայմանաւ որ սպաննէ զՓոկաս։

Երկու նամակներն ալ յանձնուեցան մէկ անձի. նա զանոնք այնքան ճարտարութեամբ հասուց իրենց հասցէին՝ որ ոչ Քսիփիաս և ոչ Փոկաս անդրադարձան թէ մի և նոյն ձեռքը երկու հակասութիւնները իրենց կ'ընծայէր։

Նիկեփոր՝ որ ապստամբութեան մէջ մեծագոյն շահ կը տեսնէր՝ տեղիք չտուաւ կայսեր, և ստացած նամակին ունկնդիր ըրաւ զՔսիֆիաս. սա, ընդհակառակն, Վասլի խոստումները մեծագոյն տեսնելով քան Փոկասինը, գաղտնի պահեց իրենը և որոշեց սպաննել զանիկա։

Կապադովկիոյ մէջ էին. իրենց մերձաւորութեանը պատճառաւ էր, որ Սեբաստիոյ Հայ թագաւորը բռնադատուած էր իրենց կուսակից յայտարարել ինքզինք, յակամայս անշուշտ։ Կը թուի թէ Քսիֆիաս իր գիտումները յայտնեց նախ Հայ թագաւորին և զայն կամակից ունեցաւ Փոկասի սպանման, և այս պատճառաւ է որ մեր պատմիչները՝ զՍենեքերիմ կը համարին դաւաճան Փոկասի։

Արդ, օր մը՝ երբ Փոկաս նոր ծրագիրներ կը պատրաստէր եռանդեամբ, Քսիֆիաս մօտեցաւ իրեն՝ և իմացուց թէ ծոցին մէջ գաղտնիք մ'ունէր՝ զոր կ'ուզէր վերջապէս յայտնել։ Այդ գաղտնիքը՝ դաշոյն մ'էր...։ Երբ ամայի տեղ մ'առանձնացած կը խօսակցէին, Քսիֆիաս յանկարծ հանեց զայն ծոցին մէջէն և քանի մ'հարուածով գետին փռեց զՓոկաս։ Ապստամբութիւնը անոր հետ

սպանուեցաւ։ Ոճիրը սակայն միշտ ատելի է, նոյն իսկ շահու հետ միացած պահուն։ Վասիլ հրամայեց Թէոփիլակտոս զօրավարին ձերբակալել զՔուֆիաս, տանիլ Կոստանդնուպօլիս և կրօնաւոր ընել։ Վանքի մէջ ապաշխարեց նա անմտութիւնը՝ որով բարեկամ մը՝ թշնամւոյն զոհած էր։

Վասիլի ժամանակ՝ 986 տարեթուին՝ հոկտեմբերի մէջ, տեղի ունեցաւ այն նշանաւոր երկրաշարժը, որ Ս. Սոփիայի գմբէթը երկուքի ճեղքեց։ Նորոգութեան համար, ինչպէս կ'աւանդեն հայ պատմիչներ, ի Պօլիս հրաւիրուեցաւ նաև Տրդատ քարագործ ճարտարապետ, որ Անիի մայր եկեղեցւոյն և այլ նշանաւոր եկեղեցեաց յօրինողն է։ Ս. Սոփիայի վիթխարի գմբէթը օդի մէջէն կախելու գաղափարը կը պատկանի Անթեմիոս Տրալլացւոյ և Իսիդոր Միլետացւոյ, որ (532-562), Յուստինիանոսի ժամանակ՝ զայն ի գլուխ հանեցին։

Իրենց գիւտը կը կայանայ յայնմ՝ որ գմբէթը կառուցանելու համար՝ մտածեցին գործածել Հռոդոսի աղիւսը, որ սովորականէն քանի մ'անգամ աւելի թեթև ըլլալով, հնարաւորութիւն կ'ընծայէր մեծի զանգուած մը զետեղելու եկեղեցւոյ որմերուն վրայ։

Կը թուի թէ Հայ ճարտարապետը նոյն հնարքը գործածեց՝ նորոգութեան պահուն. յոյն պատմիչներ՝ (Կեդրենոս, Թէոփանէս, Գլիկաս) երկրաշարժը կը յիշեն, բայց ոչ նաեւ զՏրդատ. միայն տախտակամածը զետեղելու համար եկեղեցւոյն մէջ՝ հազար ուկի ծախսուեցաւ. – աստի կարելի է հաւեցընել թէ որքան մեծամեծ ծախքեր եղան՝ ամենէն քաջ ճարտարապետները Բիւզանդիոն կանչելու և զանոնք աշխատցնելու համար։ (Տե՛ս Կեդրենոս, էջ 438, Գլիկաս, էջ 576)։

Կործանեցան նաեւ Պոլսոյ ուրիշ բազմաթիւ եկեղեցիներ և պալատներ։ Ցնցումները գետնի տակէն ճանապարհորդելով՝ հասան մինչեւ Նիկոմիդիա, ուր աւերակներ ափոելէ վերջ, Լիկայոնիա անցան, և հոն զգացնելով իրենց բոլոր բռնութիւնը, ամբողջ քաղաքներ հիմնայատակ ըրին։ Բարբարոսաց արշաւանք մը տեղի կ'ունենար գետնի տակէն։

Եկեղեցական խռովութիւնք բնաւ տեղի չունեցան Վասլի ժամանակ։ Հասարակաց մտածումը աշխարհականացած էր, զինուորական ոգին տիրած, և աստուածաբանական եռանդը շիջած Բիւզանդացւոց մէջ։

Անտոն պատրիարք, Աթուղեանց վանքէն, 879ին հրաժարած էր իր պաշտօնէն, զոր՝

իր նկատմամբ՝ չափազանց ծանր և բարձր կը համարէր ։ Խոնարհութեան այս գործը՝ դեռ աւելի սրբութեան վարկը մեծցուց։ Բիւզանդացիք ո՛ և է միջոցաւ չկարենալով զինք վերստին իր սրբազան գահուն վրայ բազմեցընել, յաջորդ չընտրեցին իրեն՝ որպէս զի աթոռոյ դատարկութիւնը հրաժարեալը բըռնադատէ կրկին հոգեւոր կառավարութեան սանձը ձեռքին մէջ առնելու ։ Չորս տարի եկեղեցականք կէս անիշխանութեան մէջ մնացին, մինչեւ որ մահը (983ին) զԱնտոն պատրիարք՝ իջուց ի գերեզման, և զՆիկողայոս Խրիւսոբէրգոս՝ բարձրացուց հայրապետական գահուն վրայ։ Նիկողայոս 996ին մեռնելով, և եկեղեցական դասուն մէջ ոչ ոք գտնուելով իր պատուոյն արժանի, ընտրութիւնը կեդրոնացաւ աշխարհականի մը վրայ, Սիսիննիոսի։

Պաղատական մ'էր , սիրելի , կրթուած. իբրեւ աէրութեան ամենէն առաջինին և ամենէն գիտնականը, Սիսիննիոս՝ Փոտի նման՝ քիչ ժամանակի մէջ՝ եկեղեցական փոքրագոյն աստիճաններէն մինչեւ բարձրագոյնն հասաւ։ Երեք տարի յետոյ մեռնելով, Սարգիս՝ Մանուէլեան վանքի աբբահայրը, որ Փոտի ցեղէն կը սերէր , հայրապետ ընտրուեցաւ

(998, յուլիս)։ Քսան տարի յունական եկեղեցին կառավարելէ վերջ՝ մեռաւ նա, գահը յանձնելով Եւստաթէոսի, որ արքունեաց աւագերէցն էր (10 յուլիս)։

Եւստաթիոս՝ փառասէր ի բնէ՝ ամէն ճիգ ըրաւ ձեռք բերելու համար տիեզերական պատրիարգ տիտղոսը, որուն դարերէ ի վեր կ'անձկային Կոստանդնուպոլսոյ հայրապետք։

Հռոմայ քահանայապետին հեղինակութիւնը դեռ եւս կը ճանչցուէր յոյն եկեղեցւոյ մէջ։ Եւստաթիոս իրեն դիմեց ոչ միայն աղաչանքներով՝ այլ ոսկւոյ մեծ գումարով մը՝ զոր կ'առաջարկէր իբրեւ գին՝ տիեզերական տիտղոսին։

Եւրոպայի բոլոր եկեղեցականութիւնը ոտքի ելաւ, լսելով՝ որ քահանայապետը հաւանութիւն տուած է յոյն պատրիարգին ամբարտաւան փափագներուն․ յայտնի եղաւ՝ թէ Յովհաննէս ԺԹ-ի նկատմամբ ինչ հնարք գործածած էին Յոյներ։ Ամէն կողմէն, Իտալիայէն, Գաղղիայէն՝ բողոքագրեր կը տեղային Վատիկան. Յովհաննէս ԺԹ ստիպուեցաւ տեղեկագրել Պոլիս՝ թէ հակառակ իր բոլոր փափաքին՝ անկարելի էր իրեն Կոստանդնուպոլսոյ պատրիարգին՝ նախագահութիւն տալ՝ միւս բոլոր պատրիարգներուն վրայ։

Վասլի ժամանակ եկեղեցական վերջին խնդիրը այս եղաւ։ Այսպէս եթէ ընդհանուր ակնարկ մը նետենք սոյն կայսեր ներքին կառավարութեան վրայ՝ ուրիշ բան չենք տեսներ, բայց եթէ դժգոհ ազնուականութիւն մը, որ գործունէութեան ամէն ասպարէզ փակուած տեսնելով իր առջեւ, բիրտ, տըխուր, ցուրտ և ամէն բանի մէջ միայնակ ըլլալ ուզող կայսերմէ մը, որ սակայն լիովին գիտակից էր իր արժանապատուութեան և իրաւանց, կը մխիթարուի գէթ սանձելով զանիկա՝ անընդհատ ապստամբութեամբք։ Յիրաւի, Վասլի համար ոճիր մը պիտի ըլլար իշխանութեան կեդրոնացումը իր անձին վըրայ՝ եթէ փառասէր մ՚ըլլար միայն. բայց նա թէ՛ քաղաքական և թէ՛ ռազմական ասպարէզին մէջ հաւասար հանճար ցըցուց. և եթէ հին և նոր բոլոր տաղանդները մերժեց իր քովէն, այն պատճառաւ էր միայն՝ որ ինքը անոնց գումարն էր։

Թ. — ՎԱՍԻԼ ԲՈՒԼՂԱՐԱՍՊԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ. — ԱՐԵՒԵԼՔԻ ԵՒ ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ՎԻՃԱԿԸ. — ՈՂՋԵՐԳՈՒԹԻՒՆ ՄԸ. — ԲՈՐԻՍԻ ՄԱՀԸ. — ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍԿԶԲՆԱԽՈՐՈՒԹԻՒՆԸ։

*Նենգութիւնը՝ ըսուած է յաճախ՝ տկար ժողովուրդներու զէնքն է, բուռն անկեղծութիւնը՝ հզօրներու. — նոյնը կարելի է ըսել թագաւորներու համար, որ արդէն ներկայացուցիչներն են ժողովրդեան։*

*Վասիլ Բ. իր բանակը այնքան կարգաւորած էր, որ օտար ազգերու հետ միայն սպառնալիքով գիտէր խօսիլ, և հրամաններ միայն տալ անոնց։*

*Արեւելքը փոխանցման վիճակի մէջ կը գտնուէր։ Արաբացիներուն կը յաջորդէին Թուրքեր։ Վասիլ Բ. լսեց իրենց առաջին արշաւանքները, առանց սակայն գուշակելու՝ թէ օր մ'իր մայրաքաղաքը անոնց գահը պիտի ըլլար։*

*Արեւմուտքի մէջ կը սպառնար Օթոն Բ. կայսր Գերմանիոյ, որ Վասիլի քրոջ՝ Թէոփանոյի հետ ամուսնացած ըլլալով, կը պահանջէր Իտալիան՝ իբրեւ ժառանգութիւն։*

*Կոստանդին՝ Իրենէի որդին՝ ամուսնանալ*

առաջարկած էր՝ Մեծն Կարոլոսի Ռոթրիւտ աղջկան հետ, բայց Իրենէ թոյլ չէր տուած, օժիտին հետ՝ թշնամւոյն նոր իրաւունքներ չտալու համար։

Հիմա՝ Ոթոնի օրինակը ցոյց կու տար՝ թէ որքան իրաւացի էին Իրենէի կասկածները։ Թէոփանոյ՝ աւելի սիրող իր ամուսնոյն՝ քան իր եղբօր, իր հպատակներուն՝ քան իր հայրենակցաց, Ոթոն Բ.ի պահանջները լռեցնելու տեղ՝ դեռ աւելի կռուի կը յորդորէր իր ամուսինը Յունաց դէմ։

Վասիլ Բ առիթ ունեցաւ պատերազմելու կամ բանակցելու բազմաթիւ ազգերու հետ, — Բուլղարներու, Արաբներու, Խրուաթներու, Ռուսերու, Հայերու, Վրացիներու, Խազարներու, Գերմանացիներու. բայց իր մեծագոյն գործն եղաւ՝ Բուլղարիոյ աշխարհակալութիւնը, որուն համար Բուլղարասպան տիտղոսը պիտի ստանար։

Բիւզանդիոնի մէջ կ'ապրէին, Զմշկիկէն գերի բռնուած, Բուլղարիոյ թագաւորին երկու տղաքները, Ռոմանոս ներքինին և Բորիս, յետին շառաւիղք իրենց գերդաստանին, թշուառութեան մատնուած՝ ամենէն ծաղիկ հասակի մէջ։

Իրենց բանտարգելութիւնը այնքան ցաւ

կ՚ազդէր իրենց հայրենակցաց, որ Բուլղար հայրենասէրներ, հրոսակային խմբեր կազմած՝ կը թափառէին անտառներու մէջ, և յոյն ճանապարհորդներու վրայ յարձակելով՝ անոնց տառապանքներուն վրէժը կ՚առնէին։

Օր մը՝ Զմշկիկի մահուանէն յետոյ, երբ Վասիլ Բ. դեռ փոքր էր ու նոր թագաւորած, Բորիս և Ռոմանոս ծպտեցան յոյնի տարազով, և փախան Կոստանդնուպօլսէն։ Շնորհիւ իրենց կրած զգեստին՝ ոչ ոք ճանչցաւ զիրենք, մինչև որ յետ այնքան տարիներու պանդխտութեան, իրենց անձկալի հայրենեաց սահմանը մտան։ Այլ եւս ամէն վտանգ անցած կը համարէին։

Բայց Բուլղար աւազակները՝ անտառի խորքէն նշմարած էին երկու ճամբորդներ՝ յոյնի զգեստով. ձայն տուին իրարու, և նետերնին ուղղեցին անոնց. Բորիս՝ որուն վրայ կայացած էր Բուլղար ազգին բոլոր յոյսը՝ սպանուած գետին ինկաւ. Ռոմանոս յաջողեցաւ փախչիլ։

Այսպէս Բուլղար հայրենասէրները կը սպաննէին իրենց ամենէն նուիրական, ամենէն պաշտելի անձը, կարծելով անոր վրէժն առնուլ։ (Կեդրենոս, էջ 435)։

Զորս ազնուական եղբայրներ, Դաւիթ,

Մովսէս, Ահարոն, Սամուէլ՝ իրարու մէջ բաժնած էին Բուլղարիան։ Նախորդները մեռնելով, և Ռոմանոս ալ չուզելով իր պահանջները նոր խռովութիւն մը ձգել իր հայրենեաց մէջ, Սամուէլի մնաց Բուլղարիոյ թագաւորութիւնը։

Նա արշաւեց Թրակիա, Մակեդոնիա, Թեսսաղիա, Պեղոպոնէս։ Տիրեց Լարիսայի. յոյն բնակիչները բռնադատեց իր բանակին մէջ անցնելու և իրենց հայրենակիցներն ըսպաննելու։

Վասիլ Բ. անձամբ Սամուէլի դէմ գնաց (981ին), առանց Վարդ Փոկասը, ընդհանուր սպարապետը, պատերազմի կանչելու. ոչ զոք կ'ուզէր իր փառաց մասնակից։

Բանակեցաւ Սարդիկէի մօտ, Սամուէլի գիմաց, որ կանգնած էր ամպերու միջեւ, լերան մը կատարին վրայ։

Արդէն ամէն բան պատրաստ էր խառնուրդը սկսելու համար, երբ Քոնթոս Սաեփանոս անուամբ զօրավարը, (հասակին կարճութեան պատճառաւ Քոնթոս կոչուած), տագնապաւ Վասլի գիմեց.

— Տէր արքայ, գոչեց, Լեւոն Միլիսսեննեան՝ վերջապահ գունդերով մեկնած է դէպ ի Պօլիս՝ կայսր ըլլալու. պէտք է փութալ, հասնիլ եսեւէն . . .

*Վասիլ նահանջի փողը հնչեցուց. Սամուէլ Ցունաց փախուստը նշմարելով՝ վար իջաւ, ջարդեց և գերեց յոյն բանակին մի մասը. կայսրը ոգեսպառ Փիլիպպոպօլիս հասաւ. որքան մեծ եղաւ իր զարմանքը՝ տեսնելով որ Լեւոն խաղաղիկ կեցած է հոն, զբաղած՝ իրեն տրուած հրահանգները կատարելու, և իրենց պարձին վրայ կը զարմանար: Քոնթոս Ստեփանոս՝ Լեւոնի անձնական թշնամին ըլլալով, ամենէն անտեղի զրպարտութիւնն ըրած էր անոր վրայ. և որովհետեւ դեռ ինքզինքը արդարացնել կը ջանար, Վասիլ՝ կատղած՝ անոր վրայ յարձակեցաւ, գետին փռեց զինքը, սկսաւ մազերն և մօրուքը փետտել, հարուածել, աքացել ու կոխկրտել:*

*Այս ծաղրական վերջն ունեցաւ Վասլի առաջին արշաւանքը, զոր կ՚ուզէր պատմութեան ամենէն փառաւոր էջերէն մէկն ընել: Արտակոտոր Պօլիս դարձաւ: Իր նահանջին պատճառը՝ վերոյիշեալն է, ըստ Կեդրենոսի (Բ հտ. էջ 437). իսկ ըստ Լեւոն Սարկաւագի և Սքիլլիցէսի, պաշարի պակասութիւնն եղած էր:*

*Սամուէլ յաղթութեան հետ՝ կը շահէր նաև պաշար, զէնք, զգեստներ, – որոց մէջ կայսերական զարդեր ալ գտնուեցան, նաև*

բարոյական խրախոյս՝ որ աւելի եւս ոգեւորեց իր զօրքերը՝ իրենց հայրենեաց ազատութեան համար կռուելու։

Ժ. — ՎԻՊԱՍԱՆԱԿԱՆ ԲԱՆՏԱՐԳԵԼՈՒԹԻՒՆ ՄԸ. — ԳՐԻԳՈՐ ԵՒ ԱՇՈՏ ՏԱՐՕՆԵՑԻ. — ԻՐԵՆՑ ԿՌՈՒՆԵՐԸ ԲՈՒԼՂԱՐԱՑ ԴԷՄ. — ԱՇՈՏ՝ ԴՂԵԱԿԻ ՄԸ ՄԷՋ. — ԲՈՒԼՂԱՐԱՑ ԱՐՔԱՅԱԴՈՒՍՏՐԸ ԵՒ ԱՇՈՏ. — ՄԱՏՆՈՒԹԻՒՆ. ՎՐԷԺ. ԳԻՇԵՐԱՅԻՆ ՓԱԽՈՒՍՏ. ՕՐ ՄԸ ԴԻԱԿՆԵՐՈՒ ՄԷՋ. ՍԱՄՈՒԷԼԻ ԱԶԱՏՈՒՄԸ ՄԱՀՈՒԱՆԷ։

*Գրիգոր մագիստրոս Տարօնեցի, Թեսաղոնիկէի կառավարիչ, հրահանգ ընդունելով կայսերէն՝ Սամուէլի վրայ յարձակելու, որ մօտեցած էր քաղաքին, իր Աշոտ որդւոյն հետ միասին՝ դիմեց թշնամւոյն վրայ։*

*Ցանդուգն երիտասարդ մ'էր Աշոտ, քաջ՝ բայց անխոհեմ։*

*Ռազմի փողը հազիւ հնչած էր, երբ Աշոտ իր գունդովը ոլացաւ Բուղարաց վրայ, սկսաւ զարնել, ջարդել, փախցնել. իր առաջին թափը դեռ չէր հանդարտած՝ երբ անոնք յուսահատ կերպով ցրուեցան դաշտերու մէջ. Աշոտ՝ աւելի սպառնալից, աւելի խրոխտ, հետամուտ եղաւ իրենց, կոտորել միայն խորհելով։*

Թշնամիք չորս կողմը դարանի նստած էին. միահամուռ աղաղակով վեր ելան յանկարծակի, յարձակեցան ու զինքը պաշարեցին։ Աշոտ կատաղաբար կը դիմադրէր. բայց ամէն կողմէն՝ նոր գնդեր կը բխէին։

Ճգնաժամի այս վայրկեանին՝ Գրիգոր Տարօնեցի նշմարեց հեռուէն իր որդւոյն տագնապը. բնազդական մղումով մը՝ առանց ոյժերը կշռելու՝ թշնամեաց կեդրոնը նետուեցաւ։ Բուլղարները ոռնալով պատեցին զինք և սկսան նետեր տեղալ։ Գրիգոր արիւնոտուած՝ գետին փռուեցաւ. ուրախութեան աղաղակ մը կը բարձրանար միւս կողմէն. զԱշոտ գերի բռնած՝ կը տանէին Սամուէլի։

Չենք գիտեր ի՛նչ առիթով, — դղեակի մը մէջ անտարակոյս, — Բուլղարաց արքայադուստրը առիթ ունեցաւ տեսնելու զԱշոտ, երիտասարդ դիւցազնը՝ որուն վրայօք վաղուց արդէն ա՛յնքան պատմութիւններ լսած էր։ Անձամբ ճանչնալով զԱշոտ՝ ա՛յնքան յարեցաւ անոր, որ հօրը յայտնեց թէ բաց ի Աշոտէ՝ ոչ մէկուն հետ պիտի ամուսնանար։

Իր դուստրը տալ թշնամւոյն մը, դիւանագիտութեան դէմ էր. գերիի մը՝ իր պա-

տուոյն դէմ։ Սամուէլ առաջարկը մերժեց։ Արքայադուստրը սակայն կը սպառնար անձնասպան ըլլալ՝ եթէ իր խնդիրքը չկատարուի։ Սամուէլ ստիպուած էր տեղիք տալու։

Բանտէն՝ Հարսանիքի առթին զԱշոտ։ Դիւրրախիոն քաղաքին կառավարիչ անուանուեցաւ նա՝ իբրև փեսայ թագաւորին։

Որքան Սամուէլի դուստրը գորով կը տածէր իր նկատմամբ՝ այնքան Աշոտ կ'ատէր սրտին մէջ Բուլղարներուն դէմ, որոնք իր աչքին առջև սպաննած էին իր հայրը՝ իրեն օգնութեան եկած։ Վրէժի յարմար առիթը կը փնտռէր։

Դիւրրախիոն նշանաւոր նաւահանգիստ մ'էր. միշտ իր ափանց մօտ կը գտնուէին Հռովմէական եռաթի նաւեր՝ սահմանները պաշտպանելու պատրաստակամ։ Աշոտ որոշեց այդ քաղաքը Հռովմայեցւոց մատնել, և Յունաստան փախչիլ։ Իր այս ծրագիրը յայտնեց Բուլղարաց արքայադստեր. Հարցուց իրեն՝ թէ յանձն կ'առնո՞ւր՝ իրեն համար՝ իր ազգին շահուն դէմ գործել և իր հայրենիքը թողուլ։ Ինչ որ կ'ըսէր Աշոտ՝ պատգամ մ'էր Բուլղար արքայադստեր։ Իր պատասխանը՝ սիրայօժար հաւանութիւն մ'եղաւ։

Աշոտ՝ գաղտնի միջոցներով՝ քաղաքին մեծամեծները համոզեց՝ որ զանիկա Ցունաց յանձնեն ։ Խրիյսիլիոս՝ անոնց գլխաւորը՝ նոյն իսկ նամակ մը տուաւ Աշոտի , որով կը խոստանար Դիյրրախիոնը Ցունաց մատնել , եթէ պատրկութեան պատիւը տրուի իրեն՝ իբրեւ վարձատրութիւն ։

Գիշեր ժամանակ Աշոտ և Բուլղար արքայադուստրը ծովափը մօտեցան, եաթի նաւ մը ընդունեցաւ զիրենք, և առագաստեայ թեւերը բացաւ դէպ ի Պօլիս ։ ... Որքան մեծ եղաւ Վասիլ Բ.ի զարմանքը՝ յանկարծ իր առջեւ կանգնած տեսնելով իր քաջ իշխաններէն մին , և իր ախոյեանին դուստրը՝ կամաւոր գերութեան եկած ։ Աշոտ ներկայացուց իրեն ուրիշ անակնկալ մը , Խրիյսիլիոսի նամակը, որով նշանաւոր նաւահանգստի մը տիրոջ տիրանար ։ Իսկոյն Վասիլ Դիյրրախիոն ղրկեց Եւստաթիոս Դաֆնոմիլէ պատրիկը, որ հարկ եղած զգուշութեամբ կրցաւ Դիյրրախիոնի գրաւումը ի գլուխ հանել խաղաղական միջոցներով ։

Աշոտ Տարօնեցւոյ այս միջադէպը պատմած է Կեդրենոս (Բ հատոր , յէջ 449 և 451)։ Աշոտ զօրապետ անուանուեցաւ ի Պօլիս, իսկ Բուլղար արքայադուստրը՝ նաժիշտ

Հեղինէ կայսրուհւոյն, կին Կոստանդնի, եղբօր Վասլի, որ ամուսնացած չէր։

Ոչ նուազ վիպասանական եղաւ նաեւ Սամուէլի՝ Բուլղարաց Թագաւորին՝ մահուանէ ազատումը։ Նիկեփոր Ուրանոս Վեստ անուանեալ, Պաղտատէն նոր դարձած, ուղարկուեցաւ Բուլղարաց դէմ Գրիգոր Տարօնեցւոյ պարտութեան համապատասխանող յաղթութիւն մը կանգնելու համար։

Տեղեկանալով որ Սամուէլ Թերմոպիլեան կիրճին մօտեցած է եւ Ցունաստանի վրայ պիտի յարձակի, բոլոր երագութեամբը ընդ առաջ վազեց, Փարսաղիոյ դաշտը անցաւ եւ բանակեցաւ Թշնամւոյն դիմաց, Սփէրխիոս գետին եզերքը։

Բուլղարները անհոգ էին յարձակումէ, գետը՝ դժուարանցանելի ըլլալով։ Ուրանոս ծանծաղ տեղ մը գտնելով, լռութեան մէջ, գիշեր ժամանակ բոլոր բանակը՝ միւս ափունքին վրայ փոխադրեց. յետոյ փողերու գոչիւնով, ռազմիկներու աղաղակով, զէնքերու շառաչով, ձիերու ոտնատրոփ դոփիւնով, որ աշխարհի կործանման գաղափարը կու տային՝ նետուեցաւ Թշնամեաց բանակին վրայ. կոտորածը սարսափելի եղաւ։ Սամուէլ եւ իր որդին՝ կը ննջէին վրանին տակ. յան-

կարծ արթնցան. ո՞ւր դիմել, ո՞ւր ապատիլ, կամ որո՞ւ դէմ կռուիլ. պաշարուած էին չորս կողմէ. ոչինչ կը զանազանէին մթութեան մէջ. փախուստի փորձ ըրին. երկուքն ալ վիրաւորուեցան, արհաւրոտ գիշերուան մէջ՝ անտես ձեռքի մը հարուածներուն հանդիպելով. գետին փռուեցան, և ծածկուելով դիակներու տակ, շնչասպառ՝ իրենց մահուան կը սպասէին։ Իրենց գլխուն վերեւ կը գոռային յոյն ռազմիկներուն խրոխտանքները և հարուածներու բաղխիւնը. կոխոտելով կ'անցնէին իրենց վրայէն, ծանրութիւնը աւելցնելով իրենց թիկանց վրայ։ Ամբողջ գիշեր՝ այս արհաւրալից դիրքին մէջ անցուցին. սակայն առաւօտը դեռ աւելի ահաւոր եղաւ իրենց համար. լոյսը կարող էր զիրենք մատնել, իրենց փախուստն արգիլել. բաց աստի, յոյն զինուորներու խումբ մը մեռեալներուն մէջ ցրուած, սկսած էր զանոնք կողոպտել. յայտնութիւնը անխուսափելի կը թուէր. սակայն յունական բանակը յոգնած ըլլալով, յաղթանակի ուրախութեամբք վրաղեցաւ՝ մեծաւ մասամբ, և վտանգը նոյն օր հեռու մնաց թագաւորէն և իր որդիէն։

Վերջապէս գիշերը՝ իր քօղը ձգեց մեռեալներուն վրայ. յունական վրաններու առ-

ջեւ, զինուորները, ջահեր վառած, կ'երգէին ու խնջոյք կը կատարէին. Սամուէլ և իր որդին՝ զգուշութեամբ դիակները մէկդի սկսան հրել. ոտքի ելան, և նայեցան չորս կողմերնին. ոչ ոք կը հսկէր իրենց վրայ. դուրս ելան մեռեալներով ծածկուած դաշտէն, և լռելեայն՝ իբր ուրուականներ, մութին մէջ անհետացան. տագնապալից ընթացքով մը կը վազէին, լեռներ, դաշտեր կտրելով, թըշնամեաց գունդ մը երեւակայելով իրենց ետեւ։ Վերջապէս հասան Բուլղարիա. Հայրենեաց օդը, կեանքը, ազատութիւնը երբեք այնքան չքնաղագեղ երեւցած չէին իրենց, ինչպէս երբ իրենց տէրութեան սահմանը հասնելով՝ սկսան խորհիլ այն վտանգներուն վրայ, որոնցմէ հազիւ ազատած էին։ (Կեդրենոս, Բ հա. էջ 490)։

Իսկ Ուրանոս Հռովմայեցին՝ գերիները ազատեց, դիակները կողոպտեց, բազմաթիւ դղեակներ առաւ և մեծ աւարով դարձաւ Թեսաղոնիկէ։

Այս ժամանակ, կ'ըսէ Կեդրենոս, Պաւղոս Մագիստրոսը, Վոլոս կոչուած, որ Թեսաղոնիկէի ամենէն առաջին մարդիկներէն էր, և Մալաքինոս՝ նշանաւոր բանիւ և գիտութեամբ, ամբաստանուեցան իբրեւ Բուլղա-

րաց կողմնակից. մին Պօլիս բերուեցաւ, միւսը աքսորուեցաւ Թրակիա: Ադրիանուպօլսի մեծամեծներն և նշանաւոր իշխանները վախնալով որ մի՛ գուցէ նոյնը իրենց ալ հանդիպի, Սամուէլի կողմը անցան, Վատածէս՝ իր բոլոր ընտանիքով, և Գլավաս՝ միայնակ. կայսրը ասոր ողջին երեք տարի դրաւ ի դիպահոջ, յետոյ արձակեց (յամին 997):

Այս դէպքերէն յետոյ տեղի ունեցաւ կայսեր երկրորդ արշաւանքն ի Բուլղարիա, աւելի ճիշդ՝ այցելութիւն մը՝. որուն միշտ պալատականք յաղթանակի կարեւորութիւն կ'ընծայեն: Դիմեց Փիլիպպոպօլիս, զոր յանձնեց Թէոփորոքանոսի. կործանեց բազմաթիւ դղեակներ Սարդիկէի մօտ, դարձաւ Մոզինոպոլիս (997):

Երրորդ արշաւանք մը տեղի ունեցաւ քիչ յետոյ (999), բայց այս անգամ հռոմէական բանակին կը զօրավարէին Թէոփորոքանոս և Նիկեփոր Քսիփիաս: Ասոնք տիրեցին Մեծ և Փոքր Փասրասթլավայի և Փլիսքոպայի:

ԺԱ. — 1000 ԹՈՒԱԿԱՆԸ. — ՀԱՐԿԱՏՈՒՈՒԹԵԱՆ ԵՂԱՆԱԿ ՄԸ. — ՆՈՐԱՀՆԱՐ ԱՆԳԹՈՒԹԻՒՆ. — — ԿՈՅՐԵՐՈՒ ԹԱՓՈՐԸ. — ՍԱՄՈՒԷԼԻ ՄԱՀԸ. — ՆՈՒԱՃՈՒՄՆ ԲՈՒԼՂԱՐԻՈՑ։

*Բոլոր քրիստոնեայ աշխարհը հոգեկան տագնապէ մը կ'անցնէր. ամէնքը համոզուած էին՝ թէ աշխարհի վախճանը կը մօտենայ. ամէն փոթորկալից օդ՝ արհաւիրքներու սկըզբնաւորութիւնը կը թուէր. ամէն փայլակի մէջ՝ Աստուծոյ զայրացկոտ նայուածքը կը ցոլար. գղեակներու մէջ՝ եղեռնագործ իշխաններն՝ իրենց խղճմտանքէն տանջուած, և սարսափահար իրենց ստուերէն, ապաշխարութեան հառաչանքներ կ'արձակէին... 1000 թուականը կը սկսէր։*

*Վասիլ շատ հեռի էր կարեւորութիւն ընծայելէ կեղծ գիտուններու։ Իր բոլոր ուշադրութիւնը կեդրոնացած էր իր ներկայ թագաւորութեան վրայ. ամէն օր կը խորհէր նոր միջոց՝ տէրութեան գանձը հարստացընելու, Բուլղարիան ոչնչացնելու։*

*Վասիլ ամենածանր հարկեր դրաւ ժողովըրդեան վրայ. աղքատներու մեծ մասը՝ անկարող էր զանոնք վճարելու. Վասիլ ալ գիտէր այս բանս և հետեւեալ միջոցը գտաւ*

իր փափագած գումարները ձեռք բերելու . անկարող աղքատաց տեղ՝ Հարուստները կը վճարէին. ամէն Հարուստ՝ աղքատի մը ներկայացուցիչն էր , անոր լրացուցիչը , անոր պատասխանատուն՝ դրամական խնդրոց մէջ։

Հարուստները աղքատներու Հանդէպ զուգաՀեռաբար պատուորելը և երկու Հակառակ վիճակներէն խումբ մը կազմելը՝ նորութիւն մ'էր, որուն Հնարողն եղաւ Վասիլ Բ։ Վնաս մը՝ որ իշխանաց և Հարուստներուն ալ կը մերձենայ՝ կարող չէ դիւրաւ ներման արժանանալ. եկեղեցականներէն և Հարուստներէն բողոքներ կը տեղային. Վասիլ անողոք կը մնար . միայն Թախանձանքները լռեցնելու Համար՝ երբեմն կը խոստանար այդ Հարկը դադրեցնել՝ Բուլղարաց պատերազմէն վերջ։ Հարկատուութեան այս կերպը տեւեց՝ զորչափ ապրեցաւ Վասիլ ։ Այս նոր տուրքին փոխարէն՝ նա վերցուց Նիկեփորի այն օրէնքը, որով կ'արգիլէր նոր վանք և եկեղեցի շինել, արդէն իսկ շինուածները՝ պէտք եղածէն աւելի բազմաթիւ Համարելով։

1000էն մինչև 1014 Վասիլ անդադար յարձակումներ կ'ընէր Բուլղարիոյ վրայ, տալով աննշան պատերազմներ , որով դղեակի մը կը տիրանար , քաղաք մ'անձնատուր

ըլլալու կը բռնադատէր, առանց սակայն հասնելու կարեւոր արդիւնքի մը։ Երբ Պօլիս կը վերադառնար, թշնամիք իր ետեւէն յառաջ կու գային նորէն՝ մինչեւ իրենց նախկին սահմանները։

Բայց Չէյլթունի պատերազմը 1014ին, վճռական պիտի ըլլար երկու անհաշտ թշնամիներուն համար։

Վասիլ Բ. Բուլղարիա մտնելու համար՝ պէտք էր նախ անցնիլ այդ վտանգաւոր կիրճէն։ Սամուէլ ամէն պատրաստութիւն առաւ այդ կիրճը նախապէս այնքան լաւ ամրացնելու, որ թշնամեաց արշաւանքը խըղդուի նոյն իսկ իր ակունքին մէջ։ Դուռը պահպանելէ յետոյ՝ կարող էր անվախ ապրիլ իր տան մէջ։ Հզօր գունդերով փակեց անցքը։ Վասիլ՝ իր բանակովը լերան ստորոտը կանգնած՝ կատաղի յարձակումներ գործեց. ամէն ջանք ի զուր եղաւ. Յոյներ կը սպաննուէին, առանց թշնամեաց վնաս մը հասցնելու։ Յուսահատեցաւ կայսըրը, նահանջ հրամայեց. յանկարծ Նիկեփոր Քսիֆիաս՝ տագնապած՝ կայսեր ներկայացաւ, գոչելով.

— Տէ՛ր արքայ, ի՛նչ ես հրամայած։

— Նահա՛նջ. անկարելի է Չէյլթունի անցքը գրաւել։

— Տէ՛ր արքայ. շարունակէ՛ յարձակումը. Մնացեալը ինձ յանձնէ. ես կը տիրեմ կիրճին. բաւական է ինծի քաջ գունդ մը։

Վասիլ կրկին կռուի սկսաւ թշնամեաց հետ. մինչ անոնք զբաղած էին կայսեր բանակին հետ, և արեամբ գինովցած, ուրիշ ոչ մէկ բանի ուշ կը դնէին, Նիկեփոր Քսիփիաս արդէն լեռնային ճանապարհէ մը թըշնամեաց ետեւն անցած էր։ Անոնք երկու կողմէն պաշարուած տեսնելով զիրենք, բոլորովին լքան, և փախուստին ապահովելու համար միայն կը պատերազմէին։ Սամուէլ հազիւ ազատեցաւ՝ իր Գաբրիէլ կամ Ռատոմիր որդւոյն շնորհիւ, որ հօրը քով կը կռուէր. այս երկրորդ անգամն էր որ կ՚ազատէր նա՝ անխուսափելի թուող գերութենէ և կամ մահուանէ։

Բաց ի անթիւ սպանեալներէ, որոնց արեամբ լեռը ներկուեցաւ, Վասիլ Բ. գերի բռնեց 15,000 Բուլղար։ Անոնց հետ վարուեցաւ նա այն նորահնար անգթութեամբ՝ որ պատմութեան մէջ նշանաւոր մնացած է, Վասլի անուան յաճախակի յիշատակութեան պատճառ եղած, և է մին պատմութեան ամենէն եղերգերական տեսարաններէն։

Վասիլ հրամայեց որ բոլոր գերիները կու-

րացնեն, միայն մէկ առ հարիւր բացառութեամբ. Հարիւրերորդ գերւոյն՝ միայն մէ՛կ աչքը կը փորէին։ Պատերազմի դաշտավայրին վրայ սկսաւ անօրինակ գործողութիւնը, որ օդը կը թնդացնէր ճիչերով, հեծեծանքներով. ամենուրեք կը տեսնուէին խարոյկներ, տաքցած երկաթներ, որ աչքերու մէջ պիտի խրուէին։ Հոն Վասիլ՝ անգութ հըրճուանքով կը դիտէր այդ տեսարանը, իբրեւ Ներոն մը, բայց զուրկ գեղարուեստական ո՛ և է զգացումէ. իբրեւ արեւելցի բարբարոս մը, որ վրէժխնդրութեան հաճոյքը կը փնտռէ ամենէն գազանային գործողութեան մէջ։

Երեկոյեան դէմ, որ պիտի չառաւօտնար երբեք հէգ գերիներուն համար, 15000 Բուլղարներ խարխափելով, հեծեծելով կը թափառէին բանակին մէջ, 150 միականիներ ունենալով մէջերնին։ Այս առանձնաշնորհեալները որոշուած էին իբր առաջնորդներ իրենց հայրենակցաց։

Վասիլ զանոնք իրեն առջեւ կանչեց, հրաման տուաւ իրենց՝ հայրենիք դառնալու, ներկայանալու իրենց թագաւորին։ Մեկնումէն առաջ կոյրերը դասաւորեցին, թափօր մը կազմեցին անոնցմէ. բաժնուեցան անոնք այլեւայլ խումբերու. իւրաքանչիւրին առ-

ջուէն կ'երթար միականի մը, իր ետեւէն կու գային 99 կոյրեր ։ Ոչինչ աւելի սըր-տաշարժ կրնար ըլլալ՝ քան ուղեւորութիւնը այս խումբին, որ յուսահատ և լուռ կ'անցնէին հովիտներու, կիրճերու մէջէն. երբեմն միայն լռութիւնը կ'ընդհատուէր, երբ կոյրերը «Ո՞ւր ենք» կը հարցնէին. և առաջնորդները կու տային անունը՝ լերան մը, վտակի մը՝ որ այնքան սիրելի էր իրենց, և զոր այնուհետեւ երբեք պիտի չտեսնէին ։

Բուլղար քաղաքներու մէջէն անցած ժամանակ՝ հառաչներ և հեծեծանքներ կը լսուէին իրենց շուրջ. ծնողքները յուսահատ ճիչեր կ'արձակէին տեսնելով իրենց որդին՝ առանց անոնցմէ ճանչցուելու ։ Ամենուրեք ցաւի աննկարագրելի տպաւորութիւն մը թողլով ներկայացան Թագաւորին ։ Իմանալով սա թէ գերիները վերադարձած են, իջաւ զանոնք տեսնելու. 15000 կոյրեր, համրացած՝ իրեն կու գային, ամէնքն ալ իր ծանօթները, իր զինուորները, իր սիրելիները. Սամուէլ մարեցաւ ։ Արթնցուցին զինք. երկու օր վերջ մեռաւ. (1014) ։

Սամուէլի յաջորդեց Ռադոմիր ։ Վլադիսլաւ անուամբ իշխանը զինքը սպաննեց և իր գահուն տիրացաւ. Ռադոմիր՝ երբեմն՝ Վլա-

տիսլաւի կեանքն ազատած էր։ Վասիլ երբեք հանգիստ չթողուց Բուլղարիան և մասնական փոքր պատերազմներով աւերեց զայն մինչեւ 1018 թուականը. Թէ որքան Վասիլ Բ, որ ամէն Բուլղար գերի կը կուրացնէր, սարսափելի կ'երեւէր իր թշնամեաց, բաւական է մեզ ցուցնելու հետեւեալ միջադէպը։ Բուլղար գունդ մը՝ դարանի նըստած ըլլալով, յոյն զօրագունդ մը կը շրջապատէ, և կը սկսի կոտորածը. Վասիլ կ'անդրադառնայ հեռուէն. «Ետեւէս եկէք, քաջեր» կը գոռայ և կը վազէ օգնութեան. Բուլղարները, որ լաւ դիրք մը կը գրաւեն, կը սկսին աղաղակել. «Փախէ՛ք, կայսրը եկաւ». և յաղթութիւնը Վասիլ Բ.ի կը թողուն։

Վլատիսլաւ սպանուեցաւ ճակատամարտի մը մէջ։ Բուլղար ժողովուրդը ձանձրացած էր պատերազմէ. սկսած էին ատել ազատութիւն մը՝ որ գերութենէ չարագոյն էր իրենց համար։ Բուլղարիոյ բոլոր քաղաքները մի առ մի իրենց բանալիները ղրկեցին. Ժողովուրդը ընդ առաջ կ'ելնէր Վասլի, ծունր դնելով իր առջեւ և կեցցէներ աղաղակելով։ Վլատիսլաւի կինը՝ Մարիամ և Ռադոմիրի երկու քոյրերը՝ կայսեր անձնատուր

եղան։ Այս վերջինները Մարիամը տեսնելով, և յանկարծակի անոր ամուսնոյն ոճիրը յիշելով՝ անոր վրայ յարձակեցան կայսեր առջեւ, և կ՚ուզէին խեղդամահ ընել։ Հազիւ կարելի եղաւ երեք Բուլղար իշխանուհիները իրարմէ բաժնել։ Պելկրատի իշխանը՝ աղաչաւորի զգեստով կայսեր գթութիւնը խնդրեց։ Բոլոր երկիրը հողմի մը փոփոխութեամբ՝ կը պաղրէր մրրկաստանջ ալեկոծութենէն, որ յունական սահմաններն ողողած էր յաճախ։ Միայն Իբազ իշխանը՝ արքունական դղեակի մը մէջ ապաւինած, երկայն ժամանակ դիմադրեց. բայց նա եւս զոհ գնաց նենգութեան։ Ս. Աստուածածնի վերափոխման օրը խնջոյք մը պիտի տար իւր իշխանաց։ Եւստաթիոս անուամբ յոյն զօրավարը երկու ծառաներով մօտեցաւ իւր դղեկին. Բուլղարներ զինքը ձերբակալեցին և ներկայացուցին Իբազի։

— Ի՞նչ նպատակաւ հոս եկած էք, հարցուց խրոխտաբար Իբազ։

— Սեղանին մասնակցելու, պատասխանեց անվրդով Եւստաթիոս։

Այս պատասխանը զուարթացուց զԻբազ, որ համարեցաւ թէ յոյն զօրավարը մատնութեան նպատակով իրեն ապաւինած էր։

Ամենայն հիւրասիրութիւն ցոյց տուաւ յոյն զօրավարին, որ իմացուց Իբրագի թէ առանձին տեղ մը պէտք էին խօսակցիլ կարեւոր խնդրի մը վրայ։ Դղեկին առջեւ եղած պարտէզը ամէն քայլափոխին առանձնոց մը կը ներկայացնէր։ Եւստաթիոս՝ բարեկամական խօսակցութեան ժամանակ հետզհետէ բարեկամին մերձենալով, յանկարծ անոր վրայ յարձակեցաւ, գետին փռեց, ձեռքով բերանը փակեց՝ որ չկարենայ օգնութիւն աղաղակել. յետոյ ծառաներուն նախապէս սահմանած նշանը ըրաւ. անոնք իսկոյն իր քով վազեցին, Իբրագը կապեցին, կուրացուցին։

Բայց այս վայրկենին՝ ոտնաձայնէ կամ հեռաւոր խօսակցութենէ մը սարսափած, գետնին վրայ թողուցին Իբրագը և փախան. ո՞ւր կարող էին ապաւինիլ. անհնար էր դղեակէն հեռանալ. իսկոյն շէնքին մէջ մտան, և սենեակի մը մէջ ապաւինելով՝ սկսան պատրաստուիլ դիմադրութեան։ Աւելի եզական տեսարան կարող չէր ըլլալ. քաղաքի մը մէջ՝ միջնաբերդը երկայն ժամանակ դեռ կը կռուի յաղթականներուն դէմ. սենեակը՝ ուր պատանիները ապաւինեցան, դիւցազնաբար դէմ պիտի դնէր բերդի տէրերուն։

Յիրաւի, քիչ վերջ Բուլղարները վրէժխնդրութեան ազդակներով պաշարեցին սենեակը, զոր դիւրութեան համար կ՚ուզէին կրակի մատնել. ճարտասանութիւնը փրկեց զԵւստաթիոս. «Մեր մեռնելէն առաջ, ըսաւ նա, ձեզմէ շատեր պիտի մեռնին. Ի՞նչ նպատակաւ: Իրազի հետ արդէն կորսուած է ամէն յոյս ազատութեան: Խորհուրդ կու տամ, ընդունայն կռիւներու տեղ՝ իմ հետս գալ կայսեր՝ և իր գթութիւնը հայցել»:

Իրազի կուրանալէն յետոյ, յիրաւի ո՛չ մէկ նշանակութիւն կարող էր ունենալ հայրենասիրական ո՛ և է դիմադրութիւն: Հետեւեցան Եւստաթիոսի խորհրդին. իր նենգութիւնը, խօսքի պատրաստականութիւնը, անվըրդով հայրենասիրութիւնը՝ վարձատրուեցան առատապէս. Դիյրախիոնի կառավարիչն անուանուեցաւ. Իրազի բոլոր ստացուածքները իրեն տրուեցան: Իրազ բանտուեցաւ:

Բոլոր Բուլղարիա նուաճուած էր. Վասիլ Բ. զբաղեցաւ յօրինելու զինուորական կազմակերպութիւն մը՝ որ ապագայ ապստամբութիւնները մարելու կարող ըլլար:

Յետոյ, կայսրը Աթէնքի վրայէն Պոլիս վերադարձաւ. Ոսկեղէն դռնէն, յաղթական

կառքի վրայ, քովը առած Վլատիսլաւի կինը, Թամարի քոյրերը, Բուլղար իշխանները, գերիները, Բուլղար արքունեաց գանձերը՝ մայրաքաղաք մտաւ, գնաց ամենէն առաջ Ս. Սոփիա, ուր Լեւոն Հայկազնի պէս անձամբ սկսաւ շարականները։ Ուխտ ըրած էր կրօնաւոր ըլլալ, եթէ Բուլղարիոյ յաղթէ. չէր ուզեր հիմա ո՛չ ուխտազանց ըլլալ, և ոչ արքունիքէն հրաժարիլ. մարմնոյն վրայ կրօնաւորական զգեստ հագաւ, անոր վրայ արքունական տարազը. միսէ, գինիէ, հաճոյքներէ հրաժարեցաւ, միւս կողմէն պահելով բոլոր իր արտաքին փառքն և հեղինակութիւնը։

Այսպէս Վասիլ Բ. եղաւ տարօրինակ անձնաւորութիւն մը, խառնուրդ հոգեւորի, աշխարհասիրութեան, առաքինութեանց, ախտերու. ի ներքուստ ճգնաւոր մ'էր, արտաքուստ՝ թագաւոր, նոր Նիկեփոր մը։ Կը թուի թէ այս գիւցազնը, որուն ձեռքին տակ հրահանգուած էր, գաղափարական մ'եղած էր իրեն։

Այսպէս Զմշկիկի շուրջ կը տեսնենք երկու կայսրներ, հոգեբանութեամբ բոլորովին նման իրարու, և հակապատիկեր Հայ կայսեր, որուն կրօնասիրութիւնը երբեք ճըգնաւորութեան ձեւերու չյանգեցաւ։ Ջինու-

*րականի տիպարը անաղարտ մնաց իրեն մէջ. ջերմեռանդ էր Ս. Թէոդորի. այսպէս՝ սուրբերու մէջ ալ՝ զինուորական մը միայն կ՚ընտրէր իրեն պաշտպան։*

*Վասիլ Բ.ի յաղթանակին ժամանակ՝ բոլոր ժողովուրդը կեցցէներու հետ կը կրկնէր անդադար. « Բուլկարոքթոնոս » (Բուլղար սպաննող)։ Այս մակդիրը Վասիլ Բ.ի տիտղոսն եղաւ* (1018)։

*Ժողովրդեան աղաղակին արձագանգը տեւեց պատմութեան մէջ։*

ԺԱ. — ՎԱՍԻԼ Բ.Ի ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՀԱՅՈՑ ՀԵՏ. — ԱՐԾՐՈՒՆԵԱՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ՝ ԸՍՏ ԿԵԴՐԵՆՈՍԻ. — ԱՅԺՄԵԱՆ ՎԱՆԵՑԻՔ ԲՈՒԼՂԱՐ ԵՆ ԾԱԳՄԱՄԲ. — ՎՐԱՑ ԵՒ ՏԱՅՈՑ ԻՇԽԱՆՆԵՐԸ. — ՀԱՅ ԿՆՈՋ ՄԸ ՀՆԱՐԱԳԻՏՈՒԹԵԱՄԲ՝ ԴՂԵԱԿ ՄԸ ԳՐԱՒՈՒԱԾ. — ԱՆԻ ՅՈՒՆԱՑ ԿԸ ԿՏԱԿՈՒԻ. — ՎԱՍԻԼ Բ.Ի ՎՍԵՄՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՀԱՅԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ։

*Վասիլ Բ.ի յարաբերութիւնք Հայոց հետ՝ կարեւոր են ո՛չ միայն դէպքերու մեծութեամբ այլ նաեւ իրենց հետեւանքներով։*

1021*ին Սենեքերիմ Արծրունի, թագաւոր Վասպուրականի, Թրքաց արշաւանքներէն տագնապած, և Ս. Ներսիսի մարգա-*

րէութեանց ընթերցմամբ՝ կորսնցնելով բարոյական ամէն ոյժ՝ թշնամեաց դիմադրելու, թէպէտ երկու անգամ ճակատամարտ տուած էր անոնց դէմ և յաղթական ելած, — որոշեց իր երկիրը Յունաց ընծայել, և իր ժողովրդեան հետ գաղթել յունական բաժինը, ինչպէս ըրած էր երբեմն Արշակ Գ։

Իր Դաւիթ որդին Պոլիս եկաւ՝ այդ առաջարկութիւնը կայսեր ներկայացնելու. հետը բերած էր ճոխ ընծայներ, երեք հարիւր նժոյգի վրայ բեռցուցած։

Առաջարկութիւնը հաճոյ անցաւ կայսեր։ Սենեքերիմ, 400,000 հպատակներով Յունաց բաժինը անցաւ, տալով Վասլի տասը քաղաք, հազար գիւղ, եօթանասուն և երկու բերդ։ Ընդունեցաւ անոնց փոխարէն՝ Սեբաստիա, Լարիսսա և Աւարա քաղաքները։

« Յայնժամ, կ'ըսէ Կեդրենոս, և Սենաքերիմ իշխանն վերին Մարաստանի (τῆς ἄνω Μηδίας ἄρχων, Արտիմէտ անունէն զատ ոչինչ կայ Վասպուրականի մէջ որ Մեդ անունը յիշեցնէ), զոր այսօր Ասպրականիա կը կոչեն, եկաւ առ արքայն իր բոլոր գերդաստանով հանդերձ, տալով անոր՝ իրեն հպատակող բոլոր գաւառը, և անուանուեցաւ

պատրիկ և զօրավար Կապպադովկիոյ և փոխարէն իրեն կալուած ընդունեցաւ Հետեւեալ քաղաքները, Սեբաստիա, Լարիսսա, Աւարա, և ուրիշ բազմաթիւ կալուածներ. վասն զի սա ներգուելով ժերձաւորնակ Հագարացիներէն՝ անկարող դիմադրելու՝ կայսեր դիմեց և իրեն տուաւ իր գաւառը, որուն իշխան ըլլալով Վասիլ պատրիկ Արգիրոս՝ անէն բանի մէջ անյաջող երեւնալով՝ պաշտօնէն Հանուեցաւ, և իրեն տեղ ղրկուեցաւ զօրավարն Նիկեփոր Կոմնենոս, որ այդ գաւառը երեւալով՝ մասամբ Համոզելով, մասամբ բռնութիւն գործածելով, գաւառը կայսեր Հպատակեցուց » (Կեդրենոս, էջ 464)։

Կ'երեւի թէ իրենց Հայրենեաց մէջ բնակողները դժգոհ էին Սենեքերիմի փախստեան վրայ, և չէին Հանդուրժեր Հայաստանի մէջ՝ յունական կեդրոն մը և իրենց վրայ յոյն՝ իշխաններ տեսնալու։

Վասպուրականի ներկայ բնակչութեան մի մասը, շատ Հաւանօրէն, Բուլղարական ծագում ունի. այս կէտը, որ Հետաքրքրական է ազգագրական տեսակէտիւ, կը գուշակուի Կեդրենոսի մէկ վկայութեամբ։ Վասպուրականի բնակիչները գաղթած էին. Հարկ էր երկրին պաշտպաններ և մշակողներ

գանել. 1015ին Վասիլ Բ. կը պաշարէ Մակեդոնիոյ Մոգլենիա գաւառի Եղեսիա քաղաքը, իր պարիսպները լեռ գօտի ունէին իրենց շուրջ գետ մը, որուն ընթացքը փոխեց կայսրը և յաջողեցաւ տիրել քաղաքին. Հոն կայսեր անձնատուր եղան

«Դոմետիանոս Քաւքանոս, զօրաւոր մարդ և Գաբրիէլի պաշտօնակից, և Իլիծէս Մոգլենիոյ իշխանը, և ուրիշ շատ մեծամեծներ, և ոչ սակաւ պատերազմող ժողովուրդ. անոնք որ զէնք կրող էին շարժել դրկուեցան կայսերմէն յԱսփրականիա» (Կեդրենոս, էջ 462)։ Պէտք է գիտել որ Նախապէս արդէն յոյն զօրավար և բանակ կար ի Վասպուրական, և Եղեսիոյ Բուլղարք իբրեւ բնակիչ պէտք է ուղարկուած ըլլան. Վան, պատերազմաց կեդրոն մ'ըլլալով զարմանալի չէ որ զէնք շարժող մարդիկները ընտրուած ըլլան։

Դաւիթ, Տայոց իշխանը, զոր Կեդրենոս կ'անուանէ կիւրապաղատ Վրաց (էջ 447), անժառանգ ծերանալով իշխաններէն ոմանք սրբագործեալ բաժակի մէջ թոյն խառնեցին և իր մահը երագեցին։ Դաւիթ, մեռնելէն առաջ, իր թշնամեաց ոճիրը ընդունայն հանեց՝ գրելով կտակ մը՝ որով իր երկիրը

կայսեր կ'ընծայէր։ Սակայն Գէորգ, Դաւթի եղբայրը, ամէն ճիգ ի գործ կը դնէր կտակին իրագործումը խափանելու համար։

Վասիլ Բ. աճապարեց Վրաստան երթալու, և յաջողեցաւ խնդիրը լուծել առանց զէնք գործածելու։

Հիւսիսային Վրաստանը Գէորգի ընծայեց, թոյլ տալով իրեն հոն ինքնագլուխ թագաւորել, պայմանաւ որ Հոռոմայեցւոց երկրին վրայ պիտի չարշաւէր։ Իր որդին եւս պատանդ առնելով՝ գնաց Փիւնիկէ։ (Կեդրենոս կը խօսի այս դէպքերուն վրայ, էջ 447, առանց սակայն, հայ պատմչաց յիշատակած թուականը պահելու)։ 1022ին Վասիլ պատերազմեցաւ Վրաց հետ. բայց առանց յաղթելու. երկրորդ ճակատամարտի մը մէջ, Վրաց Լիպարիտ սպարապետը սպանուելով, Գէորգ հաշտութիւն խնդրեց տալով, երկիւներու հետ, իր Բագրատ որդին ալ, իբրեւ պատանդ։ Բասեան գաւառի Մեծոփ գիւղին մէջ՝ դաշնադրութիւն մը կնքուեցաւ՝ որով Տայոց մի մասը Վրաց կ'անցնէր։ Խնդիրը աւելի պարզեցաւ, երբ Գէորգ մեռնելով՝ իրենց յաջորդեց Բագրատ, որ անձնական ոչ մէկ պատճառ ունէր Յունաց թշնամի ըլլալու։

*Վասիլ առեց Խլաթ, Մանազկերտ, Արճէշ քաղաքներուն։ Ապուսալի-Հասան, Մերվանի որդին, որ Արաբացւոց կողմանէ Հայաստանի կառավարիչ անուանուած էր, յաղթուելով իրմէ՝ քանամեայ զինադադար խնդրեց։ Կայսրը վերադարձաւ Պոլիս։ Նա Բագրեւանդ գաւառի մէջ գտնուած պահուն՝ կը սպասէր որ Գագիկ Ա Հայոց թագաւորը գայ իրեն յարգանքներ ընծայելու. բայց նա խրոխտ վարուեցաւ. իր այս անտարբերութիւնը պատժուեցաւ՝ Կողովիտ և Ծաղկոտն գաւառներու աւերումով։ Աբաս, Կարսի թագաւորը և Սենեքերիմ Արծրունի՝ կայսեր շնորհներուն արժանացան՝ տեսակցութիւն խնդրած ըլլալնուն համար։*

*Ուրիշ անգամ մը եւս, տարբեր առթիւ, Ափխազաց դէմ գացած պահուն, կայսրը* (1022*ին*) *անցաւ Հայաստանէն։ Իր դրօշին տակ կը պատերազմէին նաեւ հայ զօրքեր. Իբրահիմի բերդը, որ Սարակինոսաց կը պատկանէր, պաշարած ժամանակ, հայ կին մը, իր նենգութեամբ, զինքը ազատեց երկարատեւ կռուի մը նեղութենէն։*

*Բերդապահները ձերբակալած էին և զղեկին մէջ բանտած ուրիշ հայ կին մը, որ ազգական էր առաջնոյն. սա թախանձանօք*

յաջողեցաւ հրաման առնալ՝ որ կարենայ գերի կնոջ հետ տեսնուիլ և զայն մխիթարել։ Զինուորները սակաւաթիւ էին բերդին մէջ, բայց դեռ ևս կարելի չէր տիրել, անոր պարիսպներուն բարձրութեանը հաւասար սանդուղներ դեռ չշինուած. Հայ կինը հետեւեալ հնարքը գործածեց։ Օր մը պարիսպներուն վրայ նստած՝ իլիկը ձեռքին մէջ կ'աշխատէր, աչքերը վար, և ձեւացնելով իբր թէ դղեկի պարտէզին մէջ հայ գերուհւոյ մը հետ կը խօսակցի, մինչ իրօք ոչ ոք կը գտնուէր այն տեղ։

Մի և նոյն պահուն՝ իլիկին դերձանը մինչեւ վար իջեցնելով պարիսպներուն բարձրութեան աստիճանը կը չափէր։ Յետ որոշ կերպով զայս գիտնալու, Հայոց բանակը գնաց և անոնց բացատրեց՝ թէ ինչ սանդուխներ պէտք է շինեն։

Ամէն բան գործադրուեցաւ իր հրահանգներուն համեմատ։ Յարձակումը դիւրացնելու համար ընտրեցին գիշեր մը՝ որ տօնական էր Արաբացւոց համար։ Այն պահուն երբ ատոնք անկասկած խնջոյքի նստած էին, Հայ զինուորները վեր բարձրացան պարիսպներէն, երկու բերդապահ աշտարակներէն վար նետելով ջախջախեցին, յետոյ՝ անհրա-

ւէր՝ խնջոյքի սենեակը մտնելով՝ սպաննեցին հոն գտնուող Արաբացիները. քիչեր միայն կարող եղան փախչելու. Հայերը բերդին տիրելէն յետոյ, «կեցցէ Վասիլ» սկսան աղաղակել, և աւետաբեր մը ղրկեցին կայսեր. նա փութաց Իբրահիմի բերդը գալու. Հայոց՝ գովեստ, պաշար, զէնք բաժնեց, և զօրավար մը դնելով հոն, դղեկին տիրողները՝ անոր բերդապահ անուանեց։ Այս միջադէպը պատմած է Էլմասէն արաբացի հեղինակը։

Բայց մեծագոյն դէպքը որ հանդիպեցաւ ընդ մէջ Վասիլի և Հայոց, եղաւ Անի քաղաքին խնդիրը։

Յովհաննէս Բագրատունի (1022ին) Վասիլի կտակեց Անի քաղաքը, պայմանաւ որ մինչեւ մահ ինք պիտի իշխէ հոն և կայսրը ամէն օգնութիւն պիտի շնորհէ իրեն։ Կարելի չէր աւելի անբարեխիղճ որոշողութիւն մը՝ քան ինչ որ ըրաւ Յովհաննէս ոչինչ հոգալով իր անձնական վայելքէն զատ։ Պետրոս Գետադարձը ոչ նուազ եպերելի գտնուեցաւ այս կէտին մէջ՝ յանձն առնելով նուիրակի պաշտօնը՝ զոր իրեն տուաւ Բագրատունի արքայն։ Վասիլ ի սկզբան ուրախութեամբ ընդունեցաւ այսպիսի առաջարկ մը, որով ցորչափ ապրէր՝ պատճառ մը պիտի ունենար

Հայ իշխանաց վրայ գերիշխանութիւն ցոյց տալու, զանոնք ըստ կամս սանձելու. բայց աւելի հայրենասէր քան զՅովհաննէս, և անշուշտ յիշելով որ Վասիլ Արշակունիէ մը ծագած է ինք, և չուզելով որ այդպիսի կտակ մը իրեն յաջորդող ո՛ և է յոյն կայսեր մը ձեռք անցնի, մեռնելէն առաջ կանչեց Հայ երէց մը (1030 թուին) Կիրակոս անուամբ, և վսեմօրէն կտակը իրեն յանձնեց, որպէս զի տանի զայն Հայոց թագաւորին տայ։

Ի՞նչ բան աւելի կարող է Վասիլ Բ.ի Հայասիրութիւնը ցոյց տալ։ Ո՜րքան կը սխալին անոնք որ կ՚ենթադրեն թէ Բիւզանդիոնի Հայազգի կայսերք յունացած ըլլան զգացմամբ, և մոռցած իրենց հայրենիքը։

Դժբաղդաբար Կիրակոս երէց՝ ապագային մատնիչ մը պիտի ըլլար, և կտակը վերստին յոյն արքունիքը պիտի բերէր վաճառելու, Յովհաննէս արքային չափ եղեռնագործ մը հանդիսանալով, դաւաճան ազգային իրաւանց, և պատճառ Բագրատունի թագաւորութեան վերջանալուն։

Յիրաւի, խորապէս ուսումնասիրելի կէտ մ՚է այն ազդեցութիւնը զոր ունեցած է Բիւզանդիոնի արշակունի հարստութիւնը Հայաստանի Բագրատունի թագաւորաց նկատ-

մամբ, երկուքն ալ ժամանակակից ըլլալով. սկսած մի և նոյն դարուն (Վասիլ Ա.ի և Աշոտ Ա.ի օրով) երկուքն ալ մարած ըլլալով՝ գրեթէ միանգամայն։ Գոզցես հասարակաց աղբիւր մը կար անոնց կենաց, անոնց եռանդեան և ուժոյն, գաղտնի կապ մը՝ և կախում մը իրարմէ. Հասարակաց աղբիւրը սպառած պահուն՝ երկուքն ևս կը դադրին գոյութենէ։

Անիի մասին կը խօսի Կեդրենոս, (Բ հտ. էջ 557) Հայոց թագաւորը՝ Յովհաննէսիկէս կոչելով, այսպէս.

«Երեքտասաներորդ ընդիքկտիոնին մէջ՝ պատերազմ սկսաւ՝ Անիի տիրապետութեան համար. բայց նախ վերէն պէտք ենք պատմել թէ ինչպէս և ինչ կերպով Կոստանդին Թագաւորը պատերազմի ձեռնարկեց, մինչդեռ Անիի իշխանը հանդարտ կեցած էր և բնաւ չարիք մը չէր հասուցած։

Երբ Գէորգ Ափխազաց իշխանը Հռոմայեցւոց դէմ զէնք վերուց, իրեն զինակից էր նաև Յովհաննէսիկէս՝ Անիի գաւառին իշխանը. և վասն զի, ինչպէս որ վերը արդէն ըսինք, ճակատ առ ճակատ պատերազմեցաւ ընդդէմ Գէորգի և զասիկա փախուց և խոր-

տակեց, Յովհաննէսիկէս վախնալով որ մի՛ գուցէ Թագաւորը՝ իր զինակցութեանը համար բարկանալով՝ անողոք կերպով իր հետ վարուի, քաղաքին բանալիները առնելով, ապաւինած էր Թագաւորին, և ինքզինքը ինքնակամ անոր յանձնած, տալով նաև քաղաքին բանալիները. նա հաւնելով իր այս խոհեմութեանը, զինքը մագիստրոս կ'անուանէ և ցկեանս իշխան՝ Անիի և Մեծ կոչուած Հայաստանին, պահանջելով իրմէ գրաւոր խոստում մը, որ իր մահուանէն վերջ՝ իր երկիրը երկու հաւասար մասի բաժնուի, մին ըլլայ իրեն (Հայոց Թագաւորին), միւսը՝ Հռովմայեցւոց։ Ասոնք այսպէս եղան։ Կը մեռնի Թագաւորը, շատ ժամանակ վերջ՝ կը մեռնի նաև Յովհաննէսիկէս. և ասոր մեռնելովը՝ իշխանութիւնը կ'ընդունի Գագիկիոս անոր որդին, որ խաղաղութիւն պահեց Հռովմայեցւոց հետ և անոնց զինակից մնաց. հայրենի իշխանութիւնը սակայն ձեռք առաւ, և չուզեց զայն Հռովմայեցւոց տալ, ինչպէս հայրենի գրութիւնը կը պահանջէր. սակայն Մոնոմախոս իր արքունեաց մէջ գանելով այդ գրութիւնը՝ կը պահանջէ, իբր յաջորդ Վասիլ Թագաւորին, թէ՛ զԱնին, և թէ՛ Մեծն Հայաստանը »։

Կեդրենոսի պատմուածքը, ինչպէս կը տեսնուի, ունի կարեւոր տարբերութիւններ Հայ պատմիչներէն։ Յովհաննէսիկէս աւելի արդարանալի կ'երեւի, հանգամանքներէն բանադատուած ըլլալով՝ պահանջուած կտակը գրելու։

Ինչո՞ւ Արեւելքի քրիստոնեայ փոքրիկ թագաւորները գրգռուած էին Վասիլի դէմ։ Այս բանին քաղաքական պատճառը դժուար է տալ։ Միայն թէ ճիշդ այս թուին էր որ տեղի ունեցան Փոկասի և Քուրքիասի մեծամեծ ապստամբութիւնները. կը թուի թէ այս թագապահանջներու քաղաքագիտութիւնն եղաւ, Աննիբաղի պէս, շրջակայ ազգերը իրենց հասարակաց թշնամւոյն դէմ հանել, խոստումներով ազատութեան։

ԺԳ. — ՎԱՍԻԼ Բ.Ի ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ՝ ԳԵՐՄԱՆԱՑԻՈՑ ԴԷՄ. — ԳԵՐՄԱՆԱՑԻՈՑ ԿԱՅՍՐԸ ԳԵՐԻ ԲՌՆՈՒԱԾ. — ԻՐ ԱԶԱՏՈՒՄԸ. — ՍԱՐԱԿԻՆՈՍՔ, ՎԵՆԵՏԿԵՑԻՔ, ԽՌՈՒԱԹՆԵՐ, ԽԱԶԱՐՆԵՐ, ՌՈՒՍԵՐ, ԱՐԱԲՆԵՐ՝ ՎԱՍԻԼ Բ.Ի ԺԱՄԱՆԱԿ։

Ոթոն Բ. Վասիլի քրոջ հետ ամուսնացած, իր ժառանգութիւնը կը համարէր Իտալիան։

Այս եղաւ շարժառիթ գերմանական պատերազմին։

Իտալիոյ Արաբները (զոր եւրոպական տեղական ածանցով Սարակինոս կը կոչենք, փոխանակ Սարակոսացի ըսելու) Հարաւային գաւառներու վրայ անընդհատ արշաւանքներ կ'ընէին. Ներողամիտ գտնուեցաւ Վասիլ և իր ոյժը երկու թշնամեաց չբաժնելու համար, Արաբացւոց մեծ գումար մը խոստացաւ՝ որպէս զի յարձակին Գերմանացւոց վրայ։

Ոթոն Բ. գրեթէ համազգային բանակով մը Իտալիա մտաւ՝ Յունաց և Արաբաց միացեալ ոյժերուն դէմ պատերազմելու համար։ Վեց ճակատամարտներու մէջ Գերմանացիք յաղթեցին, Տարենդոնի մօտ։ Դէմ առ դէմ կռուէ յուսահատած, Արաբաց մէկ գունդը՝ գերմանական բանակին ետեւը անցաւ, երբ ան անհոգ զբաղած էր իր խնջոյքներուն, և դարանեցաւ լերանց մէջ. բանակին մնացեալ մասը առջեւէն յարձակում գործեց։ Գերմանացիք ալ վստահ դիմադրութիւն մը սկսան առանց դէմ, բայց երկու կողմէն պաշարուած տեսնելով զիրենք, փախուստի դիմեցին։ Պատերազմական ոգին՝ այս դարու մէջ՝ եկեղեցականներու վրայ ալ տիրած ըլլալով՝ ժողովրդապետներ և եպիսկոպոսներ ալ պատերազմի եկած էին. այնպէս որ գերմա-

նական բանակը կարելի էր երկու մասի բաժնել, եկեղեցական և աշխարհական ։ Պարտութենէն յետոյ՝ եկեղեցականներն ալ միւս զինուորներուն բաղդն ունեցան ։

Կայսրը իր ձիով ծովափ վազեց, և ջուրին մէջ նետուելով գիտեց դէպ ի նաւակ մը՝ զոր Գերմանացւոյ մը կարծեր էր. թըշնամւոյ մը, Սքլավոնի մը նաւակն էր. գերի բռնուեցաւ ։ Ցոյներ՝ Ոթոն Բ.ի կնոջ՝ Թէոփանոյ կայսրուհւոյն իմացուցին թէ պատրաստ են իր այրը արձակելու՝ եթէ հարկ եղած գլամը վճարէ ։ Թէոփանոյ ղրկեց գըրամի բեռներ՝ բազմաթիւ ջորիներու վրայ բեռցուցած, զորս յանձնած էր Մէցի քաջասիրտ եպիսկոպոսին՝ Թիէրիի ։ Ասոր հետ կայսեր նաւակին մօտեցաւ գերմանացի զինուորներու գունդ մը՝ նաւաստի ծպտած ։ Այն վայրկենին՝ երբ Թիէրի կայսեր մասին Ցունաց հետ կը բանակցէր, Ոթոն Բ զինքը ջրոյ մէջ նետեց. յոյն մը զգեստէն բռնեց զինք, բայց գերմանական սուր մը իր բազուկը երկու կտոր ըրաւ. կայսրը՝ պատրաստուած նաւակը փախաւ, և Ցոյներ՝ իրենց գող թշնամիներէն սարսափահար, ոչ մէկ փորձ ըրին հետապնդելու ։ Հարկ չէ ըսել թէ ոսկեբարձ կարաւանն ալ Ոթոն Բ.ի հետ Գերմանիա դարձաւ (983)։

Վասլի ժամանակ էր որ վարչական նոր կազմակերպութիւն մը յօրինուեցաւ Իտալիոյ համար. իշխան մը սահմանուեցաւ, որ քատափան պիտի կոչուէր, և որուն պաշտօնը պիտի ըլլար՝ իբրև փոխարքայ՝ կարգադրել ամէն բան որ Իտալիոյ կը վերաբերի. իր մայրաքաղաքը պիտի ըլլար Պարի։

Արաբները՝ որ Յունաց օգնական եղած էին Գերմանացւոց դէմ, պարզապէս նոր թշնամիէ մը ազատ մնալու համար, զայն հալածելէն յետոյ՝ վերստին Յունաց դէմ սկսան պատերազմիլ։ Պարիի ժողովուրդը՝ Սարգիս զօրավարը սպաննած ըլլալով, Արաբները՝ խռովութեան պահուն՝ յարձակեցան ու տիրեցին քաղաքին, գերիներու բազմութիւն մը փոխադրեցին Սիկիլիա։ Յովհաննէս Ամմիրափուլոս յաղթելով իրենց՝ տիրեց քաղաքին, բայց թշնամիներէն միայն երեք գլխաւորները սպաննեց։ Ասթուն զօրավարը՝ Պարիի բանակին հետ Տարենտոն գնաց Արաբաց դէմ. ինքը սպանուեցաւ, իր բանակը յաղթուեցաւ։ Կրկին պատերազմներ՝ մին Արաբաց դէմ, միւսը ապստամբած քաղաքացւոց դէմ, նպաստաւոր եղան Յունաց։

Վասիլ Բ. բարեկամ էր Վենետկոյ ատ-ժերուն. Ուրսէոլոյ առժի Յովհաննէս որդւոյն

հետ ամուսնացուց՝ կայսերական հանդիսիւ, Մարիամ իշխանուհին Արգիշերեան ընտանիքէ (997)։ Այս Մարիամու համար կը պատմուի թէ երկնային և յստակ ջուրի մէջ լուացուելու համար, առաւօտեան ցօղերը հաւաքել կու տար և անոնցմով կը լեցնէր իր աւազանը։

Խռովութիւններուն հետ այնքան հեզ և բարեկամական վարմունք գործեց, որ անոնք կամաւ անձնատուր եղան, թէպէտ հակառակ պարագային ալ՝ զէնքով պիտի նուաճուէին (1020)։

Նոյն քաղաքականութեամբ վարուեցաւ Ռուսաց հետ, որոնց Վլատիմիր ձարը, յոյն իշխանուհւոյ մը՝ Աննայի հետ՝ ամուսնացած էր։ Խրիյզոխիրոս Ռուսը 800 հոգւով հետ Պօլիս եկաւ, կայսեր բանակին մէջ մտնելու համար. Վասիլ հրամայեց որ նախ զինաթափ ըլլան. անոնք ոչ միայն մտիկ չըրին, այլ բարկացած՝ յարձակեցան Աբիւդոսի մօտ՝ յունական նաւերու վրայ և փասեցին անոնց։ Զկարենալով սակայն դիմադրել նորանոր ուժերու, անձնատուր եղան. Յոյները՝ զամէնքն ալ գլխատեցին (1022)։

Խազարաց Գէորգ Զուլոս թագաւորին դէմ ղրկեց Վարդ Դուկասը, որ պատերազմեցաւ, յաղթեց, և նուաճեց բոլոր երկիրը (1015)։

Արաբացիք յԱրեւելս՝ այս դարուն՝ հարկատու էին Յունաց. Վարդ Փոկասի զօրավարութեան ժամանակ (983) չուզեցին Հալէպի համար սահմանուած տուրքը վճարել, և խալիֆային Անտիոքայ մօտ վանքի մը վրայ յարձակելով՝ հոն գտնուող բոլոր կրօնաւորները ջարդեց։ Արաբացւոց քաջութիւնը այս աստիճանին հասած էր այս դարուս մէջ։ Յետոյ տեղիք տուաւ Յունաց պահանջին։ Պետութիւններու երկու ցեղ (1001ին) Անտիոքայ վրայ յարձակեցան, բայց Ուրանոս զօրավարէն յաղթուելով՝ մերժուեցան։ Խաչակրաց գալուստը՝ Արաբացիները գրգռած ըլլալով՝ ամենուրեք սկաւ հալածանք մը քրիստոնեայ հպատակներու դէմ։

Պաղտատու ամիրաները անկարող դարձած էին Բիւզանդիոնի արքայից հետ մրցելու։ Վասիլ Բ.ի ժամանակ ո՛չ մէկ կարեւոր արշաւանքի ձեռնարկեցին։

### ԺԳ. — ՎԱՍԼԻ ՄԱՀԸ. — ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ ԻՐ ԴԷՄՔԻՆ ԵՒ ԻՐ ԲՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ։

Բոլոր տէրութիւնը Վասլի յաղթանակներով փառաց և ուժոյ ծայրագոյն աստիճանին հասած էր. Վասիլ միայն տժգոհ էր։

Եռանդուն բնաւորութեանց յատկանիշն է երբեք իր գործը ամբողջացած չհամարել, այլ միշտ իր ծրագրին վրայ նոր յաւելուած մ՚ընել, այնուհետեւ գոհ սրտով մեռնելու համար։ Եթէ սակայն յաջողին զայն իրագործելու՝ դարձեալ անկատարութիւն մը պիտի նշմարեն իրենց գործոց ամբողջին մէջ։ Այսպէս եղաւ Վասիլ, որ Իտալիոյ վրայ արշաւանք մը ծրագրելով՝ անկողին ընկաւ (1025)։

Իր հիւանդութեան պահուն՝ գուժեցին իրեն Եւստաթիոս պատրիարքին մահը. պէտք էր իրեն յաջորդ մ՚ընտրել. մինչ այս խնդրոյ մասին մտահոգութեան մէջ էր Վասիլ, դուռը բացուեցաւ և ներս մտաւ Սթուտ վանքի Աբբահայրը՝ Ալեքսիս անուամբ, ձեռքին մէջ ունենալով Ս. Յովհաննէս Մկրտչի գլուխը՝ որուն բարերար ազդեցութեամբ՝ կայսրը բժշկել կը յուսար։

Նա զՎասիլ ազատած էր մտահոգութենէ. սա Ալեքսիսի դառնալով՝ իմացուց որ Պոլսոյ հայրապետ ընտրուած է. յետոյ յանձնեց իր իշխաններուն որ շուտով զինքը պատրիարքական գահու վրայ բազմեցնեն։ Նոյն իրիկուն մեռաւ, վաթսուն և ութ տարեկան։

Փսելլոս պատմագիրը այսպէս կը նկարագրէ Վասլի դէմքն և բնաւորութիւնը.

« Ով որ Վասլի դէմքը տեսնար, — իմ ժամանակիս մարդիկներէն շատերը տեսած են զինք, — իսկոյն կրնար իմանալ թէ նա ի՛նչ հոգի ունի։

Իր դէմքը հաճելի էր։ Ճակատը ո՛չ մտածկոտ, ոչ ցած, ոչ ալ շիտակ և աննշան՝ կնոջ մը ճակտին պէս, այլ լայն, դուրս ցցուած, ինչպէս որ մեծ մարդու մը կը վայլէ։ Իր նայուածքը ո՛չ կեղծ էր, ո՛չ անգութ, ո՛չ ալ ընդհակառակն՝ տարտամ, այլ հպարտ և արքական փայլով մը կը շողար, կը փայլակէր։ Իր դէմքը անթերի շրջանակի մը ձեւն ունէր։ Վիզը և ուսերը զարմանալի կերպով համեմատական էին իրարու։ Իր կուրծքը ոչ շատ ուռած էր, ոչ ալ ներս գնացած, այլ պէտք եղած լայնութեամբ։ Իր բոլոր մարմինը նոյն սքանչելի համեմատութեամբ շինուած էր։ Հասակը ձեւաւոր էր, քիչ մը միջակէն վար։

Հետիոտն քալելու մէջ քի՛չեր կրնային մրցիլ Վասլի հետ, ձիով ոչ ոք. նման այն բազմաթիւ արձաններուն, զոր իր կենդանութեան ժամանակ կանգնեցին իրեն, իր նժուգին վրայ միշտ շիտակ և անշարժ կը

կենար, պահելով իր վսեմ դաժանութիւնը, թէ՛ սովորական թէ՛ քառատրոփ ընթացքի ժամանակ։

Թէ՛ երբ հեծնար, թէ՛ երբ իջնար, թէ՛ կամաց ընթացնէր թէ՛ շուտ, բնաւ իր վսեմ կեցուածքը չէր փոխեր, ինչպէս թէ աներեւոյթ մեքենայով մը կապուած ըլլար։ Ծերացած ժամանակ, մօրուքին՝ ծնօտին վրայ գտնուող մասը թափեր էր, բայց երեսներու երկու կողմը դեռ թաւ մնացեր էր, և մինչեւ աչքը կը հասնէր՝ գրեթէ բոլոր դէմքը ծածկելով։ Սովորութիւն ունէր միշտ այս առատ մօրուքին հետ խաղալու, մանաւանդ երբ բարկացած ըլլար և աշխատանք կամ մտահոգութիւն մ'ունենար։ Ուրիշ սովորութիւն մ'ալ ունէր։ Այսպիսի պարապայններու մէջ գտնուած ժամանակ՝ ձեռքերը ազդրներուն վրայ կը դնէր, արմուկները դուրս ցցած։ Շատ անգամ այս դիրքին մէջ կը գտնուէր։ Իր խօսքերը կարճ էին, կտրուկ, անխնամ քան թէ զարդարուն։

Կը սիրէր բարձրաձայն ծիծաղիլ և իր աղմկաւոր զուարթութեանը պահուն՝ կարծես բոլոր մարմինը կը ցնցուէր»։

Հայ Արշակունեաց հարստութիւնը սկսած

էր Վասիլ Ա.ով, կրնանք զայն վերջացած համարել Վասիլ Բ.ով. կոստանդին Ը.ի թագաւորութիւնը անշուք եղաւ ու կարճատեւ։

Վասիլ Ա. նուիրականութիւն ստացաւ Բուզանդացւոց մէջ, իբր նախահայր կայսերական տան, սիրող գիտութեան, պաշտպան կրօնից, իբր անձնաւորումն քաջութեան։ Վասիլ Բ, իբր անհատ, չունէր նոյնչափ պատճառներ՝ ժողովրդականութիւն ստանալու. չէր ունեցած արկածախնդիր կեանք մը, թշնամի էր գիտութեան. բայց իր գործը լրացուց՝ ինչ որ կը պակսէր իր անձին։ Իր յաղթանակները մեծագոյն եղան։

Երկու Վասիլները նման են իրարու, — ինչպէս արշալոյսը՝ վերջալոյսին։



# ԺԲ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Ը.

(1025–1028)

---

Կոստանդին՝ սիրող երաժշտութեան, խըն-ջոյքներու, որսի, հաճոյքի, հարազատ որ-դին է Ռոմանոս Բ.ի։ Վայելքը բաժին ըն-կած էր իրեն, ինչպէս փառքը՝ Վասիլի։

Եթէ չըլլար ագահ և անգութ՝ շատ ար-դարանալի պիտի գտնէինք իր կենցաղասէր բնաւորութիւնը. վասն զի ծնած մեղկ ար-քունիքի մը մէջ (960) և մէկ տարեկան հա-սակին, անգիտակցօրէն, հասած կայսրու-թեան, – պաշտօն մը՝ որուն իր ամբողջ կե-նաց մէջ անգիտակից պիտի մնար, – յա-ջորդաբար խնամակալ ունեցած իրեն զԹէո-փանոյ(963), զՆիկեփոր(963-969), զՉմշկիկ (969-976), զՎասիլ Բ (976–1025). ամե-նայն իրաւունք ունէր համարելու՝ թէ տէ-րութիւնը կարօտ չէ իրեն, և թէ փոխանակ կեանքը վատնելու գործունէութեան ասպա-

ըէգին մէջ մտնելով, լաւագոյն էր զայն երջանկացնելու վրայ խորհիլ։

1025ին սակայն՝ Վասիլ կը մեռնէր. Կոստանդին Ը կը մնար միակ կայսր. վարչական մարմինը ամբողջապէս փոխուեցաւ. Կոստանդին իր շուրջ հաւաքեց բոլոր այն մարդիկները՝ որոնց միակ արդիւնքն էր իր զուարճութեանց մասնակցիլը։ Սկսաւ պատժել միանգամայն բոլոր այն իշխանները՝ որ իր ընթացքին չէին հաւնիր։ Տանջանքներուն մէջ՝ կուրացնելը՝ ամենէն աւելի և մասնաւոր հաճոյք մը կ'ազդէր իրեն։

Կոստանդին՝ Վուրց իշխանի որդին, յաճախ Վասլի կ'երթար՝ իր եղբօր գործած անառակութեանց վրայ գանգատելու համար. Կոստանդին Ը զինք կուրացուց։

Վասպուրականի կառավարիչ նշանակուած էր Նիկեփոր Կոմնենոս. սա իր զօրաց փախուստը արգիլելու համար, երդում ընել տուած էր իրենց՝ որ դասալիք պիտի չըլլան. Նախանձոտ պալատականներ կայսրը համոզեցին՝ թէ այդ երդումը ուրիշ բան չէր նշանակեր՝ բայց եթէ Կոմնենոս ապստամբելու կը պատրաստուի. Կոստանդին զինք կուրացուց։

Վարդ՝ Փոկասի որդին ամբաստանուեցաւ՝

թէ իր հօրը նման փորձեր պիտի ընէ գահը բարձրանալու. յանցանքը նոյն էր նախորդինին հետ, պէտք էր պատիժն ալ նոյն ըլլալ. Կոստանդին զինքը կուրացուց։

Նաւփակտոս քաղաքին բնակիչները ապստամբեցան իրենց կառավարչին դէմ՝ որ Ցիմար Գէորգ կը կոչուէր, և զանիկա սպաննեցին. Կոստանդին զիրենք պատժելու համար՝ իրենց եպիսկոպոսը կուրացուց։

Վասիլ՝ Ռոմանոս Սքլերոսի որդին և Փրուզիանոս՝ Բուկելլարեան գնդին զօրավար, մենամարտ ըրին, ինչ որ արգիլուած էր Բիւզանդիոնի մէջ. Փրուզիանոս՝ Փլաթի աքսորուեցաւ, Վասիլ՝ Օքսիա կղզին, ուր Կոստանդին զինքը կուրացուց։

Թէոդատոս Վեստ՝ Զաքարիա անուամբ կրօնաւոր ազգական մ'ունէր. Կոստանդին իր լեզուն կարել տուաւ, համարելով որ իրեն դէմ խօսած ըլլայ։ Ռոմանոս Գուրգէն ամուսնացած էր Փրուզիանոսի քրոջ հետ. Բողասան, Գլավլաս և Գուտէլէ բարեկամ էին անոր. այս յանցանքին համար Կոստանդին զիրենք կուրացուց։

Ոչ միայն անհատներու, այլ և իր ամբողջ տէրութեան դէմ՝ անգթաբար վարուեցաւ Կոստանդին։ Վասիլ Բ այնքան սուրբ գրած

էր, որ ժողովուրդը դեռ չէր կրցած իր երկու վերջին տարուան հարկերը վճարել, բայց տասի նաեւ Կոստանդինի թագաւորութեան երեք տարիներուն ժամանակ ալ տուրքերը դեռ ամբողջապէս չէին վճարուած։ Մէկ տարուան մէջ պահանջեց Կոստանդին՝ ինչ որ չէին կրցած անոնք տալ հինգ տարուան մէջ։ Ժողովուրդը՝ չքաւորութեան պատճառաւ՝ արդէն սովէ կը տանջուէր՝ երբ այս հրամանն ալ ընդունեցաւ կայսերմէն։

*

Կոստանդինի ժամանակ քաղաքական մեծագոյն դիպուածն եղաւ յունական արշիպեղագոսի մէջ տրուած ծովամարտը։

Սարակինոսները Կիկլադայց վրայ յարձակելով՝ կողոպուտ և սպանութիւն կ՚ընէին ամենուրեք։

Վերիպոէս՝ Քիսոի կառավարիչը, և Գէորգ Թէոդոքանոս, իրենց դէմ ղրկուած՝ ծովու վրայ պատերազմ տուին. Արաբացիք յաղթուեցան. իրենց նաւերը փախան կամ ընկղմեցան. տասնուերկու նաւ գերի ընկան Յունաց ձեռք։

Որեստէս անուամբ զօրավարը ղրկուեցաւ յԻտալիա՝ Սիկիլիան Արաբացիներէն առնե-

լու համար. նա տիրեց Հռեգիոնի. Պարի մտնելով և նոյն տեղւոյ եպիսկոպոսը մեռած գտնելով՝ անոր տեղ դրաւ Բիւզանդ անուամբ եպիսկոպոսը։

Փացինակները Բուլղարիա մտնելով՝ գե-րի տարած էին ոչ միայն ժողովրդեան մաս մը, այլ նաև զինուորական անձինքներ. Դիոգինէս զօրավարը, յաղթելով իրենց, զիրենք մղեց Դանուբէն անդին։

Արաբացիք յԱրեւելս՝ Վասիլ Բ.ի մահն իմանալով, սկիզբն տուին կռուի՝ յարձակե-լով Հալէպի վրայ։ Սփոնտիլոս՝ որ իրենց դէմ ղրկուեցաւ, յաղթուելով փախաւ Ան-տիոք։ Իր գերիներուն մէջ կար նաև մին, Մուսարաֆ կոչուած, խելացի և նենգաւոր. սա բարձր գիրք մը նշմարելով՝ կը խորհէր ինքնիրեն թէ որքան Արաբացւոց օգտակար պիտի ըլլայ դղեակ մը ունենալ այն տեղ. բայց որպէս զի շինութեան ծախքը Յունաց ընել տայ, Սփոնտիլոսի խորհուրդ տուաւ այն տեղ բերդ մը հիմնել. աւարտելէն յե-տոյ՝ Մուսարաֆ զայն փութով մատնեց իր հայրենակցաց, որ յառաջ կու գային Թուս-պէր Եգիպտացւոյն և Տրիպօլսի ամիրային զօրավարութեամբ։

Ճարտար զօրավարներու շնորհիւ՝ տէրու-

թիւնը Կոստանդինի եռամսեայ թագաւորութեան ժամանակ՝ չունեցաւ մեծամեծ կորուստներ։

*

1028ի նոյեմբեր 9ին՝ կայսրը անկողին ինկաւ մահացու հիւանդութեամբ։ Զուրկ ժառանգէ՝ իրեն յաջորդ անուանեց Կոստանդին Տալասսէնոս անուամբ պատրիկը, որ այս ժամանակ Հայկական բանակաթեմի մէջ կը գտնուէր, և կ՚ապրէր հոն առանձին, իր տանը մէջ. բայց Սիմէոն անուամբ իշխանը՝ կայսեր միտքը փոխեց, Տէլասսէնոսի տեղ կայսր անուանել տալով Ռոմանոս Արգիւրոսը, իր բարեկամներէն մին։ Էրղոպոտէս անուամբ ներքինին արդէն մեկնած էր կայսրութիւն աւետելու Տէլասսէնոսի, երբ ուրիշ նուիրակներ հանելով՝ զինքը յուսախաբ ետ դարձուցին։

Ռոմանոս Արգիւրոսի գահակալութիւնը ամենէն սրտաշարժ դէպքերէն մին է բիւզանդական պատմութեան. երկու ամուսիններ միշտ առաքինութեան և սիրոյ մէջ ապրած, զոհողութեան իրաւունքը կը յափըշտակեն իրարմէ, պատրաստ՝ իրարու համար իրենց կեանքը տալու։

Կոստանդին Ը. իր մահճին քով բերել

տեսաւ զԹոմանոս, և իր ձեռքէն բռնելով, ըսաւ.

— Իմ մահս մօտալուտ է. կայսրութիւնը կարող անձի մը կ՚ուզեմ յանձնել. զքեզ կ՚անուանեմ իմ յաջորդս: Բայց այս փառքին հետ՝ զքեզ կը բարձրացնեմ ուրիշ պատուի մը. իմ աղջիկներէս միոյն հետ պիտի ամուսնանաս:

— Տէր արքայ, պատասխանեց Տէլասսէնոս, արդէն ունիմ ամուսին մը, Հեղինէն . . .

Այս առարկութեան վրայ զայրացաւ Կոստանդինը, և որովհետեւ՝ ինչպէս տեսանք՝ իր ամենէն սիրած տանջանքը կուրացնելն էր, գոռաց.

— Կա՛մ աղջկանս հետ կ՚ամուսնանաս և կայսր կ՚ըլլաս, կա՛մ աչքերդ կը կորսնցնես: Ընտրէ՛:

— Կուրացո՛ւր, պատասխանեց անվրդով Թոմանոսը:

Մինչեւ երեկոյ քեզ ժամանակ կու տամ մտածելու. եթէ տեղիք չտաս հրամանիս, կը կորսնցնես միանգամայն՝ աչքերդ և ապագայդ:

Ահա թէ ինչ սպառնալիքներ հարկ եղաւ ընել Թոմանոսի՝ . . . զինքը կայսր ընելու համար:

Կոստանդինի խօսակցութիւնը արդէն իսկոյն հաղորդած էին Հեղինէի. հազիւ Ռոմանոս տուն մտաւ, իր կինը արտասուօք իր առջեւ վազեց, ոտքը ընկաւ. կը թախանձէր որ յանձն առնու կայսրութիւնը, և իր պատճառաւ ինքզինքը դժբաղդութեան չմատնէ։ Այս անձնանուիրութիւնը՝ դեռ աւելի զՀեղինէ սիրելի կ՚ընէր Ռոմանոսի, որ աւելի յուզուած, սկսաւ դիմադրել իր աղաչանքին։ «Կայսր եղիր կ՚ըսէր Հեղինէ, ես այնչափ պիտի ուրախանամ՝ որչափ եթէ կայսրուհի ըլլայի. խնայէ՛ ինձի, մի՛ թողուր որ աչքերդ կուրացնեն»։

Եւ որովհետեւ Ռոմանոս կը շարունակէր իր առաջարկը մերժել, Հեղինէ յանկարծ դանակ մը դուրս հանեց, ձեռքին մէջ առաւ իր երկայն խոպոպները, անվրդով կտրեց զանոնք, հագուեցաւ վանական տարազը, ու մնաս բարով ըսելով աշխարհին՝ անհետացաւ։

Նոյեմբեր 21ին մեռաւ Կոստանդին Ը. և իրեն յաջորդեց Ռոմանոս Գ։

Թէպէտեւ Արգիրոս անունը զուտ յունական կը հնչէ, բայց թերեւս անտեղի չըլլայ ենթադրել թէ նա՝ Արծրունի անուան հելլենացումն է։

Պէտք է գիտել առ այս, որ

1. – Գաղղիացի պատմագիր մը, Guillaume de Tyr, Ցերապօլսեցի կոչած է (Ա. Գիրք, էջ 2) զՌոմանոս. – այդ Ցերապօլիս ուրիշ բան չէ՝ բայց եթէ Խորձեանի գաւառի Չմշկածագ աւանը, ուր Արծրունեաց գաղթականութիւն մը, Սենեքերիմէն յետոյ, պէտք էր անպատճառ գանուիլ։

2. – Թէ միայն Ռոմանոս ծնած չէ Ցերապօլիս, այլ թէ իւր նախնիք եւս հոն կը բնակէին, յայտ է անկէ՝ որ Լեւոն Արգիւրոս, – նոյն ընտանեաց ամենէն առաջին անդամը՝ որ պատմութեան մէջ կը ներկայանայ (Միքայէլ Արբշիռի ժամանակ 856–867), – Խորձեան գաւառի մէջ կը շինէ Ս. Եղիսաբէթ անուամբ եկեղեցի մը, ուր իր թոռն ալ կը թաղուի։

3. – Անուններն եւս կապակցել կու տան Արգիւրեանց հայկական ծագումը. 1002ին Պարիի մէջ կը յիշուին նոյն ընտանիքէն երկու հոգի, Մէլ (Մլեհ) և Գուռ. – բաց աստի, ամենէն սովորական անունը՝ Արգիւրեանց քով է Լեւոն, որուն գործածութիւնը յունաբաժին Արծրունեաց քով՝ արդէն ծանօթ է Լեւոն Հայկազնի օրինակէն։

4. – Վասիլ Բ. Սենեքերիմի գաղթելէն

յեսոյ, Վասպուրականը կը զրկէ իբրեւ կառավարիչ՝ Վասիլ Արղիւրեան, եղբայր Ռոմանոսի, որ պիտի թագաւորէր։ Այս ընտրութիւնը կասկածել կու տայ թէ Վասիլ՝ Արղիւրոսի կու տար Վասպուրականը՝ իբր իր հայրենի երկիր։

5. — Մինչեւ այս ժամանակ խնամութիւն բնաւ չենք տեսներ՝ յոյն և հայ արքունեաց մէջ։ Ռոմանոս Գ. Արղիւրոսի ժամանակ է որ նա իր Վասիլ եղբօր աղջիկներէն մին, ինչպէս կը վկայէ Սքիլլիցէս, ամուսնութեան կու տայ՝ Մեծն Հայաստանի թագաւորին. իր եղբօր միւս աղջիկը՝ Հեղինէ անուամբ, ամուսնացուցած էր Ափխազաց Գէորգ իշխանի աղջկան հետ։ Բագրատունեաց հետ այսքան բարեկամական վարմունքը՝ պէտք էր առանձին շարժառիթներ ունենալ։

6. — Արծրունեաց գաղթականութիւն մը, որ թագաւորական յիշատակներ ունէր, պէտք էր Պոլսոյ մէջ շատ մեծ դիրք գրաւել, մանաւանդ եթէ դիտենք թէ ուրիշ նուազ կարեւոր ցեղեր որքան ազդեցութիւն կրցած էին ձեռք բերել։ Արղիւրեանց ընտանիքը, որուն համար Զոնարաս կը վկայէ թէ Պոլսոյ նշանաւորագոյն գերդաստաններէն էին՝

կը համապատասխանէ յիրաւի այդ գաղափարին։

7. — Ռոմանոս Արգիյրոս անձնական մեծ ու փայլուն արդիւնք մ'ունեցած չէր՝ գահու արժանանալու համար. պէտք էր իր ծագման մէջ փնտռել՝ իր գահակալութեան պատճառը։

8. — Լեզուաբանական արգելք մը գոյութիւն չունի. յն. Γ կը համապատասխանէ յաճախ՝ հյ. ծ գրին. Γὲρων (Ծերունի), Γὲνυς (Ծնաւտ), Γεννάω (Ծնանիլ), և այլն։

Այս հանգամանքները՝ ապացոյցներ չենք նկատեր, այլ նշաններ՝ որ կարող են այդպիսի ենթադրութիւն մը թելադրել։

Ըստ այսմ, երբ հայ—արշակունեաց հարստութիւնը վերջացաւ, բիւզանդական գահը անցաւ Արծրունեաց։

Այս կէտը դեռ չափազանց անապահով է և դեռ կարօտ ապացոյցներու. ուստի նաեւ Կոստանդին Ը.ի հետ կը կնքենք Բիւզանդիոնի հայ կայսերաց պատմութիւնը։



# ՀԱՅ ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐԸ

Հայ կայսրուհիներուն թիւը, ըստ Զամ-չեանի, չորս է միայն. «Թողում յիշել զայ-նոսիկ, որք ի Հայկազուն կայսերաց կամ կայսրուհեաց ծնան, և եղեն դշխոյք, յորս երեւելի է Թէոդորա Թագուհի՝ քոյր Զոյի Թագուհւոյն»:

Ահա Զամչեանի յիշածները՝

1. Մարիամ (ամուսնացած 750ին) կին Կոպրոնիմոսի:

2. Մարիամ կամ Մառինէ (788) կին Կոստանդինի, որդւոյն Իրենէի:

3. Թէոդոսիա (813) կին Լեւոն Զ. Արծ-րունւոյ:

4. Մարիամ (1296 դուստր Լեւոն Գ. Կիլիկեցւոյ և կին Միքայէլ կայսեր:

Այս ցանկը կատարեալ չէ:

Հայ կայսրուհիները ութ հատ են, ա-ռանց հաշուելու Զամչեանի յիշատակած ա-ռաջին Թագուհին, Մարիամը՝ Կոպրոնիմեայ կինը, որուն հայազգի ըլլալը կարող չե-ղանք հաստատելու:

Muralt, *բիւզանդական ժամանակագրութեան հեղինակը* 750*ին մեռած կը դնէ Մարիամ մը, մայր Կոստանդինեայ։ Կը սխալի* Muralt, *որովհետեւ Ս. Նիկեփոր (էջ* 73) *յայտնապէս կ՚ըսէ թէ* 750*ին «Մեռաւ Մարիամ աւգուստուհին, կին նորա (Կոստանդինեայ)»։ Դարձեալ, Մարիամ* 750*ին մեռած է, ոչ թէ ամուսնացած ինչպէս կը դնէ Չամչեան. չգիտենք թէ նա ինչ աղբիւրէ առած է իր այս տեղեկութիւնը. «Մարիամ, դուստր միոյ ուրուք յիշխանացն Հայոց»։ Թէոփանէս և Կեդրենոս դժբաղդաբար լռած են այս թագուհւոյն վրայ՝ որ պէտք է մինչեւ* 769 *ապրած ըլլայ՝ վասն զի այս թուին երրորդ անգամ ամուսնացաւ Կոստանդին Կոպրոնիմոս։*

*Ահաւասիկ հայ կայսրուհիներուն ամբողջական ցանկը։*

*Ա. Մարիանէ* 788*ին ամուսնացած՝ Իրենէի որդւոյն Կոստանդինի հետ։*

*Բ. Թէոդոսիա, Կամսարականաց ցեղէ, կին Լեւոն Հայկազնի* (813-820)։

*Գ. Եւփրոսինէ* 823*ին Միքայէլ Թլուատի հետ ամուսնացած։*

*Դ. Թէոդորա (Ա) Մամիկոնեան ցեղէ, Թէոփիլոս կայսեր հարսնացած՝* 830*ին։*

Ե. Հեղինէ Գաբեղեան Է. Պերփեռուժէ-նի հետ ամուսնացաւ 919 ապրիլ 27ին։

Զ. Թէոդորա (Բ.) արշակունեաց ցեղէ, կին Զմշկիկի (971 նոյեմբ.)։

Է. Թէոդորա (Գ.) դուստր Կոստանդինի Ը.ի Թագաւորեց երկիցս (1042 և 1055–1056)։

Թ. Ռիթա (1296) դուստր Լեւոն Գ.ի Կիլիկեցւոյ, կին Միքայէլի։



# Ա. ՄԱՐԻԱՆԷ

## (788–795)

ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ՀԱՐՍԱՆԻՔ ՄԸ. — ՓԱՌՔ՝ ԱՌԱՆՑ ԵՐՋԱՆԿՈՒԹԵԱՆ. — ԾԻՐԱՆԻ ԵՒ ՔՕՂ։

*Կոստանդին Զ, Իրենէի որդին, 781ին նշանուած էր Գաղղիոյ Մեծն Կարոլոսի Ռոթրիտա աղջկան հետ։*

*Վեց տարի յետոյ, Հարսանիքի ժամանակը հասած համարելով, Իրենէ իր նուիրակները ղրկեց Գաղղիոյ թագաւորին՝ որ Կապուա կը կը գտնուէր՝ Ռոթրիտը հանդիսաւոր եղանակաւ Պոլիս բերելու համար։ Մեծն Կարոլոս յանձն չէր առնուր իր խոստումը կատարել։ Քաղաքականութեան կերպարանքը փոխուած էր բոլորովին. Գաղղիոյ կայսրը, Յունաց նենգութենէն զգուշած, չէր ուզեր Ռոթրիտի ամուսնութեամբ իրաւունք տալ Կոստանդինի որդւոց՝ իր գահուն վրայ բարձրանալու։ Ըստ յոյն պատմչաց, Իրենէ ինքնին ջանաց հարսանիքը խափանել, մի և նոյն կասկածներն ունենալով Գաղղիացւոց*

մասին, որ տիրած էին Եւրոպայի և Հռոմէական իրաւունքները յափշտակած. (787)։ Կոստանդին, Ռոթրիւտը ստանալու ամէն յոյս կորսնցնելով, ընկաւ տխրութեան մը մէջ, զոր արքունական նուագահանդէսներն և զբօսանքները՝ չկրցան վայրկեան մ'այ փարատել։

Փոքր Հայաստանի մէջ նշանաւոր եղած էր աղքատութեամբ՝ Փիլարետ անուամբ մէկը։ Ի սկզբան հարուստ էր նա, բայց այնքան բարիք ըրած մուրացիկներուն՝ որ ի վերջոյ անոնց հաւասարած էր։ Փիլարետի եղբայրը՝ դուստր մ'ունէր, Մարինա անունով, Ամնիա գետին ափանց վրայ ծնած, և օժտեալ հազուագիւտ գեղեցկութեամբ։

Իրենէ իր Թէոփանէս մեծ ախոռապետը Արեւելք ղրկեց՝ «Հայկական բաժնէն» (ἐκ τῶν Ἀρμενιακῶν, Կեդրենոս էջ 23) Մարինան բերելու համար։ Ոչ ազնուական էր նա, և ոչ հարուստ։ Ի՞նչ եղաւ Իրենէի շարժառիթը այս ընտրութեան մէջ։ Թերևս Մարինա Ռոթրիւտի կը նմանէր, և Իրենէ փորձեց՝ այս հնարքով՝ Գաղղիոյ արքայադուստրը տալ Կոստանդինի՝ առանց դիւանագիտական վըտանգներու ենթարկելու պետութիւնը։

Կոստանդին չէր գիջաներ ամուսնանալու,

բայց իր անողոքելի մայրը՝ Հարսանիքը կատարել տուաւ 788ի նոյեմբերին։

Մարիանէի համար Թագուհւոյ փառքը դառնութեանց աղբիւր մ'եղաւ։ Իրեն ծառայող իշխանուհիներէն մին, Թէոդոտա անուամբ, Կոստանդինի ամբողջ սիրտը գրաւած էր, և Մարիանէ առիթ կ'ունենար ամէն օր վիրաւորուելու այն նախամեծարումէն՝ զոր կայսրը կ'ընծայէր իւր իսկ աղախնոյն։

Կոստանդին կասկածներ առնելով Մարիանէի վրայ, զայն արձակել ուզեց։ Այսպիսի գայթակղութիւն մը՝ ամբողջ Բիւզանդիոնը պիտի թշնամացնէր Կոստանդինի հետ. Իրենէ, որ այդ առթին կը փափագէր իշխանութիւնը ձեռք բերելու համար, երիտասարդ կայսրը փութացուց իր գիտումը իրագործելու։ Կոստանդին՝ Մարիանէն վանքի մը մէջ փակեց (795 յունուար), և հակառակ Թարասիոս Հայրապետի բողոքներուն՝ ամուսնացաւ Թէոդոտայի հետ։ Վէճեր, դաւաճանութիւններ, ապահարզաններ խռովութիւն ձգեցին եկեղեցւոյ, պետութեան, և ընտանիքներու մէջ։ Իսկ Մարիանէ մինչեւ իր մահը ապրեցաւ վանքի միայնութեան մէջ, երկնային խոկումներով իր ցաւերուն

սփոփանքը գտնելով։ Յաճախ արցունքով կը յիշէր իր միակ զաւակը, Եւփրոսինէ անուամբ, զոր արքունեաց մէջ թողուցած էր, և որ Թէոդոսայի ձեռքին տակ տխուր մանկութիւն մը պէտք էր անցնել — ինչպէս քիչ յետոյ պիտի տեսնենք[1]։

1. Մարիանէի վրայ խօսող յոյն պատմիչները հետեւեալներն են. Թէոփանէս (էջ 729). սա Մարիամ կ'անուանէ հայ կայսրուհին. Կեդրենոս (Բ հատոր էջ 23 և 26). սա Մարինա կ'անուանէ զայն։ Զոնարաս (ԺԵ. 10). բոլոր գիտնականք կ'ընդունին Մարիանէի հայազգի ըլլալը (Շլիւմպերժէ, Լըպօ, Չամչեան, և այլն)։



# Բ. ԹԷՈԴՈՍԻԱ

## (813–820)

ԿԱՄՍԱՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒՀԻՆ. — ԹԷՈԴՈՍԻԱ՝ ԿԱՅՍՐՈՒՀԻ. — ՊՐՈԿՈՊԻԱՅԻ ՆԱԽԱՆՁԸ. — ԲԱՐԵՊԱՇՏԱԿԱՆ ՈՃԻՐԸ. — ԼԵՒՈՆԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ. — ԹԷՈԴՈՍԻԱ՝ ՎԱՆՔԻ ՄԷՋ։

*Դուստր Արշաւիր Կամսարականի, — որ պատրիկ էր և գանձապետ Բիւզանդիոյ, — ամուսնացաւ Լեւոն Հայկազնի հետ՝ երբ սա դեռ զօրավար էր հայկական գունդերու։*

*Դաւակցութիւն մը կազմուեցաւ՝ Արշաւիրը գահ հանելու համար. մատնուեցաւ նա, գանակոծուեցաւ, ածիլուեցաւ և աքսորուեցաւ Բիւթանիա* (808)*։ Թէոդոսիա դեռ հօր սուգը աւարտած չէր, երբ իր ամուսինն ալ աքսորեցին, Եւքայիտա աւանին մէջ ըրած անկարգութիւններուն համար։ Այս դժբաղդութիւնք կարծես յօրինուած էին իր ապագայ երջանկութիւնը՝ աւելի գեղեցիկ երեւցնելու համար. Թէոդոսիայի սուգը հետզհետէ կը պայծառանար։* 811*ին Լեւոն*

դարձաւ աքսորէն, Արեւելքի զօրավար անուանուեցաւ, եւ իր քաջութեան համբաւով նախանձելի փայլ մը տուաւ իր ընտանեաց։ Սարգիս անունով կրօնաւոր մը՝ կայսրութիւն խոստացած էր Լեւոնի. այս մարգարէութիւնը կատարուեցաւ 813ին, երբ բիւզանդական բանակը, պարտութիւններէ յոգնած, Միքայէլ Ա․ի տեղ՝ կայսր ընտրեց իրեն զԼեւոն։ Այն վայրկենին երբ նա յաղթանակաւ Ոսկեղէն դռնէն Պօլիս կը մտնէր, Պրոկոպիա, Միքայէլ Ա․ի կինը, նախանձէն լլկուած, նախատինքներ կը տեղար Թէոդոսիայի դէմ, Բարկա անուանելով զայն։ Բայց ստիպուեցան տեղիք տալ նախանձորդին եւ Թէոդոսիա եօթ տարի (813-820) Բիւզանդական թագուհւոյ մը փառքը, ճոխութիւնքը եւ զբօսանքները վայելեց։

Դեկտեմբեր 23ի իրիկունը (920) Լեւոն, իր իշխանաց հետ արքունական բաղանիքը կ'երթար, Միքայէլ Թլուատի այրուելուն հանդիսատես ըլլալու համար։

Յանկարծ ընդ առաջ ելաւ Թէոդոսիա, գոչելով. «Աստուածամարտ թագաւոր, չե՞ս վախեր Աստուծոյ բարկութենէն, ի՞նչպէս ծննդեան օրը կը ախրեցնես մահուամբ. ի՞նչպէս կը հրամայես որ վաղուան երգերուն հետ մեռնողի մը ձայնը խառնուի»։

— Հոգիս կ'ազատես, բայց մարմինս կը կորսնցնես», պատասխանեց Լեւոն՝ հրամայելով Միքայէլ Թլուատը բանտ տանիլ, և սպանումը յետաձգել։ Միքայէլ Թլուատ իր գաւակիցներուն սպառնալիք ղրկեց զինենք մատնելու, եթէ նոյն գիշեր զինքը չազատեն։ Անոնք քահանայի զգեստ հագած՝ ժողվեցան այն մատուռը, ուր Լեւոն ծննդեան հանդէսներուն ներկայ պիտի ըլլար, և անձամբ շարականները պիտի սկսէր. յանկարծ կայսեր վրայ յարձակեցան, զինքը սպաննեցին, և գլուխը հրապարակ նետեցին՝ ժողովրդեան նախատինքները կրելու համար։ Թէոդոսիա աքսորման վճիռ ընդունեցաւ, Լեւոնի մարմնոյն բեկորները պարկի մը մէջ դրած, իր չորս որդւոց հետ (Սմբատ, Վասիլ, Գրիգոր, Թէոդոս) փոռթի դիմեց, ուր արցունքով թաղեց իր դժբաղդ ամուսինը, յետոյ, սեւ քօղը ձգելով դէմքին վրայ, ինքն ալ թաղուեցաւ մոռացութեան մէջ[1]։

1. Թէոդոսիային վրայ կը խօսին հետեւեալ յոյն պատմիչները. Թէոփանէս Շարայարող (էջ 35, 41) Սիմէոն Մագիստրոս (էջ 610). — Կեդրենոս (Բ հտ. 66, 71, և այլն)։

## Գ. ԵՒՓՐՈՍԻՆԷ

(823–830)

ԱՆՄԵՂՈՒԹԵԱՆ ՊԱՏԿԵՐ ՄԸ՝ ՈՃԻՐՆԵՐՈՒ ՄԷՋ. — ԱՐՑՈՒՆՔՆԵՐՈՒ ԿԵԱՆՔ ՄԸ. — ԵՒՓՐՈՍԻՆԷ՝ ՎԱՆՔԻ ՄԷՋ. — ՄԻՔԱՅԵԼ ԹԼՈՒԱՏ ԿԸ ՏԵՍՆԷ ՀԱՅ ԿՈՒՍԱՆԸ, Կ'ՈՐՈՇԷ ԱՆՈՐ ՀԵՏ ԱՄՈՒՍՆԱՆԱԼ. — ԱՐԳԵԼՔՆԵՐ, ՀԱՆԳՈՅՑՆԵՐ. — ԿԱՏԱԿԵՐԳԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄ. — ՑԱՆԿԱՐԾԱԿԱՆ ՀԱՐՍԱՆԻՔԸ. — ԵՒՓՐՈՍԻՆԷ՝ ԿԱՅՍՐՈՒՀԻ։

*Դուստր Մարիանէ հայուհւոյն և Կոստանդին Զի, իր նախկին տարիներէն ի վեր տխրութեան անգութ դասեր առաւ։ Վեց տարեկան էր, երբ իր մայրը աքսորեցին. երկու տարի վերջ կատարելապէս որբացաւ. Իրենէ՝ իր հայրը կուրացուց և զԵւփրոսինէ, առանց անոր թշուառ անմեղութեանը վրայ գթալու, Փրինքիփոյի վանքի մը մէջ փակեց։ Փոքրիկ Հայուհին, որ այնքան ընտանեկան դժուարութիւններ տեսած էր, սիրով փարեցաւ կեանքի մը՝ որ լիապէս կը յարմարէր իր հոգեկան տրամադրութեանց հետ։ Կանու-*

խէն փորձառու եղած էր մարդկային կիր-
քերու՝ որ բնութեան կապերն իսկ խզելով,
թումբեր աւերող հեղեղի պէս, տարիկայ մը
կը փնտռեն զայն աւերակ դարձնելու հա-
մար։ Եւփրոսինէ կարող չէր սիրել Կոստան-
դինը, որ այնքան իր մայրը տանջած էր,
և նոր թռիչքով նետուեցաւ դէպ ի երկինք,
ուր իր հոգին բարի և ճշմարիտ հօր մը
կարօտը կ'առնուր։ Կրօնաւորական ուխտե-
րը կատարեց, ընտանեցաւ վանքի մթնոլոր-
տին հետ, և երկրաւոր իղձերը, գիշերուան
վերջին աստղերուն պէս, մի առ մի մա-
րեցան իր սրտին մէջ։

Միքայէլ Թլուստ գրօսանքի օր մը փրին-
քիփոյ եկաւ. վանքերը փակուած կը մնային
ամենուն առջեւ. բայց կայսերներէն շատեր
օրէնքը ոտնակոխ ընելով, յաճախ հոն կու
գային գեղեցկութիւններ դիտելու, կամ ա-
պահովելու համար՝ թէ քաղաքական թշնա-
մի մը խոյս չէ՞ տուած։ Եւփրոսինէի դէմքը
աւրեց Միքայէլի հոգիէն բոլոր այն պատ-
կերները՝ զոր տեսած էր իր ընդարձակ պե-
տութեան մէջ։ Որոշեց ամուսնանալ Հայուհ-
ւոյն հետ. բայց իր Թեկլա կինը դեռ կ'ա-
պրէր, և Կոստանդին Զի օրինակը կ'իմաց-
նէր իրեն՝ թէ ապահարզան մը ինչ խռո-
վութիւններ կրնայ յարուցանել Պոլսոյ մէջ։

Թէկլայի մահը՝ ուրախալի անակնկալ մ՚եղաւ Միքայէլի համար։ Հանգոյցը իր լուծումը գտած էր, իղձերու ճանապարհը հարթուած։ Բայց Թլուատը կ՚անգիտանար՝ որ նոյնչափ դժուարին արգելք մը կար Եւփրոսինեայ ամուսնութեան։ Նա ուխտերը արդէն կատարած էր։ Միքայէլ, այս պարագային նկատմամբ ուրիշ հնարք չգտնելով, ծրագրեց կեղծ ողբերգութիւն մը, որուն դերասանները պիտի ըլլային, բաց ի կայսրէն, ծերակոյտի անդամներ։ Ինքը սուտ պիտի ձեացնէր, անոնք պիտի պաղատէին՝ տէրութեան բարւոյն համար երկրորդ անգամ ամուսնանալ։

Ժամադրեալ օրը կայսրը բազմած էր իր գահուն վրայ՝ արտօսրալիր աչքերը գետնին վրայ սեւեռած, տժգոյն դէմքով մը՝ որ կ՚ըսէր․ «Կեանքը այլ եւս վերջացած է ինձ համար»։ Դուռը բացուեցաւ եւ ծերակուտի անդամներ լռելեայն ներս մտնելով, սովորական յարգանքները վերջ՝ սկսան զինք մխիթարել։ Եթէ թագաժառանգէ զուրկ ըլլար Միքայէլ, վերջին էր, յանուն հասարակաց բարւոյն, կրկին ամուսնութիւն առաջարկել. դժբաղդաբար նա արդէն Թէոփիլ անուամբ որդի ունէր, որ գործը կը դժուարացնէր։

— Տէր արքայ, ըսին, Աստուած թագաժառանգ մ՚ընծայած է քեզ. երկայն կեանք կը մաղթենք իրեն, բայց եթէ, — Աստուած մի՛ արասցէ, — յանկարծ մահը խլէ զայն մեր ձեռքէն, պետութիւնը որո՞ւ պիտի յանձնենք, արքունի ցեղը պիտի թողո՞ւս որ չնչուի, թագաւոր մը միշտ քանի մը որդի պէտք է ունենայ որպէս զի տէրութիւնը ապագայի հոգերէն ազատ ըլլայ։

Միքայէլ, միշտ աւելի խոր ընկղմելով իր տխրութեան մէջ, կը պատասխանէր թէ իր սիրելի ամուսնոյն մահուանէն վերջ, ինքը սուգ բռնելու համար միայն կ՚ապրի։ Եւ արցունքներ իր բառերը կը խղդէին։

— Տէր արքայ, աւելցուցին իշխանները, թագաւորը մարդիկներուն վրայ կ՚իշխէ, թագուհին՝ կանանց։ Տէրութեան կէսը անտէր մնացած է, մեր կանայք անգլուխ մնացեր են, գթա՛ մեր այս խեղճ վիճակին վրայ։

Երբ կայսրը կը լռէր, իշխաններ իրարու դարձած կը նկարագրէին իրենց ընտանեկան դրութիւնը, տէրութեան վախերը, գանգատելով կայսեր դէմ՝ որ իր անձնական զգացման կը հետեւէր, փոխանակ իր պաշտաման հոգիէն վարուելու։ Յետոյ Միքայէլի դառնալով, սուրերը մերկացուցած, մահ

սպառնացան, վերջնական խօսք մը պահանջեցին. Միքայէլ նշան ըրաւ լռութեան, յետոյ համկլեալ ձայնով իմացուց թէ աշխարհի մէջ միակ կոյս մը կար, Եւփրոսինէ անուամբ, զոր կը յիշէր Փրինքիփոյի մէջ անգամ մը տեսած ըլլալ. նա միայն թերեւս կարող էր ամուսնութեան յանձնառու ընել զինք, բայց միւս կողմէն անկարելի պիտի ըլլար Եւփրոսինէն իրեն հարսնացնել, որովհետեւ նա արդէն կրօնաւորական ուխտերը կնքած էր։

Ծերակոյտի անդամները ուրախութեան աղաղակներով իմացուցին կայսեր՝ թէ իր հաւանութիւնը ունենալէն յետոյ դիւրին էր իրենց համար՝ եկեղեցական դժուարութեանց յաղթել։ Վայրկեան մը դուրս ելան. քիչ յետոյ վերադարձան՝ հետերնին բերելով Անտոն Սիւլէացի պատրիարքի հաւանութիւնը. նա շողոքորթ էր աշխարհասէր և զուարթաբարոյ. ծանոյց թէ քանի որ հասարակաց բարիքը կը պահանջէր, ինքը այս վայրկենէն իսկ ոչնչացուցած էր Եւփրոսինեայ ուխտերը։ Կայսրը, անպատում ուրախութեան մէջ՝ դեռ կը շարունակէր յուսահատութեան դերը, յայտնելով թէ այն ժամանակ սրտի հանգստութիւնը պիտի գըտ-

նայ, երբ բոլոր իշխանները ստորագրեն՝ հետագայ երկու պայմաններուն.

1°. Կայսեր մահուանէն վերջ ալ՝ զԵւփրոսինէ կայսրուհի պիտի ճանչնային։

2°. Եւփրոսինէի որդիքը՝ գահակից պիտի ըլլային Թէոփիլոսի։

Թատրերգութիւնը յաջողութեամբ վերջացած էր. Հարսանեաց պատրաստութիւնք սկսան։

Իր խաղաղ կղզեկին մէջ, սենեկին սրբազան միայնութենէն շրջապատուած, վրազած էր Եւփրոսինէ իր սովորական աղօթքներուն. երկնային սիրոյ արտասուքներով մխիթարուած՝ կ'առաջարկէր դեռ աւելի իր սիրտը անջատել երկրէս, Աստուծոյ մերձենալ՝ երբ յանկարծ ծովեզերքին վրայ լսուեցաւ կիթառներու, սուլիչներու, թմբուկներու, փողերու միաձայնութիւն մը, որ բիւզանդական զուարթութեամբ անդորր մթնոլորտը կը թրթռացնէին։ Հարսանեկան խումբն էր, եկած էին Եւփրոսինէն տանելու. չենք գիտեր թէ ի՞նչ զգաց նա, երբ յանկարծ իմացաւ՝ թէ Հռոմէական պետութեան կայսրուհին ընտրուած էր։ Իր ականջները, սրբազան խօսքերու միայն վարժուած, կը վիրաւորուէին երկրային երգերէն՝ զոր բեհեզ-

ներով, ոսկի գոյներով, մետաքսներով զար-դարուած կայսերական նաւակը կը պտտցնէր Պրոպոնտիսի երեկոյեան հայելիին վրայ՝ սահելով իշխանաց կղզիներու և Քաղկեդո-նի եզերքէն։ Եւփրոսինէի հոգւոյն համար մեծ վայրկեան մ'եղաւ նաեւ այն՝ երբ ե-րեւցան, իրենց բոլոր վսեմութեան մէջ, արքունական պալատները, որոնց ստուերը՝ իրեն ընդ առաջ կու գար, և որոնք հե-ռուէն՝ անծանօթի հմայքը կը զգացնէին։ (826)։

Եւփրոսինէ, մահացուցման խոստացոյն ձե-ւերէն, հաճոյքներու կեդրոնավայր փոխա-դրուած էր։ Գիշերները անշուշտ յաճախ արթնցաւ՝ իր քոյրերուն հետ եկեղեցին եր-թալու, հասարակաց աղօթքներուն մասնակ-ցելու գիտումով նախագրաւուած, երբ յիշեց՝ թէ հիմա արքունական պալատին մէջ կը գտ-նուի։ Եւփրոսինէ որդի չունեցաւ։ Չորս տարի կայսրուհի մնաց։ Կը պակսին մանրամաս-նութիւնք իր առանձնական կեանքին վրայ, որ հոգեբանական տեսակէտէ շատ հե-տաքրքրական պիտի ըլլային։ Բայց կը թուի թէ իր սիրտը, առաքինութեան հետ պա-տուաստուած, յաճախ զզուեցաւ արքունա-կան կեանքի գաղտնի և անսանձ ոճիրնե-

րէն։ Ցետ Թէոփիլոսը ամուսնացնելու եղանակաւ մը, — որ իր հարսանիքին չափ վիպասանական է, ինչպէս քիչ յետոյ պիտի տեսնենք, — հրաժեշտ տուաւ արքունեաց, առանձնացաւ Փրինքիփոյ, հոն վերստին գտաւ իր սենեակը, իր աղօթքները, իր բարեպաշտ արցունքները, և սրտի խաղաղութիւնը, որուն ճշմարիտ յարգը այժմ միայն կը ճաշնար, աշխարհային կեանքի ալեկոծութիւնքը տեսնալէ յետոյ (830)[1]։

1. Եւփրոսինէի վրայ կը խօսին՝ հետեւեալ յոյն պատմիչները. Կեդրենոս (Բ հատոր, էջ 96), Թէոփանէսի Շարայարող էջ (79), Սիմէոն Մագիստրոս (էջ 620, 625, 628). Գէորգ Կրօնաւոր (էջ 789, 790). Զոնարաս, Գենեսիոս, և այլն։ Եւրոպացի գիտնականք եւս կ'ընդունին Եւփրոսինեայ հայազգի ըլլալը։



# Դ.—ԹԷՈԴՈՐԱ Ա.

## (830 – 867)

ՈՍԿԵՂԷՆ ԽՆՁՈՐԸ. — ԱՌԱՍՊԵԼՆԵՐ՝ ԻՐԱԳՈՐԾՈՒԱԾ. — ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԿԱՅՍՐՈՒՀԻՆ. — ԻՐ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ. — ԻՐ ԳՈՐԾԱԿԻՑՆԵՐԸ. — ՎԱՐԴ ԵՒ ՄԱՆՈՒԷԼ ՄԱՄԻԿՈՆԵԱՆՔ. — ԹԷՈԴՈՐԱՅԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ. ԴԱՏԱՊԱՐՏԵԱԼ ՄԸ՝ ԴԺՈԽՔԷՆ ԴՈՒՐՍ ՀԱՆՈՒԱԾ. ԻՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ. — ՄԻՔԱՅԷԼ ԱՐԲՇԻՌԻ ԶԱՒԵՇՏՆԵՐԸ. ՎԱՐԴԻ ՈՃԻՐՆԵՐԸ. — ԹԷՈԴՈՐԱ ՊԱԼԱՏԷՆ ՀԱԼԱԾՈՒԱԾ. — ԹԷՈԴՈՐԱ՝ ՍՐԲՈՒՀԻ։

*Երբ Թէոփիլոս, Եւփրոսինէի խնամակալութեան տակ, յաջորդեց Միքայէլ Թլուատի* (829), *դեռ եւս իր հարսանիքը չէր կատարած։ Եւփրոսինէ կ'ուզէր զինք իր տէրութեան գեղեցկագոյն օրիորդին հետ ամուսնացնել։ Հրովարտակ և դեսպաններ ղրկուեցան ամէն քաղաք՝ ծանուցանելու համար, թէ ամէն օրիորդ, որ արժանիք ունի, կրնայ նաեւ յոյս ունենալ կայսրուհի ըլլալու։*

*Ամէն ընտանիք, անակնկալ բաղդի մը տեսիլքէն հրապուրուած, զարդարեց իր*

զուգարը, մաղթանքներով և յոյսերով Բիւզանդիոն գրկեց։ Կայսերական ոչ մէկ հարսանիք այնքան անկեղծ հետաքրքրութիւն արթնցուցած չէր։ Պալատը անձուկ կու գար զրկուած բազմութեան։

*

Նշանտուքի օրը կուսանքները երկու կարգ կազմած՝ շարուեցան դահլիճի մը մէջ. անհամբեր Թագաւորի գալստեան կը սպասէին. ամէն սիրտ կը բաբախէր յոյսով և երկիւղով։ Դուռը բացուեցաւ. ներս մտաւ նախ Եւփրոսինէ, յետոյ, իր ետեւէն, երիտասարդ Թէոփիլոսը, որ ձեռքին մէջ ոսկեղէն խնձոր մը կը բռնէր. Հարսանեկան մատանին պիտի ըլլար ան. զայն ընդունող օրիորդը՝ նոյն վայրկենին՝ կայսրուհին էր հռոմէական պետութեան։

Թէոփիլոս դանդաղօրէն անցաւ կուսանաց մէջէն, ամենուն իր նայուածքը ուղղելով, բայց ոչ ընծայն։ Վերադարձին՝ կանգ առաւ օրիորդի մը առջեւ, որ Իկասիա կը կոչուէր. ոսկեղէն խնձորը կարկառեց իրեն, բայց յանկարծ դժբախտ պտուղը յիշելով, հառաչեց.

— Ցիրուհի, կանայք շատ դժբաղդութեանց պատճառ եղած են։

— Շատ ալ բարիքներու, պատասխանեց Իքազիա։

Այս երագ պատասխանէն ցնցուած, Թէոփիլոս շարունակեց իր ճամբան և կանգ առաւ ուրիշ օրիորդի մը առջեւ, որուն ամօթխած կերպը՝ առաքինութեան վսեմութիւնը կը նշուլէր իր նիւթական յատկութեանց վրայ. Թէոփիլոս, առանց տատամսելու, ոսկեղէն խնձորը իրեն կարկառեց։ Բոլոր նայուածքները ուղղուեցան բաղդաւոր էակին, որուն ճառագայթը այնքան բոյլեր կը խաւարեցնէր։

Նորընտիր կայսրուհին՝ հայ էր ազգաւ, Մամիկոնեան ցեղէ, կը կոչուէր Թէոդորա. ծնած էր հայկական բնակութեամբ Եբիսա քաղաքին մէջ. քոյրն էր Վարդ Հայկազնին, որ յետոյ Արբշիոի գահակիցն եղաւ, և թոռն այն մեծահամբաւ Մանուէլ Մամիկոնեանին, որ սոյն դարու մեծագոյն զօրավարն հանդիսանալով՝ երիցս Թէոփիլոսի կեանքը ազատեց պատերազմի ժամանակ։

Պալատական իշխանուհիներ, թիկնապահներ, իսկոյն շրջապատեցին Թէոդորան և զայն տարին դշխոյին պատկանող սենեակը,

ուր բոլոր ծերակուտի և մեծամեծներու յարգանքն ընդունեցաւ. Թէոդորա կարող չեղաւ անշուշտ ժպիտը արգիլել, երբ Մանուէլ՝ իր պապը, Վարդ՝ իր երիտասարդ եղբայրը, ծունր դրին իր առջեւ և իր աջը համբուրեցին։ Կայսրուհւոյ մ'ընտանիքը կարող չէր աննշան դիրքի մէջ մնալ. Թէոդորայի բաղդը՝ իր ամբողջ գերդաստանը երջանկացնելու սահմանուած էր։ Իր երկու եղբայրները, երեք քոյրերը նորանոր պատիւներ ընդունեցան. իր մօր, որ Ֆլօրինա հռոմէական անունը կը կրէր, պատրկութեան աստիճանը տուին, զինքը բարձրագոյն աստիճանով մը պատուելու համար՝ իր դստեր գլխաւոր նաժիշտն անուանեցին։

Հոգեգալստեան օր ամուսնութեան խորհուրդը կատարուեցաւ, յետոյ Թագաւորութեան հանդէսը՝ կայսերական մատրան մէջ։ Նորապսակ ամուսինները Ս. Սոփիա իջան և հոն մեծամեծ ընծաներ բաժնեցին եկեղեցականաց և իշխաններուն։ Իսկ Իքագիա, չկարենալով հանդուրժել այն նախատինքին զոր Թէոդորայի ընտրութիւնը իրեն կ'ընէր՝ Թողուց աշխարհքը և վանք մը հիմնելով զբաղեցաւ հոգեւոր բանաստեղծութիւններով, և երբեմն երգիծաբանութեամբք. տանջմէ

մին գրուած է Հայոց թագաւորութեան վրայ, որ ներշնչուած կը թուի իր հայազգի նախանձորդին յաղթանակէն։

Եթէ Թէոդորա հռոմէական պետութեան բոլոր երիտասարդները հաւաքէր, անոնցմէ ամենէն առաքինին իրեն փեսայացնելու համար, ընտրութիւնը, ապահովապէս, Թէոփիլի վրայ պիտի ընկնար։ Անձամբ շուկայն կը պտտէր վաճառականութեան վիճակը քննելու համար՝ և իմանալու թէ ինչ անիրաւութիւններ կը գործուին. գիւղացի մը՝ կայսեր նժոյգին սանձը բռնելով «Այս ձին, ըսաւ, ինձ կը պատկանի». քննութիւնք յիրաւի ապացուցին թէ իշխան մը, կայսեր հաճոյք ընելու համար, գիւղացին կողոպտած էր. Թէոփիլ ձին իր տիրոջ յանձնեց։ Անիրաւ դատաւորները երբեմն ողջ ողջ կ՚այրէր հրապարակին մէջ, անկարգ գինուորները կը սպաննէր, յանցաւոր պատրիկներու գլուխը՝ կիրով կ՚այրէր։ Այս խստութիւնները ընելէ վերջ, հրաման ղրկեց քաղաքին մէջ՝ որ ով որ մէկուն դէմ գանգատ ունի՝ կայսեր ներկայանայ. տասն և եօթ օր անցաւ՝ և ոչ ոք գտնուեցաւ՝ որ գանգատելու պէտք զգայ։ Թէոփիլ խանդակաթ գորով ունէր դէպ ի Թէոդորա, որուն եր-

բէք անհաւատարիմ չգտնուեցաւ. անգամ մը միայն չափազանց յարում ցցուց պալատական իշխանուհւոյ մը, բայց Թէոդորան վշտացած տեսնելով, թողութիւն խնդրեց Թագուհիէն։ Բայց անոր ալ չէր խնայեր, երբ անիրաւութեան մէջ զինքը տեսնար։ Օր մը երբ երեկոյեան դէմ, ծովափին վրայ նստած, դէպ ի Վոսփոր նայող պարտէզի մը մէջ ընթրիք կ'ընէր, նաւ մը տեսաւ՝ բեռներու ծանրութենէն կիսովին ընկղմած։ Հարցնելով թէ որո՞ւն կը պատկանի և ուսկի՞ց կու գայ, իմացաւ որ Թէոդորա գաղտնի վաճառականութիւն կ'ընէր և իր նաւերը մինչեւ Ասորիք կ'երթային։ Նաւը այրել տուաւ՝ և Թագուհւոյն սենեակը մտնելով՝ «Կայսրը վաճառակա՞ն պիտի դառնայ իր կնոջ պատճառաւ, գոչեց. եթէ մենք վաճառականութիւն ընենք, ժողովուրդը ինչո՞վ պիտի ապրի։ Տուրք կը պահանջենք իրենցմէ. ինչո՞վ զայն պիտի վճարեն, եթէ իրենց արհեստն ալ մենք ընենք»։ Թէոփիլ և Թէոդորա մէկ բանի մէջ միայն անհամաձայն էին. կայսրը պատկերները կ'անարգէր, Թագուհին՝ կը յարգէր։ Թէոփիլ յետ Ղազար անուամբ նկարիչ կրօնաւորը խարազանելու, անոր ձեռքը տաղեց՝ որպէս զի չկարենայ

նոր կուզէր շինել։ Թէոդորա, գաղտնապէս, նկարիչը կը խրախուսէր։ — Պատկերամարտ այս հալածանքներն եղան արհեստի անկման պատճառ. պէտք չենք զարմանալ՝ եթէ անհամեմատական և տգեղ ձեւեր կը տեսնենք բիւզանդական նկարներու մէջ. դողդոջուն ձեռքերէ նկարուած են։

Թէոփիլ թագաւորեց տասուերկու տարի և երեք ամիս. նա ունեցաւ Թէոդորայէն որդի մը՝ որ Ջրհոր ընկնալով խղդուեցաւ. կայսրը, Ջրհորը պատժելու համար, զայն ցամքեցուց և փոխարկեց պարտէզի մը՝ որ Վոսփորի վրայ կը նայէր։ Թէոդորա երկրորդ որդի մը ծնաւ, գործ մը՝ որուն համար յետոյ շատ զղջաց. վասն զի այս տղայն, — որ մօր կողմանէ հայ էր, — պիտի ըլլար օր մը՝ Միքայէլ Արբշիռ։ Թէոփիլոս, իր կեանքի վերջին տարին՝ պառանցանքի մէջ ընկաւ. բոլորովին միայնութեան մէջ ալ գտնուած ժամանակ՝ միտքը կը դնէր թէ խարազանով զինքը կը ծեծեն և դառնագին «վայ»երով գթութիւն կը պաղատէր։ Իր մահուան գիշերը, աներեւոյթ խարազաններէ ըկուած, անդադար կը հեծեծէր. կայսրուհին կը հսկէր անկողնոյն քով՝ Թէոկտիստոս սենեկապանին և քանի մը գիշերապահ

գինուորներու հետ. Թէոփիլոս, Թէոտիկոսի պառնալով ոկսաւ այնպիսի կատաղի ձեւեր ընել՝ իբրեւ թէ կ'ուզէր անոր մազերը փետտել. սենեկապանը կ'ուզէր փախչիլ, բայց գինուորներ զինքը կայսեր առջեւ բերին. Թէոփիլոս անոր վզին վրայ՝ Յիսուսի պատկերը տեսած էր. բռնեց և համբուրեց. պատկերամարտ կայսրը՝ զղջացած էր. իր բոլոր ցաւերը դադրեցան. Թէոդորա՝ Ս. կուսին պատկերը ներկայացուց, զոր նոյնպէս յարգեց կայսրը, յետոյ դարձեալ Փրկչին պատկերը. Թէոփիլ իր շրթունքները մօտեցուց անոր. Համբոյր մը և իր հոգին՝ նոյն վայրկենին միացաւ Յիսուսի հետ։ Թէոփիլի մահուան այս պարագաները զուրկ չեղան մեծ հետեւանքներէ. Թէոդորա, որ իր ամուսինը՝ մահուանէն վերջ ալ կը սիրէր, խորապէս կը տխրէր՝ մտածելով որ նա բանադրանքի մէջ մեռաւ։ Եպիսկոպոսներէն խնդրեց որ մեռեալը արձակեն բանադրանքէ, իսկ ժողովուրդէն խնդրեց՝ որ իննօրեայ ջերմեռանդութիւն կատարեն իր հոգւոյն համար, որովհետեւ զղջման մէջ մեռաւ. իր երկու փափագներն ալ կատարուեցան։ Թէոփիլոս որ արդէն դժոխք գացեր էր, ազատեցաւ բոցերէն և արքայութիւն գնաց. — գոնէ այս էր բիւզանդացւոց

հասարակաց կարծիքը։ Այն Թէոփիլոսն էր, որ ճաղատ ըլլալով հրամայեց իր բոլոր հպատակներուն՝ մազերնին ածիլել, որպէս զի իրենց կայսեր վրայ առաւելութիւն մը չունենան։

*

Թէոփիլի կտակին մէջ եռամեայ Միքայէլը կայսր կը հրատարակուէր, իսկ իրեն խնամակալ կ'անուանուէին երեք Մամիկոնեանները,—Թէոդորա, Վարդ և Մանուէլ։ Երբ այս վերջինը հրապարակ ժողովեց զօրաբանակն և ժողովուրդը, հաւատարմութեան երդում պահանջելու համար, Կեցցէ՛ կայսրն Մանուէլ գոչեցին ամէնք։

— Ո՛չ, ըսաւ Մանուէլ, ձեր տէրը՝ Միքայէլն է, և ցորչափ փոքրիկ է նա՝ իր մայրը Թէոդորա. ես միայն անոնց պաշտպանն եմ. կեցցէ՛ Միքայէլ և Թէոդորա։

Հազիւ մի քանի ձայն արձագանգ տուին այս խօսքին և ժողովուրդը հաւատարմութեան երդումը տալով՝ մեկնեցաւ, մեծապէս դժգոհ՝ որ Մանուէլ Մամիկոնեան յանձն չէր առնուր կայսեր ժառանգական իրաւունքները բռնաբարել, որոնք ստորին են միշտ արդիւնքի իրաւունքներէն։ Թէոդորա, կատա-

վարութեան սանձը ձեռք առնելով, իր բոլոր ուժով նետուեցաւ քաղաքականութեան ասպարէզին մէջ, ջանալով ներքին կռիւները ջնջել և արտաքին պատերազմներով տէրութիւնը ընդարձակել։ Հայ կայսրուհին ի ցոյց բերաւ հանճար մը՝ որուն կրնային նախանձիլ բազմաթիւ կայսրներ։ Թէոդորա իրեն պարտք կը համարէր՝ իր հպատակաց թէ՛ հոգին և թէ՛ մարմինը մտածել։ Պատրիարգ մ՚էր և կայսր միանգամայն։ Իր գործունէութիւնը երկու տեսակի կարող ենք բաժնել եկեղեցական և ռազմագիտական. Բուլղարները, Խազարները իր ժամանակ քրիստոնեայ դարձան, պատկերամարտութիւնը՝ իր ժամանակ ջնջուեցաւ, և Թէոդորայի հրամանաւ մղուեցան կարեւոր պատերազմներ ընդդէմ Արաբաց և Սքլաւոնաց։

Նկար մը՝ Բուլղարաց մեծ դարձին պատճառ եղաւ, հետեւեալ եղանակաւ։

Իրենց Բոգորիս թագաւորը պատերազմի ծանուցագիր ղրկած ըլլալով Թէոդորայի, Հայ կայսրուհին հետեւեալ պատասխանը տուաւ. «Թո՛ղ չափազանց չխրոխտայ. ես անձամբ բանակներու գլուխ պիտի անցնիմ, իրեն դէմ պիտի երթամ, զինքը պիտի ջախջախեմ. բայց եթէ բաղդը զիս մատնէ՝ շատ

պարծենալու իրաւունք պիտի չունենայ. կնոջ մը յաղթած պիտի ըլլայ»։ Բուլղարաց թագաւորը չուզեց կին մը ախոյեան ունենալ. և գերի բռնուած սուրբ կրօնաւոր մը փըրկանք տալով՝ խնդրեց Թէոդորայէ ղրկել իրեն՝ իր հարազատ քոյրը։ Սա քրիստոնեայ դարձած էր ի վաղուց. իր հայրենիք դառնալով Բոգորիս համոզեց՝ թէ քրիստոնէութիւնն է ճշմարիտ կրօնք. բայց ժողովրդէն վախնալով՝ թագաւորը կռապաշտութիւն կը կեղծէր։ Օր մը որ կ'անցնէր այն պահլճէն զոր սարսափեցնող նկարներով զարդարելու պաշտօնը յանձնած էր Մեթոտիոս անուամբ կրօնաւորին՝ ահաւոր պատկեր մը նկարուած տեսաւ. վերջին դատաստանն էր. այնքան տպաւորութիւն ըրաւ թագաւորին վրայ, որ ամէն ակնածութիւն ոտնակոխ ընելով, քրիստոնէութիւնը տէրութեան կրօնք հրատարակեց, և զինուք ժողովրդեան ապստամբութիւնը նուաճելով, քարոզիչ մը խնդրեց Թէոդորայէն. Նա ղրկեց Կիւրեղ եպիսկոպոսը, որ ամբողջ Բուլղարիան դարձի բերաւ. (853)։

Այն Կիւրեղը ուրիշ անգամ, Հայ կայսրուհւոյն հրամանաւ, Խազարներու երկիրը ուղեւորած էր, և բնակչաց խնդրանքին հա-

մեմաս, անոնց քրիստոնէութիւն սովրեցուցած (847). Կիւրեղ, յետ Բուլղարաց և Խազարներու Ս. Լուսաւորիչն ըլլալու, անոնց Ս. Մեսրոպն եղաւ։ Սլաւական գիրը հնարեց և աստուածաշունչը թարգմանելով իր առաքելական գործը՝ հաստատուն հիմերու վրայ դրաւ։

Պատկերաց խնդիրը դարերէ ի վեր տէրութեան երկպառակութեան պատճառ կ'ըլլար. Թէոդորա կ'ուզէր անոնց պաշտամունքը ժողովքով հաստատել. Մանուէլ Մամիկոնեան կ'արգիլէր, կրկնելով շարունակ Թէոդորայի՝ թէ տէրութեան անձը՝ կրօնքի պէտք չէ միջամտէ, մանաւանդ երբ խնդիրը քաղաքական երեւոյթ կրնայ առնել։ Անգամ մը հիւանդացած ըլլալով, Սթուս վանքի աբեղայները համոզեցին զՄանուէլ՝ որ եթէ ուխտէ պատկերյարգութիւնը հաստատել՝ կ'առողջանայ։ Մանուէլ հնազանդեցաւ անոնց. առողջանալէն յետոյ Թէոդորա և ինք՝ ոգեւորութեամբ ջանացին վերջ դնել պատկերաց խնդրոյն։ Մեծ ժողովք մը գումարեցին, եկեղեցականներէ և աշխարհականներէ բաղկացեալ, որուն վճիռը նպաստաւոր եղաւ պատկերաց։ Պատրիարքը, Յովհաննէս Լեկանոմանթ աքսորուեցաւ վանք մը, ուր,

կատաղութիւնը յագեցնելու համար, կը զբաղէր՝ պատկերաց աչքերը փորելով։

Թէոդորա, կրօնական խռովութիւնները ջնջելով, իր ուշադրութիւնը կեդրոնացուց տէրութեան սահմաններուն վրայ։ Սքլավոններ տիրած էին Պեղոպոնեսի. բոլոր արեւելեան բանակաթեմերը հաւաքելով, զօրաւոր բանակ մը կազմեց, եւ Թէոկտիստոս սենեկապանը անոնց սպարապետ դնելով՝ Սքլաւոններուն դէմ ղրկեց։ Բարբարոսները յաղթուեցան, անձնատուր եղան եւ հարկատու դրուեցան (846)։ Մինչ Թէոկտիստոս սենեկապանը յաղթութեամբք կը փառաւորուէր, ուրիշ զօրավար մը, իրեն անուանակից, նոյնպէս մեծ հռչակ կը ստանար իր պարտութեամբք։ Ափխազներու, Կրետէի եւ Սրբուելքի մէջ մղած իր բոլոր պատերազմները անյաջող անցան՝ եւ առարկայ եղան ժողովրդեան հեգնական երգերուն։

Թէոդորայի ժամանակ ծնաւ հռոմէական պետութեան մեծագոյն վտանգներէն մին։ Քարբէաս անունով պաւղիկեան երիտասարդը, որ Յոյն իշխանի մը քով կը ծառայէր, լսեց թէ իր հայրը սպաննուած են. փախաւ իշխանին քովէն մտաւ Փոքր Հայաստան, աղանդաւորներէն բանակ մը կազմեց եւ

Տիվրիկ քաղաքը հիմնելով հոն հրաւիրեց բոլոր ոճրագործները։ Տիվրիկ՝ Պաւղիկեանց Արշակաւանն եղաւ։ Քարբէաս դիւանագիտական տաղանդ ունէր. գիտնալով՝ թէ աւազակներու խումբ մը պիտի չկարենայ ամբողջ տէրութեան մը դիմադրել, դաշնակցեցաւ Արաբացւոց հետ, թուարկելով անոնց այն ամէն օգուտները՝ զորս ձեռք պիտի բերէին Յունական պետութեան թշնամի եղող կուսակցութեան մ'օգնելով։ Արաբացիք օգնական գունդեր ղրկեցին, իսկ Թէոդորա՝ իր Փեդրոնաս եղբայրը փութացուց Արեւելք երթալ և զանոնք նուաճել։ Բայց այս փառքը պահուած էր Վասիլ Արշակունւոյ, որ Պաւղիկեանց·ջնջողը պիտի ըլլար։

Միքայէլ Արբշիռ, հնգետասնամեայ հազիւ եղած, բուռն կերպով յարեցաւ Մարթինաքեան Ինգեր պանձապետի Եւդոկիա աղջկան. Թէոդորա ի զուր փորձեց իր որդին արատաւոր կեանքէ մ'ազատել, զինքը ամուսնացնելով ուրիշ Եւդոկիայի մը հետ։ Միքայէլ անձնատուր եղաւ ամենէն ծայրայեղ զուարճութեանց, և զանոնք բաւական չգտնելով՝ սկսաւ նորանոր հաճոյքներ հնարել։ Իր շուրջ հաւաքեց ամենէն զուարթ պալատականները, անոնց ամենուն մէկ մէկ

եպիսկոպոսական թեմ տուաւ, իսկ Թէոփիլոս անուամբ խեղկատակը՝ զոր Խմերոս (Միրելի) կ'անուանէր, իր կեղծ կղերին պատրիարքն անուանեց։ Միքայէլի համար երջանկութիւն էր իր եպիսկոպոսները պալատ կանչել, անոնց հետ ժողովք ընել, վարդապետական խնդիրներ վճռել, եկեղեցական ծէսերը ձեւացնել։ Յաճախ երբ Ս. Սոփիայի հրապարակին մէջ Ս. Իգնատիոս և ուրիշ եպիսկոպոսներ հանդիսաւոր թափոր կ'ընէին, յանկարծ հեռուէն սաւիղներու ձայն մը կը լսուէր. քիչ յետոյ կը տեսնուէր էշերու բազմութիւն մը, որոնց վրայ հեծած էին Միքայէլ Արբշիռի եպիսկոպոսները՝ ձայնաւոր պատարագի զգեստներ հագած։ Սաղմոսներու եղանակին՝ խեղկատակ երգեր յարմարցուցած էին, սաւիղներու ձայնով կը խառնուէին թափորի մէջ, եկեղեցականները խարազանելով, այնքան ծաղրական շարժումներ կ'ընէին՝ որ ժողովուրդը բռնադատուած էր բարձրաձայն ծիծաղելու, հակառակ իր բոլոր բարեպաշտ զայրոյթին. թափորը՝ կատակերգութեան կը փոխուէր։ Միքայէլ միշտ անձամբ կ'առաջնորդէր այսպիսի սրբապիղծ հանդէսներու։ Օր մը Թէոդորայի իմացուցին՝ թէ հայրապետը պալատ եկած

է. նա փութաց իր յարգանքները մատուցանելու. Հազիւ ծունր դրած էր անոր առջեւ, երբ Միքայէլ և պալատականք՝ դիւական քրքիջ բարձրացուցին: Թէոդորա աչքը վեր վերցուց. Թեոփիլոս խեղկատակին ձեռքը համբուրած էր: Անիծելով իր որդին՝ դուրս ելաւ:

Իր Վարդ եղբայրը՝ ոչ նուազ ցաւ կը պատճառէր Թէոդորայի: Նա ուսեալ էր, կիրթ, նուրբ, գրականութեան մեկենաս, բայց փառասէր, և ոճրագործ: Կայսր ըլլալու համար՝ ազդեցիկ պալատականները ջանաց մի առ մի կործանել: Նախ սկսաւ Մանուէլ Մամիկոնեանէն: Թէոկտիստոս սենեկապանին հետ միացած, այնքան զրպարտեց դիւցազնը՝ Միքայէլ Արբշիռին առջեւ, որ Մանուէլ Մամիկոնեան, մարդկային չարութենէ զզուած, հրաժարական տուաւ իր պաշտօնին. քաշուեցաւ առանձնական տան մը մէջ, զոր յետոյ վանքի փոխեց: Բայց դիւանագիտական առեղծուածներէ տագնապած, արքունիքը յաճախ իր օգնութեան կը դիմէր. և Մանուէլ Մամիկոնեան՝ կրօնաւորի զգեստով պալատ կու գար, տարակոյսներ կը լուծէր, հրահանգներ կու տար՝ յետոյ կը դառնար իր ճգնութիւնքը շարունակելու:

Վարդ, յետ Թէոկտիստոսը իրեն գործիք ընելու, զինքը ամբաստանեց Միքայէլի առջեւ՝ թէ դիտում ունի Թէոդորայի հետ ամուսնանալու, և սպաննելու իրենց օրինաւոր կայսրը։ Միքայէլ Արբշիռ, հիմնուած այն բարեկամութեան վրայ՝ զոր յիրաւի կայսրուհին կը ցուցնէր Թէոկտիստոսի, իր սենեկապանին դաւադրութեան վճիռը տուաւ։ Օր մը, երբ սա նամակներ կը տանէր Թէոդորայի, ճամբան Միքայէլի հանդիպեցաւ՝ որ բարկութեամբ հարցուց. «Որո՞ւ կը տանիս. նախ ինծի կարդա՛ այդ նամակները». սենեկապանը հնազանդեցաւ. երբ ընթերցումը աւարտեց, սկսաւ իր ճամբան շարունակել. «Սպաննեցէք, Սպաննեցէք» կը գոչէր Միքայէլ իր ետեւէն. այս հրամանը լսելով՝ Թէոկտիստոս տագնապաւ փախչիլ սկսաւ, բայց Վարդ հրապարակին մէջ զինք ձերբակալեց, մազերէն քաշելով երեսին բռնցի կ'իջեցնէր. Մանիակէս զօրավարը (Արմենակ?) իր գիշերապահներով միասին, նոյնպէս ժողովուրդը՝ խռնեցան Վարդի շուրջ, և կ'ուզէին սենեկապանը ազատել. Վարդ իսկոյն սուրը մերկացուց և գոչեց. «Կայսեր հրամանն է. առաջին մօտեցողը՝ կը սպաննեմ»։ Միքայէլ Արբշիռ նոյն վայրկենին արդէն

հրապարակ հասած էր զինուորներով և կը շարունակէր ըսել. «Սպաննեցէք, սպաննեցէք». զինուորները քարացած կը թուէին. ոչ ոք համարձակեցաւ Թէոկտիստոսը սպաննել, կամ ժողովրդեան ներկայութիւնը՝ կամ Թէոկտիստոսի անմեղութիւնը յարգելով։ Բանտ տարին սենեկապանը՝ և հոն գլխատեցին։

Մանուէլէն և Թէոկտիստոսէն յետոյ, պէտք էր Թէոդորան կործանել։ Վարդ դեռ կը տարտամէր իր քրոջ դէմ դարան լարելու, բայց անոր կշտամբանքներէն զայրացած՝ զինքն ալ պաշտօնընկէց ընելու աշխատեցաւ։ Կանխեց Թէոդորա, բոլոր ծերակոյտը ժողովքի կանչեց, անոնց մանրամասն հաշիւ տուաւ գանձուց վիճակին, զոր լաւ բարւոքած էր, և շնորհակալ ըլլալով անոնց ցարդ իրեն ըրած օգնութեան, հրաժարականը տուաւ, և բոլորովին հեռացաւ քաղաքական գործերէ (854)։

Երկու տարի արդէն առանձնական կենօք խաղաղ կ՚ապրէր Թէոդորա, երբ իր եղբայրն և որդին, զինքը զրպարտեցին իբրև դաւակցութեան մը հեղինակ։ Թագուհին ամէն օր Պլաքեռնեանց Ս. Կոյս եկեղեցին կ՚երթար ջերմեռանդութեան համար. դարձած ժամա-

նակ, Փեթրոնաս, Թէոդորայի երկրորդ եղ-
բայրը, զինքը ձերբակալեց և բանտեց Կա-
րեան կոչուած պալատին մէջ։ Միքայէլ կը
բռնադատէր պատրիարքը՝ որ իր մօր վա-
նական զգեստ տայ. բայց նա պատասխա-
նեց. «Ես երդում առած եմ բնաւ կայսեր
պատուոյն դէմ չգործել։ Մայրդ վանական
ընելով՝ քեզի անպատուութեան պատճառ
պիտի ըլլամ»։ Միքայէլ իր մօր հետ՝ իր
երեք քոյրերն ալ աքսորեց արքունիքէն (856)։
Անոնք յետոյ իրեն յօժարութեամբ՝ վանք
մը առանձնացան, բայց հրաման ունենալով
քաղաքէն դուրս գանուող Ս. Մամասու պա-
լատը այցելելու, երբ որ ուզեն։

Մետասան տարի եւս սահեցան Թէոդորայի
կեանքէն։ Վարդ սպաննուած էր Վասիլ Ար-
շակունիի դաշոյնով։ Միքայէլ դեռ կ'ապրէր՝
ամէն օր իր սպանութեանց թիւը աճեցնելով։
Թէոդորայի մաքէն չանցաւ երբէք որդիէն
վրէժ առնուլ։ Այս մասին ոչինչ գիտենք.
այսչափ միայն յայտնի է որ Միքայէլ Արբ-
շիռ սպանուեցաւ Ս. Մամասու պալատին
մէջ, ուր Թէոդորա զինքը սեղանի հրաւի-
րած էր (867)։

867ին մեռաւ Թէոդորա, Վասիլ Արշա-
կունին գահուն վրայ տեսնելէ յետոյ. վան-

*քի մէջ այնքան առաքինի միանձն հանդիսացաւ նա, որքան յարքունիս քաղաքագէտ։ Ցոյներ զինքը սրբացուցին և կը տօնեն։*

*Ս. Թէոդորա մեծագոյնն է Հայազգի կայսրուհիներուն մէջ*[1]։

1. *Թէոդորայի վրայ կը խօսին՝ յոյն պատմիչներէն՝ հետեւեալները. Թէոփանէսի Շարայարող* (*էջ* 89, 91, 103, 149, 152, 153, 174, 233), *Սիմէոն Մագիստրոս* (*էջ* 625, 629, 647). — *Գէորգ Կրօնաւոր* (790, 810). — *Կեդրենոս* (*Բ հտ. էջ* 103)։ — *Թէոդորայի Հայազգի և Մամիկոնեան ըլլալը՝ երկբայութեան կարելի չէ ենթարկել։ Իր ընտանեաց անուններուն մէջ՝ հայկականներու հետ՝ խառնուած կը գտնենք յունականներ. ահաւասիկ այդ ընտանեաց անդամներուն ցանկը։ Մանուէլ Մամիկոնեան, պապ Թէոդորայի, Մարինոս՝ հայր, Թէոկտիստա — Ֆլորինա՝ մայր, Վարդ և Փետրոնաս՝ եղբայր, Սոփիա, Իրենէ, Քալի—Մարիա՝ Թէոդորայի քոյրեր։ Գիտելու է որ ինչպէս Հայաստանի, Բիւզանդիոյ մէջ ալ՝ Մամիկոնեանք՝ Կամսարականաց հետ խնամութիւն կ՚ընեն։*



# Ե. ՀԵՂԻՆԷ

## (919–961)

ՀԱՅԱԶԳԻ ՇԱՄԻՐԱՄԸ. — ԴԱՒԱԴՐՈՒԹԻՒՆ ԿԸ ԿԱԶՄԷ ԻՐ ՀՕՐ ԴԷՄ. ԻՐ ՅԱՂԹԱՆԱԿՆ ԵՒ ՄԱՀ։

*Վաշտակ անուամբ հայ զինուոր մը, Լեկարեն (Գարեգեան) ցեղէն, Վասիլ Արշակունւոյ կեանքը ազատելով՝ հարստացած էր և պատրիկ եղած։ Իր Ռոմանոս որդին, ծովակալութեան պաշտօն ընդունելով, նաւատորմիղը շարեց արքունեաց առջեւ, ներս մտաւ և ինքզինք կայսր հրատարակեց, առանց սակայն հալածելու օրինաւոր ինքնակալը՝ Կոստանդին Պերփերուժէն, որ չորեքտասնամեայ պատանի մ'էր։*

*Ռոմանոս՝ Հեղինէ անուամբ դուստր մ'ունէր, առաքինի, ուսեալ և գեղեցիկ։ Պերփերուժէն, Գարեգեան ընտանիքէն շրջապատուած, սկսաւ տանջուիլ հոգեկան երկու ծայրայեղ զգացումներով. կ'ատէր զՌոմանոս, կը սիրէր իր դուստրը. գաղափարի մարդ ըլլալով քան դիւանագիտութեան, Պերփերու-*

ժէն ամուսնացաւ Հեղինէի հետ (919 ապրիլ 27) և իր թշնամւոյն ցեղը գահ հանեց։

Ռոմանոս իր չորս որդիքները մի առ մի աւգուստոս հրատարակեց, իսկ իրեն կանայքը՝ կայսրուհի. Պերփերուժէն և Հեղինէ հինգերորդ կարգը կը գրաւէին ինքնակալաց ցանկին մէջ։ Գաղտնի թշնամութիւն մը կը բաժնէր միշտ Ռոմանոսն և Պերփերուժէնը. Հեղինէ ստիպուած էր անբնական զգացումներ ունենալու. կա՛մ իր հայրը պիտի ատէր, կա՛մ իր ամուսինը։ Առաջինը զինք նախատած էր՝ միւս կայսրուհիներուն ստորակարգելով, մինչդեռ Պերփերուժէն կուրաբար կը պաշտէր զինք, և իր ակնարկներուն անգամ կը հնազանդէր՝ թէ՛ առանձնական և թէ՛ քաղաքական կեանքի մէջ։

Հեղինէ միացաւ Պերփերուժէնի հետ՝ իր հայրը կործանելու համար։ Ռոմանոս կտակ մը գրած էր որով իր որդիները՝ Պերփերուժէնի՛ ստորակարգեալ կայսրներ կը հրատարակէր. այս և ուրիշ առիթներ, որ գժտութիւն ձգած էին Ռոմանոսի և իր որդւոց մէջ, Հեղինէի համար միջոցներ եղան՝ իր դիտումները գործադրելու համար։ Իբրև քոյր, նա կասկած չէր կարող շնչել. և յիրաւի յաջողեցաւ իր Կոստանդին և Ստե-

փաննոս եղբայրները համոզել՝ որ զՌոմա-
նոս աքսորեն. երբ այս վերջինը հիւանդու-
թեան պատճառաւ անկողին պառկած էր,
զինքը հանեցին սենեակէն, նաւակ դրին և
փակեցին Փռոթիի վանքի մը մէջ։ (944
դեկտ. 19)։

Հեղինէի կը մնար այժմ իր եղբայրները
կործանել. մինչդեռ անոնք դաւադրութիւն
մը կը կազմէին Պերփիրոժէնի դէմ, սա կան-
խեց, սեղանի հրաւիրեց զանոնք, և յան-
կարծ ձերբակալելով բանտեց այլեւայլ վան-
քերու մէջ։ Պերփիրոժէն հնգետասան տարի
(944–959) դեռ թագաւորեց, առանց գա-
հակցի, բայց միշտ Հեղինէի գերիշխանու-
թեան տակ։ Բաց ի աղջիկներէ, ունեցան
որդի մը Ռոմանոս (Բ.) անուամբ, որուն
բարձր դաստիարակութիւն մը տալու հա-
մար ոչ մէկ ջանքի չխնայեցին։ Ռոմանոս
Բ. յետ գինեպանի մը Թէոփանոյ աղջկան
հետ ամուսնանալու, իր հայրը թունաւորեց,
(959), քոյրերը վանքի մէջ փակեց, և աք-
սորման դատապարտեց իր մայրը։ Հեղինէի
համար իր կենաց ամենէն դառն վայրկեանն
եղաւ այն՝ յորում այս վճիռը լսեց. իսկոյն
որդւոյն ներկայացաւ, իւր անբնական ա-
պերախտութիւնը այնպիսի կրքոտ ճարտա-

սանութեամբ յանդիմանեց, որ նա հրաժարեցաւ իր դիւման գործայրութենէն։

Այս անգութ վէրքը Հեղինէի սրտին մէջ խոր հետք ձգեց. կարող չեղաւ շատ երկարակեաց ըլլալ, և յետ ականատես ըլլալու իր որդւոյն անկարգութեանց, մեռաւ 961ի սեպտ. 19ին. և նա թաղուեցաւ փոռթի, այն վանքին մէջ՝ ուր իր հայրը ճգնած էր։

Հեղինէ կը ներկայանայ պատմութեան մէջ՝ իբր հայազգի Շամիրամ մը, օժտուած նիւթական և մտաւոր ձիրքերով, բայց յուզեալ հոգի մը և խռովարար[1]։

1. Հեղինէի ժամանակակից և գովասան պատմիչն է Թէոփանէս Շարայարողը (էջ 458, 466, 473, 758)։ Յետագայ դարուց պատմիչները նոյն հեղինակին հետեւած են։



# Զ. ԹԷՈԴՈՐԱ (Բ)

## (971–976)

ԶՄՇԿԻԿԻ ԱՄՈՒՍԻՆԸ. — ԱՌԱՔԻՆԻ ԿԱՅՍՐՈՒՀԻ ՄԸ։

*Թէոդորա (Բ), դուստր Կոստանդին Պերփիւռոժէնի և Հեղինեայ, հօր կողմանէ արշակունի էր, և մօր կողմանէ գաբեղեան։ Զուրկ նշանաւոր գեղեցկութենէ, բայց ամենէն առաքինին՝ կանանց մէջ, սիրուած էր յարքունիս, ուր առաքինութիւնը ամենէն հազուագիւտ գոհարն է. բայց Ռոմանոս Բ. իւր եղբայրը, գահ ելած ժամանակ, հոգեւոր կեանքի յարմարութիւններ տեսնելով իր մէջ՝ զինքը վանք մը փոխադրեց* (969) *իր միւս քոյրերուն հետ։*

*Տխուր միակերպութեան մէջ անցաւ Թէոդորայի կեանքը, մինչեւ* 971 *թուականը։ Այս տարւոյն մէջ էր որ Զմշկիկ Նիկեփորն սպաննեց և գահ ելաւ, շնորհիւ Թէոփանոյ թագուհւոյն, որուն հետ ամուսնանալ խոստացեր էր։ Հայրապետէն խոստմնազանցութեան բանադրուած, Զմշկիկ իրեն կայս-*

րուհի ընտրեց Թէոգորան, որպէս զի ազնուականութիւն տայ իւր տոհմին, և իւր առաքինութեամբ զինքը ազատ պահէ ընտանեկան դառնութիւններէ։ Հարսանիքը կատարուեցաւ 971 նոյեմբ. Թէոդորա ստուերի մէջէն՝ յանկարծ լոյսերու մէջ փոխադրուեցաւ։ Զմշկիկի օրինակը՝ քարոզեց ժողովրդեան՝ անզարդ առաքինութիւնը նախադասել քան չարութեան հետ միացած գեղեցկութիւն մը,, որ յանձին Թէոփանոյի, անքան եղիրանց մայր եղած էր։

Թէոդորա ժառանգ չընծայեց Զմշկիկի. Հարսանեաց հանդեսէն յետոյ՝ լռութիւնը կը պատէ իր անուան շուրջ, և Լեւոն Սարկաւագ, ժամանակակից պատմիչ, կը մոռնայ ըսել թէ ինչ եղաւ սրբակեաց պշխոյին բազդը՝ երբ իր ամուսինը սպանուեցաւ նենգութեամբ (976)[1]։

1. Թէոդորա (Բ.)ի վրայ կը խօսի Լեւոն Սարկաւագ (էջ 127)։

# Է.—ԹԷՈԴՈՐԱ (Գ.)

## (Ա. *թագ.* 1042–1042, Բ. *թագ.* 1055–1056)

ՑԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ՏԵՍԱՐԱՆ ՄԸ՝ ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ ՄԷՋ. ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՊԱԼԱՏԻՆ ՎՐԱՅ ԿԸ ՔԱԼԷ. — ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԵՐԵԽՈՅԹ ՄԸ. — ԲԱՆԱԿԻ ԵՒ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ԿՌԻՒԸ. ԱՄԲՈԽԸ ԿԸ ՏԻՐԷ ԱՐՔՈՒՆԻՔԻՆ. — ԵՐԿՈՒ ՊԱՌԱՒՆԵՐ՝ ՄԻԱՆԳԱՄԱՅՆ ԿԱՅՍՐՈՒՀԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ. — ԹԷՈԴՈՐԱ ԳԱՀԱԶՈՒՐԿ. — ԻՐ ԵՐԿՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ, ԵՒ ՄԱՀ։

*Կոստանդին Ը. արշակունեաց հարստութեան վերջին շառաւիղը, երեք դուստր թողած էր. անոնցմէ երկրորդը, Զոյէ անուամբ, նախանձոտ, միքենայող և անհանդարտ, ամուսնացաւ Ռոմանոս Արգիւրոսի հետ, որ յետ Կոստանդին Ը.ի՝ կայսր հրատարակուեցաւ* (1028)։

*Թէոդորա* (Գ.) *քոյրն էր Զոյէի, իր անձին փայլը կղզիացնելու համար, Զոյէ կը հալածէր պալատէն ամէն անձ՝ որ կրնար այլոց ուշադրութիւնը իրմէն գողանալ։ Բանտեց իր քոյրը քաղաքէն հեռի պալատի մը*

մէջ, առանց սակայն արքունական սպասարկութենէ զրկելու զանիկա։ Նոյն իսկ Յովհաննէս անուամբ կրօնաւոր մը, վանքէն հանուելով, դրկուեցաւ Թէոդորայի քով, ուր իր պաշտօնը պիտի ըլլար հարկ եղած պատիժներով և ծառայութեամբք անոր աքսորին դառնութիւնքը մեղմացնել։

Եպիսկոպոս մը, որ իր երկու պաշտօնակիցներու դէմ երկար ժամանակէ ի վեր նախանձ կը սնուցանէր, պալատական մեծ խռովութեանց պատճառ եղաւ։ Նա կը կոչուէր Թէոփանէս, հովիւ Թեսաղոնիկէի. ամբաստանեց թէ Թէոդորա, Կոստանդին Դիոգինէս, և վերոյիշեալ երկու եպիսկոպոսները, դաւադրութիւն մը կազմած էին Զոյէի դէմ, օգտուելով իր ամուսնոյն բացակայութենէն, որ այս ժամանակ յԱսորիս կը գըտնուէր։ Զոյէ ձերբակալել տուաւ Թէոդորան, և զինքը ածիլելով՝ Փէտրիոն վանքին մէջ փակեց. իսկ Դիոգինէս պատուհանէ մը վար նետուելով՝ անձնասպան եղաւ (1031 յուլիս 3)։

Մինչդեռ Թէոդորա վանական խաղաղութիւնը կը վայելէր, Զոյէ, կիրքերէ տանջուած, Թունաւորեց Ռոմանոսը և տեսնելով որ մեռնելու կ'ուշանայ, բաղնիքի մէջ խեղդել

առաւ զինքը․ յետոյ ամուսնացաւ Միքայէլ Դ․ի և ասոր մահուանէն յետոյ, Միքայէլ Ե․ի հետ (1041)։

Նորընտիր կայսրը, երիտասարդ և գործունեայ, բոլոր իշխանութիւնը ուզեց իր ձեռքին մէջ կեդրոնացնել․ բայց, պաշտուած անձինքները հալածելէ յառաջ, պէտք էր նախ ժողովրդեան սրտին միակ ինքնակալը ըլլալ։ Թափորի մ'առթիւ ստացած ծափահարութիւնները զինքը համոզեցին՝ թէ իր դիտումները գործադրելու ժամանակն հասած էր։ Իսկոյն կանչեց Աղեքսիս պատրիարքը, և քանի մ'ոսկի ընծայելով՝ իմացուց թէ պաշտօնանկ եղած է։ Նոյն իրիկունը Զոյէն նաւակի մէջ դրաւ և ղրկեց Փրինքիփոյի կուսանաց վանքը, հրամայելով որ զինք ածիլելէն վերջ՝ անոր մազերը իրեն բերեն։ Վճռական հարուածներ՝ որոնցմով կը յուսար արհաւիրք սփռել Բիւզանդիոնի վրայ։ Յետոյ ժողովրդեան համար յայտարարութիւն մը գրեց՝ ուր լակոնաբան ոճով կ'ըսէր․ «Նենգաւոր է Զոյէ, Ալեքսիոն ալ իրեն գործակից․ երկուքն ալ հեռացուցի։ Հաւատարիմ եղէք, սպասեցէք բարիքներուս»։ Անաստաս Պոլսոյ քաղաքապետը, երկրորդ օր, հրապարակին մէջ ժողո-

վըրդեան այս ծանուցումը կարդաց։ Ընթերցումը հազիւ աւարտած էր, երբ ձայն մը գոչեց. «Ոչ, ամբարիշտ Միքայէլ Քալաֆաթը չենք ուզեր, մենք Զօյէի կը հնազանդինք, Զօյէն է մեր մայրը, ինքն է կայսերութեան ժառանգը»։ Ժողովուրդը միացաւ անոր և սկսաւ աղմկաւոր կերպով գոչել. «Մեռնի Միքայէլ»։ Յարձակեցան Անաստասի վրայ և զինքը պիտի խեղդէին, եթէ յաջող փախստեան մը բաղդը չունենար. երիտասարդները տուները կը վազէին զէնքեր բերելու, ծերունիք, որ արշակունի կայսերաց փառքը տեսած էին, կը գրգռէին իրենց զաւակները տէրութեան օրինաւոր ժառանգը պաշտպանելու։ Բիւզանդիոնի կանայք, որ, ինչպէս տեսանք, թագուհին միայն իրենց գլուխ կը ճանչնային, իսկ թագաւորը՝ մարդկանց, մասնաւոր պարտականութիւն կը զգային նախատուած Զօյէին վրէժը առնելու։ Հերարձակ, փայտեր ձեռքերնին, զայրոյթը՝ սրտերնուն մէջ, և նզովքներ՝ շըրթունքին, կը վազէին հրապարակին մէջտեղ՝ հերքելով այն նախապաշարումը թէ կինը զինուոր կարող չէ ըլլալ։ Աղմուկը կ'աճէր, կը բարձրանար, Բիւզանդիոնի հիմունքները կը թնդային, և արեան տեսարաններ կը ներ-

կէին այն ճանապարհը ուր կապած և հեռըգ-հեռէ խառնող ամբոխը կը խռնէր։ Նոյն իսկ անոնք որ քաղաքականութեան մասին մասնաւոր զգացում չունէին, փոթորիկին ազդեցութիւնը կը զգային իրենց վրայ, օրինակէն գինովցած, ահեղ տեսարանի մը, խռովութեան, յափշտակութեան, նորութեան սիրով բռնելով առաջին առարկայն՝ որ իրենց ձեռքին կը հանդիպէր, դուրս կը նետէին տունէն, կ'երթային սպաննելու աւազակները՝ որ կայսերական իրաւունքներ կը գողնային։ Ամբոխը կ'ոռնար, կ'ալեկոծէր, հրապարակը ողողուած էր ծածանող գոյներու՝ մինչող ծովէ մը։ Բազմութիւնը երբ այնքան կուտեցաւ, որ կարող էր բանակի մը դիմադրելու, սկսաւ պալատին վրայ դիմել։ Փողոցներէ անցած ժամանակ տուները կը դատարկուէին ամբոխին միանալու համար, որ հետզհետէ կ'աճէր՝ առուակներ ընդունող գետի մը նման։ «Մեռնի՛ Քալաֆաթ» աղաղակը, որ իրենցմէ յառաջ կ'ընթանար, աւելի ահաւոր աղմուկով սկսաւ թնդալ՝ երբ արքունի պալատին մօտեցան. զէնքերու, կանացի, մանկական, սպառնալից ձայներ՝ հեղեղօրէն կը բաղխէին արքունեաց որմերուն՝ նետերու տարափի մը հետ։ Արքունի

դրան առջեւ հասնելով՝ ժողովուրդը յանկարծ համրացաւ. լռութիւնը, որ պատեց չորս դին, յանկարծական մահուան մը պէս՝ երակները սառեցուց անոնց՝ որ դեռ ճամբու վրան էին և չկրցան ըմբռնել թէ ինչ եղած էր։

Զոյէ, որուն աքսորման վճիռը առնելու եկած էին, կանգնած էր պատշգամի մը վրայ, ականակուռ թագը գլխին, ճոխագոյն զարդերուն մէջ, և ծածկուած այն ծիրանիով որ յափշտակուած կը համարուէր։

Օդին մէջ առկախ, ժպիտը դէմքին վրայ, իր համեստ ակնարկներովը, ուր յաղթականի մը անդորրութիւնը կար, անուրջ մը, կուռք մը երեւցաւ՝ իրմով խանդավառուած ամբոխին։ Երբ սա ուրախութեամբ իր կայսրուհին կը ծափահարէր, Միքայէլ Ե. որ պատուհանին մօտ եկած էր, խրախոյս առնելով վայրկեան մը դուրս ելաւ. «Հռովմայեցիք, ըսաւ, յուսամ որ գոհ եղաք. եթէ աւելի բան մը կ'ուզէք, ան ալ կը կատարեմ»։ Իսկոյն ծափահարութիւնք՝ նախատական աղաղակներու փոխուեցան, և բիւրաւոր նետեր ուղղուեցան միանգամայն անխոհեմ կայսեր, որ տակաւին այս պարագային փախչելու խոհեմութիւնը ունեցաւ։

Ցուսահատած՝ կը հրամայէր նաւակ մը, կրօնաւորի զգեստ մը բերել. մինչ տագնապալից կերպով կը վազէր պալատին մէջ, կեանքը ազատել ջանալով, ընդ առաջ ելաւ իր հօրեղբայրը.

— Ինչո՞ւ այնքան շփոթած ես, տէր արքայ, գոչեց. հրաժարականը՝ թագաւորին համար վատութիւն մ'է. մոռցա՞ր Դիոնեսիոս բռնաւորի այն առածը՝ թէ «թագաւորը երբէք պէտք չէ գահէն վար իջնայ, այլ պէտք է սպասէ որ զինքը ոտքերէն բռնած՝ վար քաշեն»։ Դիմադրէ՛, ծերերէ և կիներէ՞ կը վախես»։

Երբ կայսեր հօրեղբայրը՝ Միքայէլի սիրտը արիացնել կը ջանար, ներս մտաւ Քաթաքալոն, տէրութեան մեծագոյն զօրավարը, որ բազմաթիւ պատերազմներու մէջ մտած էր, և միշտ յաղթական ելած։ Իր ներկայութիւնը խրախոյս շնչեց կայսեր։

— Տէր արքայ, ըսաւ զօրավարը, ամբոխին հետ զէնքով միայն խօսելու է. քանի որ բանակ մը ունիս քովդ, ինչ պատճառ կայ երկիւղի. արիւնհեղութիւն սկսէ, խռովութիւնը կ'աւարտի։

Միքայէլ Ե. հրամայեց Քաթաքալոնի՝ ոյժ գործածել ամբոխին դէմ։ Վայրագ զօրավարը,

բանակի մը գլուխ անցած՝ դուրս խուժեց պալատէն. պատերազմը սկսաւ. ժողովուրդը կը դիմադրէր կատաղաբար. դիակներ գետինը կը ծածկէին, արիւնը հեղեղօրէն կ'ընթանար, կանանց ճիչը, վիրաւորելոց հառաչը, երկաթապատ ռազմիկներու աղաղակները՝ դժոխքի յարկ մը փոխադրած էին երկրիս վրայ։ Արեւը մար մտաւ, դեռ պատերազմը կը շարունակուէր. երկու հազար հոգի սպանուած էին ժողովրդեան կողմէն։ Փոխանակ այս կոտորածէն սարսափելու, վրէժի զգացումով վառուած, Բուզանդացիք կռուիլ վճռեցին մինչեւ յաղթանակ։ Պատերազմը երկուշաբթի առաւօտ սկսած էր. շարունակեց ամբողջ երեքշաբաթի օր ուր հազար հոգի եւս ինկան. զինուորները, որ ստիպուած էին կամ իրենց հայրերուն, մայրերուն, եղբայրներուն դէմ զէնք բարձրացնել, և կամ մեռնիլ, բռնի կը կռուէին. խռովութիւնը ամառնային մրրիկ մը կարծած էին, մինչ ան հետզհետէ աւելի կը բորբոքէր. երկու օրուան կռուով պարտասած, նահանջել սկսան. ժողովուրդը, յաղթանակի աղաղակներ բարձրացնելով, սկսաւ ներս խուժել պալատէն։ Միքայէլ Ե. և իր հօրեղբայրը, Կոստանդին անուամբ՝ սարսափահար փախան պալատին

մէկ ծայրը՝ որ նաւահանգստին վրայ կը նայէր. հոն սենեակի մը մէջ ծածկուեցան, ամէն վայրկեան իրենց դահիճին սպասելով։ Ժողովուրդը արքունեաց մէջ մտած էր արդէն և կը կողոպտէր, կը կոտրէր, պատուհաններէն դուրս կը նետէր կահկարասիները, կը սպաննէր կայսեր կուսակիցները, կը փշրէր զայն յիշեցնող առարկայները, տուրքերու վերաբերեալ գրացուցակները կ'այրէր. տօնի օր մ'էր, ուր ամէն աղքատ ձրի կը գտնէր այն իրերը՝ որոնց կը կարօտէր։ Ցափշտակութեան եռանդը սակայն մոռցնել տուած չէր վրէժխնդրութեան դիտումը. խումբ խումբ սենեակներ կը մտնէին, դարաններ կը փշրէին, անոնց մէջ ծածկուած կայսրը գտնելու համար։ Միքայէլ և Կոստանդին շնչասպառ կ'ունկնդրէին իրենց մահապարտութեան վճռոյն, զոր ամէն բիւզանդացի աղաղակով կը կրկնէր՝ նոյն իսկ իր արքունեաց մէջ։ Բարեբաղդաբար ոչ ոք կրցաւ իրենց թաքստեան տեղը գուշակել, երբ գիշեր եկաւ, ժողովուրդը սկսաւ հեռանալ, զկայսրը փախած համարելով։ Միքայէլ նաւակ մը գտաւ, իր հօրեղբօր և ուրիշ կուսակիցներու հետ ներս մտաւ, և գիշերուան հովանաւորութեան տակ՝ կրցաւ Սթուտի

վանքը փախչիլ և կրօնաւոր ըլլալ (1042 ապրիլ 20)։

Տաս տարիէ ի վեր Թէոդորա կը ճգնէր իր վանքին մէջ. յանկարծ ամբոխ մը վանք խուժեց, յափշտակեց զինք և նաւակ պնելով՝ Ս. Սոփիա բերաւ։ Հրապարակը խըռնուած էր բազմութեամբ. դեռ խռովութեան սկզբնաւորութիւնն էր. Թէոդորայի գալուստը իմանալով եկեղեցի մտան նախ, կայսրուհի հրատարակեցին զԹէոդորա և Զոյէ։ Բայց պատրիարքը աքսորուած ըլլալով՝ չէին գիտեր թէ ով պիտի օծէ նոր թագուհին։ Յանկարծ սակայն եկեղեցւոյ մէկ անկիւնէն դուրս եկաւ Ալեքսիս հայրապետը. — երբ զինքը վանք պիտի ուղարկէին՝ կաշառած էր նա զինուորները և Ս. Սոփիա փախած։ Այս անակնկալը, որ ինքնին մեծ ուրախութիւն էր ժողովրդեան, աւելի ոգեւորութիւն պատճառեց, երբ Թէոդորայի թագադրութեան եկեղեցական հանդէսը կատարուեցաւ։ Այսպէս երեք իշխանազունք աքսորեալ կարծուած, յանկարծ Պոլսոյ մէջ կը գտնուէին և դժբաղդութիւնը կրելէ առաջ՝ անոր վրէժը կ՚առնէին։

Միքայէլի փախուստէն յետոյ արքունիքը մնաց Զոյէի և Թէոդորայի ձեռք։

«Այն ատեն սկսաւ երկու պատանիներու տարօրինակ թագաւորութիւնը, մին արդէն երկիցս այրի, թէ և առաջին անգամ ամուսնացած ժամանակ ալ՝ սկսած էր խոնարհիլ դէպ ի հորիզոնը, միւսը, անդրանիկը, եօթանասնամեայ պառաւ, կեանքը վանքերու մէջ անցուցած. մին անկարգութեանց անձնատուր, ոճիրներու հետ ընտանեցած. միւսը աւելի ողջախոհ, բայց լի՝ վանական կեանքէ յառաջ եկող նախապաշարումներով, և ծայրայեղ ջերմեռանդութեան մը բոլոր տկարութիւններով»։ (Շլիւմպերժէ, իշխ. կղզ. էջ 184)։

Թագաւորութեան առաջին օրը սակայն՝ Բիւզանդացիք այս հակապատկերի յեղաշրջումը տեսան։ Զոյէ իր թշնամւոյն ներեց. Թէոդորա կուրացուց։

*

Առաւօտեան դէմ, երբ ժողովուրդը արքունեաց առջեւ խռնուած էր, Զոյէ պատշգամ ելաւ. ծափահարութիւնները լռեցնելով՝ շնորհակալութիւն յայտնեց անոր նախանձայոյզ հաւատարմութեան համար, և իրմէն վճիռ ուզեց Միքայէլի մասին։

— Մեռնի՛, կուրնայ, կախաղա՛ն հանուի,— գոչեց ժողովուրդը։ Զօյէ մեղմացնել կը ջանար այս անգութ վճիռը, բայց Թէոդորա,— որ առաքինութեան դպրոցին շրջանաւարտը կը համարուէր,— արդէն հրամայած էր Քամփանարէս քաղաքապետին՝ Սթուտ վանքը երթալ, կուրացնել Միքայէլն և Կոստանդինը։ Քամփանարէս, խառնաղանճի գլուխ անցած, գնաց Սթուտ վանքը, կայսրը նախատանաց առարկայ ընելէ յետոյ, առանց անոր մանկական արցունքներուն գթալու, բրեց այն աչքերը՝ որ այնքան անմեղ էակներու մահը տեսեր էին։ Կոստանդին նոյն տանջանքը կրեց՝ առանց նոյն վատասրտութիւնը ցոյց տալու։ Ելէկմոն վանքը գերեզմանն եղաւ իրենց անուան և փառքերուն։

Երկու քոյրերը՝ երկու ամիս թագաւորեցին (Ապրիլ 21էն մինչև յունիս 11)։ Իրենց կառավարութեան ժամանակ ոչ մէկ արտասովոր դէպք տեղի չունեցաւ, թէպէտ ոչինչ կարող էր աւելի արտասովոր ըլլալ, քան երկու կանայք՝ որ զոյգ զոյգ պատարան կ՚իջնային, ծերակոյտի ատեաններու և զօրավարներու գլուխ անցած՝ հրամաններ կը ղրկէին Արեւելք և Արեւմուտք։ Թէոդորա և Զօյէ՝ մօր մը գորով կը գործածէին

իրենց քաղաքակցաց նկատմամբ՝ քան թագուհւոյ իշխանութիւնը։ Բայց Բիւզանդացիք, որ բարեպաշտութիւնը աւելի կը յարգէին քան աշխարհիկ ձիրքերը, միշտ, իրենց սըրտին մէջ, առաջնոյն առաւելութիւն մը կու տային, ինչ որ Զոյէի նախանձը կ՚արթնցնէր։ Երկու թագուհիներ, յետ Նիկողայոս ներքինին Արեւելքի զօրավար անուանելու, Կոստանդին Կապասիլասը՝ Արեւմուտքի, և Մանիակէսը (Արմենակ) Գաղղիոյ կառավարիչ, տէրութեան ներքին կազմակերպութիւնը հիմնովին բարւոքել ձեռնարկեցին օրէնքով մը՝ որով խստիւ կ՚արգիլուէր տէրութեան պաշտօններու առեւտուր։ Գանձը տագնապեցնող աղքատութեան մէջ գտնելով, կայսեր հօրեղբայրը վանքէն հանեցին, արքունիք բերին, տանջանքի ենթարկեցին, գողութիւնը խոստովանել տալու համար։ Կոստանդին, ցաւերուն չհանդուրժելով, հրամայեց իր գահիճներուն երթալ Ս. Առաքելոց եկեղեցին, և անոր մերձակայ ջրհորը մտնել. «Հոն, ըսաւ, պիտի գտնէք 5300 ոսկիի գումար մը»։ Պեղումը կատարուեցաւ, և գանձը յայտնուելով, Կոստանդին իր վանքը ուղարկուեցաւ վերստին։

Թէոդորայի թագաւորութեան վերջին դէպքն

եղաւ այս։ Զոյէ, իր քոյրը գահընկէց ընելու համար, ծերակոյտին յայտնեց՝ թէ երկու կին անկարող են տէրութիւնը կառավարելու այնպէս՝ ինչպէս Բիւզանդիոնի արժանապատուութիւնը և ապագայն կը պահանջեն։ Հետևաբար, իրենցմէ մին՝ պէտք է ամուսնանայ։ Թէոդորա, որ սրբութեան համբաւին մէջ մեծագոյն փառք կը տեսնէր, քան կայսրութեան, պատրաստ էր ամէն տանջանքի ենթարկուելու՝ չամուսնանալու համար։

Այսպէս Զոյէի կը մնար փեսայ մը և կայսր մ՚ընտրել։ Այս պատիւը առաջարկեց Կոստանդին Քաթեփանոյի, որ պալատին հացագործն էր, և արդէն ամուսնացած. երբ նա կը պատրաստուէր գահ բարձրանալու՝ իր կինը, նախանձէ լլկուած, զինքը թունաւորեց։ Զոյէ ամուսնացաւ Կոստանդին Մոնոմախոսի հետ (1042–1055), և Թէոդորա, տէրութեան հոգերէն ազատելով, ժամանակ ունեցաւ նորանոր ճգնութիւններ ընելու։

*

Անցնինք այժմ Թէոդորայի երկրորդ թագաւորութեան, զոր երկոտասան տարիներ բաժնեցին առաջինէն։

Զոյէ մեռաւ 1050ին և սրբոց կարգը դասուեցաւ. Մոնոմախոս մէկ մէկ հրաշք կը համարէր այն սունկերը՝ որ իր գերեզմանին շուրջ կը բուսնէին։ Պալատին մէջ կը գտնուէր գերի կոյս մը Ալանաց ազգէն. նա եւս գերի մ'ունէր իրեն. — կայսեր սիրտը. յունաց եկեղեցին՝ չորրորդ ամուսնութիւնը արգիլած էր. Մոնոմախոս, նկատելով որ Բուզանդացիք աւելի ներողամիտ են երբ մէկը Աստուծոյ պատուիրանքներուն դէմ կը գործէ քան յոյն եկեղեցւոյ կանոններուն դէմ, ժողովրդեան ո՛ և է գայթակղութիւն չտալու համար, որոշեց ամուսնանալ՝ առանց եկեղեցական խորհուրդ կատարելու։ Այսպէս այս նոր Սաթենիկը՝ ազատուհի հռչակուեցաւ։

Բայց Մոնոմախոս անխոհեմ սովորութիւնն ունէր՝ ամէն օր տաք ջրի բաղանիք երթալու, յետոյ ցուրտին մէջ կենալով պաղ առնելու։ Կարող չեղաւ անպատիժ բժշկութեան պատուիրանքներն ալ արհամարհել։ Կողացաւով գերեզման իջաւ (1055, յունուար 11), իրեն յաջորդ անուանելով Նիկեփոր անուամբ իշխանը՝ որ Բուլղարիա կը գտնուէր։

Գահակալութեան իրաւունքը սակայն՝

Թէոդորայի կը պատկանէր. Մոնոմախի կտակը դեռ գործադրութեան մէջ չմտած, եօթանասնամեայ Թագաժառանգը, Մանկանեան վանքէն՝ ուր գացած էր կայսեր վերջին վայրկեաններուն ներկայ ըլլալու, իսկոյն Բիւզանդիոն վազեց. Ծերակոյտը, պալատականները հաւաքելով՝ յայտնեց թէ կայսերական իրաւունքները բռնաբարուելու վըտանգին մէջն են, և կ'ուզուի նոր կայսր մ'ընտրել՝ երբ օրինաւոր ժառանգ մ'արդէն կ'ապրի.

— Կեցցէ Թէոդորա մեր կայսրուհին, գոչեց բազմութիւնը։

Ոչ ոք ընդդիմութիւն փորձեց զառամեալ թագուհւոյ մը դէմ, որ բնութիւնը արդէն քիչ ժամանակէն գահընկէց պիտի ընէր։

Թէոդորայի կառավարութիւնը սկսաւ պալատական պաշտօններու փոփոխութեամբ։ Թէոդոր անուամբ մին՝ Արեւելքի զօրավար անուանուելով՝ Թուրքերուն դէմ ղրկուեցաւ։ Նիկետաս սուրհանդակաց գլխաւորն եղաւ։

Լեւոն Սթրաբոսպոնդիլոս՝ Թէոդորայի գլխաւոր խորհրդականը ընտրուեցաւ։ Եկեղեցական փոփոխութեանց մէջ արժանի է յիշատակութեան Լեոնինը, որ Բուլղարիոյ արքեպիսկոպոսութիւնը յանձնեց Թէոդուլոսի։

Պալատականք Թէոդորան համոզեցին՝ թէ դեռ ինքը երիտասարդութեան մէջ կը գըտնուի։ Կրօնաւորներ, աւելի յառաջ երթալով, ուրիշ առանձնաշնորհութիւն մ՚ալ կ՚ընծայէին իրեն. կ՚ապահովցնէին թէ Աստուած, տէրութեան բարիքը ի նկատի առնելով, որոշած է բազմաթիւ դարերու թագաւորութիւն մ՚ընծայել իրեն։ Այս շողոքորթութիւնք հետեւանքէ զուրկ չմնացին. Թէոդորա, որ յիրաւի քաջառողջ էր խոր ծերութեան մէջ, հիւանդացաւ այն ճիգէն՝ զոր յաճախ ինքնիրեն վրայ կ՚ընէր՝ հպատակաց պատրանքները հաստատուն պահելու համար։

Խաղաղութիւնը կը տիրէր բոլոր ազգերու վրայ, բեղնաւորութիւնը՝ դաշտորէից։ Թէոդորայի թագաւորութիւնը՝ ոսկեղէն դարու մէկ դրուագը կը թուէր. ոչ միայն իր հպատակները, այլ երկիրն անգամ, եթէ խօսք առնուր, զինքը պիտի գովէր, ա՛յնքան ծաղկած էր իր հովանիին տակ։ Բիւզանդացիք ծայրագոյն երջանկութեան մէջ կը զգային զիրենք, ինչպէս թէ որրուհի մը իջած ըլլար երկնքէն՝ իրենց դշխոյութիւն ընելու համար. իրենց տէրութեան ամէն անկեան մէջ հրաշքները կը տեսնէին այն

օրհնութեան՝ զոր Թէոդորայի հովանին կը սփռէր ամէնուրեք։ Օգոստոսի դարը Բիւզանդիոն փոխադրուած էր։ Յետ տէրութիւնը խոր խաղաղութեան մէջ թողլու, Թէոդորա գնաց ինքն եւ նոյնը վայլելու գերեզմանին մէջ։ (1056 օգոստոս 30)[1]։

1. Թէոդորա (Գ.)ի վրայ գրած է Միքայէլ Ատտալիոթէս պատմագիրը (1034–1081), որուն գրութիւնը՝ աւելի գեղեցկագիտական ձգտումով յօրինուած է քան գիտական. յետոյ Զոնարաս (ԺԲ), Կեդրենոս Գլիկաս, Մանասէ, Ցովէլ, եւ այլն։



# Ը. ՌԻԹԱ

## (1296 – 1333)

ԿԻԼԻԿԻՈՅ ԱՐՔՈՒՆԵԱՑ ՄԷՋ. — ԵՐԿՈՒ ՔՈՅՐԵՐԸ. — ՀԱՐՍԱՆԻՔԻ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆՔ. — ԲՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿՐՕՆԱՄՈԼՈՒԹԻՒՆ. — ԴԻՒՑԱԶՆՈՒՀԻՆ. — ԽԻԹԱՑԻ ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ՁԿՏՈՒՄՆԵՐԸ. — ԻՐ ՄԱՀԸ։

*Լեւոն Գ* (1269–1288), *որ Եգիպտոսի անապատներուն մէջ գերի պատանեկութիւն մ'անցուցած էր, եւ Հայ ժողովրդեան՝ մելամաղձիկ բանաստեղծութիւններ ներշնչած, յետոյ, Կիլիկիա դառնալով, բարձրացած իր հայրենի գահուն վրայ,* 1288*ին՝ զայն կը յանձնէր իր անդրանիկ որդւոյն, Հեթում Բ.ի.* (1289–1304)։

*Ազգային պատմութեան մէջ դժուարին է գտնել աւելի տարօրինակ տիպար մը քան այս թագաւորը, որ փրանկիսկեանց վանքին մէջ առանձնացած, հրահանգներ կը ղրկէր արքունիք՝ եւ խարազնազգեաց աբեղայի մը հնազանդած պահուն՝ ամբողջ տէրութիւն մ'ունէր իրեն հպատակ։*

Անդրոնիկոս Յունաց կայսրը, օտար արքունեաց մէջ՝ ամուսին մը կը փնտռէր իր Միքայէլ որդւոյն համար։ Նա Կիպրոս ղրկեց Աթանաս՝ Աղեքսանդրիոյ եպիսկոպոսը, և Նէոփիտոս քահանայն, որպէսզի լաւին թագաւորին դուստրը կնութեան խնդրեն, և եթէ նա չհամաձայնի, Կիլիկիա անցնին, նոյն առաջարկը Հայոց արքային ներկայացնելու համար։ Այս նուիրակութիւնը ապարդիւն եղաւ, որովհետև ծովահէններ Փոկէա քաղաքին քով նաւուն վրայ յարձակելով՝ զայն կողոպտեցին. նուիրակները փախչելու բռնադատուեցան՝ իրենց կեանքէն զատ՝ ոչինչ առնելով հետերնին։

Անդրոնիկոս Բ. Թէոդոր Մէթոխիտէս և Յովհաննէս Գլիյկիս երկու իշխանները ղրկեց, նոյն գործը շարունակելու համար։ Երկու լոգոթէտները նշանաւոր եղած էին, իրենց ճարտասանութեամբ, լեզուագիտութեամբ, ուրագան և հին-հելլենական գիտութեամբք։ Օտար ազգաց գացող դեսպանները, — գրել կու տայ Նիկեփոր Գրեգորաս պատմիչը (Ա, էջ 194), — պէտք է միշտ այս ձիրքերը ունենան, որպէսզի ամէն գիտութեան վրայ կարենան խօսիլ, և օտարները յաղթահարեն։ Յովհաննէս Գլիյ-

կիս ընտիր հեղինակ մ'ալ էր, որ ուղեւորութիւն մը գրած էր Բիւզանդիոնէն Կիլիկիա, և ուր Հայոց վրայ շատ թանկագին տեղեկութիւններ պէտք էր տուած ըլլալ. (այս գործը, դժբաղդաբար, Նիկեփոր Գրեգորասէն միայն կը ճանչնանք)։

Մէթոխիտէս և Գլիյկիս, ազնուականներու խումբի մը հետ, նախ Կիպրոս ելան և կայսեր առաջարկը ներկայացուցին. լատին թագաւորը պատասխանեց թէ պէտք էին սպասել բաւական ժամանակ, որովհետև ինքը փոքրիկ շարժում մ'ալ չէր ըներ, առանց նախ երկիւղածութեամբ Հռոմայ քահանայապետին հարցնելու։ Այս խղճմտութեան վրայ բարկացած, նուիրակները շարունակեցին ճամբան, և Այաս հասնելով, որ կը կոչուէր «Նաւահանգիստ Հայոց թագաւորի», ցամաքի ճանապարհով, դիմեցին դէպի Սիս։ Հեթումի ներկայանալով՝ խնդրեցին իրմէն հռոմէական պետութեան ապագայ թագուհին։

Հեթում պատասխանեց թէ ոչ միայն մէկ՝ այլ երկու արքունի օրիորդ ունէր՝ այդ պատուոյն արժանի. և ներկայացուց իր երկու մանկամարդ քոյրերը, որոնցմէ մին Ռիթա կամ Մարիամ՝ տասներեք տարեկան էր, իսկ միւսը, Թէոփանոյ, դեռ աւելի փոքրիկ։

Խորհուրդ տուաւ երկուքն ալ Պոլիս տա-
նիլ, ուրկէ զի Թագաժառանգը իր ընտրութիւնն
ընէ։ Ռիթա և Թէոփանոյ օժտուած էին
չնաշխարհիկ գեղեցկութեամբ, և կիլիկեան
արքունեաց մէջ՝ եւրոպական դաստիարա-
կութիւն ընդունած էին։ Նուիրակները կա-
րող չըլլալով վճռել՝ թէ երկու քոյրերէն
որն աւելի գերազանց է, որոշեցին երկուքն
ալ տանիլ և ընտրութիւնը՝ կայսեր թողուլ։
Բոլոր Հայ արքունիքը, մեծամեծներ, զօ-
րավարներ, ձիաւորները, փողերով ու դրօ-
շակներով ուղարկեցին երկու իշխանուհիները,
որ ծովափին վրայ պատրաստ գտան կայ-
սերական նախագոյն շքեղութեամբք զարդա-
րուած առագաստանաւ մը։ Լուրը կանխեց
Պոլիս հասաւ. Անդրոնիկոս սկսաւ հարսա-
նեաց պատրաստութիւններ տեսնել. կ'ուզէր
կատարել հանդէս մը որուն նման ոչ ոք ե-
րևակայած ըլլար։
Սակայն անակընկալ դժբաղդութիւն մը՝
Հայ օրիորդներուն գալուստը ուշացուց։ —
Ռիթա ծովային ճամբորդութենէ նեղուած,
հիւանդացաւ. Նուիրակները Հռոդոս կղզին
ելան՝ զինքը խնամելու համար։ Իշխանուհւոյն
հիւանդութենէն օգտուելով, բռնադատեցին
զինքը՝ Հայկական ծէսը ուրանալու, կրկին

դրօշմ տուին իրեն, և անունը փոխելով՝ Քսենէ կոչեցին։ Յետոյ իր փոքրիկ քոյրն ալ նոյն ստիպման ենթարկուելով, կրկին դրօշմ տուին. և Թէոփանոյի տեղ Թէոդորա կոչեցին։ (Այս դէպքը յոյն պատմչէ մը գիտենք, տես Պախիմերոս, էջ 206)։

Կատարելապէս առողջացած, Ռիթա և Թէոփանոյ Հռոմայէն դէպ ի Բիւզանդիոն նաւարկեցին։ Ցունուարի օր մ'էր. Ոսկեղջիւր ծածկուած էր նաւակներով. օդը լեցուած էր երաժշտական գործիքներու միաձայնութեամբ։ Կայսրը ինքնին, ծերակոյտի անդամներու հետ՝ ընդառաջ ելաւ իրենց՝ մինչև Ս. Կոզմաս վանքին քով և ամենաշքեղ հանդիսով՝ զանոնք կայսերական պալատը տարաւ։ Կարելի չըլլալով որոշել՝ թէ ո՛վ աւելի աժանաւոր է կայսրուհի ըլլալու, հասակի առաւելութիւնը ի նկատի առին. Ռիթա, անօրինակ կերպով շքեղ հարսանիքէ մը յետոյ, հռոմէական տէրութեան ագուստուհին հռչակուեցաւ, (16 յունուար 1296)։

Փոքրիկ Թէոփանոյն, որուն շատեր կը փափագէին, սահմանուեցաւ Կոմնենեան Յովհաննէսի հետ ամուսնանալու. երբ նա Արևմուտք կ'երթար՝ իր փեսայն գտնելու համար, մեռաւ ճանապարհին վրայ, և թաղուեցաւ Թեսաղոնիկէի մէջ։

*

Այն տարին, յորում Ռիթա պահ բարձրացաւ, արհաւիրք և արիւնհեղութիւն կը տիրէին Պոլսոյ մէջ։

Վենետկեցիք, պատերազմ հրատարակելով Ճենովացիներուն դէմ, յանդգնեցան, հակառակ Յունաց հետ կապած դաշինքներուն, նաւատորմղով Պոլիս մտնել, այրել Կալաթան ու Բերան, ուր մեծաւ մասամբ Ճենովացիք կը բնակէին։ Ամբողջ գիշեր մը Պոլիս իր արուարձաններուն հրդեհով լուսաւորուեցաւ. տուներնին դատարկ թողլով, Ճենովացիք Պոլիս ապաւինած էին, ուստի կեանքի կորուստ չեղաւ բնաւ. բայց Անդրոնիկոս կատաղութենէն կը դիւահարէր տեսնելով իր քաղաքը՝ իր աչքերուն տակ այրուած. անկարող եղաւ հանդուրժելու. երբ Վենետկեցիք յարձակեցան նաև Պոլսոյ այն թաղին վրայ, ուր Ճենովացիք ապաւինած էին, հրամայեց Յունաց՝ միանալ այս վերջիններուն հետ և Վենետկեցիները ետ մղել։

Հեթում թագաւորը Պոլիս եկած էր, իր դուստրը տեսնալու համար։ Յունաց մայրաքաղաքին մէջ անգամ փրանկիսկեան եղբարց հետ կ'ապրէր, և սիրուած էր թէ՛

վենետիկեցիներէն և թէ՛ ճենովացիներէն։ Զանոնք հաշտեցնելու համար Անդրոնիկոս Հեթումը ղրկեց, իբրև լատին, միջնորդութիւն ընելու, բայց յուսախաբ եղաւ. Ճենովացիք օր մը յանկարծ վենետիկեցւոց վըրայ յարձակելով, զամէնքն ալ ջարդեցին։ (Հեթումի Պոլիս գալն և Փրանկիսկեանց քով բնակիլն՝ գիտենք Գէորգ Պախիմերոս պատմըչէն, էջ 242)։

Ռիթա չորս որդի ընծայեց Միքայէլի, Անդրոնիկոս (Գ.) որ յետոյ կայսր եղաւ, Մանուէլ, Աննա և Թէոդորա։

Անդրոնիկոս, ի սկզբան առաքինի. յետոյ ախտերու անձնատուր ըլլալով, իր Մանուէլ եղբայրը սպաննեց գիշեր ժամանակ՝ զայն շփոթելով նախանձորդներէն միոյն հետ։ Միքայէլ, որ Ռիթայի հետ Թեսաղոնիկէի մէջ կ'ապրէր, իր որդւոյն մահը լսելով, սրտին ցաւէն մեռաւ (1320ին)։

Այս սպանութեան պատճառաւ՝ Անդրոնիկոս Գ. ատելի եղաւ ամենուն։ Ծերունի պապը գահազուրկ կ'ուզէր ընել զինք, իր անհարազատ որդին կայսր անուանելու համար։ Յայտնի թշնամութիւն կը ցուցնէր ոչ միայն Անդրոնիկոս Գ.ի, այլ և իր մօր՝ Ռիթայի դէմ։ Կարող ենք ուրեմն եզրակացը-

նել՝ թէ ծերունի կայսրը քաղաքապետօրէն փառաւոր կը տեսնար տէրութիւնը յանձնել երիտասարդի մը, որ մօր կողմանէ հայ էր, և որ Յունաց նենգութենէն ձանձրացած, անգամ մը բացագանչեր էր. «Կիլիկիա պիտի երթամ քեռոյս մահուանէն յետոյ՝ Հայոց թագաւոր ըլլալու համար»։

Անդրոնիկոս Բ. իր Կոստանդին անուամբ որդին (1321ին) Թեսաղոնիկէ ղրկեց՝ որպէս զի Ռիթա ձերբակալեն, և քաղաքական յանցաւորի մը նման, զինուորներով Պոլիս ուղարկեն։ Ռիթա եկեղեցին ապաւինեցաւ. Աստուածածնայ պատկերին առջեւ ծնրադրած՝ ուխտեց դուրս չելլել։ Այս վայրկենին Կոստանդին ներս մտնելով՝ հրամայեց իրեն հեռանալ. հնազանդութեան տեղ՝ անկեց միայն զայրագին նայուածք մը գանելով, Ռիթայի վրան յարձակեցաւ և կ՚ուզէր բռնի դուրս հանել. չէր գուշակած թէ ինչ փոթորիկի պիտի հանդիպէր. Ռիթա Կոստանդինի վրայ նետուեցաւ իր բոլոր թափով և սկսաւ հարուածներ իջեցնել. կայսրուհին և զօրավարը կը մենամարտէին. Հռիփսիմէի և Տրդատի տեսարանն էր։ Յոգնեցաւ Կոստանդին, և երեք զինուորներու դառնալով՝ հրամայեց անոնց՝ որ կայսրուհին դուրս

հանեն եկեղեցիէն։ Ուիթա, թէ և շարունակեց հերոսաբար կռուիլ՝ բայց չկարենալով երեք երիտասարդի միանգամայն դիմադրել, գրկուելով՝ տարուեցաւ նաւ մը՝ որ Պոլիս պիտի մեկնէր։ (Նիկեփոր Գրեգորաս, Ը գիրք 11, և Կանտակուզէն Ա, 26)։

Անդրոնիկոս Բ. արքունեաց մէջ պահեց զինք, բայց հսկողութեան տակ։ Ոչ մէկ առիթ չէր կորսնցներ նախատելու համար բոլոր իշխանաց առջև իր համանուն թոռնիկը՝ զոր մանկութեան ժամանակ այնքան սիրած էր. անշուշտ անոր մայրն ալ ազատ չեղաւ նոյնպիսի դառնութիւններէ։

Սակայն 1328ին Անդրոնիկոս Բ. բռնադատուեցաւ իր Թոռան իրաւունքները ճանչնալու, և հրաժարեցաւ կառավարութենէ, ուր յաճախ առիթ ունեցած էր իր բնածին թեթևամտութիւնը ի ցոյց հանելու. միայն մի դէպք բաւական է զայն ապացուցանելու։ Անգամ մը սենեկին մէջ կ'աշխատէր, երբ ձիու մը խրխինջը լսեց. ուսկի՞ց կրնար գալ. վրացի սենեակներէն միոյն մէջ ձիու մը պատկերը կար. անմիտ կայսրը իսկոյն եզրակացուց՝ թէ այդ նկարուած ձին էր որ հրաշքով խրխնջել սկսեր է... հրաշքի ձայնը կը տարածուի բոլոր պալատին մէջ,

և կը հաստատուի մանաւանդ այն պատճառաւ, որ ձիուն վրայ հեծնողը՝ Ս. Գէորգն ինքնին է։ Հետաքրքիր նաժիշանները, զինուորները պալատ կը վազեն, զարմանալի եղելութիւնը ստուգելու համար։ Երբ կայսրը՝ իշխանաց հրաշքին մանրամասնութիւնքը կը պատմէր, «Տէր արքայ, ըսին անոնք, այդ հրաշքը նոր բան չէ. այդ ձին ուրիշ անգամ ալ խրխնջեց, երբ լատինացիք Պոլսէն կ'ելլէին. յաղթութիւն կ'աւետէ!»։

Անդրոնիկոս Գ.ի գահակալութեամբ (1328) Ռիթա կը յուսար փառաց գագաթնակէտը բարձրանալ։ Կ'ուզէր ինքը կառավարել և կը պահանջէր որ ամենէն փոքրիկ խնդրոյն մէջ ալ իր կարծիքն հարցնեն. իր որդին ալ, վրէժխնդիր իր անհաստական իրաւանց, ամէն առթի մէջ մօր սիրտը կը մահացնէր անոր խորհուրդին հակառակը գործելով։ Կանտակուզէն և իր մայրը աւելի հեղինակութիւն ունէին քան զՌիթա, որ անոնց դէմ սկսաւ նախանձ սնուցանել, իր որդւոյն դէմ՝ ատելութիւն։

Անդրոնիկոս Գ. իշխաններուն ուխտել տուած էր որ եթէ մեռնի՝ իր կայսրուհիէն ծնած զաւակը պէտք է թագաւորէ։ Ռիթա ընդհակառակն իր իրաւունքը կը նկատէր

դահ բարձրանալ այն պարագային՝ երբ իր որդին յանկարծամահ ըլլար: Եւ որովհետեւ Թեսաղոնիկէ կը բնակէր, Սիւրգիանէս կառավարիչը որդեգրեց, եւ Թեսաղոնիկէի բնակիչները բռնադատեց երդնուլ՝ թէ իր փառաց համար՝ մինչեւ մահ պիտի կռուին: Այսու պալատական խռովութիւնները դեռ աւելի սաստկացան, եւ Ռիթա մինչեւ իսկ դաւադրութիւն կազմեց՝ իր որդւոյն կեանքին դէմ:

Այս դաւը, զոր կազմակերպեց Սիւրգիանէս իշխանին հետ, մեծ յեղաշրջութիւն մը յառաջ պիտի բերէր եթէ յաջողէր. Սիւրգիանէս փախաւ Կալաթա, ուր ծպտեալ ծածկուած մնաց տան մը մէջ. գլխաւորներ ամէն կողմ հետազօտութիւն կը կատարէին. կայսրը, անհամբեր, Կալաթա իջաւ անձամբ քննութիւններ ընելու. ամէն միջոց ապարդիւն եղաւ. Սիւրգիանէս ծածկուած մնաց. երբ կայսրը եւ իր պաշտօնեայները յուսահատած Պոլիս դարձան, Սիւրգիանէս նաւ մտաւ եւ հեռանալով Պոլսէն՝ բանակի մը գլուխն անցաւ:

Պատրաստութիւններ կը տեսնէր մայրաքաղաքին տիրելու. Ցրանց իշխանը, որ յետոյ իբրեւ պատմագիր հռչակուեցաւ, իր

րանակն եկաւ՝ փախստական ձևանալով։ Բիւզանդացի Անակը, իր կեղծիքը հաւատարմացնելու համար՝ խորհուրդ տուած էր կայսեր՝ իր Ինչքերը յարքունիս գրաւել, և իր կինը, իշու վրայ հեծցուցած՝ Ս. Սոփիայի հրապարակին վրայ պտտցընել ։ Սիւրղխանէս այնուհետև ոչ մի տարակոյս ունեցաւ՝ թէ Ֆրանց վրէժխնդրութեան զգացումով իրեն դիմած էր. Ֆրանց, պատայտի մը ժամանակ՝ զինքը սպաննեց երկու որիկայներու ձեռքով, որոնց հետ յետոյ Կոստանդնուպօլիս փախաւ։

Թէպէտ Ոխիթա ալ այս դաւադրութեան մասնակցած էր գաղտնապէս, բայց Անդրոնիկոս Գ. իր մօր պատիւը անարատ պահելու համար, թոյլ չտուաւ զինքը դատաստանի կանչել։

Ոխիթայի մէկ դուստրը ամուսնացած էր Բուլղարաց թագաւորին հետ. պէտք է գիտել թէ Հեթում Բ. իւր խաղաղասէր քաղաքականութեամբ որքան իր ընտանիքը տարածեր էր։ Կիպրոսի, Բիւզանդիոնի, Բուլղարաց թագուհիները՝ իր տոհմէն էին։ Միքայէլ Բուլղար, թոռն Ոխիթայի, դեսպան ղրկեց Անդրոնիկոս Գ.ի Բիւզանդիոնը պահանջելով՝ իբրև ժառանգութիւն։ Պատերազ-

մը անխուսափելի էր. Ուխթա սակայն մի-ջամտեց. ընծայներով և ճարտարախօսութեամբ՝ յաջողեցաւ իր թոռն և որդին հաշտեցնել։

Ուխթա յետ տխուր տարիներ անցընելու, իր փառասէր ձգտումներէն ոչ մէկը յաջողած տեսնելով, մեռաւ Թեսաղոնիկէի մէջ, 1333ին։ Նիկեփոր Գրեգորաս պատմիչը՝ կայսեր առջև դամբանական մը խօսեցաւ, զոր իր գրքին մէջ ալ զետեղելով՝ (էջ 490) աւանդեց մեզի։

Մարմնոյ, մտքի և նկարագրի կողմով, Ուխթա թագազարդ ամազոն մըն է, հարազատ դուստր այն քաջերուն՝ որ, ձիւնապատ կատարներու վրայ բազմած, «Լեռներու թագաւոր» տիտղոսն ընդունեցան՝ խաչակիր բանակներէն[1]։

1. Ուխթայի վրայ, զոր նախ Մարիամ կը կոչեն, յետոյ միշտ Քսենէ, կը խօսին Նիկեփոր Գրեգորաս (էջ 196, 354, 430. 440, 490, 493). Պախիմերոս (Բ հտ. էջ 205). Կանտակուզէն՝ իր՝ նամակի ձևով գրած՝ յառաջաբանին մէջ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԿՈՍՏԱՆԴԻՆ ՊԵՐՓԵՌՈՒԺԷՆԻ ՄԱՍԻՆ

1. *Ցուցակ ո՛ր պատմագիրներն խօսած են Կոստանդինի վրայ. — Պերփեռուժէնի վրայ խօսող գլխաւոր պատմագիրները՝ հետեւեալներն են։*

*Թէոփանէս Շարայարեալ ըստ Պոննի տպագր.* *էջ* 370– 469։

*Սիմէոն Մագիստրոս Լոգոթէտ* *էջ* 712–756։

*Գէորգ Կրօնաւոր* *էջ* 874–924։

*Կեդրենոս Բ հատոր* *էջ* 278–337, *և այլն*։

*« Բիւզանդացի այն հեղինակները որ Կոստանդին Ը.ի վրայ խօսած են, տասն են թուով։ Ի վերջ Ժ դարու Լեւոն Քերականագէտ, Սիմէոն Մագիստրոս և Գէորգ Կրօնաւորի երկու շարայարողները. ԺԱ դարուն վերջը, Սքիլիցէս և Կեդրենոս. ԺԲ դարուն մէջ, Զոնարաս, Եփրեմ որուն գործը տաղաչափեալ համառօտութիւն մ'է նախորդներուն. ԺԳ դարու մէջ, Մանասէ, համառօտող և տաղաչափ. Յովէլ, համառօտող ։*

Ժ. դարու չորս պատմագիրները պատմած են՝ միայն Կոստանդին Է.ի թագաւորութեան առաջին մասը. իր խնամակալներու՝ և իր զաւակցին Ռոմանոս Լեկաբենոսի վրայ ըրած իրենց դատաստանները՝ նոյն են։ Թէպէտ և զԼեկաբենոս յանցաւոր կը նկատեն ճշմարիտ յափշտակութիւն մ'ըրած ըլլալուն համար, այնուհանդերձ ամենամեծ գովեստներ կու տան իր կառավարութեան կերպին, իր բարեպաշտութեան, իր մարդասիրութեան վրայ. իր անկումէն վերջ՝ կը ցուցնեն իրեն վրայ՝ զինքը արժանի նկատելով օրինաւորապէս թագաւորելու, և իր գործերէն միայն մէկը եպերելով, ճիշդ այն՝ որով գահու վրայ բարձրացաւ։

Այս չորս պատմագիրներու համաձայնութիւնը կերպով մը բիւզանդական պատմութեան ձայնատուն եղած է. և Ժ դարէն մինչև ԺԳ դար, ժամանակագիրները ուրիշ բան չեն ըներ, բայց եթէ մի և նոյն դէպքերը և դատաստանները յեղյեղել։ Մանասէ, իր բանաստեղծական խանդէն մղուած, թերևս քիչ մը դաժան է յափշտակող Լեկաբենոսի նկատմամբ, բայց ակներև է, որ ինքն ալ ճիշդ այն աղբիւրները գործածած է, ինչ որ ունեցած են իրենց առջև Ժ դարու պատմագիրները։

Կոստանդին Է.ի թագաւորութեան երկրորդ կիսուն վերաբերեալ պատմութիւնները, այսինքն ինչ որ իր անձնական կառավարութեան վրայօք գրուած է, նոյն համաձայնութիւնը չունին։

Այն թագաւորին վրայ երկու տեսակ աւանդութիւն կայ. մին նպաստաւոր, միւսն աննպաստ. և ուշադրութեան արժանի է թէ ինչ եղանակաւ այս երկրորդը ի յայտ կու գայ բիւզանդական պատմութեան մէջ։

Լեւոն Քերականագէտ և Գէորգ Կրօնաւորի շարայարողը, կանգ կ'առնուն 948ին, այսինքն Ռոմանոս Լեկաբենոսի մահուամբ, որ աքսորուած էր Փռոթի կղզւոյն մէջ, և յայտնի է որ ուրիշ նպատակաւ չեն սկսած Կոստանդին Է.ի առաջին չորս տարիներուն վրայ խօսիլ, բայց եթէ իրենց գլխաւոր դիւցազնին պատմութիւնը վերջացնելու համար. Սիմէոնի Շարայարողը՝ կ'երթայ մինչեւ 961, բայց Կոստանդին Է.ի՝ միայն մի քանի աննշան գլուխներ կը նուիրէ։ Ուստի մեզի ծանօթ Ժ դարու միակ պատմաբանը, որ իրօք Կոստանդին Է.ի պատմութիւն մը գրած ըլլայ, է Թէոփանէսի անանուն շարայարողը, կամ մանաւանդ Թէոփանէսի Շարայարութեան Զ գլուխը որ կը պարու-

նակէ, ըստ Պոննի տպագրութեան, Լեոն Զ.ի, Աղեքսանդրի, Կոստանդին Է.ի, — երբ սա խնամակալի ներքեւ էր, — Ռոմանոս Լեկաբենոսի, Կոստանդին Է.ի, — երբ սա մինակ կը թագաւորէր, — Ռոմանոս Բ.ի թագաւորութեան տարիները։

Այսպէս, այս չորս պատմագիրներու խումբին մէջ, որ գրեթէ Ժ դարուն վերջը կ'ապրէին, և զոր կրնանք մակեդոնական խումբ անուանել, անուամբ այն հարստութեան՝ որուն ներքեւ ապրեցան. միայն մէկը, քիչ մը մանրամասնօրէն խօսած է Կոստանդին Ը.ի վրայ, և իր պատմութիւնը՝ գովեստ է։ Ուրեմն տասներորդ դարուն մէջ տեղեկութեանց միայն մէկ աղբիւր կրնար գոհութիւն ունենալ յաջորդ դարերուն համար՝ Պերփեռուժէնի վրայօք, և այս տեղեկութիւնք բոլորովին նպաստաւոր էին։

Յաջորդ դարէն սկսեալ, ընդհակառակն, պատմական հաւաստագիրներու մէջ կը նշմարենք տեղեկութեանց կրկին հոսանք. պարսաւը՝ գովեստին հանդէպ, զարմանքի քով արհամարհանքը։

ԺԱ դարուն մէջ Կեդրենոս և Սքիլիցէս կրկնած են շատ աղմուկներ՝ Պերփեռուժէնի աննպաստ. ԺԲի մէջ, Զոնարաս ալ նոյն

տրամադրութեան տակ է. Գլիկաս նախատինքներ ալ կ'ընէ. իրեն փոքր կու գան ապուշ և պատարկապորտ մակդիրները։

Ուսկի՞ց կու գայ աննպաստ տեղեկութեանց այս աղբիւրը, որուն մեկնակէտը ի զուր կը փնտռենք մակեդոնական խմբի գրութեանց մէջ, Ժ դարու, մեզի ծանօթ, գրականութեան մէջ։

Պէտք է որ այս ժամանակին գրուած ըլլայ պատմութիւն մը՝ բոլորովին այլ ոգւով քան ինչ որ է Տարայարողինը, պատմութիւն մը՝ որուն օրինակները բազմացնել ջանացած չեն մակեդոնացի իշխանները, և որ, մեզի համար, կորսուած է։

Այս յայտնի է որ Պերփեռուժէնի բոլոր պատմագիրները մեզի հասած չեն։ Լեւոն Սարկաւագ, ԺԱ դարու հեղինակ, կ'ըսէ որ Կոստանդինի Թագաւորութեան դէպքերուն վրայ պիտի չխօսի, վասնզի ուրիշներ արդէն ընդարձակ խօսած են. այդ մեզի հասած պատմութիւններէն ոչ մէկը արժանի է ընդարձակ մակդիրին։

Այսպէս, Կոստանդին Է.ի պատմչաց մէջ կան գովաբանողներ և ամբաստանողներ։ Մէկ կողմը կեցած է Տարայարողը, միւս կողմը՝ Կեդրենոս, Զոնարաս, Գլիկաս, Եւ-

փրեմիա։ Մէկը գրեթէ ժամանակակից է, միւսները՝ յաջորդ դարու կը պատկանին։

Մէկը գրեթէ պաշտօնական պատմագիր մ'է, միւսները՝ անկախ պատմագիրներ։

Առաջինին իր տրամադրութեան տակ ունեցած է մի քանի հաւաստագիրներ՝ որ թերեւս միւսներուն անգործածելի եղած են։

Բայց մենք կը տեսնանք որ Ծարայարոգը հռովմէական նաւատորմղին կործանել կու տայ արաբական նաւատորմիղը՝ Փալերմոյի առջեւ, 956ին, մինչդեռ գլխաւորապէս փոթորիկն եղաւ, որ այդ գործը ի գլուխ հանեց։

Նա կ'անգիտանայ կամ կը կեղծէ Բիւզանդացւոց բոլոր պարտութիւնները յԻտալիա և յԱրեւելս, և միայն իրենց յաղթութեանց վրայ կը խօսի։ Կրետէի մեծ արկածին վրայ. 949ին, չի խօսիր։ Կը տեսնուի թէ արտաքին պատմութեան համար՝ գործածեր է միայն պաշտօնական վաւերագրերը, զօրավարաց յաղթութեան յայտագրերը, այն նպաստաւոր աղմուկներն և մեկնութիւնները՝ զորս Կոստանդին կը յանձնէ տարածել քաղաքին մէջ, երբ բանակը պատերազմի մէջ է։

Կեդրենոս, ընդհակառակն, յաջորդ դարու պատմագիրներու մէջէն ամենէն կարեւորը,

արտաքին եղելութեանց վրայ՝ աւելի ճիշդ տեղեկութիւններ ունի. կ'երեւի թէ նա գործածեր է արաբական աղբիւրներ, վասնզի շատ մանրամասնօրէն և անկողմնակալ կերպով կը պատմէ Սարակինոսաց դէմ եղած պատերազմները։

Լաւագոյն է, թերեւս, արտաքին դէպքերը պատմողի մը համար, բոլորովին ժամանակակից չըլլալը։ Պաշտօնական գրութիւններէ չի խաբուիր. հակասութիւնները, տարբեր մեկնութիւնները՝ ժամանակ ունեցած են ծնանելու. օտարազգիները և նոյն իսկ թշնամիները՝ լոյս կը սփռեն դէպքերուն վրայ։ Պատմարանը կ'օգտուի կարծիքի այս աշխատանքէն։

Բաց ի յոյն պատմագիրներէ, պէտք է ի նկատի առնուլ, ամենէն առաջ, այս թագաւորութեան ներքին պատմութեան և Կոստանդինի ներքին կենսագրութեան վրայօք Լուիթբրանդի, Քրեմոնայի եպիսկոպոսին՝ գրութիւնները, որուն վկայութիւնը, Պերփեռուժէնի նպաստաւոր, այնքան յարգի է՝ որչափ բիւզանդացի պատմագրացը։ Ինքը աւելի ստուգապէս ժամանակակից է՝ քան բոլոր 'անոնք՝ զորս յիշեցինք։ Պերանժէ Թագաւորէն Կոստանդին Է.ի արքունիքը

դեսպան ղրկուած, քիչ վերջը այն յեղափոխութենէն՝ որով Պերփեուժէն ազատեցաւ յափշտակող Լեկապենոսի ձեռքէն, կրցած է շատ բան հաւաքել այս յեղափոխութեան մանրամասնութեանց, անձերու նկարագրին, կայսեր սովորութեանց վրայ անգամ, շատ մանրամասնութիւններ՝ զորս չենք գտներ ո՛չ Լեւոն Քերականագէտի, ո՛չ երեք շարայարողներու մէջ՝ որ ժողովրդական ազդուկներու արդէն իսկ տկարացած արձագանգներն են։

Գերմանացի, իտալացի, հունգար, սերպիացի, ռուս, տաճիկ, արաբ, հայ պատմագիրներն ալ պէտք է աչքի առաջ ունենալ. բայց իրենց վկայութիւնը յարգ ունի, մանաւորապէս, արտաքին պատմութեան համար»։ (Rambaud, L'empire grec au dixième siècle. Constantin Porphyregénète էջ 1)։

2. Հայոց ո՞ր պատմագիրները խօսած են Պերփերոժէնի վրայ.— Յովհան Կաթողիկոս, Գլուխ ԾԴ, էջ 333 (տպ. Երուսաղէմ) հետեւեալ գլուխը կը նուիրէ Կոստանդինի.

«Յաղագս գրելոյ Նիկողայոսի պատրիարգին

Կոստանդնուպօլսոյ նամակ առ Յովհաննէս Կաթողիկոսն, և նորա ևս գրելոյ առ Կոստանդին կայսր »:

Սա այն Նիկողայոս պատրիարքն է՝ որ Աղեքսանդր Արշակունւոյ շնորհիւ կրկին գահ ելաւ՝ գանակոծել տալով զԵւթիմիոս Հայրապետ (912), Պերփերուժէնի, խնամակալն եղաւ (913ին), կայսր օծեց զՌոմանոս (920), և որ 13 տարի Հայրապետութիւն ընելէ վերջ՝ մեռաւ 925ի մայիս 17ին, երբ միասին կը թագաւորէին Ռոմանոս Լեկաբենոս՝ և Կոստանդին Պերփերուժէն:

Կոստանդին Պերփերուժէն երկու անգամ միայնակ թագաւորեց. մին՝ 913–920. միւսը՝ 944–959:

Այս վերջին շրջանին մէջ գրուած չի կրնար ըլլալ առ Յովհան Կաթողիկոս գրուած նամակը՝ որովհետև արդէն Նիկողայոս Հայրապետ մեռած էր. գրուած չէ նոյնպէս այն ժամանակ երբ Պերփերուժէն Ռոմանոսի հետ կը թագաւորէր, որովհետև առ Յովհան Կաթողիկոս գրուած նամակին մէջ Լեկաբենոսի (920–944) բնաւ յիշատակութիւնը չկայ, ուրեմն Նիկողայոսի այդ նամակը պէտք է գրուած ըլլայ 913 էն (երբ Պերփերուժէն եօթը տարեկան էր) մինչև 920 թիւը՝ երբ Պերփերուժէն չորեքտասանամեայ էր:

Այս հանգամանքները պէտք է ի նկատի առնուլ՝ մեկնելու համար Յունաց խաղացած աննշան դերը՝ այն ժամանակի Հայաստանին նկատմամբ։

Ընդհակառակն Յովհան Կաթողիկոսի՛ առ Կոստանդին գրած նամակը պէտք է Ռոմանոս Լեկաբենոսի ժամանակ գրուած ըլլայ, թէպէտ և նամակին մէջ բնաւ ասոր յիշատակութիւն չկայ։ Զայս պիտի ապացուցանենք՝ երբ ի մէջ բերենք այդ նամակը։ Յոյժ հետաքրքրական են, ըլլալով դիւանական հարազատ գրութիւններ, և պատասխանին հեղինակն՝ ինքնին կաթողիկոս պատմագիրն ըլլալով։

«Վսեմականի[1], աստուածասիրի և հոգեւոր հօր՝ տեառն և յաւէտ սիրելի եղբօր մերում Յովհաննու Կաթողիկոսի Հայոց մեծաց՝ ի՝ Նիկողայոսէ ողորմութեամբն Աստուծոյ յարքեպիսկոպոսէ Կոստանդնուպօլսի և ի Ծառայէ ծառայից Աստուծոյ՝ Տէրամբ խնդալ։

1. Կարծենք թէ Յովհան Կաթողիկոսի յունարէն բնագիրը հոս ունէր Σεβαστὸς բառը՝ որ կը նշանակէ թէ բարեպաշտ, և թէ՛ արքունական, վեհափայլ, և որ ծագումն առած է վսեմական տարօրինակ սկզբնաւորութեան։

Կարծեմ ոչինչ զանխուլ է ի քէն, Տէր իմ, ի քոյոյ յաստուածասիրութենէդ՝ յոյժ տրամութիւն և անպակաս ցաւք սրտից մերոց յաղագս Հայոց և Վրաց և Աղուանից միահամուռ քոյդ հաւատացեալ հօտից[1]. որ[2] եհաս ի վերայ պառն տագնապ չարչարանաց և նեղութեան ի Սառակինոս[3] իսմայէլեան բռնակալացն։ Չի թէպէտ մարմնով մեկուսի եմք, և աչօք ոչ տեսեալ զվտանգ հօտի ձերոյ, սակայն ի լսելն ի չարէն չարչարեալ զաշխարհս ձեր, յոյժ կոծիմք անձամբ և յոգւոց ելանեմք մեծաւ տրամութեամբ։

1. Այս բացատրութիւնը՝ յոյն պատրիարքի մը կողմէ՝ շատ նշանաւոր է. զայն ի նկատի չեն առած հայ եկեղեցւոյ պատմաբանք, և Գելցեր կը սխալի՝ հայ կաթողիկոսը անուանելով՝ Վրաց և Աղուանից կաթողիկոսներուն նկատմամբ՝ միայն primus inter pares. «միահամուռ քոյդ հաւատացեալ հօտից» Բացատրութիւնը աւելի նշանակութիւն կ'առնու երբ ի նկատի առնունք այն եկեղեցական խռովութիւնքը՝ որ եղան Աբրահամու և Կիւրիոնի ժամանակ։

2. Ուղղելի որոց։

3. Այս անուանակոչութիւնը շատ հազուադէպ է հայ պատմչաց քով. և թերևս հոս պիտի չհանդիպէինք անոր՝ եթէ ի մէջ բերուած կտորը թարգմանութիւն մը չըլլար։

Իսկ եթէ մեք հեռագոյն ի ձէնջ՝ միայն ի լսելն այսպէս ընկալաք յանձինս մեր սուգ պատմութեան, ապա ո՛րչափ ևս առաւել դուք հաղորդեալք ի չարչարանս՝ ընդ հօտից ձեր, և հալածեալք յանօրէն և պիղծ ապստամբացն[1]. և զի՞նչ պարտ է և պատշաճ է լինել, և կամ զի՞նչ ա՛յնչափ չարութեանն իմանալ մխիթարութիւն. և ո՞րպէս ողջութիւն զհետ եկեսցէ փարատել զառաջիկայն՝ որ գալոցն է գայթակղութիւն:

Արդ՝ եթէ պատշաճ թուեսցի սրբութեանդ ձերում, պարտ է նախ զաստուածային այցելութիւն և զօգնականութիւնն յամենայն ժամ վերակարդալ. և ձեռս ի վեր համբառնալ, և բոլորով սրտիւ ի գութ ողորմութեան կոչել զամենակալն Աստուած քոյոցդ հօտից Հայոց Վրաց և Աղուանից, և խնդրել զհասարակացն օգուտ. ապա մի՛ ևս այլ անսալ կորստեան դոցա. փոյթ յանձին ունել ամենայնիւ յամենայնի առհասարակ զամենեսեան խրատել աստուածային գիտութեամբ, և քրիստոսաւանդ բանիւն՝ կապել և արձակել, որպէս և ընկալաք պատուէր իշխանութեամբ իսկ յերկինս և յերկրի, և զաղա-

1. Այս բառը ուղղելի կը թուի ամբարշտաց:

բեցուցանել զմեզ ի հակառակութենէ չա-րութեանս որ ընդ միմեանս։ Եւ մի՛ տար թոյլ մնալ ի վայրենի գազանութեանն. որք բարկացեալք և գիժեալք են ի սպանումն միմեանց և դառնալ ի մարդկային մտածու-թիւնս, և ի քրիստոնէկան հանդարտութիւն, որով բերի խոկ ի փրկութիւն մնացելոցդ մասանցդ մարդկան Հայոց աշխարհացդ[1] և Վրաց և Աղուանից։

Զայս նուաստութիւն իմ յառաջագոյն փու-թացայ գրով ճեպել առ ձեզ սուղ ինչ պատ-ճառ յորդորման սիրոյ։ Ըստ սմին օրինա-կի առաքեցաք թուղթս առ Կուրապաղատ, և առ աւագն Ափխազաց, խրատելով առ ի լսել խրատուցդ ձերոց, և մոռանալ զընդ-միմեանս հարուածն, և նայել ի սէր և ի միաբանութիւն և ի հաշտ խաղաղութիւն ընդ միմեանս, և ընդ հասարակ իշխանս Հայոց և Աղուանից, և միանալ միաբան և մարտնչել ընդդէմ ամբարիշտ թշնամւոյն Ա-պուսիճայ, զի մի՛ հասարակ ձեզ կորուստ եղիցի, և որ ընդ ձեզ այլ եւս մերձաւորաց ազգաց սասանումն բերցի։

Եւ արդ պարտ է ձերում սրբութեանդ

1. Ուղղելի՝ աշխարհացդ Հայոց։

բերան ի բերան և թղթով և պատգամօք, և եպիսկոպոսօք և քահանայիւք, և որքով արամբք դուն գործել, և ի բաց ի միջոյ բառնալ զչար հակառակութիւնս նոցա. և առանց բանի պղերգութեան հեռեւել յայսպիսի մատակարարութիւնս, և մաղթել դառնալ առ ի լաւագոյնսն և փրկական խորհուրդս և գործս, զի այսպէս միախոհք և միաբանք լինելով՝ մի եւս կարողասցի ինչ ի վերայ աշխարհիդ ձերոյ ապականիչ չարն։ Եւ մինչ այդ այսպէս ի ձէնջ կազմիցի, ապա և ինքնակալ և աստուածապսակեալ թագաւորս մեր ի դէպ ժամանակի պիտոյից առաքեսցէ զօր բազում յօգնականութիւն ձեզ. զի և Կուրոպաղատ եւս և աւագն Ափխազաց, և իշխանք և մեծամեծք Հայոց միաբանեալք մերոցն զօրաց, մեծաւ օգնականութեամբ Աստուծոյ և ձերով մեծ քահանայագործութեամբդ պատերազմեալ ընդ թշնամիսդ՝ կարծեցեալ կորստեան արբանեկին սատանայի վերագոյն գացին։ Յայնժամ ապա և մեղանչականութիւն հակառակութեանն՝ որ ընդ միմեանս եղին ապիրատութեամբ, և դուք և մեք առհասարակ նոցա թողութիւն շնորհեսցուք։

Եւ զիւրաքանչիւրոց զիրաւունս յիւրաքանչիւրսն ընձեռեսցիք, որպէս և վայելէ

իսկ ձերում սրբութեանդ. զի յառաջագոյն իսկ ի կարգս քահանայապետութեան իւրաքանչիւր ոք հաստատեսցի։ Ցայսմհետէ խաղաղութիւնն Քրիստոսի հաստատեսցի ի ձեզ, և սրբափայլ աղօթք ձեր եղիցի ընդ նուաստութեանս մերում։

Իսկ ես ընթերցեալ զայս և ընկալեալ սիրովն Քրիստոսի, ի սոյն միտս և ի սոյն խորհուրդ համոզեալ հաստատեցի զթագաւորն Վրաց, մինչև խոստովան եղև զհետ երթալ խաղաղութեան և սիրոյ և միաբանութեան ընդ ամենեսին՝ և ընդ իշխանս և ընդ տեարս աշխարհիս Հայոց և Վրաց, անշուշտ յեակար երդման լինչ՝ այդ մասին տուեալ:... Իսկ իմ այս տեսեալ զծփական և զանդուլ հինից արշաւանս մինչ դեռ ես էի ի Տարօն գաւառի, գրեցի թուղթ առ Կոստանդին կայսր Հռովմայեցւոց՝ օրինակ զայս.

Գերաբուն և ինքնակալ կայսր Հռովմայեցւոց օգոստոս Կոստանդիանոս, յաստուածուստ պսակեալ և պերճացեալ մեծ և բարեյաղթ թագաւորք տիեզերաց՝ աստուածասէրք և բարեպաշտք. ի հանդիսի կենացս՝ հաստա-

բակաց լուսաւորութեանց վերակացուք, և հանուրց եղելոցս ճշմարիտ խաղաղարարք, երկնացեղիկ ինն դասուց՝ համեմատք, և շինութեան Հոգեւորի առիթք. այսքանեաց և այսպիսեաց ազգաց և ազանց՝ ստուգապէս առաջնորդք, աստուածայինն, արդարեւ արժանենի ի տան Տեառն տնկեալք։

Ողջոյն ձեզ և խաղաղութիւն, և խնդութիւն բազում և սէր հաստատեալ յայսմիկ կաթողիկէ եկեղեցւոյ. որ թէպէտ և ի թշնամեաց աստի գերեալ, և իբրև զանապատ անջրդի խոզանացեալ՝ ըստ նմանութեան մօր անզաւակացեալ յորդւոց, սակայն կայ և մնայ ի սէր փառացն Աստուծոյ։ Ողջոյն ևս և յինէն ի Յովհաննիսէ Հայոց նուաստ կաթողիկոսէ »։

Սոյն նամակի սկզբնաւորութիւնը՝ կը պարունակէ ժամանակագրական տեսակէտիւ կարևոր հանգամանքներ։ Յիրաւի պէտք է գիտել։

1° Յանուանէ կը յիշատակուի միայն Կոստանդիանոս։

2° Բայց Յովհան Կաթողիկոսի նամակը միայն առ նա ուղղուած չէ, զի ամէն անգամ երբ իւր խօսակիցները յիշատակելու

առիթ կուտայ՝ յոգնակի ձեւը կը գործածէ. «Թագաւորք տիեզերաց՝ աստուածասէրք և բարեպաշտք»:

3° Յովհան Կաթողիկոս՝ իր նամակը ուղղած է՝ իւր կայսերական անձինքներու, զի կ'ըսէ. «երկնացեղիկ իւր դասուց համեմատք»:

Ռոմանոս Լեկապենոսի վարքը պատմած ժամանակ տեսանք արդէն՝ թէ միաժամանակ կային հինգ կայսերներ, որոնցմէ չորսը ամուսնացած. հետեւապէս ինչ կայսերական անձինք կային պալատին մէջ:

Կը հետեւի թէ Յովհան Կաթողիկոսի նամակը գրուած է Ռոմանոս Լեկապենոսի և Կոստանդին Պորփիւռոժէնի գահակցութեան ժամանակ (920–944):

«Շնորհք և խաղաղութիւն բազմասցի ընդ Աստուծոյ Հօր, և Տեառն Յիսուսի Քրիստոսի: Այլ որ ընդ իս իսկ եպիսկոպոսունք և բովանդակ ուխտք սրբոյ եկեղեցւոյ, որք գանեալք իսկ և հարուածեալք և չարչարեալք և հալածեալք եղեաք ի մահառիթ և ի նենգաւոր շնչոյն Ամաղեկայ, որ բղխեացն զմարդանախանձ չարին զչար մախանսն. եւ ըստ վայրենի մոլորութեան իւրոյ անցեալ ի մեզ

զամպրապ պառնութեան և զսրամտութեան բարկութեան վրիժուց անհնարին։ Սակայն մեք կալցուք յանձինս մեր զշնորհ ուրախութեան և սիրոյ Տեառն, և ըստ որում պատուէրն Պօղոսի, նախ քան զամենայն արասցուք աղօթս մշտնջենամռունջս և պաղատանս աղերսալիս, և խնդրուածս հաշտարարս, և գոհութիւնս արժանընկալս յաղագս անյաղթ և ինքնակալ և աստուածապսակեալ թագաւորացդ. կեալ ձեզ յամայր ամս ըստ պտղոյ արդարութեան կենացս, և ճշմարիտ խաղաղութեան երկնաւոր թագաւորին, և ըստ վայելուչ և գեղեցիկ տիեզերաքնակ բնակութեան պալատանդ կայսերականի։

Եւ զի պատրաստաբար և հանդարտաբար եղիցի գնալ ձեզ ի խորհուրդս կենակիրս և աստուածամերձս, և ամենայն աստուածպաշտութեամբ և նազելի սրբամտութեամբ և ստոյգ ուրախութեամբ և մեծաւ խնդութեամբ ծաղկաւէտեալ ձեզ հանդիսի աստուածավայելուչ հանդստեանն ձերոյ. ըստ որում և ընկալայք իսկ պարգև ի բարեսիրութենէ այսր ձերմէ ըստ արժանի քաջնափայլ պերճութեան և առաքինազօր կրօնից ձերոց, որով հաւատացեալքդ իսկ էք և սիրուն, և սրազինեալ եւս ընդ ուս ի

հաստուցումն վրիժուց ամբարշտաց։ Աստուծոյ սպասաւոր և մեզ ի բարիս բարեացապարտ և ինքնակալ քրիստոսապսակեալ կայսր Հռովմայեցւոց[1]. զոր այժմս համարձակեալ հարկեցայ անցանել հրաշափառապէս պատմութեամբ ընդ արկածս նեղութեան՝ որ հասին մեզ, յաղագս մերոց տարակուսելոցս է՝ վասն որոյ և խօսիմք իսկ։

Խորհուրդ խօսողացս ի ձեզ հայլին յուսով խնդութեան, և այն եւս մեղմով և հեզիկ, որպէս և ուսաք իսկ՝ եթէ մի ոք լուիցէ արտաքոյ զբարբառ նորա. վասնզի աստուածամերձ լսելիք ձեր ոչ ձայնի կարօտանան առ ի զգալ, քան թէ երկնային իմաստութեանն ի ձեզ ապաստանելոյ, ի շարժմանէ նորին ճանաչել զհայցեալսն։

Եւ արդ՝ շնորհս ունիմ այնմիկ որ պատրաստեալ զօրացոյցն զօգնականն և զինքնակալ թագաւորդ յապաւինութիւն մեզ։ Վասն որոյ և զգայուցանեմ զհայթայթանս համբաւոյ նեղութեանս մերոյ ի ներող լսելութիւնդ բարեպաշտացդ։ Վասնզի յամենայն

1. Կը թուի թէ այստեղ Յովհ. Կաթողիկոս «Կայսրն Ռոմանոս» գրած է, զոր ապագայ օրինակող մը հարկ տեսեր է թարգմանել!

զօրութենէ խումէ յուզեցաւ ի վերայ մեր մախանք գաղտնականք Թշնամւոյն ճշմարտութեան, և իբրև զսեղեխ չարավալաչ սըրփանօք յանդգնեալ յարձակեցաւ յանարատ առագաստ Հարսին եկեղեցւոյ՝ առ ի յապականել զժառանգութիւն Տեառն, և պղծել զտաճար սուրբ նորա. այլ և յարագել ի կախուռն և ի կործանումն և յընկճումն, և ի կորուստ ժողովրդեան տեառն, և ծաղքելով ուտել զնոր Իսրայէլ, և աւերել զտեղի փառաց անուան նորա:

Եւ քանզի յայտնի էր ամենայն ազգաց պաշտպանական պարիսպ ամրութեան երկիւղի ձերոյ ընդդէմ Թշնամեացն, և ի հովանի Թեւոց ինքնակալացդ պատրաստականութեամբ կայաք որպէս ի վայելուչ քաղաքի, յայնժամ ապա և առագաստ հարսին եկեղեցւոյ ոչ աղտեղացաւ ի բնակողէն Կեղարու, որ ատեացն իսկ զողջոյն սրբութեան, և բռնութիւն մարդակցին Բելիարայ զխաղաղարար փեսայն ոչ կարաց հեռացուցանել:

Իսկ իբրև անփոյթ զտաք ի ջատագով լինել ձեր, և զանխուլ եղև Թոյնք գարանակալ օձին Թանայ յիրաւացս մեծութենէ, և ոչ խնդրեցաւ պարտապանութիւն վրիժուց չարախօսին մերոյ, դարձեալ միւսանգամ

սկսաւ անիծեալն տարապարտ սողել զեռալ սպրդել՝ զանձն ի ներքս արկանել ի հօգեւոր ցանկապատ յայգեստանս Տեառն զօրութեանց։

Եւ հուրն որ երբեմն արհամարհեցաւ և շիջաւ, սկսաւ վերստին արծարծել, և բոցակէզ հրդեհս մեծամեծս գործել։ Եւ գրժողք խարդախք զատան քրիստոնէական հաւատոցս որ ի Քրիստոս և յարուցեալ հալածանս ընդդէմ եկեղեցւոյ սրբոյ, արարին իբրև զխուղս մրգապահաց և իբրեւ զանտառս փայտից՝ փայտատով կոտորեցին զդրունս նորա, և այրեցին ի հուր զսրբութիւն Տեառն. և պղծեցին յերկրի զխորան անուան նորա, և զենին զենումն անօրէնութեան. և զոհեցին զոհս պղծութեան ի յարկս արդարոց, և արհամարհեցին զյուսացեալս ի տէր Աստուած, և ի կերակուր գազանաց և ի գէշս թռչնոց երկնից արկին զդիակունս մարմնոյ սրբոյ Բարձրելոյն, և տարապարտ արիւնք կղերց եկեղեցւոյ իբրև զջուր հեղան շուրջ զԵրուսաղէմաւ։

Այլ և քաջութիւնս պատերազմող ձեռաց լքուցեալ սպանմամբ մեծաւ և արեամբ թօթափեցին, և զնախարարութիւնս Թորգոմեանս ազգի՝ զքաղաքականս և զգեղջուկս

առհասարակ՝ վարատեալ վտարեցին զառն տաժանմամբ. զոմանս մատնեալ ի բանդ և ի շղթայս. և յանտանելի մեռաղս չարչարանաց, իսկ զոմանս ծախեալ ծարաւի սրով. և կայլս չարաչուք պղծողութեամբ գերեալս վաճառակուր լինել. և մնացեալքն ի չար արքանեկութենէ չարացն՝ մեծամեծք և փոքունք ցանեւցիր ցնդմամբ սփռեալք ընդ երեսս երկրի, ղօղեալք և թաքուցեալք յայրս և ի փապարս, մերկութեամբ և սովով և տառանութեամբ և դողմամբ ահի, և զանաշխատ քրտամբք յերկունս մահու վտանգեալք, և իբրև զխոփ ինչ հողմոց տարաբերեալք՝ զանդաչեն իբրև զկխամեռ ի վտանգէ նեղութեանց։ Եւ յայսմ ամենայնի ձեռն Ամաղեկայ ոչ վաստակեցաւ զբազմախողխող երկաթն արեամբ արբուցանել. զի ի նենգաւոր շնչոյն իւրոյ մահ բղխէ յամենեսին. զոմանս կորստական և մահացու դեղոց արբուցմամբ ի ծածուկ խարդաւանէ, իսկ զոմանս հրկիզութեամբ տակայթեալ մաշէ. և կայլս հեղձամղձուկ տառապմամբ վճարէ, և զոմանս սրախողխող պատութեամբ տապաստ արկեալ, մինչև ի սպանելոց անտի լցեալ եղեն հիմունք երկրի մերում։

Զի՞նչ բան ապա առ յառաջ բերից յա-

ղագս Սմբատայ Բագրատունւոյ, և բոլորից արեւելեայցս գլխաւորի, որ հոգեւորապէս արժանացաւ անուանիլ ի ձէնջ որդեգիր ծառային ձեր. զի առ բարեգործն այն և խնամակալ եկեղեցւոյ եւս չարահատոյց քան առ ամենեսեան զատ չար թշնամին։

Վտանգի ըստ մեղաց մերոց մատնեցաւ խնամածուն այն հօտին Քրիստոսի ի մե- տաղս ՚անզգամին և ամբարշտին, և վտան- գեալ տագնապեալ չարաչար չարչարանօք զնա, որ ի ծերութիւն պարարութեան հո- գեւոր խաղաղացուցեալ էր զԱսքանազեան ազգս յամենայն վրդովմանց չարի՝ ի սադ- րելոյ ինքնակալ թագաւորացդ, և ժողովեալ զբանաւոր հօտս Քրիստոսի ի փառս և ի գովեստ Աստուծոյ։ Զի յարգելանս բանտից և ի խաւարային տեղիս և ի վիհս անհնա- րինս և յանձուկ վայրս և յաղէտս չարա- չարս տագնապեալ տառապեցոյց զծերութիւն նորա։ Յետ որոյ ապա և զառն կոշկոճմամբ, և փութամահ սանջանօք մատնեաց զնա ի սպառումն որոյն ծարաւոյ. և առհասարակ մեք զրկեալ մնացաք ի խնամոյ հաւատարիմ ծառային ձերոյ։

Եւ ահա այժմ մարտք ի ներքուստ, և արհաւիրք ի վերուստ տագնապէ զմեզ. և

խորհրդական որդիացեալն ձեր չէ ի միջի, որ խրատէրն էր յորդորէր ի մարտս զամենայն ձեռն պատերազմողաց: Սեդեկիա ի գերութիւն վարեցաւ, և Զօրաբաբէլ ոչ ուրեք է, որ նորօգէ զպետութիւն դղրդեալ աշխարհիս Հայոց:

Ազգայէլ հրաւիրեալ է ի կոտորել զԻսրայէլ, և պատերազմ զմեզ շուրջ պատեալ և պաշարեալ, և Մակաբէ խարդաւանեալ ի պահանց չարագունից ոչ զօրէ փրկել զմեզ ի վտանգէ նեղչացս: Անտիոքոս բռնադատէ թողուլ զքրիստոնէական օրէնս կարգաց մերոց, և Մատաթիաս չէ կենդանի՝ որ ընդդիմակուռէ ընդդէմ չարամարտ բռնաւորին: Եւ այսպէս եկեղեցի Քրիստոսի խոպանացեալ եղև և իբրև այրութեամբ իմն անխնամ և անհոգացող մնացեալ, և լռեալք ի տօնից տարեկանաց. և հօտք Քրիստոսի միանգամայն իսկ զրկեալք ի հայրենի օժանդակէն, և ի սեփհական վերակացուէն, և եղկելիք աշխարհելիք մնացեալ աշխարհս արևելեան միշտ շարժմամբ հեծէ. և աշխարանս ողբերգական արտասուաց բերէ զաւէտախաղաց արկածս չարիս այսմիկ հասելոյ կալելոյ զմեզ, և զգայութիւն պառն կատանացս:

Զի՞նչ ապա զիմ նուաստագունի Յովհան-

նու նեղութիւնս բերիցի համար, զի ոչ իսկ համարիմ զանձն արժանի արդարոցն լինել չարչարակից. սակայն որ ըստ մեղաց սաստկացաւ ի վերայ իմ վտարանդումն և նեղութիւն և փրկութիւն ի փորձութեանցն որ կամաւ զիս առաջի եդի՝ հարկ առնեն այսոքիկ ըստ Պօղոսի պարծել զտկարութեանն. զի ժուժկալութեամբ ոմամբ ընկալեալ զվտանգաւորսն՝ բազում տառապանօք տագնապեցայ ի ձեռաց որդւոցն Հագարու, խաւարային բանտիւ և ընկեցիկ լինելով ի գուբ աղմոյ, և կապեալ երկաթի շղթայիւք, և դելանիւ և գանիւ, այլեւս պէսպէս հնարիմացութեամբք, որ բաւական էր քաղել հանել զշունչ իմ յինէն։

Այլ թէպէտ և այր մի տառապեալ եմ ես, սակայն յոյսն մեր Քրիստոս, որ զօրութեամբ ճանաչի և ոչ տեսլեամբ պատմի, ապրեցոյց զիս ի մարմնոյ աստի մահու, և դարձոյց զգերութիւն իմ և որք ընդ իսն են որպէս զուղխս ի հարաւոյ, և արտաքս կորզեալ եհան ի ժանեաց վիշապին, և ըստ Եղիայի փախստեայ եղէ ի Սարեփթա Սիդոնեան ի մարգարէագրաւն Յեզաբելէ, և ըստ Պօղոսի վանդակաւ կախեցայ ընդ պատուար պարսպին Դամասկեայ, և փախեայ յազգապետէ Արետացւոյն։

*Եւ կրեալ զայս ամենայն ըստ արժանի խմում, և ըստ աէրունեան հրամանին հալածեալ քաղաքէ ի քաղաք, հասեալ կամ առ զուրս հզօրագունիցդ և վեհագունից ինքնակալ Թագաւորացդ, ի հեռաստանէ աստ խնդրել զողորմութիւն ի բարեպաշտին և ի ներողամիտ խնամածութենէդ ձերմէ. ոչ միայն ինձ, այլ և բոլոր Աւքանազեանս գրոհի. շահել ձեզ զոյգս սպանելոց ծառայիցն ձերոց, որք առհասարակ արբաք զբաժակն բարկութեան ի հարաւային բռնութենէ. արբաք և քամեցաք զմրուր սրամտութեան և զբաժակ խռովութեան ի թշուառացուցչացն մերոց։*

*Եւ աղաչեմ զայն զի իմաստութեամբ և բարերարութեամբ շնչոյ ձերոյ համբարձջիք զձեռս ձեր ի վերայ ամբարտաւանութեան թշնամւոյն մինչև ի սպառ, և փրկեսջիք զվիճակ ժառանգութեան ձերոյ, և լցուցանիջիք սփիւռ ծախիւք զտաճար մեծվայելչութեան Աստուծոյ բարձրելոյ, որ զերեալ և կապուտ կողոպուտ մնաց յապստամբացն անաւ։*

*Եւ հալածեալ զգազանս չարաչարս, և զգայլս յափշտակողս, և զհեթանոսս ապստամբըս, և զբարբարոսս վայրենիս, նուաճեսջիք*

զկողմանս վայրսին՝ զոր ասացայք ի սկզբանէ ի ձեռն քաղցր օրհնաց ձերոց, որ լի է ողորմութեամբ։

Եւ թօթափեսջիք զմեղ ի հողոյ ոտից՝ յոր և մածան մէջք մեր, և լուծէք զլուծ ի պարանոցէ մերմէ, որ ի ձեռն բռնակալիս այսմիկ ծանրացաւ մինչև ի մահ. և սրբեսջիք զայս աշխարհ և զքաղաքս, որ ի հակառակութիւն և ի նախանձ արկաւ ի պղծոց և ի կորուսելոց, և ի չարաչար իշխանաց ատելեաց Աստուծոյ, և ըստ մարգարէականին ժառանգեսջիք զերանութիւնսն, հատուցանելով դստերն թշուառականին, զորս և նա մեզն հատոյց։

Վասնզի և ըստ սմին իսկ պատճառի ընտրեաց իր Աստուած զանձինս բարեյաղթ թագաւորացդ, զի որք սիրեն զԱստուած ի ձեռն բարերարութեան կամաց ձերոց, խաղաղութիւն տացի նոցա, և խաղաղաւէտ կենդանութեամբ զպարտական ծառայութիւնն հատուսցեն ինքնակալացդ, և խաղաղութեամբ ժամանեսցեն առ Աստուած։

Եւ այսուքիկ վասն հաստատակացս բանաւոր հօտի հաւատացելոց ինձ ի Տեառնէ մաղթանք աղերսանաց առաջի ձեր եդաւ։ Իսկ անձին առանձին այս ինչ է, զոր առ

*քրիստոսապսակ և բարեյաղթ Թագաւորացդ ունիմ տեսեալ, նեղութիւն և անձկութիւն, հալածանք և չարչարանք, և սով և սուր և գերութիւն, և հարաւային բռնութեամբն տանջեալ տագնապեաց զծերութիւնս իմ։*

*Արդ ի գետս Բաբելացւոց նստեալ տա-չուրիմ բազում արտասուօք, յորժամ յիշեմ զգերութիւն Սիօնի, և ի խնամս ողորմած և ինքնակալ կայսերդ ապաստանեալ հասեալ կամ առ ոտս ձեր, հայցեմ, ոչ զոր ոչ լեալ նախ քան քան զայս բնակութիւն, և կայանք աթոռակալացն որոց որ յառաջ քան զինն էին, այլ զոր ի սկզբան հաւատոյս ի հովանի թեւոց ի նախնեաց ձերոց ունէին զբնակութիւնս, և յապահովացեալք ի զօրութենէ տէրութեան սուրբ խաչին, և ի նախախնամող ողորմութենէ անյաղթ Թագաւորացդ, արածէին անվեհեր փութով զհաւատացեալ հօտն՝ յիւրաքանչիւրումն ժամանակի անզբաղապէս սրտիւ և աներկեւան հաւատով։ Զոր և ես ինքն զնոյն հայցեմ՝ բարեխօս ունելով զկենսատու խաչդ փրկական, մի զրկեր զիս և որ ընդ իսս են՝ յերկրպագութենէ աստուածընկալ նշանիդ, և հանգիպման աստուածակարգ Թագաւորացդ։*

Եւ անձուկ յոյժ ունիմ ի բազում ամաց դալ առ ձեզ Թէպէտեւ արգելայ մինչեւ ցայժմ, այլ և զկայանս հանգստեան կենաց խաղաղականաց ընձեռել իմոցս՝ ըստ օգտական պերճ և պանծալի հզօր Թագաւորութեանդ, զի Թերեւս յիսմայէլականաց ատոի արտաքս զերծեալ, և ի հովանի Թեւոց ձերոց ամփացեալ և առկայացեալ՝ արածեսցուք որ ի մեզ հօտս է Աստուծոյ և առհասարակ մշտնջենաւոր աղօԹս մատուսցուք առ Աստուած վասն խաղաղութեան և ապահովութեան և բարեհաստատութեան ինքնակալ և տիեզերաքարոզ Թագաւորացդ. և օգնականութեամբ ձերով մեծաւ և փառօք շնորհօք պատրաստեցուք զՀայաստանեայցս, ժողովուրդ կազմեալ նախ տեառն և ապա ձեզ՝ կամօքն Աստուծոյ։ Վասնզի յայտնի է այս ինչ առաջի փառաց աԹոռոյ ձերոց, զի եԹէ նուազ հօվիւս հօտից բնակիցեմ ընդ հովանեաւ զօրափառ սուրբ նշանիդ, և ընդ խնամակալութեամբ ինքնակալ Թագաւորացդ, որչափ եւս առաւել հօտս Աստուծոյ և ժառանգութիւն Քրիստոսի զհետ շաւղաց իմոց հետեւին, և հորդան տան ընդ խաշինս արօտի այդմ տիեզերական ոչխարացդ բանականաց եղանել, և առհասարակ հետազօտել ընդ Հռոմայեցւոցդ իշխա-

նութեամբ որպէս Իտալիա և ամենայն Ասիա։

Իսկ որք ոչ գայցեն, և արտաքս ի գաւթէ հօտէ Տեառն ելանիցեն, այնպիսիքն կրեսցեն զպատասխանս ի մէնջ ո՛ ոք և իցէ, և ես անպարտ և արտաքոյ մեղապարտութեան մնացից։

Եւ արդ երկնաբերձ և լուսաշաւիղ ճառագայթաւէտ սուրբ Նշանդ, որ արեգակնապէս ընդ երկնայնոցն ի մէջ տիեզերական և փառաւոր քաղաքիդ այդ բնակեալ է, զբնակութիւն պալատան ձերոյ փրկեսցէ յամենայն կորստենէ ապականացու հնարից չարի. զի ոչ մրրիկ ինչ ծովանման վերասցի ի ձեռն ծփական ալեաց օտար հինից, և ոչ ուժգին հողմն ինչ անօրէն արձակիցի և ածիցէ ձմեռն ապականութեան. և ոչ կոհակք լեռնանմանք և սոսկք գոլելեաց կարասցեն երկիւղիւ շարժմանց լուծանել կամ զրժել զարքայդ քրիստոսաւանդ. որ ի ծագաց մինչեւ ի ծագս տիեզերաց բարձրացեալ և փառաւորեալ է անունդ ձեր։

Այլ մեծապէս խնդասջիք և ուրախ եղիջիք ի գեղեցիկ հանգստեան ձերում լաւութեամբ խաղաղութեան. և ցնծասջիք ի փրկութեան ձերում, մի՛ եւս սասանիլ յողորմու-

թենւէ բարձրելոյն. և ժամանեսջիք յօրհնութիւն քաղցրութեան նորա, որ պահեսցէ զձեզ հրաշալի փայլուն պսակաւ ի քարէ պատուականէ. և բարձրասցի արդարութիւն ձեր ի զօրութեան Քրիստոսի. և մեք փառաւորապէս օրհնեսցուք զանուն քո, ինքնակալ և բարեյաղթ բարեպաշտ թագաւոր, օգոստոս Կոստանդիանոս կայսր հռոմայեցւոց»։

Յովհան կաթողիկոսը՝ այս նամակին ի մէջ բերելով յետոյ կը պատմէ անոր յառաջ բերած արդիւնքը, գլխու մը մէջ (ԾԵ) որու վերնագիրն է. «Յաղագս գնալոյ Աշոտոյ արքայի առ կայսրն, և նուաճութեան Յուսփայ յերեսաց արքային Գագկայ»։

«Իսկ իբրև ընթերցեալ եղև այս թուղթ առաջի կայսեր, և ի միտ էառ տակաւին՝ որ դեռ ևս շուրջ զմեօք էին զեղեալ հարուածին չար արկածք, և զպլլումն և զկործանումն մեր, և դարձեալ զելս կենաց բարեպաշտ և երջանիկ արքային Սմբատայ, զոր մարտիրոսական հանդիսի վիճակացն համարէին լինել վերընկալուչ, ապա վաղվաղակի առաքէ ի խնդիր ինձ, և թա-

գաւորելոյն Աշոտոյ արքայորդւոյն՝ զամն Թէոդորոս Վասլիկոս բազմահարկի պատուասիրութեամբ, և ընտանեբար սիրոյ հարազատութեամբ, ընդ ուշի եւս կապեալ զսէր կատարման հօր իւրոյ Բասլի՝ որ ընդ հօր նորա Սմբատայ էր. և փութացուցեալ երթալ ի միասին տեսանել և տնօրինել զհասարակաց օգուտ։ Եւ վասնզի արքայորդին Աշոտ էր յամուրս ակրութեան իւրոյ գարեալ դադարեալ, իսկ ես ի Տարօն գաւառի գետեղէի, վասն այսորիկ նախ առ իս չուեաց եկն Վասլիկոս։ Իսկ իմ ապա զհրաւիրումն երթալոյ նմա յանձն առեալ, առ արքայորդին Աշոտ յինէն յուղարկեցաւ, որոյ երթեալ և զկայսերական հրամանն առաջի ընծայեալ, յօժարական կամօք կազդուրեալ Աշոտոյ՝ չուէ գնայ վաղվաղակի զճանապարհայն, և բազում հիւրամեծարութիւնս և արքայական պատիւս յիջաւանս այնր պողոտայի կալեալ։

Երթայ ապա ի հանդիպումն մեծի կայսերն. և անդ առ ի նմանէն մեծավայելուչ գահիւ պատիւ առեալ քան զամենայն զահերէցս՝ ընկալեալ զփառաց փարթամութիւն, ոչ իբրեւ զայլս ոմանս պատուաւորս, այլ իբրև զթագաւորազուն բողբոջ. զրեթէ

ընդ իւրով իսկ կայսր զնա հարթայարմար ցուցանէր, և թագաւորական հրահանգաց հանդիսիւ ճոխացուցանէր։

Ապա միանգամայն իսկ և ուստր զնա մարտիրոսի և որդի սիրելի կայսր իւր անուանէր. և զարդարէր զնա ծիրանազգեաց փառօք, և երեւելի ոսկեհուռն հանդերձիւք, և ոսկետառն վառիւք. և կամարակապ ընդ մէջ ածէր, ոչ մի անգամ կամ երկիցս, այլ բազում անգամ նոքա զայս արարեալ, և երիվարս սրավարս և ահիպարանոցս զեղեցիկ զինուք և զարդուք առաջի կացուցանէին. և այլք եւս բազում ընծայս և ոսկիս և բազում կազմուածս ոսկեղէն և արծաթեղէն նմա պատրաստէին։ Այլ և իւրոցն եւս նախարարաց զկնի տարելոցն ոչ սակաւ պատիւ պերճութեան տային, և բազում հողս և առատաձեռն ռոճիկս նոցա յարդարեալ կազմէին՝ մինչեւ ի դարձ նորա աշխարհն»։

Աշոտի վերադարձին վերայ ի Կոստանդնուպօլսոյ կը խօսի Յովհ. Կաթ, Գլ. ԾՁ էջ 365.

«Իբրեւ զայս ամենայն լուաւ արքայորդին Աշոտ մինչդեռ էր ի հռովմայեցւոց տէրու-

թեանն, ապա մեծաւ շնորհակալութեամբ և բարեխորհուրդ ծառայական խոստմամբք խնդրէ հրաժեշտ դառնալոյ անդրէն ի Հայրենի տէրութիւնն ի կայսերէ, յայտարարեալ նմա՝ թէ այց արար Տէր և յաջողեաց ի բարութիւնս աշխարհին Հայոց։

Իսկ կայսր Կոստանդին ըստ ժամանակի լրութեան բարւոյն սիրալիր սրտիւ հաւանեալ խնդրոյն Աշոտոյ, ապա եւս յոգնապատիկ պատրաստէր նմա պարգեւս և պատիւս և բազում կարասիս և երեւելի զարդս և զէնս, և նժոյգս ոսկեղէնս և ոսկեսանձս, և բազում եւս գանձիւք զնա փարթամացուցեալ, և բազում զօրավարս և զօրս Հռովմայեցիս ի ձեռն նորա գումարեալ՝ յուղարկէ յիւրական աշխարհն։ Որոյ չուեալ երթեալ անցեալ զբազում օթեւանօք, և եկեալ հասեալ յաշխարհն իւր, զբազումս նուաճեալ ի հնազանդութիւն ինքեան կացուցանէր, և ի բազմաց նորընծայիւն հիւրամեծարութեամբ ակնկալեալ սպասէր։ Իսկ վասնզի մեծ պաստակերան Կոյր դիւրագրաւ (ուղղ. դիմագրաւ) ընդդէմ նորա գտանէին չարութեամբ, ոչ երբէք հաւանական միտս ի հնազանդութեան սակի ստացեալ, վասն այնորիկ իսկ ի գերութիւն Յունականացն զնոսա մատնէր»։

*

Սամուէլ Անեցի Համառօտս կ'անցնի Պերփեռուժէնի յիշատակութիւնը միայն ընելով. «ՋԽԸ. Կոստանդնուպօլսի՝ Կոստանդին որդի Լեւոնի ամս ԺԶ» (էջ 99)։

Կիրակոս Գանձակեցի «Եւ յետ Ռոմանոսի թագաւորէ Կոստանդին որդի Լեւոնի և ապա Ռոմանոս» (էջ 48)։

Վարդան պատմագիր «Յետ նորա (Ռոմանոսի) Կոստանդին, որդի Լեւոնի» (էջ 91)։

Մխիթար Այրիվանեցի «Ռոմանոս ԻԷ (ամս թագաւորեաց), Կոստանդին՝ ԺԶ» (էջ 20)։

Սմբատ Գունդստապլ «ի ժամանակս թագաւորութեան Յունաց՝ Ռոմանոսի որդւոյ Կոստանդեայ» (էջ 21)։

Ստեփան Ասողիկ «Եւ ապա թագաւորեաց Կոստանդին՝ որդի Լեւոնի յ392 թուին ամս 16։ Ի սորա վեցերորդ ամին, և յ397 թուին՝ էառ զՄարաշ ի Տաճկաց։ Եւ ապա յերկրորդ ամին առաքէ կայսրն Կոստանդին զՊեմեսլիկոսն զՋմշկիկ՝ զօրու ծանու ի կողմանս Կարնոյ։ Որ եկեալ պաշարեաց զԹէոդուպօլիս և պատերազմեցաւ, պարտեալ զզօրն Խամայիլի, պատառեալ զխանդակ քա-

ղաքին, և փլոյց զբարձրաբերձ աշտարակս նորա և էառ զքաղաքն։ Ուր բազում գործս արութեան ցուցեալ Կիւռժան՝ Թոռն Զմշկայ ի մանկութեան տիս գոլով յայնժամ։ Եւ զկնի այսորիկ զօրն յունաց առնու զՍամուսատ քաղաք ի 407 թուին։ Եւ մեռաւ Կոստանդին և թագաւորեաց Ռոմանոս ամս 3»։

**Դիւանագիտական Յարաբերութիւնք Պերփեռուժենի եւ Հայոց. Հայաստանի փոքր իշխանութիւնք.** — «Հայաստանի ամենէն զօրաւոր Հարստութիւնն էր Բագրատունեաց Հարստութիւնը, իր ստացուածքները՝ ամենէն աւելի ընդարձակ ըլլալով. իր գլխաւորը յաջորդաբար պատուած էր Բիւզանդիոնի կայսրներէն և Պաղտատու խալիֆայներէն, Իշխանաց իշխան, Թագաւոր, և վերջապէս՝ երբ ուրիշ թագաւորներ ալ եղան Հայաստանի մէջ՝ Արքայից արքայ մակդիրով։

Բայց Բագրատունեաց թագաւորութիւնը շատ հեռի էր ամբողջ Հայաստանն ըլլալէ։ Արքայից արքայները իրենց ստորակարգեալ ուրիշ իշխաններ ունէին, որոնք՝ իրենց կարգին, կը հրամայէին ուրիշ իշխաններու, ա-

ւստական այս կտրատումը, քաղաքական սարսափներու պատճառ կ'ըլլար, որոնք, օտար արշաւանքէ աւելի, Հայաստանը անապատ կը դարձնէին։

Ուրեմն բիւզանդական քաղաքագիտութեան վրայ կատարեալ գաղափար մը պիտի չունենայինք, եթէ չխօսէինք Սմբատ խոստովանող, Աշոտ Ա. Սմբատ վկայ, Աշոտ Երկաթի և Աբաս Թագաւորներու հետ կնքըւած դաշնադրութեանց վրայ։

Կայսրութեան հպատակող Հայ աւատական իշխաններու մէջ, Արքայից արքայէն վերջ կու գան[1] ինն Հայ պետութիւններ և վրացի հինգ իշխաններ։

1° Իշխանն Վասպուրականի։ Արծրունի հզօր բնատնեաց գլխաւորը, Վասլի ժամանակ, Դերենիկ Գրիգորն էր. Լեւոն Զ.ի ժամանակ՝ Սարգիս Աշոտ, իր անդրանիկ որդին՝ որ մեռաւ 904ին. իր Հայրենի կալուածները նա ձգեց իր Գագիկ և Գուրգէն երկու եղբայրներուն[2]. այս Գագիկը, Գագիկիոս կոչուած՝ Պերփեռուժէնի Տերո-

1. Տե՛ս Արարողութեանց գիրքը Բ. 48, էջ 687։

2. Dulaurier, Recherches, հտ. Ա, էջ 272 – Յովհ. կաթ. գլ. 35 էջ 181։

*քինը կառավարելու[1] գրոց մէջ, նշանաւոր դեր մը խաղաց այն քաղաքական պատերազմներուն մէջ՝ զորս կը պատմէ Յովհան Զ պատրիարքը և թագաւոր տխաղոսն սաստացաւ[2]։*

*Ինքն է, որ, 926ին, Արաբացւոց դէմ կռուելով վայրկեան մը գաղափարն ունեցաւ Կոստանդին Է.էն՝ օգնութիւն ուզելու։ Բայց իր Թագաւորութեան մեծամեծները զինքը համոզեցին թէ «այս նոր քայլը, նախորդներուն պէս, ապարդիւն պիտի ըլլար. իրեն յիշեցուցին նենգութիւնը՝ որով կը վարուէին Յոյներն ուրիշ ազգերու՝ քրիստոնեայ ազգերու հետ, որոնց օգնութեան չէին գար՝ ընդդէմ անհաւատից[3]»։*

*Նա իրեն յաջորդ ունեցաւ, իրաւ եւս, Կոստանդին Է.ի ժամանակ, իր եղբայր որ-*

1. De adm. imp. գլ. 43 էջ 187. Kaxikios.

2. Թէոդոր Արծրունի (ուղղելի Թովմա Արծրունի) Տիւլորիէի քով, էջ 273, կը թուարկէ այն պետութիւնները՝ որոնցմէ կը բաղկանար Գագիկի իշխանութիւնը։ — Վասպուրականի աշխարհագրութեան վրայ տես S. Martin, Ա հտ. 125 եւն. — Մովսէս Խորենացւոյ ընծայուած Աշխարհագր. անդ Բ, 363. — Աշխարհագրութիւն Վարդան Վարդապետի, անդ Բ, 429։

3. Պրոսպէ, յաւելուածք Լըպոյի վրայ, ԺԳ հտ. ըստ Չամչեանի, Բ, 813։

դիքները, Դերենիկ, Աշոտ և Աբուսահլ Համազասպ[1]։

2. *Իշխանն Կոգովտայ* (Κοχοβίτ)։ Եթէ այս բառը մերձեցնենք Կոգանովտի հետ, զոր կը յիշէ Թովմա Արծրունի[2] երբ կը թուարկէ այն գաւառները որ Գագիկի եղբօրը բաժին ընկան, եթէ նկատենք որ Արարողութեանց գիրքը իրարու մերձ կը դնէ զՎասպուրական և զԿոգովիտ, պէտք ենք համարիլ՝ թէ Կոգովտի իշխանը ուրիշ ոչ այլ ոք է, բայց եթէ Արծրունեաց երկրորդական ճիւղը։

Կոգովտի իշխանութիւնը կը պատկանէր անտարակոյս այն Գուրգէն Արծրունիին, որ Գրիգոր Դերենիկի երրորդ որդին էր, Գագիկի կրտսեր եղբայրը, և իր պաշտակցաց մէջ՝ հաւատարմագոյնը[3]։

1. Սէն-Մարթէն Ա, 424։

2. Տես Տիւլորիէ, էջ 273։ — Մովսէս Խոր. էջ 363, Վասպուրականի մէջ կը նշանակէ զԿոգանովիտ։ — Յովհ. կաթ. գլ. 160, էջ 334, Կոգովտի լեռները կը նշանակէ իբր ապաւէն Արծրունի իշխանաց։ — Կոգովիտ, Արարատի մէջ. Մովսէս Խոր. էջ 367. — Կոգովիտ Սասունի մէջ. Վարդան վարդ. էջ 43, բայց ըստ իրեն, Սասուն կը պատկանի Արծրունեաց։

3. Թովմ. Արծր, Տիւլորիէի քով, էջ 274. — Յովհան կաթ. գլուխ 36, էջ 181։

3. *Իշխանն Տարօնոյ* (Ταρὼ)[1] — *Ասա այն Գրիգոր իշխանն է, որուն վերաբերութիւննե-րը՝ կայսրութեան հետ, ընդարձակօրէն պատմուած են Տէրութիւնը կառավարելու գրքին մէջ, և որուն բոլոր ազգականները մե-զի ծանօթ են Պերփերուժենէն։*

4. *Իշխանն Մոկքայ* (Μῶεξ). *Սէն-Մար-թէն*[2] *այս խօսքը կը մերձեցնէ Տարօնի քաղաքներէն միոյն, Մուշի անուան հետ։ Բայց այս քաղաքը կախում ունէր Գրիգո-րէն, Տարօնի իշխանէն, և չէր կրնար ա-ռանձին իշխան մ'ունենալ։ Ընդհակառակն Մոկաց իշխանութիւնը, Նպատ լերան հարա-ւային կողմը, նշանաւոր է Հայաստանի պատմութեան մէջ։ Յովհաննէս Զ մեզի կը պատմէ Մոկաց Մուշեղ իշխանին պատե-րազմը՝ Անձեւացւոց իշխանին դէմ.*[3] *Կոս-տանդին Է.ի ժամանակ, Գրիգոր և Գուր-գէն Մոկացի՝ նշանաւոր եղան, ամենէն*

1. *Այս իշխանութիւնը կը գտնուէր Տուրուբերանի մէջ. — Սէն. Մարթէն* Mém. *Ա*, 99. *Մովսէս Խոր. էջ* 361 — *Վարդան վարդ. էջ* 429. *շատ մանրամաս-նութիւններ՝ Մշոյ Տարօնի մայրաքաղաքին վրայ։*

2. *Սէն — Մարթէն, Ուսումնասիրութիւնք հին աշ-խարհագրութեան, Բ. էջ* 231։

3. *Յովհ. Կաթ. գլ.* 23 *էջ* 165։

առաջ միանալով Վասպուրականի Գագիկին հետ՝ ընդդէմ Սարակինոսաց[1]։

5. Աւձունի իշխանը (Αὐτζαν) Գուգարք գաւառի մէջ։

6. Սիւնեաց իշխանը (Συνῆ). կարելի չէ ուրանալ որ Պերփեռուժէնի (Συνὴ) է Սիւնիք. Յովհան կաթողիկոս[2] մեզ կը ներկայացնէ այս նախարարութեան պատմութիւնը, զԳրիգոր Սուփհան, որ կը մեռնի Աշոտ Ա.ի թագաւորութեան ատեն, Սիսականի իշխանի մը դէմ տուած պատերազմին մէջ. զՎասակ Բակուր, իր որդին. զԳրիգոր Սուփհան, իր թոռը. զԱշոտ Գահերէց, զոհ՝ Յուսուփ ոստիկանի հալածանքներուն, և վերջապէս չորս եղբայրներ՝ որ ժամանակակից էին Կոստանդին Է.ի. Սմբատ, Սահակ, Բաբգէն, Վասակ[3]։ Այս ընտանեաց պատմութիւնն է

1. Յովհ. Կաթ. Գլ. 116, էջ 291. — Մոկաց գաւառին վրայ. Սէն Մարթէն. Mém. Ա. 174 և 361. — Վարդան վարդապետ. Մոկքը՝ իշխանանիստ կ'ուանդէ, ընդհակառակն «Տարօն է Մուշ» Բ, 429. — Մովսէս Խոր. Բ, 363։

2. Յովհ. Կաթ. գլ. 13։

3. Անդ. էջ 236 — 239։ — Սիւնիքի վրայ. Սէն — Մարթէն. Mém. Ա, 142, 210. — Աշխարհագրութիւն Խոր. Բ, 365։

որ, կարծես թէ, կը պատմուի Տերուբիւնը կառավարելու գրոց մէջ[1]։

7. Վայձորի իշխանը (Βαιτζώρ). Հաւանօրէն սա Սիսական գաւառն է։

Սիսականի կարեւոր գաւառը՝ երկար ժամանակ անկախ գոյութիւն մը ունեցած է։

Յովհաննէս Զ պատմաբանը մեզ կը ծանօթացնէ իր իշխաններէն շատերուն անունները, Կոստանդինի ժամանակէն առաջ։

Ըստ Սէն-Մարթէնի, նա կործանեցաւ ի ԺԲ դարու՝ Ամարէկներէն։ Եւ սակայն Արտարողուրբեանց գիրքը՝ չի խօսիր Սիսականի վրայ։

Բայց գիտենք.

1° Մովսէս Խորենացի՝ Սիսականը Սիւնեաց մէջ կը դնէ։

2° Թէ մին այն չորս եղբայրներէն, որ Կոստանդին Պերփերուժէնի ժամանակ Սիւնեաց իշխան եղաւ, կը կրէ, Յովհան Զ.ի պատմութեան մէջ, երբեմն Սիւնեաց իշխան և երբեմն՝ իշխան Սիսականի տիտղոսը։

Արդ, Վայոց ձորը կամ Եղեգիս, կամ Եղեգնաձոր, որ կը գտնուի Սիւնեաց լերանց մէջտեղ և Գեղամայ լճին շատ մօտ, կը

1. Գլ. 43, էջ 183։

վերաբերի նոյնպէս՝ Սիւնեաց տան։ Վայձոր իշխանութիւնը յիշուած է Կոստանդինէն՝ անմիջապէս Սիւնեաց իշխանէն ետքը։

Ուրեմն Սիսականը՝ Սիւնեաց տան մէկ ստացուածքն էր, թերեւս կրտսեր ճիւղին կալուածը։

8° Խաչենի իշխանը (Χατξιένης) կամ իշխան Արցախու, որուն կալուածները սահմանակից էին Սիւնեաց և մերձաւոր՝ Գեղամայ լճին։

9° Սերվոտեանց իշխանն (οἱ ἄρχοντες τῶν Σερβοτῶν) «ռամկօրէն կոչուած Μαῦρα παιδία» սեւ տղաքներ։

Կարելի է մերձեցնել այս անունը Սարվան անուան՝ Կովկասի մէջ՝ և Եւրոպական Սերպիոյ։

Կովկասի և հիւսիսային Հայաստանի մէջ, կային մարդկային բոլոր ցեղերու ներկայացուցիչները. միայն սլաւ ժողովուրդներու վրայ խօսելու համար, Լիշերէ և Զէքերէ զատ՝ հոն կային Սերպիացիներ, Խոռուաթներ, և ըստ Յովհաննէս Զ.ի վկայութեան, Բուլղարիա մը[1]։

1. Յովհ. գլ 8 էջ 21. (Յովհան Կաթողիկոսի այս

Կոստանդին Է.ի այս խօսքին հետ կրնանք համեմատել Յովհան կաթողիկոսի մէկ վկայութիւնը:

Աւշին ոստիկանի զօրավարներէն մին ըստ այս պատմագրին, յարձակեցաւ Գէորգի «Սեւորդեաց նահապետին վրայ. այս ընտանիքը այսպէս կը կոչուէր իր թոշակին պատճառաւ՝ որ սեւ էր»:

Եթէ Կոստանդին Է.ի Սերբորները նոյն են Յովհաննէս Զ.ի Սեւորդեաց հետ, դիւրին է իրենց դիրքը որոշել: Հայ պատմիչը մեզ կ՚ըսէ թէ անոնք կը բնակէին Ուտի գաւառին մէջ, և Մասուտի զանոնք կը դնէ Կուրի վրայ՝ Թիֆլիզի և Բերդաայի միջեւ[1]:

տեղը, զոր կը մատնանշէ Ռամզօ, ուրիշ ունի Բուլղարաց վրայ, նա անշուշտ կ՚ակնարկէ նոյն հեղինակի ուրիշ մէկ տեղը, «Ցաւուրս սորա հատուածեալք ոմանք ի Հրէից բնակելոց ի Բուլկարս՝ որ ի ծործորս Կովկասու, եկեալ բնակէին առ ի ստորեւ Կողայ» Դ գլուխ, էջ 36:

1. Յովհ. կաթ. գլ. 57, էջ 210. — Սեւորդեաց հովիտ՝ կապոյտ ծովու մօտ. Վարդան Վարդ. 425. Սէն-Մարթէնի ծանօթութեամբ հանդերձ Բ. 464. — Սեւորդիք կամ Սօլաու Վէրտիան, հայ՝ շատ պատերազմասէր ժողովուրդ, սարսափելի եղած իր սեւորդեան կացիններովը, կը բնակին Կուրի վրայ, Թիֆլիզի և Բերդաայի միջև. Մասուտի, տպ. B. de Megnard, II, էջ 75: Սէն — Մարթէն. Բ. 285. — Տօհսըն. էջ 15:

Իվերիա կամ Վրաստան՝ առանձին ամբողջութիւն մը կը կազմէր։ Վրաց աւատական իշխաններու գլուխը կը նկատուէր Կիւրապաղատը, ինչպէս Հայ նախարարներուն գլխաւորը կ'անուանուէր իշխանաց իշխան։

Վրաստանի այս իշխանը, որ թագը առաջին անգամ ընդունած էր Սմբատ Ա.ի ձեռքէն, իրեն ստորակարգեալ ունէր՝ չորս աւատական իշխաններ՝ որ կը թուարկուին Արարողութեան գրքին մէջ[1]։

Վրաց արքայական ընտանեաց ցեղաբանութիւնը կը գտնուի Տերութիւնը ի'նչպէս պէտք է կառավարել գրոց մէջ։

Այս և Արարողութեանց մատեններուն տեղեկութիւնքը իրարու հետ միացնելով՝ կը տեսնենք որ Վրաց թագաւորին հպատակող իշխանները ընդհանրապէս անոր ազգական էին, և թէ կրտսեր ճիւղերը իրենց կալուած-

1. Վերիատախի, Քարնաթայեաի, Քուշկի, և Աճառայի (Ճորոխի վրայ) իշխանները. Վախուշդ, Աշխարհագրական նկարագրութիւն Վրաստանի. էջ 109։ Քուէլի մօտեցող ամենէն նմանող անունն է Քուշկիս — Ցիխէ, քաղաք որ այժմ կործանած է և կը գտնուէր Քլարճէթ գաւառին մէջ, Քարթլիի նահանգէն. Անդ. էջ 89։ — Վերիատախ կը յիշեցնէ Իմերէթի մէջ գտնուող Բեր — Ցեխէ կամ Քարթլիի Բերիսօեր. Անդ. էջ 243, 261 — Քարնաթայիս, Քարթլի?

ները ընդունուած կը համարուէին, իբրեւ Թագաւորող ճիւղին՝ աւատական իշխանները։

Այսպէս Արարողութեանց գիրքը մեզ ցոյց կու տան Աձառայի իշխան մը՝ ստորակարգեալ՝ վրաց Թագաւորին. և Տէրութիւնը կառավարելու գրքին մէջ կը տեսնենք՝ որ Աճառայի կամ Ճորոխի այս իշխանութիւնը յաջորդաբար անցաւ Աշոտ Քիսքաղէսի և Գուրգէնի ձեռք, որոնցմէ մին Ատրներսեհի եղբայրն էր, միւսը՝ եղբօրորդին։ Վրաստանի արքայական ընտանիքը՝ շատ պահանջկոտ էր Կոստանդին Է. ի նկատմամբ. ոչ միայն զայն կը բռնադատէր Ատրանուցեսը (Արտանուշը) ետ դարձնելու, այլ նաեւ ձեռք կը դնէր Թէոդուպօլսի վրայ, և պահանջներ ունէր Աքնիկի, Մաստատի և Բասեն (Փասիանէս) գաւառի մասին, այսինքն Արարատի մեծագոյն մասին վրայ։

Կրօնական տեսակէտէն ալ, Վրաստան առանձին դրութիւն մ՚ունէր։ Բիւզանդիոնի հետ աւելի հասարակաց շահեր ունէր՝ քան զՀայաստան։ Յունական ծէսը ընդունուած էր Վրացիներէն և իրենց իշխանները պատրաստ էին Բիւզանդիոնի աստուածաբաններուն դատը՝ զէնքով պաշտպանելու։

Հայ աւատական իշխաններու այս ցանկը

ամբողջակա՞ն է. տարակուսելի է։ Հայ յիշատակարանք, Կոստանդին Է․ի շատ մօտ ժամանակով, մեզ ուրիշ թագաւորող տուներ ալ ցոյց կու տան։

Հաւանական է որ Ռոտիքի Մոլուէս իշխանը՝ Աշոտ Երկաթի ժամանակ՝ ուրիշ բան չըլլայ, բայց եթէ ապստամբ նախարար մը[1]։

Ռշտունեան հարստութիւնը գոյութիւն չունի այս ժամանակ[2], մասն է ստացուածոց Վասպուրականի արքային, Գագիկի։ Այլ եւ խօսք չըլլար Աշոտեանց, Տաշրաց, Խոտխոտունեաց, Գողթան իշխաններուն վրայ, որոնց մասին յիշատակութիւն կայ՝ մինչեւ 768 թուականը։

Ապացուցուած չէ թէ Գնդունիք Ժ դարուն մէջ առանձին արքայական տուն մը կազմած ըլլան։

Կարելի է որ Սպերի նախարարութիւնը, որուն ներկայացուցիչն էր, Աշոտի ժամանակ, Ճապուհ Բագրատունի գոյութենէ դադրած ըլլայ՝ Ապրիանոսի, Սպերի իշխանին

1. Յովհ. կաթ. գլ. 133։

2. Ռշտունեաց մասին, որ Վանայ հարաւային կողմը կը գտնուէին, տե՛ս Սէն—Մարթէն Ա. 238։

յոյն կայսրութեան դէմ ըրած ապստամբութենէն ետքը։

Վերջապէս Գարամանի կարեւոր նախարարութիւնը կրնայ անհետացած ըլլալ Կոստանդին Է.ի և Աշոտ Երկաթի ժամանակ. Իսահակ, Գարդմանի իշխանը, այս վերջինիս դէմ ապստամբած ըլլալով, յիրաւի դատապարտուեցաւ, իր Գրիգոր որդին ալ միասին, կուրանալու։

Բայց,

1° Ինչո՞ւ համար Արծրունեաց գրքին մէջ չի խօսուիր Կապանի թագաւորութեան վրայ, որ Ձորք գաւառին մէջ երեւան կու գայ՝ Յովհաննէս Զմշկիկի ժամանակ և որուն մէկ թագաւորը Փիլիպէ, 972ին, կը յիշատակուի Մատթէոս Ուռհայեցիէն։

2° Ինչո՞ւ չի խօսուիր Վարաժնունի նախարարութեան վրայ, որ ըստ Սէն-Մարթէնի՝ արդէն 360ին գոյութիւն ունէր և մինչեւ ԺԱ դար տեւեց։

3° Յովհան Զ կաթողիկոս կ՚ըսէ՝ որ Սմբատ թագաւորի ժամանակ, Գուրգէն, Անձեւացեաց իշխանը կը պատերազմէր Մոկաց իշխանին դէմ. Ասոր, իր որդին և իր ժառանգը, Կոստանդին Է.ի ժամանակակից է. Յովհաննէս Զմշկիկի ժամանակ կը գտնենք

Գուրգէն մը՝ իշխան Անձեւացեաց։ (Մաթ. Ուռհայեցի. գլ. 14)։

4° Դարձեալ Սմբատ Ա.ի ժամանակ, Արծրունի իշխան մը, Աբէլ Մաքրա, կը թագաւորէր Աղձնիքի մէջ և կը պաշտպանէր իր իշխանութիւնը՝ Ահմէտ ամիրայի (896) ոտնձգութեանց դէմ։

5. Մոլոխի՝ Ուտիքի ապստամբ կառավարչին՝ որդիներէն մին, ըստ Իպն Հաուքալի, էր իշխան Հարար, շուրջ 955ին[1]։

Ահաւասիկ հինգ իշխանութիւններ ո՛չ զուրկ կարեւորութենէ, որ չեն գտնուիր մեր ցանկին մէջ։ Չենք գիտեր՝ ինչ պատճառաւ։

Կապը՝ որ հայ իշխանները կը միացնէր հռոմայեցի կայսեր, էր ամենէն առաջ՝ բիւզանդական պատիւներու բաշխումը՝ անոնց մեծագոյններուն. բիւզանդական արքունիքը Կովկասի և Հայաստանի մէջ կը բաժնէր իր իշխանական պատիւներու պարգեւագրերը, ինչպէս յետոյ Ս. Փեդերսպուրկի արքունիքը պիտի բաժնէր իր ասպետական կարգերու՝ ժապաւէնները։

Կիւրոպաղատի պատիւը կերպով մը ժառանգական էր Վրաց Հարստութեան մէջ.

1. Տե՛ս Սէն-Մարթէն. Mém. Ա. 231։

բաց ի ուրեմն Բիւզանդիոնի արքունեաց կիւրոպաղատէն, կար նաեւ Վրաստանի կիւրոպաղատ արքայն: Նա իր մեհապետի պալատին պատուոյ մարաջախտն էր, ինչպէս Գաղղիոյ մէջ՝ Շամփայնեի կոմսը, կամ Գերմանիոյ մէջ՝ Հռենոսի պալատական կոմսը:

Կիւրոպաղատի պատիւը առանձին բան մ'էր բիւզանդական նուիրապետութեան մէջ: Իրօք ամենէն մեծը՝ Մագիստրոսութեան պատիւն էր[1]: Ուստի նաեւ զայս միայն ամենէն մեծ իշխաններուն կու տային. այսպէս, Կոստանդին Պերփերուժէնի ժամանակ, Աբաս, Աշոտ Երկաթի եղբայրը, որ Հայաստանի մէջ սպարապետի և իշխանաց իշխանի տիտղոսը կը կրէր, և գրեթէ զօրութեամբ հաւասար էր իր եղբօրը:

Գրիգոր, Տարօնի իշխանը, որ երբեմն Մագիստրոս և իշխան Տարօնոյ, և երբեմն ալ Մագիստրոս և զօրավար Տարօնոյ տիտղոսը կրեց[2], ինչ որ ցոյց կու տար աւելի հպատակութիւն մը՝ կայսեր նկատմամբ[3]. Գէորգ Ափխազաց թագաւորը կամ Էքզուսի-

1. Արարողութեանց Բ. 52, էջ 727:
2. Արարողութիւնք Ա. 24, էջ 128:
3. Տէր. Կառ. գլ. 43 և 185:

տարեր. Դաւիթ՝ Հօրեղբայր, Բագրատ՝ Հայր, և Գուրգէն, խնամի եղած Ապրներսեհ Վրաց թագաւորին. Բագրատ, եղբայր՝ Վրաստանի Աշոտ Դաւիթ թագաւորին[1]։

Երկրորդ կարգը ունէին Պատրիկները. Տարօնեցի իշխաններուն մէջ՝ Աշոտ, Թոռնիկ և Բագրատ, որդի և եղբօրորդի Գրիգորի[2] Սիւնեաց իշխաններուն մէջ՝ Գրիգոր եղբօրորդի Սմբատայ[3]. Վրացի իշխաններուն մէջ՝ Աշոտ Քիւքաղէս, Ապրներսեհ թագաւորին եղբայրը[4], պատրկութեան նշաններով պատուուեցան։

Փռոթոսփաթարիոս տիտղոսը՝ աւելի առատօրէն կը տրուէր. Լևոն Զ.ի և Կոստանդին Է.ի ժամանակ՝ զանիկա տուին Գրիգոր Մագիստրոսի անհարազատ որդւոյն՝ և իր Ապուղանըմ եղբօրը[5]. Արծրունեաց

1. Անդ գլ. 46 էջ 206 — 207, գլ. 45, էջ 201։ — Տե՛ս Տիւլորիէ, Ծանօթութիւնք Մատթէոս Ուռհայեցւոյ վրայ, էջ 378 – 380. հոս կը յիշատակուին ուրիշ Հայեր ալ՝ որ Զմշկիկի ժամանակ նոյն պատիւն ստացած են։

2. Տէր, Կառ. գլ. 43, էջ 188։

3. Անդ, գլ. 43, էջ 183։

4. Անդ 46, էջ 206։

5. Անդ. գլ. 43 էջ 184։

իշխաններուն մէջ՝ Աշոտի, Գրիգոր պատրկի որդւոյն[1]։ Բագրատունի մը, Թէոդոր, մեծ ընտանեաց կրտսեր մէկ անդամը, որ կայսրութեան կը ծառայէր նոյնպէս պռոտոսպաթարիոս ու Խաղտոյն դուքս[2]։

Յիշատակարանները անփոյթ եղած են մեզ իմացնելու թէ Հայերէն որո՛նք ընդունեցան ստրատարխոսի նման ուրիշ ստորին կարգի պաշտօնները, ինչպէս հիւպատոսներ, սպաթարներ, եւայլն։

Երբ քանի մը Հանճարեղ կայսրներ նոր պատիւներ հնարեցին, անոնք ընծայուեցան նաև Հայ իշխաններու. ԺԲ դարու մէջ Մատթէոս Ուռհայեցի կը յիշատակէ Վասիլ Սեբաստոսը[3] և փռոտոսեբաստոս Թորոս Բ. Կիլիկիոյ պարոնը[4]։

Գիտենք որ Բիւզանդական արքունեաց մէջ կային նաև պատիւներ՝ գիտական տեսակէ. այսպէս (արխիատրի արքիբժիշկ, բժշկապետ) և ὕπατος φιλοσόφων (բժշկութեան Հիւպատոսներ)։

1. Անդ. գլ. 46, էջ 206։
2. Արարող. Բ. 48. էջ 657։
3. Մաթ. Ուռհայեցի, գլ. 260, էջ 332։
4. Անդ. գլ. 277, էջ 360։

*Այսպիսի տիտղոս մ՚է այն՝ զոր Զմշկիկ կայսրը ընծայեց Լեւոն Հայազգի նշանաւոր Վարդապետին. զինքը անուանեց բաբունապետ և փիլիսոփայ*[1]*։*

*Հայ իշխանները, աղքատ ըլլալով և գրական նկարագրով մարդիկ այնքան կարեւորութիւն կ՚ընծայէին Բիւզանդիոնի գրամին՝ որքան իր ազնուականութեան տիտղոսներուն։ Տէրութեան աստիճաններ ունենալնուն պատճառաւ՝ իրաւունք ունէին տարեկան ռոճիկի։ Այս պատճառաւ է որ Գրիգոր Տարօնեցի ոչ միայն տուն մ՚ունէր Կոստանդնուպոլիս, բարբարոսի տունը կոչուած, այլ կ՚ընդունէր նաև քսան լիբրայի*[2] *տարեկան թոշակ մը։ Իր այս ռոճիկին պատճառաւ շատ նախանձորդներ ունեցաւ. իւր Ապուգանըմ եղբայրը՝ իսկոյն կայսերմէն հրաման խնդրեց Կոստանդնուպոլիս երթալու, և ինքն ալ ռոճիկ ստանալու։*

*Հայաստանի մեծագոյն իշխանները՝ յուզուեցան այս բանիս համար. Վրաց թագաւորը, Վասպուրականի թագաւորը, արքայից արքայն, գրեցին առ Ռոմանոս Լե-*

1. Մատթէոս Ուռհ. գլ. 16, էջ 25 ծանօթ. էջ 380։
2. Տէր. Կառ. գլ. 43, էջ 185։

կարենար, թէ արդարութիւն չէ որ Տարօնեցին մինակ ռոճիկ ընդունի, և իրենք բան մ'ալ չը ստանան։ Կ'երևի թէ ոսկեդրամը քիչ էր Հայաստանի մէջ. տուրքերը՝ առարկայներով կը վճարէին[1]. Գրիգոր Տարօնեցին կը գրէ առ Կայսրը՝ թէ ոչ ոսկի ունի ոչ արծաթ[2] և Յովհան Զ[3]. — որչափ ալ վասիլեւը քիչ առատաձեռնութիւն ցոյց տայ՝ — կը զարմանայ այն ահագին գումարներուն վրայ զոր կ'ընդունին իւր Հայրենակիցները[4]»։ (Ռամպօ, էջ 515)։

4. Ժամանակագրութիւն Կոստանդին Պերփիւռոժէնի կենաց.—Կոստանդին Պերփեռու-

1. Յովհ. Կաթ. գլ. 13, էջ 194։
2. Տէր. Կառ. գլ. 43, էջ 188։
3. Յովհ. Կաթ. գլ. 108. էջ 283։
4. Կոստանդին Է. կը յանդիմանէ զՏարօնեցին իւր երկդիմի նկարագրին համար Յունաց և Արաբաց նկատմամբ, և զկիւրոպաղատն Վրաց՝ Թէոդուպօլսի Արաբներուն ցոյց տուած ակնածութեանը համար։

(Ըստ Ռամպոյի՝ հայ նախարարք Յունացմէ ստակ կ'առնէին Արաբացւոց վճարելու համար, բայց յոյն պետութիւնն ալ ընծայներ կ'ընդունէր իշխաններէն թօշակի արժէքին հասնող. Գրիգոր Տարօնեցի, խնայողութեան համար, հրաժարեցաւ իր թոշակէն. Տէր. Կառ. գլ. 43, էջ 188)։

ժէնի կենաց ժամանակագրութիւնը, ըստ լաւագոյն ուսումնասիրութեանց (տես Muralt, Chronographie byzantine) հետեւեալն է.

Ծնունդ Պերփեռուժէնի 905 սեպտ. 1
Մկրտութիւն 906 յունվար 6
Աղեքսանդր կ'ուզէ զինքը սպաննել 913
Կոստանդին կը թագաւորէ խնամակալաց ձեռքին տակ 913 յունիս 17
Դուկաս կ'ապստամբի 913
Սիմէոն Բուլղարի արշաւանքը 913 օգ.
Ռուսաց արշաւանք 913
Սիմէոնի երկրորդ արշաւանք 914 մայիս
Ադրիանուպոլսի առումը 914 սեպտ.
Զոյէ Արաբաց հետ զինադուլ կ'ընէ 917
Յունական բանակի պարտութիւնը՝ ի Բուլղարաց 917 օգ. 21
Պատերազմ և յաղթանակ Լեւոն Փոկասի 918
Ռոմանոս Լեկապենոս կը ձերբակալէ զԿոստանդին սենեկապան 919 մարտ 22
Ռոմանոս Լեկապենոս, նաւատորմիղի ծովակալը, կը մտնէ արքունեաց 919 մարտ 25
Կոստանդին Պերփեռուժէն կ'ամուսնայ Լեկապենոսի Հեղինէ աղջկան հետ 919 ապրիլ 27

Հունգարաց արշաւանքն յիտալիա 920 փետր. 1

Լոմպարտացիներու միջոցաւ Ռոմանոս Քալապրիացիները կը նուաճէ 920

Լեւոն Փոկասի ապստամբութիւնը, ձերբակալումը, կուրանալը 920

Զոյէ պալատէն կ՚աքսորուի ի Ս. Եւփիմէ զՌոմանոս թունաւորելու դիտաւորութեանը համար 920

Ռոմանոս Լեկաբենոս գահակից կ՚անուանուի 920 սեպտ. 24

Յովհան Կաթողիկոս և Աշոտ կու գան ի Կոստանդնուպոլիս 920 նոյեմբ.

Ռոմանոս կայսր կը հրատարակուի 920 դեկտ. 17

Աքսոր Լեկաբենոսի 944 դեկտ. 19

Կոստանդին Պերփերուժէնի կայսրութեան երկրորդ շրջանը կը սկսի 944 դեկտ. 20

Ռոմանոս Լեկաբենոսի երկու որդիները Ստեփան և Կոստանդին, կ՚աքսորուին արքունիքէն 945 յունուար 27

Ռոմանոս Բ. գահակից կ՚անուանուի 945 ապրիլ 6 երկրաշարժ 945

Բանակցութիւն Արաբացւոց հետ՝ գերիներու փոխանակութեան համար 945

Պերփերուժէնի բանակցութիւնք Գերմա-

նիոյ կայսեր՝ Օթոնի հետ 945 հոկտ. 31

Լոթարիոս Իտալիոյ թագաւոր կը ծանու-ցուի 947

Սէյֆ Էտտուլահ կը յաղթէ Վարդ զօ-րավարին և Կոստանդինի զօրավարը գերի կը բռնէ 947

Լեկաբենեան Ստեփաննոսը ազատելու համար կազմակերպուած դաւադրութիւնը կը յայտնուի 947 դեկտ.

Լեկաբենեան Կոստանդինի մահը 948

Ռոմանոս Լեկաբենոս կը մեռնի 948 յուլիս 15

Կոստանդին Պերփերուժէն կը դաշնակցի փացինակներուն հետ՝ ընդդէմ Մաճառներու, Ռուսաց և Բուլղարաց 948

Լուիթբրանդ եպիսկոպոսը, Գաղղիոյ կող-մանէ պատգամաւոր ղրկուած, կը հասնի Պոլիս 948 հոկտ. 17

Բիւզանդացիները կը տիրեն Մարաշու 949

Արաբական յարձակումները կը վերսկսին՝ Համտանի ազգականներու գլխաւորման առ-թիւ 949

Մահ Բերթայի 949

Բանակցութիւնք՝ Գերմանիոյ Օթոն կայ-սեր հետ 949 նոյեմբ.

*Սէյֆ Էտտաւլայի պարտութիւնը ի Մաքթալաթաֆար* 950 *յունուար*

*Հունգարները քրիստոնէութիւն կ'ընդունին* 951

*Նաւական պարտութիւն Յունաց ի Կարքեդոն՝ Ապուլքարէ ամիրայէն* 951

*Յարձակումն Արաբացւոց՝ Քալաբրիոյ վրայ* 951

*Մահ Թէոփիլակտոս Հայրապետի* 956 *փետրուար* 27

*Ապուլաշայիրի պարտութիւնը և Կոստանդին Պերփերուժէնի կատարած յաղթանակը* 956

*Նաւական յաղթութիւն Յունաց ի Տարսոն, ուր* 1800 *Արաբացի գերի կը բռնուին* 956

*Յոյները հալածելով Սէյֆ — Էտտաւլան՝ կը տիրեն Հալէպի շրջակայներուն* 956. *Նաւական յաղթութիւն Յունաց ի Նէապոլիս՝ Լոմպարտացւոց վրայ, դաշնակցութիւն՝ Սարակինոսներուն հետ* 956

*Նաւական յաղթութիւն Յունաց յԱփրիկէ՝ Սարակինոսներուն վրայ. դաշնակցութիւն՝ Սարակինոսներու և Կեղտաց հետ* 856

*Տրիպոլսի Իգէթ իշխանի պարտութիւնը՝ Նիկեփոր զօրավարէն* 956

Կոստանդին Պերփիւռոժէն զինադուլ կ'ը-
նէ Պարսից և Եգիպտացւոց հետ 956

(Արաբիկոյ զգեստները կը գտնուին 956)

Հրդեհ՝ որ կ'այրէ քաղաքը՝ Ս. Թովմաս եկեղեցիէն՝ մինչև Երկաթեայ դուռը 956

Կոստանդին Գոնգիլյաս ներքինին պարտութիւն կը կրէ Արաբներէն՝ ի Կրետէ 956

Ռոմանոս Բ.ի ամուսնութիւնը Թէոփանոյի հետ 956 դեկտ.

Պարտութիւն Սէյֆ–Էտտուլայի. Հռովմայեցիք կը տիրեն Տիգրանակերտի, Ռէզէն և Մեֆրաքթա քաղաքներուն 957

Ծնունդ Վասիլ Բուլղարասպանի, Ռոմանոս Բ.ի որդւոյն 957

Ռուսաց Էլկա՝ թագուհւոյն մկրտութիւնը՝ ի Կոստանդնուպոլիս 957

Վասիլ Սենեկապան կը յաղթէ Սէյֆ–Էտտուլայի, և կը տիրէ Շամուշատի և յաղթանակաւ կը դառնայ Պոլիս 958

Փոտ Արղիյրեան կը յաղթէ ի Թրակիա արշաւող Հունգարներուն 958 ապրիլ 11

Կոստանդինի հիւանդանալն և Պրուսայի բաղնիքներն երթալը 959 սեպտ.

Կոստանդին Պերփիւռոժէնի մահը 959 նոյեմբ.

5. Կոստանդին Պերփիւռոժէնի գերդաստ-

տանը.- Կոստանդին Պերփեռուժէն ամուսնացաւ Ռոմանոս Լեկաբենոսի Հեղինէ աղջկան հետ, որ ծնաւ

1. Ռոմանոս Բ. կրտսերը, որ յետոյ կայսր եղաւ։
2. Զոյէ
3. Թէոդորա, կին Չմշկիկի
4. Ագաթա
5. Թէոփանոյ
6. Աննա

Ducange Բիւզանդական պատմչաց հրատարակութեան ԻԱ հատորին մէջ՝ միայն Ռոմանոս Բ.ը և Թէոդորան կը ճանչնայ, իբրև որդի Կոստանդին Պերփեռուժէնի. կը սխալի. Թէոփանէս Շարայարեալի մէջ (յէջ 471) որոշակի թուարկուած կը գտնենք Ռոմանոս Բ.ի քոյրերը.

Ռոմանոս «իւր Զոյէ, Թէոդորա, Ագաթա, Թէոփանոյ և Աննա քոյրերը, արքունական պալատէն աքսորեց Քանիքլեան (պալատը)» եւայլն։

6. Կոստանդին Պերփեռուժէնի դրամները. Կոստանդին Պերփեռուժէն իր դրամներուն մէջ կը ներկայանայ երկայնահեր մանուկ մը. ձախ ձեռքին մէջ խաչազարդ աշ-

*խարհագունտ մ'ունենալով, աջին մէջ, եր-րեմն, լապտերազարդ գաւազան մը. մի քանի դրամներու մէջ իր քով բազմած է նաև իր Ռոմանոս որդին, խաչ մ'ունենալով իրենց մէջտեղ. արձանագրութիւնք են.* Constant basil. Rom *կամ* Const. en teo basileus Rom. *կամ* Constant et Roman augg. b, *եւայլն։* (*Տե՛ս* Ducange, *Հրատարակութիւն բիւզանդական պատմչաց, հտ. ԻԱ, էջ* 116)։



## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

# ՌՈՄԱՆՈՍ ԼԵԿԱԲԵՆՈՍԻ ՎՐԱՅ

---

7. *Յունաց ո՞ր պատմիչները խօսած են Լեկաբենոսի վրայ. Ռոմանոս Լեկաբենոսի վրայ ամենէն ընդարձակ և առատ աղբիւրն է Լուիդպրանդ. գաղղիացի եպիսկոպոս մը՝ որ իբրև պատգամաւոր ուղարկուած էր Պոլիս և անձամբ տեսած է բիւզանդական արքունիքը՝ Ռոմանոսի և Պերփեռուժէնի ժամանակ, և զայն նկարագրած մանրամասն և զբօսեցուցիչ եղանակաւ։*

*Յոյն պատմիչներէն կը խօսին Լեկաբենոսի վրայ*

*Կեդրենոս, Բ հատոր էջ* 292 — 320

*Թէոփանէս Շարունակող էջ* 398 - 435

*Սիմէոն Մագիստրոս* 731 — 750

*Գէորգ, Կրօնաւոր* 890 — 920

*Տե՛ս նաև Գենեսիոս, Եփրեմիոսի տաղաչափեալ պատմութիւնն, եւայլն։*

8. *Հայոց ո՞ր պատմիչները խօսած են*

Ռոմանոս Լեկապենոսի վրայ. — Հայ պատմիչները, իրենց ժամանակագրական պատմութեան մէջ՝ միշտ Ռոմանոս Լեկապենոսը՝ Կոստանդին Պերփիւռոժենէն առաջ կը յիշատակեն:

Լեկապենոսը յանուանէ բնաւ յիշատակուած չէ Յովհան Կաթողիկոսի քով, բայց ասոր նամակն առ կայսրն Յունաց, զոր ի մէջ բերինք, պէտք է առ Ռոմանոս Լեկապենոս գրուած ըլլայ:

Ռոմանոս Ա.ը կը յիշատակեն

Ստեփաննոս Ասողիկ. «Այլ յաւուրս Ռոմանոսի կայսերն Յունաց և ի ժամանակս Աբասայ թագաւորի Հայոց, առաւ Մելտենի ի Տաճկաց յ383 թուին: Հան Ռոմանոս զԱլախութէթն՝ հալածիչ հաւատոյս մերոյ: Եւ յ388 թուին Համտուն (ուղղելի՝ Համտան) ի Կողոնիա եմուտ զօրօք և անդրէն դարձաւ: Եւ ապա թագաւորեաց Կոստանդին» (էջ 166):

Մխիթար Այրիվանեցի. «Ալեքս Գ (ամս թագաւորեաց) Ռոմանոս՝ ԻԸ». (էջ 20):

Սամուէլ Անեցի. «Կ. Պօլսի՝ Ռոմանոս ամս ԻԸ» (էջ 98):

Վարդան. «Իսկ զկնի կայսերն Յունաց Լեւոնի՝ առնու զթագն Աղեքսանդր ամ մի.

և յետ նորա Ռոմանոս՝ ամս քսան և հինգ։ ՅԱբասայ և ի սորա աւուրս առաւ Մելտենի ի Տաճկաց յերեքհարիւր ութսուն և երեք թուին, և յերեքհարիւր ութսուն և ութ՝ Համտուն ի Կողոնիա եմուտ զօրօք և անպէն դարձաւ» (էջ 88)։

Կիրակոս Գանձակեցի. «Յետ մահուան Սմբատայ Բագրատունւոյ թագաւորէ Հայոց՝ Աշոտ որդի նորա, հրամանաւ Ռոմանոսի կայսեր, յետ եօթն ամի սպանման հօրն, ամս ութ. իսկ յետ վախճանի կայսեր թագաւորեաց Լեւոն, և ապա Ալեքսն, և զկնի նորա Ռոմանոս։ Սա հալածեաց զամենայն կրօնաւորս և զքահանայս Հայոց՝ որք էին յաշխարհս Հոռոմոց, զի ոչ հաւանեցան դաւանութեան Քաղկեդոնի. և եկեալ յաշխարհս Հայոց յաւուրս Աբասայ, որդւոյ Սմբատայ, հաստատեցին վանորայս՝ զԿարմնջաձոր, և զԿապուտքար ի գաւառին Արշարունեաց հռչականուն, և զՀոռոմոսին կոչեցեալ վանք և զԴպրէվանք ի Շիրակ գաւառին. շինեցին եկեղեցի մի յանուն սուրբ Աստուածածնի ի վանքն՝ որ կոչի Սանահին, ի սահմանս Լոռէ քաղաքին, և զի կոչէին զերիցունս Հոռոմոց՝ երէց, անուանեցին զմի վանքն որ ի Շիրակ Հոռոմոց վանք, որ ցարդ եւս

Հռոմցի վանք տար. Եւ յետ Ռոմանոսի թագաւորէ Կոստանդին որդի Լեւոնի» (էջ 48)։

Մատթէոս Ուռհայեցի կը յիշէ «Վասիլն և Կոստանդին՝ որդիք Ռոմանոսի ծերոյն» (էջ 5 և այլուր)։

Գրչագրական թանձր սխալ մ՚է, որ պէտք է ուղղուի. Ռոմանոսի կրտսերոյն։ — Մատթէոս Ուռհայեցի երբէք առիթ ունեցած չէ խօսելու Լեկապենոսի վրայ։

Պէտք է գիտել՝ որ այս վերջին մակդիրը բոլորովին անծանօթ է հայ պատմչաց։

9. Հա՞յ էր Ռոմանոս. — Ռոմանոս Լեկապենոսի հայազգի ըլլալն ընդունուած է ամէն եւրոպացի գիտնականէ։ Ռոմանոսի աղքատ հայ մ՚ըլլալը կ՚իմանանք գաղղիացի պատմիչէ մը, որ ժամանակակից էր Լեկապենոսի. Լուիտբրանդէն (Ա. 3)։

Կ՚երեւի թէ Ռոմանոս Լեկապենոսի ընտանիքը Տարօնէն եկած էր; որովհետև Կոստանդին Պերփիւռոժէն կ՚աւանդէ որ Տարօնոյ Բագարատ իշխանը Պօլիս եկաւ՝ և իրեն կին ուզեց կայսերական ընտանիքէն. Լեկապենոս իր պատուոյն հակառակ չնկատեց Տարօնոյ իշխանին խնամի ըլլալը։

Այս վէպքը կը ցուցնէ՝ թէ Հռոմէական պետութեան կայսրը առանձնական կապեր ունէր Տարօնոյ իշխանին հետ, և այս պատճառաւ բարեկամութեան բացայայտ նշաններ կու տար։

Կոստանդին Պերփերուժէն մեզ կը տեղեկացնէ (Տէրութիւնը կառավարելու գրքին մէջ), որ Տարօնոյ իշխանը իր ժամանակ, ուրիշ առանձնաշնորհութիւններ եւս կը վայելէր։

10. Ժամանակագրութիւն Ռոմանոս Լեկապենոսի կենաց. — Ռոմանոսի մանկութեան պարագաները անծանօթ կը մնան։ Կ'արժանանայ Լեւոն Զ.ի ուշադրութեանը (886 – 912). Աքելոոսի պատերազմը 917 օգոստոս 21։

Ռոմանոս, Ծովակալ, Բուքոլիոն արքունական նաւահանգիստը կը մտնէ իր նաւատորմիղով 919 մարտ 24

Ռոմանոս կը տիրէ պալատին. 919 մարտ 25

Ռոմանոսի Հեղինէ աղջիկը կը նշանուի Կոստանդին Պերփերուժէնի հետ. 919 ապրիլ

Հեղինէի և Պերփերուժէնի հարսանիքը 919 ապրիլ 27

Ռոմանոս, Լոմպարտացւոց ձեռքով, Քալապրիացիները կը նուաճէ 920

Ռոմանոս գահակից կ'անուանուի 920 սեպտ. 24

Ռոմանոս կայսր կ'օծուի 920

Ռոմանոսի Թէոդորա կինը՝ կայսրուհի կ'օծուի 921 յունուար 6

Ռոմանոսի Քրիստափոս որդին կայսր կ'օծուի 921 մայիս 20

Եւթիմիոս և Նիկողայոս հայրապետներուն կուսակցութիւնները կը միացնէ Ռոմանոս, կ'որոշէ ամէն տարի թափօր ընել տալ՝ ի յիշատակ այս միութեան 921 յունիս

Երեք դաւակցութիւն Ռոմանոսի դէմ 922

Կայսեր Ագաթա աղջիկը կ'ամուսնանայ Արգիւրեան Լեւոնի Ռոմանոս որդւոյն հետ 922

Բուլղարաց Սիմէոն Թագաւորի յաղթանակները Յունաց դէմ՝ ի Թերմոպոլիս 922

Քրինիտէս Արոտրաս Պեղոպոնեսի ժողովուրդներուն վրայ յաղթանակներ կը տանի և զանոնք հարկատու կ'ընէ 922 դեկտ.

Թէոդորա կայսրուհին կը մեռնի և կը թաղուի Միւրիէլեան վանքին մէջ 923 փետրուար 20

Քրիստափորի Սոփիա կինը կայսրուհի կ'օծուի 923

Վրաց կիւրապաղատը Պոլիս կու գայ՝ և կը հիանայ Ս. Սոփիայի վրայ 923

Բուլղարները Ս. Թէոդորայի պալատը հրդեհի կը մատնեն, մահ Սակտիկիոսի 923

Տաճատ Բաբերդցի հայ հարուստին ապստամբութիւնն, և ասոր նուաճումը՝ Յովհաննէս Գուրգէն հայազգիէն 923

Մօրիկ կայսեր և իր որդւոց աճիւնները կը գտնուին Ս. Մամասի մէջ, սափորներու մէջ դրուած 923

Բուլղարները կը տիրեն Ադրիանուպոլսի 924

Լևոն Տրիպոլսեցւոյն պարտութիւնը 924

Սարակինոսները կը տիրեն Օրիայի 924

Բուլղարները Պոլսոյ պարիսպներուն առջև. Լեկաբենոս և Սիմէոն կը տեսակցին 924

Ռոմանոս իր Ստեփան և Կոստանդին որդիները թագաւոր կը պսակէ 924 դեկտ. 25

Նիկողայոս պատրիարգի մահը 925

Չորրորդ դաւակցութիւն Ռոմանոսի դէմ 925

Երկրաշարժ Թրակիոյ մէջ 925

Բուլղարներ և Սարակինոսներ կը փորձեն դաշնակցիլ Յունաց դէմ. Քալաբրիացիները

կը ձերբակալեն անոնց դեսպանները և Պօ-
լիս կը բերեն 925

Ռոմանոս կը ծրագրէ արշաւանք մը Յե-
գիպտոս 925

Բագարատ Տարօնոյ իշխանը կու գայ ի
Պօլիս, կ'ամուսնանայ կայսեր ազգական՝
Թէոփիլակտոսի աղջկան հետ 925

Սքլաւոններու Միքայէլ թագաւորը՝ կը
տիրէ Սիպոնտոմ քաղաքին։ 926

Մահ Սիմէոն Բուլղարի 927 մայիս 27

Սարակինոսներ կը տիրեն Տարենտոնի
927 օգ. 15

Բուլղարաց Պետրոս թագաւորը խաղա-
ղութեան դաշինք կը կնքէ Յունաց հետ, և
կ'ամուսնանայ Ռոմանոսի թոռան Քրիստա-
փորի՝ Մարիամ աղջկան հետ 927 հոկտ. 8

Բուլղարք կը խնդրեն՝ որ Քրիստափոր
Կոստանդին Պերփեռուժէնէն վեր համարուի
կայսերաց աստիճանաւորութեան մէջ. 927

Յովհաննէս Գուրգէն և Մելիաս (Մլեհ)
կը տիրեն Մելիտինէի գաւառին 928

Հինգերորդ դաւադրութիւն Ռոմանոսի դէմ.
Նիկետաս Մագիստրոսը՝ կրօնաւոր ըլլալու
կը բռնադատուի. 928

Մահ Ստեփաննոս հայրապետի 928

Սով. Ռոմանոս տախտակով շէնք կը շի-

*Ռոմանոս Կոզմաս ծովակալը՝* 18 *նաւերով Լոմպարտիա կ'ուղարկէ Արաբացւոց դէմ* 937

*Ծնունդ Ռոմանոս Բ.ի, Պերփերուժէնի որդւոյն* 939

*Հունգարաց արշաւանքն յիտալիա* 940

*Լեկաբենոսի Կոստանդին որդին՝ կ'ամուսնանայ Հայկազն Ադրիանոսի Սպերացւոյ Հեղինէ աղջկան հետ* 941 *յունուար* 14

*Ադրիանոսի դուստրը մեռնելով՝ Կոստանդին կ'ամուսնանայ Մամոսեան (Մամիկոնեան?) ընտանիքի պատկանող՝ Թէոփանոյի հետ* 941 *փետրուար* 2

*Ռուսաց նաւական պարտութիւնը Պօլսոյ առջև* 941 *յունիս* 11

*Յովհաննէս Գուրգէնի պաշտօնընկէցութիւնը* 942

*Հունգարաց արշաւանք և հնգամեայ զինադուլի դաշինք՝* 943 *ապրիլ*

*Ռոմանոս կը նորոգէ քաղաքներ, կը շինէ հիւանդանոցներ՝ ծերերու և հիւանդներու համար* 943

*Իգոր, Ռուսաց իշխանը՝ մինչև Դանուբ հասած, կը դաշնակցի Յունաց հետ* 944

*Լեկաբենոս կը խնամենայ Գաղղիացւոց Հուգոն Թագաւորին հետ* 944

Յոյները կ'աշխարհակալեն Տիարպէքիրէն մինչև Եդեսիա, և Քրիստոսի սուրբ պաստառակը ձեռք կը բերեն՝ Արաբացւոց գերիները ազատ թողլով 944

Ռոմանոս Լեկաբենոս՝ իր որդիքներէն՝ Փռոթի կղզին կ'աքսորուի 944 դեկտ. 19

Ռոմանոսի մահը 948 յուլիս 15 (տե՛ս Muralt, Chronographie byzantine).

11. Ռոմանոս Լեկաբենոսի զաւակները.— Լեկաբենոսի կնոջ անունն էր Թէոդորա, որմէն ունեցաւ հետեւեալ որդիքները.

1. Քրիստոփոս կամ Քրիստափոր կայսր եղած
2. Ստեփան կայսր
3. Կոստանդին կայսր
4. Թէոփիլակտոս պատրիարք
5. Հեղինէ, կին Պերփերուժէնի
6. Ագաթա, կին Արգիւրեան Լեւոնի՝ որդւոյն
7. (Անանուն) կին Ռոմանոս Տարօնեցւոյ
8. Վասիլ, Բուլղար գերիէ ծնած, սենեկապան Պերփերուժէնի.

12. Լեկաբենոսի դրամները.— Ռոմանոս Լեկաբենոսի մեզ հասած դրամներուն վրայ,

իր դէմքին տեղ կը տեսնենք խաչ մը. Լեկաբենոսի դրամները հետեւեալ մակագրութիւնը կը կրեն. Romano Xristofor ce Constan ex xmeus eb basil R. Դրամին միւս կողմը՝ Յիսուսի պատկերը նկարուած է այս մակագրութեամբ. Ihsus Xristus nica.

(Տե՛ս այս մասին Ducange, հտ. XXI)։



## Գ. ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

# ԿՐՏՍԵՐՆ ՌՈՄԱՆՈՍԻ ՎՐԱՅ

13. *Յունաց ո՞ր պատմիչներ խօսած են Կրտսերն Ռոմանոսի վրայ. — Կրտսերն Ռոմանոսի վրայ խօսող պատմիչներէն գլխաւորներն են.*

1. *Թէոփանէս Շարայարեալ, յէջս* 450–481.

2. *Սիմէոն Մագիստրոս յէջ* 756.

3. *Կեդրենոս Բ հա. յէջս* 336–344։

14. *Հայոց ո՞ր պատմիչներ խօսած են Կրտսերն Ռոմանոսի վրայ. — Ստեփանոս Ասողիկ համառօտ յիշատակութիւն մը կը նուիրէ.* «*Եւ մեռաւ Կոստանդին և թագաւորեաց Ռոմանոս՝ ամս* 3» (*էջ* 166)։

*Նոյն* (*էջ* 169). «*Այլ յաւուրս Ռոմանոսի՝ Յունաց թագաւորի, էր մաժիստրոս Նիկեփոր, և պատրիկ Կիւր—Ժան որք զարհուրեցուցանէին զամենայն Տաճկաստանեայս՝ զօրութեամբ իւրեանց ։ Եւ ի մեռանել Ռո-*

*մանուսին՝ նոքա պաշարեալ էին զԱնաւարզայ և Հալպ, զորս և առին իսկ։ Եւ թագաւորեաց ի Կոստանդնուպօլիս՝ Մարինոս ամս։ Իսկ Նիկեփոր և Կիւր—Ժան ամենայն զօրօքն գան յեզր ծովուն Ցունաց. և մտեալ ի Կոստանդնուպօլիս՝ ընկենու զՄարինոս և թագաւորեցուցանէ զՆիկեփոր ի 412 թուին, որ թագաւորեաց ամս 7»։*

*Բիւզանդական պատմութիւնը Մարինոս անուամբ կայսր չի ճանչնար այդ տարեթուին. Թերեւս մայր Վարդի (Թէոփանոյ) կամ մի այլ նման բառ՝ սխալ ընթերցուածի պատճառ եղած ըլլայ։ Իշխանաց մէջ չյիշատակուիր Մարինոս անուամբ մէկը, և ամենէն ազդեցիկ իշխանը, զոր կերպով մը Նիկեփոր գահազուրկ ըրաւ՝ կը կոչուէր Ցովսէփ Բրինգաս։ (Թերեւս Մարինոս = Ռոմանոս)։*

*Սմբատ Գունդստաբլ. «Ի ժամանակս թագաւորութեան Ռոմանոսի՝ որդւոյ Կոստանդեայ ... և ի թուականին Հայոց 400 թագաւորէ Գագիկ Բագրատունի» (էջ 21)։*

*Ըստ այսմ՝ Ռոմանոս Բ. ըստ Սմբատայ թագաւորեց 952ին, մինչ նա գահ ելած է 959ին։ «Զկնի երկուց ամաց՝ մեռաւ թագաւորն Ցունաց Ռոմանոսն» (էջ 22)։*

*Մխիթար Այրիվանեցի «Կոստանդին ԺԶ (ամս), Ռոմանոս՝ Դ» (էջ 20)։*

Սամուէլ Անեցի. « ՋԿԱ. Կ. Պօլսի Ռո-
մանոս՝ ամս Դ. Ռոմանոս թագաւոր կոտո-
րեաց զՏաճկաստան. զՀամաուն խանգրե-
ցին. յԱրակլեա սով.» (էջ 100)։ « Փախոյց
(Զմշկիկ) զորդիսն Ռոմանոսի » (էջ 102)։

Կիրակոս. « Ցետ նորա Կոստանդին, որդի
Լեւոնի. ապա Ռոմանոս, և ապա Նիկեփոր »
(էջ 91)։

Մատթէոս Ուռհայեցի. « Ի թուականու-
թեանն ազգիս Հայոց ի ՆԸ ամին՝ զօրա-
ժողով արարեալ թագաւորն Հոռոմոց Ռո-
մանոս և գայ ի վերայ Տաճկաց. և անցեալ
ընդ համատարած ծովն Ովկիանոս, և նա-
ւովք անցանէր ի մեծ կղզին, որ ասի Կրիտ.
և սաստիկ պատերազմաւ առեալ զնա ի զօ-
րացն Եգիպտոսի, վասնզի զամենայն կղզեքն
և զամենայն ծովեզերեայց աշխարհն՝ Արաբ-
կաց ազգն ունէին զամս չորս հարիւր։ Յայսմ
ամի կոտորեցին զօրք Հայոց զՀամաուն զօ-
րապետն Տաճկաց » (էջ 2)։

« Իսկ զկնի անցանելոյ երկուց ամաց մե-
ռաւ թագաւոր Հոռոմոց Ռոմանոսն, և մնա-
ցեալ լինէր երկու որդիք, Վասիլն և Կոս-
տանդին, որդիք Ռոմանոսի ծերոյն » (ազ-
գելի կրտսերոյն) էջ 5։ « Զորդիսն Ռոմա-
նոսի զՎասիլն և զԿոստանդինն առ իւր պա-

*հէր ի պաղատանն մեծաւ պատուով և փառաւորութեամբ »* (էջ 5)։

15. *Ստո՞յգ է Ռոմանոսի հինգ տարեկան ամուսնանալն.* — Անհաւատալի պիտի թուի որ, արքունեաց մէջ, իշխանազուն մը հինգ տարեկան եղած ժամանակ՝ հարսանիք կատարած ըլլայ. և սակայն բոլոր բիւզանդական պատմիչները (Սիմէոն Մագիստրոս, Սքիլիցէս, Թէոփանէս Շարայարեալ, Կեդրենոս) միաձայն կը վկայեն այս եղելութեան։

Տարակուսական է միայն՝ թէ կրտսերն Ռոմանոսի երկրորդ ամուսնութիւնը Անաստասիայի հետ կատարուեցաւ ա՞յն ժամանակ՝ երբ տասն և մէկ տարեկան էր, թէ աւելի ուշ։ Ըստ Գելցերի, այս ամուսնութիւնը տեղի ունեցաւ՝ երբ նա 19 տարեկան էր. ըստ Muraltի՝ երբ նա 17 տարեկան էր (տես էջ 528)։

16. *Ժամանակագրութիւն կրտսերն Ռոմանոսի կենաց.* — Ծնունդ կրտսերն Ռոմանոսի 938

Բերթայի գալն ի Կոստանդնուպոլիս 944

Ռոմանոսի թագաւոր պսակուիլն 945 ապրիլ 6

Բերթայի մահը 950

*Ռոմանոս կ'ամուսնանայ գինեպանի մը աղջկան հետ 956 դեկտ. 6*

*Ռոմանոս՝ Վասիլ անուամբ որդի մը կ'ունենայ 957*

*Կը թունաւորէ իր Կոստանդին հայրը 959*

*Ռոմանոս Բ. կը սկսի թագաւորել 959 նոյեմբ. 10*

*Կ'աքսորէ իր քոյրերը 959*

*Լեւոն արեւմուտքի զօրավար կ'ընտրուի, Նիկեփոր Արեւելքի 959*

*Ռոմանոսի Վասիլ որդին կայսր կ'օծուի 960*

*Նիկեփորի նաւական յաղթանակն Արաբացւոց վրայ 960 ապրիլ 22*

*Սէյֆ-Էտտուլահ կը յաղթուի Լեւոնէ 960*

*Սով 960*

*Առումն Խանդաքսի 961 մարտ 7*

*Անյաջող դաւադրութիւն Վասիլ Փեթինոսի 961 մարտ*

*Նիկեփորի պատերազմ ընդդէմ Համտանի 961*

*Կոստանդին, Ռոմանոսի երկրորդ որդին կայսր կ'օծուի 961 ապրիլ 7*

*Մահ Հեղինէի, մօր կայսեր 961*

*Արգիւրեան Մարիանոսը Թուրքերը կը հալածէ Թրակիայէն 961*

*Նիկեփոր կը աւրէ Անարզաբայի 962*

Նիկեփոր Հալէպի քով կը յաղթէ Սէյֆ-էտտուլահի 962

Ապու-Ֆէրազի, Համտանի թոռը, գերի կը բռնուի 962

Յոյնք կը տիրեն Հալէպի, բայց ոչ միջնաբերդին 962 դեկտ.

Կը նահանջեն 963 յունուար

Ռոմանոսի մահը 963

(Տես Muralt*ի* Chronographie byzantine) էջ 532։

17. Կրտսերն Ռոմանոսի գերդաստանը. — Ռոմանոս Բ. իր Թէոփանոյ կայսրուհիէն հետեւեալ որդիները ունեցաւ.

1. Վասիլ (Բ Բուլղարասպան)
2. Կոստանդին (Ը.)
3. Թէոփանոյ կամ Ստեփանէ
4. Աննա։

18. Կրտսերն Ռոմանոսի դրամները. — Ռոմանոս Բ. իր դրամներուն մէջ կը ներկայանայ շնորհակերպ պատանի մը, ունենալով մէկ ձեռքին մէջ խաչազարդ գունդ մը, միւսին մէջ՝ լապտերակիր գաւազան։ Մակագրութիւնը. Roman basileus Rom. և Roman en teo basileus Romaion.

## Դ. ՏԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԶՄՇԿԻԿԻ ՎՐԱՅ

19. *Ցուցնաց ո՞ր պատմիչներ խօսած են Զմշկիկի վրայ. — Զմշկիկի կենաց ամենէն լաւ և հաւատարիմ պատմաբանն եղած է Լեւոն Սարկաւագ, որ տասն գլուխներէ բաղկացած պատմութիւն մը յօրինած է, մեծաւ մասամբ Հայ կայսեր գործերուն նուիրեալ, որուն վրայ կը խօսուի սկսեալ* 99 *էջէն՝ մինչեւ* 169։

*Յաջորդ դարու բոլոր ժամանակագիրներն ու պատմագիրները ընդօրինակած են այն գեղեցիկ նկարը, զոր աւանդած է յետնոց Լեւոն Սարկաւագ։*

*Արդի գիտնականներէն, ինչպէս յիշեցինք գրքիս Յառաջաբանին մէջ, Շլիւմպէրժէ խօսած է ընդարձակօրէն Զմշկիկի վրայ* « L'épopée byzantine » *վերնագրով հատորի մը մէջ։*

*Այս գործը, որ ազգին մէջ եւս մեծ հռչակ կը վայելէ, իրօք այնքան ճոխ չէ պատ-*

*մական դէպքերու նոր յայտնութիւններով, որքան աշխարհագրական և հնախօսական ընդլայնումներով։ Ուստի նաեւ ընծայած չենք անոր, Զմշկիկի վարքը ներկայացուցած պահուն, այն կարեւորութիւնը, որ թերեւս, կը սպասուէր։ Գաղղիացի պատմաբանին գրութեամբը հետաքրքրուողները կարող են անոր հայերէն թարգմանութիւնը գտնել «Լումայ»ի մէջ։ (Տե՛ս գրքիս յառաջաբանը)։ Բաւական կը համարինք տալ, քիչ յետոյ, երկու նմոյշներ այդ գրքէն, որ պիտի ապացուցանեն թէ Զմշկիկի կեանքը, հակառակ իր վիպական բոլոր երեւութին, ազգասէր կամ վիպասէր երեւակայութեան ստեղծագործութիւնը չէ, այլ գիտական աշխարհէ ընդունուած պատմական եղելութիւն։*

20. *Հայոց ո՞ր պատմիչներ խօսած են Զմշկիկի վրայ. — Զմշկիկի հայկական ծագումն և դիւցազնական համբաւը՝ չէր կարող անծանօթ մնալ Հայերուն, որոնց մի մասը սակայն պառնութեամբ կը խօսին իր վրայ՝ Նիկեփորի պէս դիւցազ մը սպաննած ըլլալուն համար, Նիկեփոր մը՝ զոր Եւրոպացիներէն ոմանք հայ եւս կ'ենթադրեն, ազգական ըլլալով Զմշկիկի։*

Հայ պատմչաց մէջ ամենէն հետաքրքրական վկայութիւնը կը գտնանք Ստեփանոս Ասողկայ քով, որ երկու անձ կը զանազանէ. Զմշկիկ և Կիւռժան. Զմշկիկը, ըստ իրեն, Կիւռժանի պապն է։ Ըստ այսմ՝ Զմըշկիկ ո՛չ եթէ անհատական մակդիր մ՚է, այլ ընտանեկան – ժառանգական մակդիր մը։ Յոյն պատմչաց համեմատ, ինչպէս տեսանք Զմշկիկի պապը՝ Թէոփիլոս կը կոչուէր, բայց անհաւանական չէ՝ որ Թէոփիլոս, ինչպէս Բիւզանդիոնի միւս Հայերը, հայկական անուն մ՚ալ ունենար, ըստ Ասողկան՝ Զմըշկիկ։

Կիւռժան կոչումը, ինչպէս նաև «մաժիստրոս» և այլ բառեր՝ հետաքրքրական են զգացնել տալով գաղղիական լեզուի ազդեցութեան սկզբնաւորութիւնը Արեւելքի վըրայ։

«Առաքէ կայսրն Կոստանդին զԴեմեսլիկոսն (Դոմեստիկոս բառի աղաւաղումը) զԶմշկիկ՝ զօրու ծանու ի կողմանս Կարնոյ։ Որ եկեալ պաշարեաց զԹէոդուպոլիս և պատերազմեցաւ, պարտեալ զզօրն Իսմայելի, պատառեալ զխանդակ քաղաքին, և փլոյց զբարձրաբերձ աշտարակս նորա և էառ զքա-

դաքն։ Ուր բազում գործս արութեան ցուցեալ Կիւր–ժան՝ թոռն Չմշկայ ի մանկութեան տիս գոլով յայնժամ։ Եւ զկնի այսորիկ զօրն Յունաց առնու զՍամուսատ քաղաք ի 407 թուին »։ (Էջ 166)։

« Այլ յաւուրս Ռոմանոսի Յունաց թագաւորի, էր մաժիստրոս Նիկեփոռ, և պատրիկ Կիւր–ժան որ զարհուրեցուցանէին զամենայն Տաճկաստանեայս զօրութեամբ իւրեանց։ Եւ ի մեռանել Ռոմանոսին նոքա պաշարեալ էին զԱնաւարզայ և զՀալպ զօրս և առին իսկ, և թագաւորեաց ի Կոստանդնուպոլիս Մարինոս ամի։ Իսկ Նիկեփոռ և Կիւր–ժան ամենայն զօրօքն գան յեզր ծովուն Յունաց, և մտեալ ի Կոստանդնուպօլիս, ընկենու զՄարինոս և թագաւորեցուցանէ զՆիկեփոռ ի 412 թուին, որ թագաւորեաց ամս 7։ ... Եւ ապա ի 418 թուին (էառ) զԱնտիոք մեծ քաղաք Ասորւոց։ Եւ ի նմին ամի սպան Կիւր–ժան զՆիկեփոր ի պաղատանն՝ նենգութեամբ թագուհւոյն՝ մօրն Վասլին. և ինքն թագաւորեաց ամս 6։ Իսկ Վարդ՝ դուքսն մեծ՝ եղբօրորդին Նիկեփոռայ, ապըստամբեալ թագաւորեաց ի ծոունդն։ Ընդ որ պատերազմեալ յաղթողն Կիւր–ժան, յաղթեաց և էարկ զՎարդ ի բանտ ի կղզին. և

ինքն գնաց յաշխարհն Բուլղարաց պատերազմել ընդ նոսա։ Որոց ազգն Ռուսաց օգնական եղեալ՝ ելանեն ի մարտ ընդ նմա և ի ճակատելն ընդ միմեանս՝ զերկուս Թեւս ճակատուն Յունաց՝ վանէին Ռուսքն։ Իսկ Թագաւորին՝ ամենայն հետեւակ զօրուն Հայաստանեօքն անշարժ մնացեալ ի միջոցի ճակատուն. որ քաջապէս նահատակեալ գունդ հետեւակացն՝ որ սադարքն ասին, առաջի Թագաւորին պատառեալ զվահանափակն՝ որ ընդդէմ նոցա. ընդ Թագաւորին ամենայն հեծելազունդ զօրօքն մտեալ. և սուր ի գործ շահատակեալ՝ որախողխող զնոսա առնելով, և ցիրեւցան վայրացն տուեալ, ի հնազանդութիւն նուաճեաց զազգն Բուլղարաց։ Այս կիւր—ժան բազում գործս արութեան ի մանկութենէ ցուցեալ՝ զարմացուցանէր զբազումս որ և ի Թագաւորելն ինքնակամ հնազանդեցան հարկապրութեամբ ազգն Տաճկաց ըստ հարաւոյ կուսէ, և ազգն Սարմատացւոց, որ ըստ հիւսիսոյ, և ազգն Վրաց՝ որ ըստ Արեւելից»։ (էջ 171)։

Ստեփանոս Տարօնեցի՝ Ջմշկիկի վրայ կը սկսի խօսիլ վերստին յէջ 173, գլուխ մը մէջ՝ որու վերնագիրն է.

« Վասն պատերազմին Յունաց՝ որ յԱ-

միթ, և երեւման աստեղն և մահուանն Կիւր-ժանայ թագաւորին։

Իսկ Կիւր-ժան՝ թագաւորն Յունաց, բիւրաւոր զօրօք զՄլեհ Դեմեսլիկոսն առաքէ յԱմիթ. որ եկեալ պաշարէ զքաղաքն՝ մարտ եդեալ ընդ պայիկսն, յորում էր Աբութալ-հայ՝ թոռն Համտունայ։ Եւ յանկարծ յեղակարծ ժամու արք 400 սուսերամերկք հեծեալք յերիվարս ի բաց ելանէին ընդ դուռն քաղաքին, սուսերահար արարեալ զպունդն՝ որ առաջի դրանցն կայր, և զամենայն ցիր և ցան սուրեալ, զբազումս սրախողխող արարեալ. և կալան զՄլեհ Դեմեսլիկոսն որ և մեռաւ ի Տաճկունս։

Եւ ապա ի միւս ամին ի 423 թուին Նիզակաւոր աստղն երեւեցաւ յաւուրս հնձոցն՝ ի մտուս ամառնային եղանակին. ինքն յարեւելս կալով և զնշոյլս լուսոյն նիզակաձեւ յարեւմուտս ձգեալ ի վերայ աշխարհին Յունաց. և տեւեաց մինչեւ յաշնանային եղանակն։ Եւ ի նոյն ամին յելն մեռաւ Կիւր-ժան թագաւոր ի պաղատանն։ Եւ զկնի նորա, ի 425 թուին՝ թագաւորեաց Վասիլ»։

*

Սմբատ Գունդստաբլ այսպէս կը պատմէ Նիկեփորի սպանումը (էջ 25)։

«Իսկ ի թուականին Հայոց 418 խորհեցաւ կինն Նիկեփոռայ խորհուրդ չար. և գայր ոմն մահապարտ, որ յաքսորս էր ի կղզւոջ միում, Յովհաննէս անուն Զմշկիկ, գաղտ առաքեալ հանէր, որպէս թէ հրամանաւ թագաւորին, և եբեր ի Կոստանդնուպօլիս՝ առանց գիտելոյ թագաւորին. և ի ծածուկ առնէր ընդ նմա խորհուրդ սպանանելոյ զթագաւորն. և խոստացաւ լինել նմա կին և նստուցանել զնա յաթոռ թագաւորութեան։ Զոր յանձն առեալ Զմշկիկն՝ հաւանեցաւ առնել զկամս անօրէն թագուհւոյն։ Եւ զայս առնէր կինն չարարուեստ յաղագս վավաշոտ իւրոյ ցանկութեան. քանզի թագաւորն ողջախոհ էր և պարկեշտ ի մարմնական ցանկութիւնս, և ոչ կատարէր զանսահման յուզումն իւրոյ չար ցանկութեանն անխափան։ Իսկ թագաւորն ունէր սովորութիւն զի ի խաղաղական ժամու հանգստեան երեկոյին մտանէր ի սենեակն օթանոցի իւրոյ առանձինն, և ընթեռնոյր զգիրս Աստուածաշունչս. և ապա յարուցեալ առնէր զսովորական աղօթս իւր, և տարածեալ յանկողնի ննջէր։ Իսկ կինն աղտեղի, յերեկոյին, մինչ ընթեռնոյր թագաւորն զգիրսն՝ եկեալ նստէր մերձ, և շաղապատէր զթագաւորան.

և առեալ զսուսեր թագաւորին կապէր փոկօքն պնդագոյն անելանելի. և ելանէր արտաքս առ խորհրդակիցն իւր։ Եւ եկեալ Զմշկիկ ծածկարար՝ վազեաց ի ներքս ի սենեակն, ուր էր թագաւորն. զոր տեսեալ թագաւորին՝ զարմացաւ և ասէ. « Ծո՛ւն կատաղի, զի՞նչ յուզես աստ ». և առեալ ի ձեռն զսուսերն՝ ոչ կարաց հանել։ Յայնժամ Զմշկիկն գազանաբար յարձակեալ խողխողեաց սրով զմարմին սուրբ թագաւորին՝ որ ունէր այծազգեստ ի վերայ մարմնոյն՝ ներքեւ թագաւորական ծիրանեացն. և այնպէս աւանդեաց զհոգին՝ թաթաւեալ յարեան։ Զոր տարեալ թաղեցին արժանաւորապէս պատուով և մեծաւ ողբովք ի սուրբ տեղւոջն։

Եւ նստաւ թագաւոր անարժանն Զմշկիկ. և հնազանդեցոյց զամենայն աշխարհն Յունաց։ Իսկ զորդիս Ռոմանոսի փախոյց յանօրէն թագուհւոյն ի Վասակաւան, ի Հանձիթ գաւառին, զի մի՛ մահացու դեղօք ըսպանցէ զնոսա։

Բայց վասն անիրաւ մահուան Նիկեփոռայ ի մեծ արտմութեան էր թագաւորն Զմշկիկ՝ զամենայն աւուրս կենաց իւրոց » (էջ 26)։

Նոյնը կ՚ըսէ այլուր. (էջ 32).

«Մինչդեռ յայս խորհուրդս էին՝ եհաս համբաւ սպանման Նիկեփոռայ. և անհոգ եղեալ խնդացին յոյժ, և տարան զիշխանսն կապած առ Բաղդատ առ խալիֆայն, և ամենեքեան անդ մեռան։ Իսկ Դիմեսլիկոսն գրեաց առ Զմշկիկն անէծս ցաւագինս այսպէս թէ. Մեք զարիւն մեր հեղաք ի զուրս Տիգրանակերտի և մարմինք մեր չեղեն արժանի գերեզմանի օրհնելոյ. արդ զարիւն մեր ի քէնէ ուզէ Աստուած յօրն դատաստանի թէ ոչ ասցես զվրէժ արեան մերոյ յազգէն Մահմէտի»։

Իբրև լուաւ զայս Զմշկիկ, շարժեցաւ ի բարկութիւն, և ժողովեաց զամենայն զօրսն Յունաց, և էառ օգնականս ի Փռանկացն. և կամեցաւ նախ յառաջ Հայոց տիրել. և երեկ բանակեցաւ ի Կիլիկիայս, և ծածկեաց զօրօք զսահմանս Տարսոնի. և ելաւ համբաւ գալոյ նորա յաշխարհն Հայոց։

Յայնժամ ժողովեցան առ արքայն Հայոց Աշոտ՝ Կապանին թագաւորն Փիլիպէ, և թագաւորն Աղվանից Գէորգի, և Աբաս՝ Կարուց տէրն, և Սենեքերիմ՝ Վասպուրականի տէրն, և Գուրգէն՝ Անձեւացեաց տէրն, և ամէն տունն Հայոց, և զօրք արքունի զոր էառ քաջ արքայն Աշոտ և բանակէր ամե-

նայն քաջօքն ի Հարք գաւառին. որոց թիւ համարացն էր հեծելոցն՝ երեք հարիւր հազար և վեց հարիւր, յորժամ ի գիր առին զօրագլուխքն։ Եւ երեկ դեսպան թագաւորին Զմշկայ առ թագաւորն Աշոտ. և տեսաւ զայն մեծ պատրաստութիւն պատերազմի. և գնաց, պատմեաց թագաւորին։ Առաքեաց դեսպան թագաւորն Աշոտ յառ արքայն Զմշկիկ զհետ դեսպանիերոյն Յունաց, եպիսկոպոսք և վարդապետք. և արարին սէր ընդ երկուս թագաւորս։

Եւ ելեալ Զմշկիկն Յովհաննէս ի Կիլիկիոյ, և եհաս ի գաւառն Տարօն շատ բազմութեամբ. եկն և թագաւորն Աշոտ շատ զօրօք ընդ առաջ նորա. և դիպեցան իրերաց ողջունիւ և սիրով և երետ Աշոտ օգնութիւն նմա զօրս ութսուն հազար ձիաւորս, և հետեւակս քսան հազար, և զօրագլուխ զքաջն Գէորգի, և ալուրս և ռոճիկս բազումս. և զեպիսկոպոսն Տէր Սարգիս և զվարդապետն Ղեւոնդ և զիշխանն Իւանէ առաքէ ընդ նոսա. և ինքն դարձաւ յաշխարհն իւր։

Եւ կայսրն Զմշկիկ գնաց ի կոխ ի վերայ զօրացն Տաճկաց, և արեամբ նոցա ներկեաց զերկիր, և շատ բերդս և քաղաքս ի հիմանէ շրջեաց, և երեք հարիւր հազար ձի

և ջուր, և դարձաւ ի վերայ Ամթայ։ Եւ տէրն Ամթայ կին էր. և քոյր Համանոյ ամիրային Տաճկաց։ Ելաւ կին ի վերայ պարըսպին աղաղակէր, և ասէր թէ. Ի վերայ կնո՞ջ գաս կռիւ, ո՛վ Զմշկիկ, և չհամարի՞ս քեզ նախատինք։ Եւ թագաւորն ասաց. Երդուեալ եմ քակել զպարիսպ քաղաքիդ։ Եւ ասէ կինն. Քակէ՛ զկանդարայն նորա ի վերայ Դզղաթ գետոյ, և կատարէ՛ այնով զերդումն քո։

Եւ արար այնպէս և գնաց։ Այլ ասէին թէ յառաջ թագաւորն շաղաշարեալ էր մեղօք, քանզի Զմշկիկն այն ի Խոզնայ էր, ի Զմշկածակուցն. նոյնպէս և կինն եւս անափ էր։

Կամէր և զՈւռհա քակել, և վասն շատ վաներոյն խնայեաց և եթող, և գնաց զներքին կողմամբ երկրին յԵրուսաղէմ. և ազատեաց զամենայն քրիստոնեայսն ի ծառայութենէ անօրինաց։

Եւ դարձեալ գայ ի Կիլիկիա, և առաքէ զիշխանն Հայոց և զզօրսն և զեպիսկոպոս բազում զօրօք և պարգեօք առ թագաւորն Աշոտ, և պարգեւս թագաւորին շատ գանձ ոսկի, արծաթ, և գիր այսպէս.

« Աշոտոյ, արքայի Հայոց մեծաց, հոգեւոր որդւոյ իմոյ ի Տէր խնդալ։

Ծանիցէ իմաստութիւնդ քո թէ որչափ եղեւ ողորմութիւն Աստուծոյ ի վերայ մեր, և ետ մեզ յաղթութիւն ի վերայ թշնամեացն մերոց, զի ոչ կարացին կալ ի դիմի։ Վասն որոյ մաշեցաք ի սուր սուսերի զզօրսն Տաճկաց. և զմնացուածս արարաք հարկատու մեզ. և բազում աւարաւ և գերութեամբ նոցա դարձաք ի ներքին կողմն աշխարհին, և հանաք զնշխարս սուրբ Յակոբայ ի Մծբին քաղաքէ և տարաք զհետ մեր։

Եւ եկաք զներքին կողմամբքս մեր, ջնջեցաք ի սպառ զթշնամիս մեր. և յետ այնր դարձաք և ձմերեցաք ի դուրս, և տուաք զօրաց մերոց հանգ, և ապա եկաք ի մեծն Անտաք, առաք զնա և գերեցաք զամէն աւանս նորա շուրջանակի. հասաք ի Համս և ի Համա. և հարկատուք մեր հնազանդութեամբ ընկալան զմեզ։ Գնացաք ի յանառիկն Հալապ. և ելան ի պատերազմ դէմ մեր. կոտորեցին զնոսա զօրքն մեր. և շատ գանձ ոսկի և արծաթ և աղջկունս խլեցին ի նոցանէ։ Նոյնպէս արարին զԱնտաօլիքն։ Գնացաք ի Դմշխ, և կամեցաք պաշարել

գնա. իսկ քաղաքապետն՝ այր իմաստուն և ալեւոր, եւ բազում ծախօք և եկն յառաջ մեզ. և աղաչեաց լինել հարկատու մեզ. առին ի մէջ զօրավար, և տուին մեզ գիր ծառայութեան։

Գնացաք և ի Տիբերիա, ուր Տէրն մեր շրջեալ անդէր զաստուածային սքանչելիսն և զնշանս. և նոքա այլ բերին մեզ պանձս շատ. և առին ի մէնջ զօրավար, և տուին մեզ գիր ծառայութեան։

Գնացաք ի Նազարէթ, ուր սուրբ կոյսն Մարիամ ընկալաւ զաւետիսն ի հրեշտակէն։ Ելաք ի լեառն Թափօր ուր Տէրն մեր այլակերպեցաւ, և երկրպագեցաք։

Եւ ահա մինչդեռ անդ էաք՝ եկին առ մեզ յԽամէէ և յԵրուսաղեմէ, շատ աղաչեցին տալ մեզ հարկս, և առնուլ ի մէջ զօրավարս։

Կամեցաք զսուրբ գերեզմանն ազատել ի Տաճկաց. և ուրեցաք բազում հեծեալս և զօրավարս յամենայն գաւառս, և եղեն մեզ հարկատուք։ Առաք զԱքքա և զՏրապօլի և զամենայն բերդս և զքաղաքս ծովեզերով և զԾիպէլն և զՀեռուն և զՊուրզաւ. և վրաք յամէնն հեծեալս. և շահեցաք ի Գարանու զհողաթափ Քրիստոսի, և ի Բերիդոն՝ զպատ-

կերն Քրիստոսի, զոր յետ ժամանակաց Հրեայքն խաչեցին, և զՀերս Յովհաննու Մկրտչի. և առաք, տանեմք ի պահպանութիւն աստուածապահ քաղաքին մերոյ Կոստանդնուպօլսի։ Արդ՝ լսելով զայս ամենայն ուրախ լեր և փառս տուր Աստուծոյ որ ի ձեռն մեր թագաւորութեանս լայն և արձակ փառաւորի անունն Քրիստոսի։ Քանզի ի մեծէն Կեսարիոյ մինչև ի Բաղդատ հնազանդ արարաք ծովեզերօքն՝ ի ներքև մեր հրամանացս. ընդ որում զոհութիւն տացուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ»։

Գրեաց և Պրօթոսպաթարն և ի Տարօնոյ զօրավարն զի տարցեն առ թագաւորն Հայոց Աշոտ զխոսաֆուլն և զեկան ոսկի երեսուն հազար և ծառայս երկու հազար, ձի տասն հազար և ջորի հազար վասն սիրոյն և միաբանութեան զոր արար ընդ նմա։

Գրեաց Աշոտ և առ վարդապետն Պանդալեոն և առ Սպաթարն զի արագ արագ ի Կոստանդնուպօլիս երթիցեն շատ եպիսկոպոսք մեծ տօն կատարել Քրիստոսի պատկերին և հողաթափացն և հերացն Յովհաննու և զի խօսեսցին ընդ վարդապետսն Յունաց առաջի արքային, զոր և առաքեաց հայրապետն անդանդաղ։ Գնացին, և մեծաւ պատուով և ընծայիւք դարձան ի Շիրակ։

Արդ յետ այսր անկանէր ահ ի սիրտ թագաւորին և երկիւղ մահու և ահ դատաստանին Աստուծոյ վասն անիրաւ սպանմանն Նիկեփոռայ։ Եւ յետ հինգ ամի թագաւորութեան իւրոյ առաքեաց և եբեր զորդին Ռոմանոսի. և մեծաւ ժողովով եդ զթագն ի գլուխ Վասլին և երկիր եպագ նմա. և ինքն գնաց կրօնաւոր եղաւ ի յապաշխարել զմեղս անձին իւրոյ »։

*

Մխիթար Այրիվանեցի՝ յանուանէ միայն կը ճանչնայ զՉմշկիկ. « Ռոմանոս՝ Դ (ամս), Նիկեփոր՝ Է, Կիւռ—ժան՝ » (էջ 20)։

Սամուէլ Անեցի (էջ 101). « ՋՀԲ. Յովհաննէս Չմշկիկն ի Չմշկածակացն՝ եսպան զՆիկեփոռ կայսրն՝ խորհրդով թագուհւոյն զոր էառ՝ և նստաւ թագաւոր յՍտամպօլ։ ՋՀԲ. Կ. Պօլսի՝ Կիւռժան ամս Զ։ Անէութիւն հայրապետական աթոռոյն՝ ամ մի։ Տէր Խաչիկն ամս ԻԱ. բայց ԺԹ ստոյգ. ՋՀԳ. գիսաւոր աստղ երեւցաւ։

Այս Յովհաննէս Չմշկիկ յորժամ եսպան զՆիկեփոռ և եղեւ ինքն թագաւոր, ելեալ յՍտամպօլայ ի դուրն բազմօք զօրօք և ի մեծէն Կեսարիոյ մինչեւ դուռն Բաղդատայ

և մինչ յԵրուսաղէմ ծովեզերօքն էառ՝ և հարկատու արար ԳԾ քաղաք։

Կոտորեաց և զզօրսն Խալիֆային և էառ ի նոցանէ ԽՌ ձի և ջորի, և յղեաց ԲՌ ծառայ և ԺՌ ձի Հայոց արքային Աշոտոյ. զի Աշոտ առեալ էր յօգնականութիւն նմա ԶՌ ձիաւորս և այլ բազում հետեւակս։

Գրեաց գիր ողջունի առ Աշոտ թէ և յաղթութեան մերում շահեցաք զազատութիւն Երուսաղէմի, այլ և զհողաթափն Քրիստոսի և զպատկերն որ ի Բիւրիգոն, և զհերսն Յովհաննու. և զմարմին սրբոյն Յակոբայ Մծբնայ տանիմք ի պահպանութիւն քաղաքին մեր՝ և դուք ողջ լերուք։

Եւ գիտելի է զի Զմշկիկ Յովհաննէս հայ էր ազգաւ. և ի սպանանելն զՆիկեփոռ՝ խնամօք փախոյց զորդին Ռոմանոսի՝ երկուցեալ ի թագուհւոյն. զի մի՛ նենգիւ սպանցէ զանմեղ տղայն, և յետոյ բերեալ թագաւորեցոյց զնոսա ի նմին քաղաքի։

Եւ յետ Է. ամաց զղջացաւ Զմշկիկ ընդ սպանումն Նիկեփոռայ, և զորդիսն Ռոմանոսի բերեալ, զՎասիլ և զԿոստանդին, և եդ զթագն ի գլուխ Վասլին և ինքն երկիր եպագ նմա. և գնացեալ ի վանսն կրօնաւորեցաւ՝ և բարւոք վախճանեցաւ։

*ՋՀԷ. Զմշկիկ ցղջացեալ եթող զթագաւորութիւն և եղեւ կրօնաւոր և թագաւորեցոյց զՎասիլ որդի Ռոմանոսին ։ Սա բարի անուն ստացեալ յաշխարհի, վասն որոյ զբազում հակառակորդս իւր արար հնազանդ »* (էջ 102)։

*Սամուէլ Անեցւոյ այս կտորին մէջ կան կրկնութիւնք, և ակն յայտնի է թէ ձեռագրական յաւելուած մը խառնուած է բնագրին հետ։*

*Վարդան պատմիչ ցուրտ յիշատակութիւն մը կ'ընէ միայն. « Ապա Ռոմանոս, և ապա Նիկեփոռ, ապա Կիւռ—Ժան և ապա Վասիլն »* (էջ 91)։

*Նոյնը կ'ընէ նաեւ Կիրակոս. « Զկնի նորա Նիկեփոր, և զկնի նորա Կիւր-Ժան »* (էջ 48) *« Ցետ Կիւր-Ժանայ կայսեր՝ առնու զթագն Վասիլն »* (էջ 50)։

*

*Ամենէն աւելի Զմշկիկի վրայ ընդարձակ խօսած է Մատթէոս Ուռհայեցի, որ աղբիւրն եղած է նաեւ Գունդստապլի.*

*« Դարձեալ ի թուականութեանս Հայոց ՆԺԸ. ամս մահապարտ որ և յարգելական կղզւոյն կայր, որում անուն կոչէին Զմշկիկ,*

գաղտ յուղարկեալ առ նա անօրէն և պիղծ թագուհին, որպէս թէ հրամանաւ թագաւորին, եհան զնա ի կղզւոյն և եբեր ի Կոստանդնուպօլիս, առանց գիտելոյ թագաւորին, և ի ծածուկ արար ընդ նմա դաշինս սպանանել զՆիկեփոր թագաւորն, և խոստացաւ լինել նմա կին, և նստուցանել զնա յաթոռ թագաւորութեան ։ . Եւ հաւանեցաւ առնել զհրամանս անօրէն թագուհւոյն ։ Եւ սուրբ թագաւորն Նիկեփոր նստեալ կայր ի գահոյսն իւր ի ժամ երեկոյին, և վառեալ մոմեղինօք ընթեռնոյր զաստուածային կտակագիրսն ։ Եւ եկեալ թագուհին շաղապատէր զթագաւորան, և զթուրն, որ կայր մօտ առ նա, փոխակապս արարեալ պնդագոյն և ելեալ գնաց առ չարախորհուրդն իւր. և ձեռօքն իւրովք տայր զթուրն մահաբեր ի նա՝ առ ի հեղուլ զարիւն արդարոյն։ Եւ եկեալ Զմշկիկն և ծածկաբար ի ներքս վազեաց ի սենեակ թագաւորին։

Եւ տեսեալ զնա թագաւորն՝ ասէ ցնա. « Շո՛ւն կատաղեալ, ասա զի՞նչ ուզես » ։

Եւ քաջապէս յարուցեալ թագաւորն յուզէր զթուրն, և տեսեալ զի սաստկապէս պնդեալ էր, յայնժամ Զմշկիկն յարձակեցաւ ի վերայ թագաւորին և անխնայ գա-

զանարար խողխողէր զամենաբարի արքայն և հերձեալ զնա յերիս մասունս. և սպանեալն սուրբ Թագաւորն ծածկեալ լինէր ի մէջ արեանն իւրոյ և աւանդէր զհոգին ի Քրիստոս պառն մահուամբ։

Եւ տեսանէին զի այծեայս զգեցեալ էր Թագաւորն մերկուց ի վերայ մարմնոյն՝ ծածկեալ ծիրանեօք. և արիւնն սփռեալ ցայտէր զերեսօք սպանողաց զայրն Աստուծոյ. և զմարմին նորա Թաղեցին մօտ առ սուրբ Թագաւորացն յարժանաւոր գերեզմանի։

Եւ նստաւ յաթոռ Թագաւորութեան Յունաց անօրէն Զմշկիկն և առեալ էառ զԿոստանդնուպօլիս և զամենայն սահմանս աշխարհին Հոռոմոց արար ընդ իշխանութեամբ իւրով. և զորդիս Ռոմանոսի Թագաւորին փախոյց ի յանօրէն Թագուհւոյն ի Վասակաւան ի յԱնձիթ գաւառին. տարան զՎասիլն և զԿոստանդինն առ Սարամիկն՝ մեծ Մխիթարայ մայրն, զի մի՛ զեղ մահու տացէ նոցա Թագուհին և սպանանիցէ զնոսա։

Եւ յաղագս անիրաւ մահուանս այս կայր ի մեծի տրտմութեան Թագաւորն Զմշկիկ անհանգիստ վիրաւորեալ ոգւով»։

Նոյնը կ'ըսէ յէջ 15 խօսելով Դեմեսլեկոսի վրայ՝ զոր Մշեհ կ'անուանէ։

*«Եհաս (ի Տիգրանակերտ) համբաւ սպանմանն Նիկեփորայ թագաւորին Հոռոմոց։ Եւ յայնժամ իշխանք այլազգեացն յուղարկեցին զիշխանս քրիստոնէից զքառասունսն առ խալիփայն ի Բաղդատ քաղաք, և ամենեքեան անդ մեռան։ Եւ գրեաց Դեմեսլիկոսն ի Կոստանդնուպօլիս թուղթ, և գրեաց ի նմա անէծս ցաւագինս և ասէր այսպէս, զի թէ «Մեք ոչ էաք արժանի ըստ օրինի քրիստոնէից մտանել ի յօրհնել հող գերեզմանի, այլ եղաք ժառանգորդս անիծեալ հողոյ և չարագործաց գերեզմանի. և ահա մեք զձեզ ոչ գիտեմք, որ նստաւ յաթոռ սուրբ թագաւորութեանն Հոռոմոց. և զմահս մեր և զարիւն, զոր հեղաւ ի դուռն Ամիթ քաղաքին, և զոտար մահս մեր ի գլխոյ քո խընդրեսցէ Քրիստոս Աստուած մեր ի յաւուր դատաստանին, եթէ ոչ արասցես վրէժխընդրութիւն ի քաղաքէն Ամթայ»։*

*Եւ իբրեւ հասանէր թուղթս այս առ թագաւորն Զմշկիկ ի Կոստանդնուպօլիս, և եղեւ յորժամ լուաւ զայս թագաւորն, շարժեալ լինէր մեծաւ բարկութեամբ և լի իսկ եղեալ ամենայն սրտմտութեամբ, և ի նոյն ամին զօրաժողով արար առհասարակ զամենայն աշխարհն արեւմտից, զայր զօրացեալ, որ-*

պէս հուր բորբոքեալ, և յարձակեցաւ ի պատերազմ ի վերայ Տաճկաց և կամեցաւ զմուտն յաշխարհն Հայոց առնել։

Յայնժամ ամենայն թագաւորազունքն Հայոց՝ ազատքն և իշխանքն և ամենայն մեծամեծքն աշխարհաց տանն արեւելից ժողով արարին առ թագաւորն Հայոց Աշոտ Բագրատունի. թագաւորն Կապանին Փիլիպպէ և թագաւորն Աղվանից Գուրգէն, Աբաս Կարուց տէրն և Սենեքերիմ Վասպուրականին տէրն և Գուրգէն Անձեւացեաց տէրն և բովանդակ ամենայն տունն Սասանու. և բանակ հարեալ ի Հարքայ գաւառին՝ արք իբրեւ ութսուն հազար։

Եւ եկեալ հրեշտակ թագաւորին Հոռոմոց առ նոսա և տեսին պատրաստական զամենայն տունն Հայոց ժողովեալ ի մի վայր և երթեալ պատմեցին թագաւորին Զմշկանն. գնացին և յիշխանացն Հայոց զկնի հրեշտակացն Հոռոմոց՝ իմաստասէրն Լեւոն և Սասա իշխանն Թոռնեցին և այլ եպիսկոպոսք և վարդապետք և արարին սէր և խաղաղութիւն ընդ թագաւորին Հոռոմոց և ընդ Աշոտայ արքային Հայոց։ Եւ գայր խաղայր թագաւորն Զմշկիկ ահագին բազմութեամբ և հասանէր ի Տարօն գաւառ Հայոց և իջեալ

ի Մուշ առաջի Այծեաց բերդին. և յառաջին գիշերին բազում նեղութիւն կրեաց զօրքն Հոռոմոց ի հետևւակ զօրացն Սասանու և եկին իշխանքն և վարդապետն Հայոց առ թագաւորն Հոռոմոց և մատուցանէին առաջի նորա զթուղթ Վահանայ Հայոց կաթողիկոսին։

Եւ թագաւորն առեալ ընկալաւ զնա և յոյժ մեծարեաց զթուղթն և զբերողն. և հաստատեաց ուխտ սիրոյ ընդ Հայք և խնդրեաց զօրս յԱշոտոյ գալ նմա յօգնականութիւն. և տուեալ Աշոտ զօրս ի տանէ Հայոց վառելոց և այր պատերազմողս իբրև տասն հազար, խնդրեաց կերակուրս, ռոճիկս. և զամենայն տուեալ նմա Աշոտ։ Եւ վարդապետն Հայոց զՂևոնդ, զեպիսկոպոսն և զիշխանսն մեծաւ պարգևօք յուղարկեաց առ Աշոտ թագաւորն Հայոց։

Յայնժամ Զմշկիկ՝ որ ասէին Կիւռժան, դարձաւ ի պատերազմ ի վերայ Տաճկաց և մեծաւ յաղթութեամբ և արամութեամբ, կոտորածով և արեամբ ելից զամենայն երկիրն. և զբազում քաղաքս և զամուր բերդս ի հիմանց քարայատակս արար երեք հարիւր մինչև ի սահմանս Բաղդատ քաղաքին։ Բայց զԱւռհա ոչ արար աւեր յաղագս կրօնաւո-

բացն՝ որ բնակեալ էին ի լերինն և յամենայն սահմանս նորա իբրև երկոտասան հազար, և գայր հասանէր ի վերայ Ամթայ քաղաքին բազում սրամտութեամբ։ Իսկ տէրն Ամթայ քաղաքին կին էր, որ էր քոյր Համանոյ ամիրային Տաճկաց։

Եւ յառաջ ժամանակաց Թագաւորն խառնակեալ էր ընդ նմա մեղօք և վասն այնորիկ չարար հնարս առնելոյ զքաղաքն Ամիթ։ Եւ ելեալ կնոջն ի վերայ պարսպի քաղաքին, ասէ ցԹագաւորն. « Ի վերայ կնոջ զաս ի պատերազմ, և չհամարի՞ս զայս քեզ նախատինք »։ Եւ ասէր Թագաւորն. « Երդում ունիմ առ իս քակել զպարիսպ քաղաքիդ, և ազատեսցին մարդիկդ »։ Ասէր տիկինն քաղաքին. « Էջ քակեա զկանդարայն՝ որ կայ ի վերայ Տգլաթ գետոյ, և այնու կատարեսցես զերդումն քո »։ Եւ արար Թագաւորն այնպէս. և առեալ բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ, և թողեալ զԱմիթ վասն կնոջն իւրոյ և վասնզի Զմշկիկն էր ի գաւառէն Խոզնայ, ի տեղւոյն որ այժմ կոչի Զմշկածակք, և կինն ի նմին սահմանացն էր. զի յայնմ ժամանակին Տաճկունքն էին տիրեալ բազում տեղեաց։ Եւ ահա Թագաւորն Յունաց խաղայր գնայր ընդ աշխարհն

. Տաճկաց արեանհեղութեամբ մինչեւ ի սահ-
մանս Բաղդատ քաղաքին. և շրջան առեալ զնորքին կողմն աշխարհին՝ գնայր յԵրուսաղէմ քաղաքն. և գրեաց Թագաւորն Զմշկիկ Թուղթ առ Աշոտ Թագաւորն Հայոց այսպէս.

« Աշոտ շահանշահ Հայոց մեծաց, և իմ հոգեկան զաւակ, լուր և իմացիր թէ որչափ ինչ սքանչելիս արար Աստուած առ մեզ և զարմանալի յաղթութիւնս, որ և իմանալն անկարելի է զԱստուծոյ քաղցրութիւնն և զահաւոր մարդասիրութիւնն՝ զոր արար Տէր ընդ ժառանգութիւնս իւր։

Ի յայսմ տարւոջս ի ձեռն թագաւորութեանս մերում կամեցաք և քո փառաւորութեանդ ծանուցանել, ով Աշոտ Բագրատունի և զաւակ իմ. իմացուցանեմ քեզ, որ և դու, որպէս և քրիստոնեայդ ես և հաւատարիմ սիրելի թագաւորութեանս մերում, ուրախանաս և փառաւորես զահաւոր զմեծութիւնն Քրիստոսի Աստուծոյ մերոյ և գիտասցես թէ որչափ օգնեաց է Աստուած քրիստոնէից յամենայն ժամանակի, քանզի յետ հարկատու առնելոյ թագաւորութեանս մերոյ զամենայն արեւելս Պարսից. եւ կամ թէ որպէս հանաք զնշխարս սրբոյ Հայրապետին

Ցակոբայ Մծբնայ ի քաղաքէն Տաճկաց և առաք ի Տաճկաց զհարկն մեր, և զգերութիւնն հանաք ի նոցանէն և ելեալ գնացաք։

Եւ վասն ամբարտաւանութեան և հպարտութեան Գմիր–ըլ–մումնոյ իշխանին Ափրիկեցւոց, զորս Մախըր Արապիկ կոչեն, որ և բազում զօրօք եկեալ ի վերայ մեր և տա ժամ մի ի վտանգի արկին զզօրսն մեր. և ապա յաղթեցաք նոցա մեծաւ զօրութեամբ և օգնականութեամբն Աստուծոյ, և ամօթալիցս դարձաւ որպէս զայլ թշնամիսն։

Եւ յայնժամ առաք զներքին կողմն աշխարհին նոցա և ի սուր սուսերի մաշեցաք զպատառս բազումս և փութապէս դարձաք ի դուրս և արարաք ձմերոց և զամենայն հեծելազօրսն մեր հանգեցաք. յապրիլի ամսեանն ի մուտն դիմեալ խաղացաք ի յաշխարհն Փիւնիկեցւոց և Պաղեստինացւոց և քննայոյզ առնէաք զպիղծ Ափրիկեցիսն, որք եկեալ էին ի գաւառն Շամայ։

Եւ ելեալ ամենայն զօրօք մերովք դիմեալ խաղալով գնացաք ի յԱնտիոքայ և անցաք ընդ ամենայն գաւառսն մերոյ թագաւորութեանս և ի հնազանդութիւնս արարաք մեծաւ հարկապրութեամբ և անհամար գերութեամբ և հասաք մինչեւ ի Հէմս քաղաք.

և ելեալ ընդունեցին զմեզ բարւոք՝ որք մեր հարկատուքն էին գաւառականքն. և հասանէաք մինչև ի Վաղոլմէքն, որ անուանեալ կոչի Իլուպօլիս, որ է Արեգ քաղաք, երևելի և ահաւոր պարսպեալ մեծ յոյժ և հարուստ:

Եւ ելին պատերազմաւ ընդ առաջ մեր, և բազմութիւնք զօրաց մերոց հալածական արարին զնոսա և ի բերան սրոյ կոտորեցին: Եւ յետ սակաւ աւուրց պաշարեցաք զԱրեգ քաղաք և բազում գերութիւնս, մանկունս և աղջկունս առին զօրքն մեր և զգանձս ոսկւոյ և արծաթոյ անասունս բազումս առին. և անտի ելեալ յառաջացաք ի մեծ քաղաքն Դամասկոս, կամեցաք և զայն պաշարել:

Իսկ քաղաքապետն ալևոր էր և այր իմաստուն, առաքեաց առ թագաւորութիւնս մեր և բազում ընծայիւք աղաչեաց զմեզ չանկանիլ ի գերութիւն և ոչ գնալ ի ծառայութիւն, որպէս զՎաղոլմէքայ զընակիչսն, և ոչ զգաւառոն աւերել որպէս զնոցայն: Եւ բերին բազում տուրս պատուականս և յօլով ձիս և ջորիս երևելիս և գեղեցիկ սարք յոսկւոյ և արծաթոյ և հարկս յԱրաբացեաց ոսկւոյն քառասուն հազար դահեկանս. առին

և ի մէնջ զօրավարս և ետուն մեզ գիրս, զի յաւիտեան ծառայք կայցեն թագաւորութեանս մերում՝ ազգ զհետ ազգի և ցեղ զհետ ցեղի։

Եւ կարգեցաք անդ զօրավար զայր մի որ կոչէր Թուրք, այր փառաւոր Բաղդատեցի, որ եկն առ մեզ ի ծառայութիւն հինգ հարիւր ձիաւորով և հաւատաց ի Քրիստոս. որ և յառաջն ծառայեալ էր թագաւորութեանս մերում։ Եւ Դամասկացիքն արարին դաշինս երդման, զի տացեն անխափան ըզհարկն, և տացին զօլ թագաւորութեանս մերում, և ընդ թշնամիսն մեր մարտնչել. և յաղագս այսորիկ անպաշարելի թողաք զնոսա։ Եւ անտի յարուցեալ գնացաք ի Տիբերական ծովն, ուր տէր մեր Յիսուս Քրիստոս հարիւր յիսուն և երեք ձկամբն զաքանչելիս արար. կամեցաք և զայն քաղաքն պաշարել իսկ նոքա եկին ի հնազանդութիւն մերոյ թագաւորութեանս և բերին մեզ ընծայս բազումս, որպէս Դամասկացիքն, և հարկս երեսուն հազար դահեկանս առանց այլ արոց և խնդրեցին զօրավարս ի մէնջ և գիր ծառայութեան տուեալ մեզ հաստատուն որպէս զԴամասկացիքն՝ հնազանդ լինել մեզ յաւիտեան և տալ անխափան զհարկն մեր։ Յայնժամ թողաք

զնոսա ազատ ի գերութենէ և ոչ աւերեցաք զքաղաքն և ոչ զգաւառսն՝ և ոչ արարաք զնոսա յաւարս, վասն զի Հայրենի տուն էր սրբոց առաքելոցն։ Նա աւանիկ և զՆազարէթ, ուր զաւետիսն իսկ ի Հրեշտակէն լուաւ Աստուածածինն սուրբ Կոյսն Մարիամ. նոյնպէս գնացաք և ի Թափորական լեառն և ելաք յայն տեղւոջն, ուր այլակերպեցաւ Քրիստոս Աստուած մեր։ Եւ մինչդեռ յայն տեղւոջն կայաք, եկին առ մեզ ի Ռամլէէ և յԵրուսաղեմէ աղաչել զԹագաւորութիւնս մեր՝ ողորմութիւնս գտանել ի մէնջ. խնդրեցին զօրավար և եղեն Հարկատուք և ուխտեցին լինել մեզ ի ծառայութիւն, զոր արարաք իսկ։ Կամեցաք և զսուրբ գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ազատել ի գերութենէն Տաճկաց։ Կարգեցաք զօրավարս յամենայն թեմս, որք Հնազանդեցան և եղեն Հարկատուք թագաւորութեանս մերում, որ է Պենիադա, որ կոչի Դեկապօլիս, և Գենեսարէթ և ի յԱրկեա, որ կոչի Պտողմիա և գրով յանձին կալան ամ յամէ անխափան տալ զհարկն և լինել ընդ ծառայութեամբ մեր։ Գնացաք մինչեւ ի Կեսարիա, որ է եզր մեծի ծովուն Ովկիանոսի, Հնազանդեցան և եկին ընդ մերով իշխանու-

թեամբս ։ Եւ եթէ ոչ էին փախուցեալ ծովեզերաց բերդերն, որք էին բնակեալ պիղծ Ափրիկեցիքն, զարհուրեալք ի մէնջ, օգնականութեամբն Աստուծոյ ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ էաք գնացեալ և ի սուրբ տեղին Աստուծոյ էաք յաղօթս կացեալ ։ Եւ իբրեւ լուաք եթէ փախեան ծովեզերաց բնակիչքն, յայնժամ զվերին կողմն աշխարհին հնազանդեցաք և ընդ Հռոմոց իշխանութեամբ արարաք և կարգեցաք անդ զօրավար և ի մեր կոյս արարաք և զոչ հնազանդեալսն պատերազմաւ պաշարեցաք և առեալ գնացաք ընդ ծովեզերին պողոտայն, որ դէմ յանդիման երթայր ի Վսիտոն քաղաքն յերեւելին և յանուանին պարսպեալ յոյժ, որ այժմ ասի Պէրութ, պատերազմեալ և սաստիկ կռուով առեալ զնա և հազար Ափրիկեցի ձերբակալս արարաք, նոյնպէս և զՆուսերի զԱմիր–ըլ–մումնոյ և զայլ լաւագոյն իշխանսն. և յայն քաղաքն զօրավար եդաք և անտի կամեցաք ի Սիդոն անցանել ։ Իսկ յորժամ լուան Սիդոնացիքն, առաքեցին առ մեզ զծերսն քաղաքին իւրեանց եկին և աղաչեցին զթագաւորութիւնս մեր և խնդրեցին, զի հարկատուք լինիցին մեզ մեծաւ ահիւ և կալ մնալ մեզ ի ծառայութիւն.

զոր լուաք իսկ աղաչանաց նոցա և կատարեցաք զկամս նոցա և առաք ի նոցանէ զհարկն և տուաք նոցա զօրավարս ։ Եւ անտի յարուցեալ գնացաք ի Բիբղոն հին և ամուր բերդն և զայն եւս պատերազմեալ առաք և զբնակիչս նորա ի գերութիւն մատնեցաք ․ և մեծաւ աւարաւ և գերութեամբ անցաք ընդ ամենայն ծովեզերեայ քաղաքնին ընդ դժուար և ընդ նեղ ճանապարհին ընդ որ այլք զօրք հեծելոց ոչ երբէք էր անցեալ նեղ և նուրբ և չար ճանապարհ․ և անդ պատնէաք չէն և վայելուչ քաղաքանի և ամուր բերդեր, յորում կային Տաճիկ պահապանք, զամենայն պաշարեցաք և քարայատակ կործանեցաք , և զբնակիչսն ի գերութիւն վարեցաք ։ Եւ յառաջ քան զհասանելն մեր ի Տրապոլիս հեծելազօրս առաքեցաք զԹիմոսցիսն և զՏաչխամատացիսն ի կապանն, որ կոչի Քարիտես, վասն զի լուեալ էր մեր, եթէ պիղծ Ափրիկեցիքն անդ նստէին ի կապանին․ եւ հրամայեցաք քմինս գնել և զարանս մահու գործեցաք նոցա․ և որպէս պատուիրեցաքն նոյնպէս և արարին․ և երկու հազարք յայտնի եղեալ ի նոցանէ ի վերայ զօրաց մերոց՝ զորս զբազումս ի նոցանէ սպանին և յոլովս ի նոցանէ արարին կալանաւորս , և

ածին առաջի մերոյ թագաւորութեանս. նոյն-
պէս և ուր հանդիպէին՝ փախստականս առ-
նէին զնոսա։ Եւ իսպառ ջնջեցաք զամենայն
աշխարհն Տրապոլսոյ, զայգիսն և զձիթե-
նիսն և զբուրաստանս նոցա առհասարակ
կոտորեցաք և յաւեր դարձուցաք և արմա-
տախիլ արարաք զամենայն զաւառն. և Ա-
փրիկեցիքն, որ էին անդ՝ համարձակեցան
և ելին ի պատերազմ ընդդէմ մեր։ Յայն-
ժամ յարձակեցաք ի վերայ նոցա և կոտո-
րեցաք զամենեսեան առհասարակ, և ապա
առաք զմեծ քաղաքն զՃուէլն, որ Գաբա-
ւոնն կոչէին, և զՎաղանեացն և զՍիհունն,
և զինքն իսկ զհռչակաւորն Զուրգաւ, և ոչ
մնաց մինչև ցԹամլէ և ցԿեսարիա՝ ոչ ծով
և ոչ ցամաք, որք ոչ հնազանդեցան թա-
գաւորութեանս մերում, զօրութեամբն Անե-
ղին Աստուծոյ, զի մինչև ցԲաբելոն հնա-
զանդ արարաք թագաւորութեանս մերում և
արարաք ծառայս զնոսա մեզ։ Վասն զի ամիս
եւթն շրջեցաւ թագաւորութիւնս մեր յայնմ
աշխարհին հանդերձ զօրօք բազմօք. և սպա-
ռեցաք զքաղաքս և զգաւառս և ոչ իշխեաց
ելանել Ամիր-ըլ-մումնի ի Բաբելոնէ ընդ-
դէմ մեր և կամ հեծեալս արձակել յիւր
զօրացն յօգնութիւն։ Եւ եթէ չէր լեալ խռո-

տագոյն խորշակ և անջրդի ճանապարհ ի յայն տեղիսն, որ մերձ է ի Բաբելոն, որպէս և քո փառաւորութիւնդ իսկ գիտեմ ունի, թագաւորութիւնս մեր մինչև ՚ի Բաբելոն երթեալ էր. որ և զինքն իսկ յերկիրն Եգիպտացւոց հալածեցաք և իսպառ յաղթահարեալ շնորհօքն Աստուծոյ, որ թագաւորեցոյցն զիս։

« Ապստամբեցան այժմ ամենայն Փիւնիկէ և Պաղեստին և Ասորիք ի ծառայութենէ Տաճկաց և հաւանեցան ընդ Հոռոմոց իշխանութեամբ։ Այլ և Լիբանանու մեծ լեառն հնազանդեցաւ ընդ մերով իշխանութեամբս. և զամենայն Տաճկունս, որ անդ կային, ահագին բազմութեամբ, զերութեամբ առաք բաշխեցաք հեծելոց մերոց. և զԱսորեստան քաղցրապէս և մարդասիրապէս հովուեցաք. հոգիք իբրև քսան հազար հանաք, և ի Գաբաւօն բնակեցուցաք։ Ահա գիտասցես, զի այսպիսի յաղթութիւնս ետ Աստուած քրիստոնէից, որ ոչ եղև երբէք. և գտաք յայնմ քաղաքին ի Գաբաւօն զսուրբ հողաթափն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որով և շրջեցաւ իսկ ի վերայ աշխարհի. նոյնպէս և զպատկերն Փրկչին մերոյ, զորս Հրեայքն յետ ժամանակի խոցեալ էին, ուստի վազ-

վաղակի եղ արիւն և ջուր, և զխոց տիգին. գտաք և յայնմ քաղաքին զպատուական հերս գլխոյ Կարապետին և Մկրտչին Յովհաննու. և առեալ տանիմք ի պահպանութիւն աստուածապահ քաղաքին մերոյ: Եւ արդ ի սեպտեմբեր ամսոյն հաճութեամբն Աստուծոյ զմեր աստուածակեցոյց զօրքս ի յԱնտիոք հանաք և վասն այսորիկ քո փառաւորութեանդ գիտացուցաք, վասն զի ի ձեռն մեր հրամանացս զարմանաս և դու ինքն իսկ փառաւորես զԱստուծոյ մեծ մարդասիրութիւնն և գիտասցես թէ որչափ բարի գործեցան այժմիկ և կամ քանի յաւելան և լայն և ընդարձակ եղեւ իշխանութիւն սրբոյ Խաչին Քրիստոսի և մինչեւ ցայս տեղիք անուանն Աստուծոյ գովի և փառաւորի. և ճոխանայ թագաւորութիւնս մեր անուամբ մեծութեամբ և զօրութիւնն Աստուծոյ բարբռանեալ գովի ի բերանոյ մերմէ. զորս ընդ ձեռամբ մերով հնազանդեցոյց Աստուած, ընդ որում հանապազօր օրհնեալ տէր Աստուած Իսրայելի:

« Եւ յանթիփատէն պռոտօսպաթրին Դերջնայ, Լեւոնի և Տարօնոյ զօրավարին ողջոյն և ի տէր խնդալ:

« Արդ գրեցաք որ զԱյծեաց լերդն որ-

պէս յանձին կալար՝ չես տուեալ. և այժմ գրեցաք առ զօրավարդ մեր, որ ոչ բերդն առնու և ոչ զցորեանն զոր սերմանեցեր, զի այժմ չեղեւ առ մեզ պէտք. բայց զքառասուն հազար ոսկօլօնն, զոր յուղարկեցաք, տուր տանել առ զօրավարն մեր, որ առաքէ առ թագաւորութիւնս մեր. և զվաստակոցդ քոց և զարմտեացդ գտանես զփոխարէնն ըստ սերմանեացն զամենայն բարի մի ըստ միոջէ »։

Դարձեալ գրեաց և առ վարդապետն Հայոց ի Ղեւոնդն այսպէս. «Մեր հաճելի և սուրբ թագաւորութեանս սիրեցեալ մեծ իմաստասէր Պանդալեւոն, ողջոյն։ Ահա հրամայեցաք մեք որ ի դարձին մեր ի Տաճկաց գտանեմք զձեզ ի սուրբ քաղաքս և կամ ի Սլեսինն, յորժամ եկիր առ մեզ ի յԱշտոյ շահնշահէ և հոգիական զաւակէ մերմէ և դարձուցեր զամենայն սրամտութիւնս ի նմանէ և տարար զԲագրատ ի Պապն յԱնձաւացին. դու և ես Սատ թոռնեցին պապօսպաթարն։ Եւ արդ ջանացիր, որ գտանեմ զքեզ յաստուածապահ քաղաքին մեր և անդ արասցուք տօն մեծ հողաթափացն Քրիստոսի Աստուծոյ մերոյ և սուրբ հերացն Մկրտչին Յովհաննու։ Եւ արդ ահա հաճեալ

ունիմ և զայս ինչ ի քէն, վասն զի խօսեսցիս ընդ մեր իմաստասէրսն և ընդ փիլիսոփայիցն մերոց, և ուրախացուք մեզ ի ձեզ. և Աստուած ի մեզ և ի ձեզ. և տէր Յիսուս եղիցի ընդ իւրում ծառայիցդ»։ Իսկ յորժամ լուաւ զայս վարդապետն Հայոց Ղեւոնդ, յարուցեալ գնաց ի Կոստանդնուպօլիս, և արարին տօնս հրաշափառս հաղաթափացն Աստուծոյ և հերաց սրբոյ Կարապետին։ Եւ եղեւ յայնմ աւուր մեծ ուրախութիւն ի Կոստանդնուպօլիս, և խօսեցաւ վարդապետն Հայոց առաջի թագաւորին ընդ ամենայն իմաստասիրացն Հոռոմոց և անպարտելի երեւեցաւ ի մէջ վարդապետացն տանն Յունաց. վասն զի յամենայն հարցմունս հաճելի երեւեցաւ։ Եւ բազում զօրութեամբ բարեբանեցին զնա և զուսուցիչն նորա, և մեծաւ պարգեւօք ի թագաւորէն երեւելիք և պատուականք շնորհեցաւ նմա. և գնաց մեծաւ ուրախութեամբ յաշխարհն Հայոց ի մեծ աւանն Շիրակայ։

Արդ ի յետ բազում պատերազմացն և յաղթութեանցն, զոր վանեաց կայսր Զմըշկիկ, անկանէր ի վերայ նորա մահու երկիւղն և ահն սոսկալի դատաստանին Աստուծոյ և զմտաւ ածեալ յիշեալ զանիրաւ

մահն արդարոյն Նիկեփորայ և զանպարտ արիւն նորա, կոծ առեալ լայր և յոգւոց հանէր։ Եւ յայնժամ խորհեցաւ վարս առաքինութեան ստանալ, զի թերևս ապաշխարութեամբ մաքրել զարիւնն, զոր հեղաւ ի տարապարտուց. և հինգ ամ միայն կալեալ զաթոռ թագաւորութեան Յունաց։ Եւ մինչդեռ զայս ամենայն զմտաւ ածէր, խորհեցաւ բարի խորհուրդս, որ ըստ կամացն Աստուծոյ էր, և յուղարկեալ ի Վասակաւանն ի գաւառն յԱնձթայ և բերել տայր զՎասիլ և զԿոստանդինն զորդիսն Ռոմանոսի թագաւորին, զորս փախոյց առ Սպրամիկն ի յահէ անօրէն թագուհւոյն, վասն զի չարաբարոյ էր յոյժ։ Իսկ յորժամ եբեր զՎասիլն ի Կոստանդնուպօլիս, ժողովլ արարեալ զամենայն իշխանս մեծամեծս տանն Յունաց. և եդեւ ահաւոր հանդէս ի պաղատ թագաւորին։ Եւ յայնժամ թագաւորն Զմշկիկ առեալ զթագն ձեռօք իւրովք ի գլխոյ իւրմէ և եդեալ ի գլուխն Վասլի և նստեցուցանէր զնա յաթոռ թագաւորութեանն իւրոյ և երկիր պագանէր ի վերայ երեսաց իւրոց Վասլին. և զամենայն թագաւորութիւն տանն Յունաց նմա յանձն արարեալ։ Եւ տուեալ ի Վասիլն զիւր հայրենական աթոռն, և ինքն դիմեալ յա-

նապատ, և յանձն իւր առեալ զկարգս կրօնաւորութեան՝ ի վանս ընթացեալ բնակէր։ Ահա որ յերեկեան աւուրն թագաւոր և այսօր ընդ աղքատս նստեալ պարարէր կամաւոր աղքատութեամբ. վասն զի ժառանգեսցէ զերանութիւն սուրբ Աւետարանին և վճարեսցէ զպարտ անմեղ անձինն Նիկիփոռայ»։

21. *Ժամանակագրութիւն Զմշկիկի կենաց.* — Զմշկիկի ծնունդը տեղը ունեցած է 925ին (կամ թերեւս 924ին)։

(Այս թուականը կը ստանանք՝ նկատելով որ Զմշկիկ 976ի յունուար 10ին մեռաւ, երբ 51 տարեկան էր)։

Զօրավար կ'ընտրուի 958

Զմշկիկի առաջին և նշանաւոր յաղթանակն Արաբացւոց վրայ՝ Ամանայի մէջ 963

Տարօնի պատերազմը 965

Զմշկիկ կը սպաննէ զՆիկ. 969 դեկտ. 10

Զմշկիկ կայսր կ'օծուի 969 դեկտ. 25

Զմշկիկ զՎասիլ պատրիարգ կ'անուանէ մեռած Պոլիքտոսի տեղ 970 յունուար 29

Նիկողայոս ներքինին կը յաղթէ Արաբներուն՝ Անտիոքայ քով 970

Զմշկիկ ցորեն կը բաշխէ երեք տարիէ վեր սովատանջ ժողովրդեան 970

Ռուսաց 300,000է կազմուած բանակը կը ջախջախուի Զմշկիկի բանակէն և «Անմահ» գունդէն. 970

Յոյներ կը առնեն Մանազկերտի և շրջակայից 970

Թէոփանոյ աքսորէն կը փախչի, կրկին կ'աքսորուի 971

Զմշկիկ կ'ամուսնանայ Կոստանդին Պերփիռուժէնի Թէոդորա աղջկան հետ 971 նոյեմբեր

Կայսրը 300է աւելի նաւ կ'ուղարկէ Դանուբի վրայէն Ռուսաց դէմ 972

Անմահներու գունդը նշանաւոր յաղթանակ մը կը տանի Ռուսաց վրայ՝ 972 ապրիլ 3ին

Զմշկիկ կը առնէ Փրեսթլաւայի ապրիլ 4

Զմշկիկ Ռուսաց վրայ յաղթանակներ կը տանի Դորոսթիլոն քաղաքի քով 971 ապրիլ—մայիս

Մենամարտ Անեմասի և Սփենտոսլաւի 7 յունիս 972. Ռուսեր, յաղթուած, հաշտութիւն կը խնդրեն 972 յունիս 8

Զմշկիկ Դրիստրա քաղաքը՝ Թէոդորուպոլիս կ'անուանէ 972

Զմշկիկ տուրքերը կը նուազեցնէ 972

Յոյներ Մծբինի շրջակայքը կ'աւերեն 973 մայիս

Յոյներ Ամիդայ քով կը յաղթուին 973

Չմշկիկ Արեւելք երթալով կը տիրէ Ամիդ, Մուֆարղին և Մծբին քաղաքները 974

Չմշկիկ պաշտօնանկ կ'ընէ գլխաւոր պատրիարգ և անոր տեղ Անտոն կրօնաւորը կը դնէ 974

Չմշկիկ Արեւելք դառնալով՝ կ'անցնի Հայաստանէն, օգնական զօրք կ'առնէ Աշոտ Ողորմածէն և կը տիրէ Միջագետքի ու Պաղեստինի 975

Չմշկիկի մահ 976 յունուար 10։

22. Չմշկիկ՝ ըստ Շլիւմպերժէի. — Հետաքրքրական է անշուշտ տեսնել օտար մատենագիրներու վերաբերմունքը՝ դէպ ի Չմըշկիկ.

« Յովհաննէս Չմշկիկ է թերեւս այդ դարուն մէջ՝ ամենէն փայլուն անձնաւորումը՝ պատերազմական քաջութեան։ Անվախ, չափազանց յանդուգն, անհամեմատ կերպով եռանդուն, օժտուած՝ զինուորական ամենէն մեծ և ամենէն լուրջ յատկութիւններով, նա պաշտուած էր իր զինուորներէն։ .:. Մի և նոյն ժամանակ զարմանալի կազմութիւն մ'ունէր, լաւ ձեւուած էր, ունէր կարգէ դուրս վայելչութիւն մը, կեցուածքի մեծ ազ-

նուականութիւն մը, հրամանատուի յանգուգն կերպ մը, մանաւանդ նիւթական ոյժ մը, տարօրինակ ճկունութիւն մը, ճարտարութիւն մը որ իր բոլոր ժամանակակիցներու զարմանքն եղած էր»: (Շլիւմպէրժէ, Un empereur byzantin, էջ 277):

«Կայսրութեան ամենէն լաւ ձիաւորն էր, ամենէն լաւ նետընկէցը, ամենէն լաւ նիզակաւորը» (Նոյնը, L'épopée byzantine, էջ 3):

«Կը հանինք վերջնական ողբերգութեան: Նիկեփոր ոչ միայն ատելի եղած էր իւր ժողովրդեան և իւր նախկին զինակիցներուն, այլ նաեւ իւր կնոջ, Թէոփանոյ կայսրուհւոյն: Այս բանս սակայն շատ բնական էր, և ինչպէս զարմանալ որ այս գեղեցիկ, երիտասարդ, կրքոտ, կատարելապէս ապականեալ արարածը, ագահ վայելքներու, իսկոյն բաժնուած ըլլայ, — եթէ նոյն իսկ երբէք սիրած էր, — այս մարդէն՝ որ իրմէն աւելի տարիք ունէր, տգեղ էր դէմքով, գրեթէ աձեւ, պարզ բարքերով, խիստ վարուք, անվայելուչ, միայն պատերազմով զբաղած:

Հանդոյց մը յօրինուած էր, թերեւս եր-

կայն ժամանակէ ի վեր, մեղկ կայսրուհւոյն և Յովհաննէս Զմշկիկի, յանդուգն զօրավարին միջեւ, որ բիւզանդական բանակի ամենէն փայլուն զօրավարն էր, ամենէն աւելի տեսնուած արքունեաց մէջ, կուռք զօրաց։ Ոչ մէկ տեղեկութիւն չունինք այս կրքի սկզբնաւորութեան վրայ, կիրք մը՝ որ պէտք էր զօրաւոր եղած ըլլալ, գոնէ Թէոփանոյի կողմանէ ։ Զմշկիկի կողմանէ , և դէպքերու շարքը կը վկայէ այս բանիս, խառնուած էր անհուն փառասիրութեան մը դիւանագիտութիւնը , ու նաեւ քէն՝ իր հին զինակցին դէմ։ . . . Գալով Թէոփանոյի, կ'երեւի թէ այն օրոյն՝ զոր կը շնչէր իրեն հրապուրիչ Հայը, կը միանար սաստիկ ատելութիւն մը դէպ ի իր ծերունի ամուսինը, մեծ փափաք մը ձանձրանալի և անտանելի շղթայն խզելու։ Թագաւորը որ թերեւս բան մը կը կասկածէր, հետզհետէ աւելի տխուր, աւելի անհանդարտ երեւոյթ առաւ և աւելի ընկղմեցաւ խիստ բարեպաշտութեան մը հրահանգներուն և չափազանց պահեցողութեան մէջ։ Այստեղ շատ մօտէն կը հետեւիմ Լեւոն Սարկաւագի բնագրին, որ շատ մեծավայելուչ կերպով պատմած է այս խռովեալ թագաւորութեան ողբերգական վախճանը։.. Յով-

Հաննէս Զմշկիկ, առերեւոյթ անտարբերութեան մը տակ կեղծելով վրէժխնդրութեան այն վառ փափագը որով լի էր իւր սիրտը, առանձնացաւ իւր հարց բնակարանը, Քաղկեդոնի ասիական արուարձանին մէջ, որ է այժմեան Քատի-քէօյ։ Անկից իրեն աւելի դիւրին եղաւ, քան երբէք, գաղտնապէս իւր կայսերական սիրելոյն հետ թղթակցիլ։ Նիկեփորի սառնասիրտ ընդունելութիւնը զինքը վհատեցուցած չէր, այլ աւելի գազանացուցած։ Բնազդաբար իմանալով որ ժամը հասած էր և ճանապարհը բացուած էր իր առջեւ, որ Նիկեփորի շրջանը ա՛լ աւարտած էր, թէ իւր հին զինակցի, որուն կայսր ըլլալուն օգներ էր, անժողովրդականութիւնը՝ ծայրը հասեր էր, պատրաստ էր, իբր հարազատ մարդ իր դարուն և իր ցեղին, ամէն բան փորձելու, և վճռած ամենէն ծայրայեղ միջոցները ձեռք առնելու՝ իր կարգին իշխանութեան բարձրանալու համար։ Շնորհիւ մեքենայութեանց, զորս լաւ կարգադրած էր կայսրուհին, հարէմի հնարիմացութիւնք՝ ուր դիւրին է գուշակել ներքիններու և գերիներու ձեռքը, յանդուգն զօրավարը, որ վախ ըսուած բանը չէր գիտեր, որուն փառասիրութիւնը շատ աւելի մեծ էր քան դէպ

ի՝ բոլոր մարդիկները կախարդող՝ Թէոփանոյն ունեցած ոյժը, յաջողեցաւ շատ մը խորհրդաւոր տեսակցութիւններ ունենալ իր սիրելոյն հետ, նոյն իսկ կայսերական կանանոցի խորութեանց մէջ։ Պէտք էր, իր եղեռնաւոր ժամադրութիւններ իրագործելու համար, ամէն իրկուն նաւակով Վոսփորը անցնիլ եւ յետոյ կորսուիլ պալատական շէնքերու բուրգին մէջ։ Ամենէն թեթեւ անխոհեմութիւնը բաւական պիտի ըլլար երկու յանդուգն էակներուն մահուան պատճառ ըլլալու։ ... Այդ թատերական ժողովակներուն մէջ ուր փառասիրութիւնը, ատելութիւնը, վրէժխնդրութեան փափագը, ու ոյժը կ'ամբոխէին միասին, Նիկեփորի մահը վերջնականապէս վճռուեցաւ։ Այն պայմանաւ որ նա պիտի սպանուի, Թէոփանոյ խոստացաւ Զմշկիկի հետ ամուսնանալ եւ թագն իրեն տալ։ Երկու դաւակիցները, կեղծելէ եւ սպասելէ յոգնած, վճռեցին շուտով գործել։ Կարգադրութիւնը եղաւ ճարտար կերպով. Յովհաննէս շատ դժուարութիւն չքաշեց՝ աժգոհներուն մէջ դաւակիցներ գտնելու, անոնց թիւը ամէն օր կ'աճէր՝ Նիկեփորի խստութեան հետ։ Ամենէն նշանաւորներն եղան երկու հոգի, Վուրց զօրավարը, Անտիոքայ

փառապսակ յաղթականը, որ կատղած էր
անիրաւ տեղ երեւէ ընկած ըլլալուն համար,
և ուրիշ պատրիկ մը, Լեւոն Փետրարիմոս։
... Սպանումը սահմանուեցաւ դեկտեմբե-
րի տասն մինչեւ տասնըմէկի գիշերը։ Ամե-
նէն հաւատարիմ պաշտպանները, կին ծպտե-
լով և ձեւացնելով իբր թէ թագուհւոյն
այցելութեան եկած են, զէնքերնին իրենց
երկայն զգեստներուն տակ ծածկելով, մի
առ մի կանանոցը մտան, ուր Թէոփա-
նոյ զիրենք ծածկեց մութ անկիւններու մէջ,
ճիշդ կայսեր սենեակին մօտ։ Նոյն օրը, ե-
րեկոյեան դէմ, ժամերգութիւն ըսելու ժա-
մուն, Նիկեփոր, աւելի քան երբէք՝ տխուր
նախազգացումներու մէջ կը գտնուէր. ընդ-
ունեցաւ նաեւ տոմսակ մը պալատական քա-
հանայներէն միոյն ձեռքէն. նա կը պարու-
նակէր հետեւեալ բառերը միայն՝ սարսա-
փեցնող լակոնաբանութեամբ. «Գիտցիր,
թագաւոր, որ նոյն իսկ այս գիշեր, ահաւոր
մահ մը կը նիւթեն քեզ։ Եթէ կ՚ուզես հա-
մոզուիլ, ուրիշ բան հարկ չէ բայց եթէ կա-
նանոցը խուզարկել. հոն պիտի գտնուին՝
զքեզ սպաննելու եկած զինեալ մարդիկ-
ներ»։ Ինքնակալը, որ ամէն օր այսպիսի
ազդարարութիւններ կ՚ընդունէր, զարմա-

ցաւ ստոր յաղթութեանը վրայ։ Պահելով իր բոլոր հանդարտութիւնը, հրաման տուաւ Միքայէլի, իր ննջասենեկի պետին, կամ, ուրիշ բառով, ներքինեաց գլխաւորին և տան վերակացուին, խնամով խուզարկել կանանոցին բոլոր անկիւնները։ Խուզարկութիւնը, որ երկայն տեղի ունեցաւ, ո՛չ մէկ արդիւնք տուաւ։ Կա՛մ կայսեր զայրութէն վախնալով, կամ պաշտպանութեան մասնակից ըլլալով, կամ անհոգութեամբ կամ հեղգութեամբ, Միքայէլ իր աչքն բանալ տուաւ այդ ընդարձակ թաղի բոլոր խուցերը, ի բաց առեալ ճիշդ անոնք՝ ուր ծածկուած էին զինեալ դաւակիցները։ Յետոյ վազեց թագաւորին իմացնելու որ այս անգամ ալ ինքը խաբուած էր։ Սակայն գիշերը կանուխ եկած էր ձմեռնային այդ մթուր օրուան մէջ, և արդէն բաւական ժամերէ ի վեր կը տևէր։ Դաւակիցները, անգութ հոգերով տանջուած, գազանի սարսափներէ ցնցուած, ուրիշ բանի չէին սպասեր՝ բայց եթէ իրենց գլխաւոր գործիչին, Յովհաննէս Զմշկիկի, պաշտպանութեան գլխաւորին։

Պիտի գար նա։ Ոչ ոք կը տարակուսէր իր քաջարութեան վրայ. բայց կրնա՞ր նա, գիշերուան այդ ժամուն, այդ սարսափելի

օդով. Վոսփորը անցնիլ և պալատ մտնել։

Պէտք էր սակայն ամէն գնով Նիկեփորի կասկածները քնացնել։ Թէոփանոյ իր մօտ կ'երթայ։ Այս դէպքերը տեղի կ'ունենային Պուքոլէոնի ճիշդ այն պղեակին մէջ, զոր նոր շինած էր իր առանձին գործածութեան համար, կարծելով, աւա՜ղ, թէ անառիկ ապաւէն մը շինած է։ Բուլղար իշխաններու աղջիկներ, բիւզանդացի իշխաններու նշանուած (ծանօթ է արդէն որ այն ատեն բուլղարական նոր դաշնակցութեան մեղրալուսինը իր լրման մէջ էր) նոր հասած էին Կոստանդնուպոլիս։ «Պիտի երթամ, ըսաւ Նիկեփորի, քանի մը վայրկեան այդ օտարականները զբաղեցնելու։ Ննջասենեակի դուռը բաց թող. քիչ ատենէն քովդ կու գամ, (որովհետեւ նոյն սենեակը կը բնակէին), յետոյ ամէն կողմ կը գոցեմ։ Կայսրը խաբուեցա՞ւ այս նենգութենէն։ Ո՞վ գիտէ։ Թերեւս կասկածները փարատեցան, բայց աչքի առաջ ունենալով մահը, որուն այնքան անգամներ դիմագրաւած էր Կիլիկիոյ կիրճերուն մէջ՝ ինչպէս Ասորիքի անապատներուն, հետզհետէ աւելի անջատուած նենգաւոր և անարգ աշխարհէն, այս քաջ մարդը, որ արդար մըն էր, երկայն ժամանակ ընկղմե-

ցաւ իւր աղօթքներուն և Ս. Գրոց ընթերցման մէջ։ Ցետոյ, քունէն յաղթուած, փաթթուեցաւ Միքայէլ Մալէյինոս սուրբ կրօնաւորի վերարկուին մէջ ու պառկեցաւ, ինչպէս սովոր էր ընել, մանաւանդ յետ իւր ծերունի հօրը մահուան, ո՛չ եթէ կայսերական մեծ անկողնին մէջ, այլ պարզապէս գետնի վրայ փռուած վագրի մը մորթին վըրայ, Ցիսուսի, Աստուածածնայ և Յովհաննու Մկրտչի պատկերներուն տակ։ Առաջին անգամ, կ'ըսէ, Իբն–էլ–Աթիր, Նիկեփոր քուն կ'ըլլար, առանց իր զէնքերը քովը ունենալու։

Սլաքը գիշերուան հինգերորդ ժամը ցոյց կու տայ։ Բուռն հով մը կը բարձրացնէ Պրոպոնտիսի ալիքները. ցուրտը սաստիկ է. առատ ձիւն կու գայ։ Յովհաննէս Չմշկիկ, երեք մարդիկներու հետ փոքրիկ նաւակով մը Քաղկեդոնէն մեկնած, ափունքի երկայնքէն կը մօտենայ Պուքոլէոն պալատին, արձաններու խմբի մը քով՝ որ կը ներկայացնէր ցուլի մ'եւ առիւծի մը կռիւը. ահա նշանաւոր նաւահանգիստը՝ այդ անունը կրող։ Դաւակիցները, սուր ի ձեռին, տագնապալից, կը ջանային իր գալուստը գուշակել։ Մէկը անոնցմէ որ կայսերական նոր զգեակի

ամենէն բարձր մասերու սանիքներու վրայ, բացօթեայ, դրուած էին իբրեւ դէտ, վերջապէս խոր մթութեան մէջ կը նշմարէ չորս մարտիկները։ Նախապէս սահմանեալ նշանը՝ սուլոց մը՝ կը լսուի, և կայսեր սենեակէն նետուած չուանէ սանդուխով մը, դուրսի մարդասպանները կը միանան իրենց գործակիցներուն հետ։ Կեդրենոս և ուրիշներ խօսք չեն ըներ սանդուխի մասին և կ՚ըսեն թէ Զմշկիկ և իր երեք ընկերները մի առ մի կանանոցին մէջ վեր քաշուեցան ուռենիէ կողովներով կամ բարձերով՝ որոնց գործածութիւնը այնչափ սովորական եղած է, ամէն ժամանակ, ամբողջ Արեւելից մէջ։ Ամենէն վերջ Զմշկիկ մը մանէ պալատը », և այլն (Schlumberger, « Un empereur byzantin, էջ 754)։

23. *Յովհաննէս Զմշկիկի գերդաստանը*. — *Յովհաննէս Զմշկիկի ճիւղագրութիւնը հետեւեալն է*.

*Յովհաննէս Գուրգէն*

*Ռոմանոս պատրիկ և Եւփրոսինէ*

*Յովհաննես Գուրգէն*

*Ռոմանոս Գուրգէն*

*Թէոփիլոս, կառավարիչ Միջագետքի*

— (Հայր Զմշկիկի)
Յովհաննէս Զմշկիկ
Յովհաննէս

*Զմշկիկ նախ ամուսնացած էր Վարդի Մարիամ քրոջ հետ, որու մահուանէն յետոյ՝ Պերփեռուժէնի Թէոդորա աղջկան հետ։*

24. *Զմշկիկի դրամները*. — *Զմշկիկ իր դրամներուն մէջ կը ներկայանայ կանգուն, երկայն նիզակ մ'ի ձեռին, ձախ ձեռքին մէջ ունենալով խաչազարդ աշխարհագունտ մը։ Ունի նաեւ ուրիշ դրամներ, ուր իր պատկերին հետ՝ Յիսուսի, Աստուածածնայ կամ խաչի պատկերը դրոշմուած են։ Մակագրութիւնք ընդհանրապէս են « Յիսուս, Էմմանուէլ », և կամ « Այսու յաղթեա » բառերը։*



## Է. ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

# ՎԱՍԻԼ Բ.

# ԲՈՒԼՂԱՐԱՍՊԱՆԻ ՎՐԱՅ

25. *Յունաց որ պատմիչներ խօսած են Վասիլ Բ. Բուլղարասպանի վրայ.* — *Լաւագոյն աղբիւրը՝ Վասիլ Բ.ի կենսագրութեան է*

*Կեդրենոս, Բ հտ. էջ* 416–480.

*Զոնարաս, Գիրք ԺԵ.*

*Գլիկաս, Յովէլ, Եփրեմիոս, և այլն:*

26. *Հայոց որ պատմիչներ խօսած են Վասիլ Բ.ի վրայ.* — *Վասիլ Բ.ի մասին ընդարձակ և թանկագին տեղեկութիւններ ունի Հայ պատմութիւնը.*

*Ստեփաննոս Ասողիկ կը պատմէ, ԺԴ գլխոյն մէջ:*

*ԺԴ. — Յաղագս թագաւորելոյն Վասլի*

Յունաց. և խնամակալութեան Վարդայ. և ա-
շխարածոյ աշխարհին Յունաց։

Եւ իբրև Թագաւորեաց Վասիլ ի 425 թուին, որպէս յառաջն ասացաք, Վարդ որ ըստ աւելաձայնութեան սկլերոս կոչիւր, ապստամբեալ Թագաւորեաց ի կողմանս Ջանանայ և Մելատինոյ. որ էր այր քաջ և կորովի ի գործ պատերազմաց։ Եւ միաբանեալ ընդ ինքեան զհեծելազունդ զօրն Հայոց որ ընդ Յունաց Թագաւորութեամբն, և բաժանեալ զթագաւորութիւն Յունաց, հասանէ մինչև ցԲիւթանիա ճակատ տալով ընդ Թագաւորին Վասլի զամս. և արեան ճապաղիք լնուին զաշխարհն ամենայն։ Վասն զի Թագաւորն Վասիլ գումարեաց զզօրսն Բիւզանդիոնի և զԹրակացին և զՄակեդոնացին հանդերձ ամենայն արևմտեայ ազգօքն առաքէ ի պատերազմ ընդդէմ Վարդայ բռնակալին։ Իսկ Վարդայ զինեալ ընդդէմ նորա ի պատերազմ, յորում քաջապէս մարտուցեալ զօրն Հայոց, որպէս ոյլք իշխանին Տարօնոյ Գրիգոր և Բագարատ և Ջափրանիկ՝ իշխան Մոկացի, ահաբեկ արարեալ զզօրսն Յունաց զօրէն փոթորկեալ մրրկի շփոթէին, զյոլովս սրախողխող արարեալ, և զբազումս ձերբակալ. ուր սպանեալ եղև ներքինին Պետասնոս՝ գլուխ զօրուն։

Եւ ապա ողորմածաբար գթացեալ յաղագս քրիստոսական հաւատոցն՝ միացելոցն կեանս շնորհէին։ Եւ այսպէս երկիցս և երիցս և բազում անգամ մարտուցեալք՝ յաղթեցին արեւմտեայ զօրուն. և գրեթէ ընդ բոլոր աշխարհն Յունաց տարածեցաւ պատերազմն, մինչ զի գեօղ ընդ գեօղ և քաղաք ընդ քաղաք մարտնչէր. և ամենայն ուրեք արեանց հեղմունք լինէին. և սով սաստիկ յընդհանուր աշխարհս տարածեցաւ. և գիակունք մեռեալք ի ճանապարհս և ի գռեհս բազմանային. և կենդանիքն ողորմելի քան զմեռեալս շրջէին, և գայլք գիշատիչք ի մարմինս մեռելոց խանձեալք՝ և զկենդանիսն ուտէին։ Եւ մինչ զայսու շփոթմամբ էր թագաւորութիւն Յունաց, Խլաթայ և Նփրկերտոյ ամիրայն Բաան վերստին շինէ զքաղաքն Մանազկերտ. և սրով և գերութեամբ անմարդացոյց զգաւառն Տարօնոյ, յաւարի առեալ զքաղաքն Մուշ. խողխողեալ զքահանայս յեկեղեցւոջն որ սուրբ Փրկիչ անուանի, ողորմելի տեսակաւ, յորում արեան ներկուածք ցարդ եւս ցուցանին ի նոյն յեկեղեցւոջ։

*ԺԵ. — Վասն վերջին պատերազմին Յունաց. և փախստական լինելոյ բանակային Վարդայ:*

*Եւ ապա յետ այսր ամենայնի անցիցն անցելոց Վասիլ՝ թագաւորն Յունաց, զԹոռնիկ զօրավարն որ էր յազգէն Վրաց, աբեղայ ի սուրբ լերինն այնմիկ, հանեալ առաքէ առ Կիւրապաղատն Տայոց Դաւիթ. և խոստանայ տալ նմա զխոտորջուրն կղէսուրան, զՋորմայրի և զԿարին, զԲասեն և զՍեւուկ բերդակ որ է Մարդաղի, զՀարք և զԱպահունիս, զորս և ետ իսկ, որպէս զի զօր առաքեսցէ յօգնականութիւն նմա:*

*Եւ Կիւրապաղատին Դաւթի գումարեալ զզօրսն Վրաց, և զիշխանաց իշխանն զՋոջիկ տայ գլուխ Թոռնկայ պատերազմել ընդ Վարդայ բռնակալին: Որք սկսեալ ի Տայոց աշխարհէն քանդեալ աւերեցին զամենայն աշխարհն Յունաց որ ընդ ձեռամբ բռնակալին: Նոյնպէս և հանեալ թագաւորին ի բանտէ զՎարդ որ և Փոկաս կոչիւր. զոր արկեալ էր Սկիւր–ժանայ ի կղզին. և տայ ի ձեռս զամենայն արեւմտեան զօրն Յունաց. և հանդերձ Վրաց զօրուն առաքէ ի վերայ բռնակալին Վարդայ երկուս բանակս: Իսկ բռնակալին ընդ միոյ բանակին մարտուցեալ,*

այն ինչ ի փախուստ դարձուցանէր և ապա հասեալ ի վերայ երկրորդ բանակին՝ նորոգապէս յարդարէին զպատերազմն։

Յորմէ զանգիտեալ բանակալին Վարդայ՝ փախստեայ լինէր։ Եւ ելեալ յաշխարհէն Յունաց՝ թիկունս օգնականի կալեալ զամիրային Բաղդատայ, որ Իբն Խուրով կոչիւր, զի և յառաջն իսկ բարեկամացեալ էր ընդ նմա։ Եւ երթեալ հասանէ մերձ առ քաղաք նորա ի Մարտիրոսացպօլիս որ է Նփրկերտ, ի տեղին որ փշփաշն կոչի։ Իսկ թագաւորն Վասիլ հրեշտակ խաղաղութեան առաքեալ զկնի դառնալ անդրէն թագաւորին Վարդայ։ Զոր իմացեալ աւագ հեծպացն Իբն Խուրովու՝ զգացուցանեն նմա ի Բաղդատ։ Եւ նորա հրաման տուեալ ունել զթագաւորն՝ եթէ հնար լիցի։ Եւ նոքա յանկարծ ժամու ի վերայ հասեալ՝ ձերբակալ արարեալ զթագաւորն Վարդ հանդերձ մեծամեծօքն՝ հասուցանեն ի դուռն Իբն Խուրովու, ի քաղաքն Բաղդատ որ է Բաբելոն, զոր հրամայեաց երկաթեղէն կապանօք ի բանտի պահել զամենայն աւուրս կենաց իւրոց Իբն Խուրով։

ԻԲ. — Թէ զիա՛րդ չարաչար մահուամբ մեռաւ մետրապօլիտն Սեբաստիոյ, և վասն

թագաւորացն Բուլղարաց, որ սպանին զնա ։

Իսկ յետ ընդունելոյ զԹուղթս զայս ա-մօթալից լինէր միտրապօլիտն այն. բայց ոչ ինչ Թուլացաւ յիւրմէ չարութենէն։ Այլ ի նմին ամի առաքեաց զնա Թագաւորն Վա-սիլ յաշխարհն Բուլղարաց խաղաղութիւն առնել։ Եւ նոցա խնդրեալ զքոյր Թագաւո-րին Վասլի ի հարսնութիւն ինքեանց։ Եւ տուեալ Թագաւորին կին մի ի ծառայից իւ-րոց ի կերպ քեռն իւրոյ, առաքեաց ի ձեռն միտրապօլտին։ Եւ յերթալն յաշխարհն Բուլ-ղարաց ծանեան զկինն զայն. և պատեալ զմիտրապօլիտն իբրեւ զշուն և խարբեալ՝ ցօ-ղուն և ժժան պատեալ զնովաւ՝ հրով ատ-չորեցին Թագաւորքն Բուլղարաց. զի էին նոքա երկու եղբարք, որք կոմսաձագքն կո-չէին. անուն երիցուն Սամուէլ յազգէս Հա-յոց, ի գաւառէն Դերջանայ, զոր ընդ գունդս տաղարացն տարեալ էր զնոսա Թագաւորն Վասիլ ի Մակեդոնիա պատերազմել ընդ Բուլղարացն։ Որոց ի դիպող ժամու ապըս-տամբեալ ի Թագաւորէն Յունաց՝ գնացին առ Թագաւորն Բուլղարաց, որ էր կուրա. և ըստ քաջութեան իւրեանց մեծացան յաչս նորա։

Եւ յետ այսորիկ Թագաւորն Յունաց Վա-

սիլ ի պատերազմի կալաւ զԹագաւորն Բուլղարաց զԿուրտն։ Իսկ Կոմսաձագքն տիրեալ ի վերայ աշխարհին Բուլղարաց՝ ընդդէմ կացին խիստ մարտիւք Թագաւորին Յունաց, զոր ըստ ժամանակին տեսցուք։

ԻԳ. — Եւ թէ որպէս չոգաւ զօրօք թագաւորն Յունաց Վասիլ յաշխարհն Բուլղարաց, և պարտեալ փախստեայ այսրէն դարձաւ.

Եւ զկնի այսորիկ ինքն Թագաւորն Վասիլ զօրաժողով եղեւ գնալ յաշխարհն Բուլղարաց։ Եւ հաստաբուռն զօրութեամբ երթեալ՝ ունի զմիջոց աշխարհի նոցա լայն բանակաւ։

Եւ Բուլղարացն անճապարեալ կալան զնեղ անցսն, զկիրճս կապանաց ճանապարհին. զի են վայրք մացառուտք և դժուարագնացք։ Եւ ի բանտի արգելեալ զԹագաւորն հանդերձ ամենայն զօրօքն՝ սրախողխող առնէին զամենեսեան. այլ հետեւակագունդն Հայոց, ի մէջ առեալ զԹագաւորն Վասիլ զկնի և յառաջոյ, ընդ այլ ճանապարհ լեռնագնաց տարեալ հանին ի Մակեդոնիա։ Եւ ամենայն հեծելագունդ զօրն մատնեցաւ նոցա հանդերձ աւարաւ և պալատամբ Թագաւորին։

ԻԴ. — Վասն ելանելոյ թագաւորին Վարդայ ի Բաղդատայ, և մտանելոյ յաշխարհն Հռոմոց ։

Եւ յայսմ ամի, որ էր ի 435 թուին Հայոց, յորում չարչարեալ մեռանէր Գաբրիէլ երէց Սեբաստիոյ. և մետրապօլիտն, որ էր պատճառ սպանման նորա, չարաչար մահու չարչարեալ ի Բուլղարս՝ սատակէր վրէժխնդրութեամբն Աստուծոյ։ Եւ հարաւ զօրն Վասլի յաշխարհին Բուլղարաց։ Ի նոյն ամի թագաւորն Վարդ՝ ելեալ ի Բաղդատայ ի Մելտենի մտանէ, վասն զի Իբն Խոսրով, զոր յառաջին ասացաք ի մահուան իւրոյ պատուէր տուեալ որդւոյ իւրոյ արձակել ի կապանաց զթագաւորն Վարդ, զի էր դաշնադիր երդմամբ։ Եւ նորա զինուք, հանդերձիւք և երիվարօք արձակեալ զնա ամենայն իւրայովքն և հանեալ ընդ քաղաքն Բաղդատայ բացագոյն ինչ՝ ամենայն խառնիճաղանճ բազմութիւն քաղաքին շարժեցաւ զկնի՝ սպանանել զնա ։ Այլ վայրաբնակ Արապկացն ընդդէմ կացեալ՝ առեալ զթագաւորն ընդ անշէն տեղիս ածեն ի վրանս իւրեանց. և անտուստ արագ հասուցանեն ի Մելտենի քաղաք ի Բաբելոնէ յաւուրս 31։ Եւ ամենայն զօրք աշխարհին առհասարակ ի հնա-

զանդուլթիւն գայլն և Բատն Ապահունեաց և Նփրկերտոյ ամիրայն և Վայրաբնակ Արապիկք, որ ընդ նմա։ Եւ դարձեալ առաջին խռովութիւնն շարժեցաւ յաշխարհին Յունաց։

ԻԵ. — Ելն Փոկասու—Վարդայ. և ունել զթագաւորն, և թագաւորել ինքեան։

Իսկ Վարդ որ և Փոկաս, հրամանաւ Վասլի, գայ ընդդէմ նորա ի պատերազմ ամենայն զօրօքն Յունաց և Վրաց։ Եւ բանս պատրողականս առաքէ առ նա ի ձեռն հրեշտակաց իւրոց ասելով. «եթէ ե՛կ զի խաղաղութիւն արասցուք առ միմեանս. և ի միջի մերում բաժանեսցուք զաշխարհս Յունաց բառնալով զթագաւորութիւն Վասլի»։ Որում հաւանեալ Թագաւորն Վարդ, արձակեալ յինքենէ զզօրսն Տաճկաց, և ի հանդիպելն միմեանց Վարդ որ և Փոկաս, ստեալ երդմանն իւրոյ, յետ աւուրց եօթանց կալանաւոր արարեալ զՍկլարոսն Վարդ՝ զինակիր պատրաստութեամբ հրամայէ տանել ի բերդն Ժեռաւս։ Իսկ տաճիկ զօրն, որ արձակեալ էին ի Սկլարոսէն, երթեալ ի բնակութիւնս իւրեանց՝ և յորժամ լուան զհամբաւ ունելոյ Սկլարոսին ի Ժեռաւս քա-

ղաքի, գերի առին ի հարաւոյ մինչեւ յԱպահունիս։ Եւ վարդն որ եւ փոկաս, ի 435 թուին թագաւոր բռնակալ եղեալ՝ ճակատ տալով ընդ թագաւորական քաղաքին Կոստանդնուպոլսի հանդերձ ամենայն Յունաց եւ Վրաց զօրուն ամս երկու։ Որ եւ ընդդէմ թագաւորական քաղաքին ամրոց շինեալ, եւ զՏփխիս մաժխառոս հանդերձ զօրականօք պահապան կացուցանէ. զի մի եւ լիցի ի քաղաքէն կամ մուտ արտաքնոցն։ Այլ պահապան նաւահանգստին՝ ուխտ խաղաղութեան առ թագաւորն վասիլ հաստատեալ՝ զամենայն զօրս քաղաքին եւ որ ինչ արեւմտեայ կողմանցն՝ ի միում գիշերի յայսկոյս անցուցանէր։

Որք ելեալ ըստ Թիկանցն կողմանէ ամրոցին՝ զօղեալ թաքչէին. իսկ ըստ քաղաքին կողմանէ յառաւօտանալ ժամուն, նաւս պատերազմականս պատրաստեալ մոմեղինօք գալ ընդդէմ ամրոցին. որոց տեսեալ որ յամրոցին՝ ելանէին ի պատերազմ ընդդէմ նոցա։ Իսկ զօղեալ զօրն ի Թիկանց կողմանէ յարուցեալք ի վերայ՝ սրախողխող եւ ծովընկէց առնելով զզօրսն Տփխիսայ՝ ձերբակալ արարին եւ զՏփխիս՝ գլուխ զօրուն, զոր յանդիման արարին վասիլ թագաւորին.

և դատապարտեցաւ ի փայտ ելանել ։ Այս եղեւ ի 437 թուին։

ԻԶ. — Գալն Փոկասու Վարդայ յեզր ծովուն զօրօք, և ելանելն Վասակի և սպանանելն զնա։

Իսկ Փոկասու Վարդայ արձակեալ յինքենէ զզօրսն Վրաց, և ինքն ամենայն զօրօք Յունաց խաղայ յեզր ծովուն ։ Իսկ ի գալ ամին միւսոյն, մինչդեռ գարնանային էր ժամանակն, Թագաւորն Վասիլ հանդերձ եղբարբն Կոստանդեաւ և ամենայն զօրօքն արտաքս ելեալ և յերկուս բաժանեալ զզօրսն, մասն մի ընդ ծով առաքէ ի վերայ բանակին Վարդայ, որք եկեալ հրով լուցին զնաւս նորա յեզր ծովուն։

Եւ ինքն Թագաւորն ցամաքաւն եկեալ մերձենայր ի բանակն. և ի լուցանելն նաւուց, զի զայն նշանակ տուեալ էր, հնչեցուցանել հրամայէր զպատերազմական փողսն և շփոթեալ բանակին Վարդայ ահաբեկ լինէին ի փախուստ դառնալով։ Մեռաւ և ինքն Վարդ բռնակալ Թագաւորն չարաչար մահուամբ։

ԻԷ. — Յաղագս երեւման աստեղն. և շարժման Կոստանդնուպօլսի. և մահ ապստամբին Ջորտուանելի։

Ի սոյն ամի, որ էր ի 439 թուին Նիզակաւոր աստղն կրկին անգամ երեւեցաւ յամսեանն Քաղոց, որ օր 15 էր ամսոյն, ի տօնի փոխման ամենասուրբ կուսի Աստուածածնին՝ յարեւելից կուսէ երեւեալ և զնշոյլս լուսոյն ընդ հարաւ առաքէր աւուրս ինչ. և ամփոփեալ յայնմ տեսութենէ՝ կայր ի վերայ արեւմտեայ աշխարհին ընդ մուտս արեւուն, զնիզակաձեւ լոյսն ընդ արեւելս ձգելով։ Եւ զկնի սակաւ աւուրց շարժեցաւ աշխարհն Յունաց ահաւոր դղրդմամբ, մինչեւ կործանել բազում քաղաքաց և գիւղից և գաւառաց, եւս առաւել ի Թրակացւոց և Բիւզանդացւոց աշխարհին հանդերձ ծովովն, որ ի մէնջ նոցա ծածանեալ ծփէր սաստամամբ, մինչեւ ի նոյն ինքն ի թագաւորական քաղաքին Կոստանդնուպօլսի մեծաշուք և բազմապայծառ զարդք հրաշատեսիլ սեանց և պատկերաց և եկեղեցեաց մեծամեծաց կործանեալ փլուզանէին. և նոյն ինքն Սոփիայն, որ կաթողիկէն է, հերձանէր պատառմամբ վերուստ ի վայր։ Վասն որոյ բազում ջան եդեւ արհեստաւոր ճարտարացն Յունաց առ ի վերստին նորոգել։ Այլ անդ գտեալ ճարտարապետին Հայոց Տրդատայ քարագործի, տայ զօրինակ շինուածոյն ի-

մաստուն հանճարով՝ պատրաստեալ զկաղապարս կազմածոյն և սկզբնաւորեալ զշինելն. որ և գեղեցկապէս շինեցաւ պայծառ քան զառաջինն։ Այլ դեռ եւս մնացեալ էր յապըստամբացն, որ ընդ փոխանուն Վարդայ՝ Զարտուանէլ մաժիստրոսն՝ եղբօրորդի Թոռնկայ աքեղայի, որ բռնացեալ էր ի կողմանս Դերջանայ և Տարօնոյ, յորոյ վերայ առաքէ Թագաւորն Վասիլ զԺանն պատրիկ, որ և Պառտեզ կոչիւր։ Որ եկեալ պատերազմեցաւ միանգամ. և յերկրորդումն սպան զնա ի դաշտին Բագառջոյ, ի Դերջան գաւառի, ի 439 թուին։ Եւ յայնմհետէ խաղաղանայր աշխարհն Յունաց ընդ ձեռամբ Վասիլի նուաճեալ։

ԼԵ. — Ելն տաճիկ զօրուն Եգիպտացւոց յաշխարհն Յունաց, և միանգամ և երկիցս պատերազմելն և ելն թագաւորին Վասիլի ի վերայ նոցա։

Յայսմ ժամանակի ամիրայն Եգիպտացւոց որ ի Բաբելոն Ազազ անուն՝ զօրօք բազմօք առաքէ ի վերայ քաղաքին Հալպայ և ի կողմանս Անտիոքացւոց։ Որոց ընդդէմ երթեալ Ռոմանոս մաժիստրոսն՝ որդի Սկլարոսին, սակաւ զօրօք և ոչ կարացեալ

պատերազմել՝ ամրանայ ի կողմանս լերանցն։ Եւ նոցա զսակաւ տեղիս յաւարի առեալ՝ դառնան յԵգիպտոս։ Եւ զկնի երկրորդ ամի նոյն ամիրայն զամենայն Մասր Արապին և զզօրսն Երուսաղէմի և Լիբէացւոց առաքէ յաշխարհն Յունաց ի նոյն կողմանս Անտիոքու։ Որոց ընդդէմ երթեալ Բուռճն մաժիստրոսն, հրամանաւ թագաւորին Վասլի ի 443 թուին, պատերազմի ի Բուրզոյ դաշտին, և պարտեալ ի նոցանէ՝ ի փախուստ դառնայ։ Որոց հետամուտ եղեալ զօրն Տաճկաց, զբազումս սրախողխող առնէին և զյոլոյս ձերբակալ, որպէս զճանակ պատրիկ՝ որդի Խաւռասայ, և զԹորոս բարեպաշտ և աստուածասէր ի գաւառէն Հաշտենից, և զայլս յաշխարհէն Հայոց ազատաց։ Զայս լուեալ թագաւորն Յունաց՝ ինքնին զօրօք անդր հասանէր. և Եգիպտացւոցն զգացեալ զգալուստ թագաւորին, զաղխս բանակին իւրեանց ի գիշերի հրով այրեալ, և ինքեանք փախստեայ գնացին յաշխարհն իւրեանց։

Եւ թագաւորն անցեալ յաշխարհս նոցա, զբազում գաւառս յաւարի առեալ և յեզր ծովուն մեծի քաղաք շինեալ յամրութիւն զօրաց իւրոց և ինքն դարձաւ անդրէն ի Կոստանդնուպօլիս փութանակի։

*ԼԷ. — Դարձեալ ելն Եգիպտացւոց զօրուն և վառն Բաբելոնի և մահ Դալասանոսին:*

*Դարձեալ ի 437 թուին նոյն Եգիպտացւոց ամիրայն՝ որդին Ազազին, յետ մեռանելոյ հօրն նորա, զօր գումարեալ սաստկագոյն քան զհայրն իւր յԵրուսաղեմէ, ի Բաբելոնէ և առաքէ յաշխարհն Յունաց:*

*Այս Բաբելոն ոչ է այն, որ յերկրին Սենէար ի Քաղդէացւոց աշխարհին, ուր աշտարակն շինեցաւ, զոր Նաբուգոդոնոսոր՝ որդին Նապուպալլասարայ, 15 ամ պարըսպեաց. որ այժմ փոխեալ անդւոյ քաղաքին սակաւ բացագոյն՝ Բաղդատ անուանի: Այլ է սա բերդ իմն յերկրին Եգիպտացւոց Բաբելոն անուանեալ, որպէս պատմէ Եպիփան ի գիրսն ականց: Որ այժմ արքունիք շինեալ՝ մեծացաւ անուամբ. յորմէ ելեալ զօրն զայ յաւարի առնուլ զկողմանս Անտիոքու Ասորւոց:*

*Որոց ընդդէմ երթեալ հրամանաւ արքային Յունաց մաժիստրոս Դալասանոս՝ պատերազմեցաւ ընդ նոսա, և պարտեալ ի փախուստ դարձուցանէր: Եւ ապա զաւարաւ բանակին եղեալ զօրն Յունաց. և առաճիկ զօրուն ընդ կրունկն դարձեալ ի վերայ նո-*

ցա՝ քաջաձիգ աղեղամբք և կորովաւէգ նիզակօք սուսերահար արարեալ զզօրն Յունաց ։ Եւ մեռաւ մաժիստրոսն Դալասանոս եղբայրն և որդւոքն , և այլ ամենայն զօրն ի փախուստ դառնային. և զյոլովս ի նոցանէ ձերբակալ արարեալ տանէին ընդ այլսն և զՋորդուանէլն պատրիկ՝ եղբօրորդին Թոռնկայ աբեղայի։

ԽԲ. — Մուտն միւսանգամ թագաւորին Վասլի յաշխարհն Տաճկաց ի կողմն Ասորւոց ։

Իսկ յետ հարկանելոյ զօրացն Յունաց ի յԵգիպտացւոց զօրացն, յորում մեռաւ Դալասանոս մաժիստրոսն. ինքն իսկ Թագաւորն Վասիլ եկն յԱնտիոք։ Եւ անցեալ ընդ Հալպի դաշտն Ասորւոց, ի տեղին ուր հարան զօրքն նորա . և ժողովեալ զխաղխաղակոյտ ոսկերացն՝ հրամայեաց փոս հատանել և ի միում տեղւոջ թաղել զամենայնսն , և ի վերայ նոցա եկեղեցի շինեաց։ Եւ ինքն անցեալ՝ առնու զքաղաքն Շաժար և այլ բերդս յոլովս , և ասպատակ սփռեալ մինչեւ ցլեառն Լիբանոն՝ յաւարի էառ զաշխարհն զայն։ Եւ ի սօնէ Խաչվորացին մինչեւ ցօր Յայտնութեան Տեառն յամեաց յաշխարհն յայն, և

ապա պարձաւ, եկն նա ձմեռել յաշխարհն Կիլիկեցւոց, ի Տարսոն քաղաք, զոր շինեալ էր Սենեքերիմայ արքայի Ասորեստանեայց։ Սապէս գունակ Բաբելոնի. զի և ընդ սորա մէջն անցանէ գետն Կիդնոս, որպէս տարածանի ընդ մէջ Բաբելոնի (Տիգրիս)։ Եւ այս եղեւ ի 447 թուին։

ԽԳ. — Վասն մեծի Կիւրապաղատին Դաւթի մահուան, և գալն Վասիլի՝ թագաւորին Յունաց յաշխարհն Արևելից։

Այլ վասն մահուան մեծի Կիւրապաղատին Դաւթի պա՛րտ վարկանէի երկարաձիգ ողբովք վիպասանել, եթէ ոչ զերկարանալ բանիս կամէի կարճել. զի ո՛չ ճառից են ժամանակ, այլ դոյզն յիշատակարանաց։ Բայց զի էր այրն հեզ և հանդարտ առաւել քան զամենայն թագաւորս որ ի ժամանակիս յայս։ Եւ եղեւ նա պատճառ խաղաղութեան և շինութեան ամենայն արևելեայց, մանաւանդ Հայոց և Վրաց, զի զգոռ պատերազմաց յամենայն կողմանց դադարեցոյց նա՝ յաղթող եղեալ ամենայն շուրջանակի ազգաց. և ամենայն թագաւորք կամաւ հնազանդեցան նմա։ Սա լցեալ աւուրբք, ծերացեալ ժամանակօք՝ վախճանեցաւ յաւուր մեծի փր-

կական Ջաւկին, ի 649 թուին. բայց զի ոչ գոյր նորա որդի կամ եղբայր, որ ժառանգէր զաթոռ թագաւորութեան նորա, յանձն արարեալ էր զազատագունդն իւր թագաւորին Յունաց Վասլի:

Որ և ի լսել զլուր համբաւոյ մահուան նորա ի Տարսոն Կիլիկեցւոց թագաւորն Վասիլ՝ փութանակի յառաջեաց գալ յաշխարհս մեր: Եւ ել նա ի կողմանս Մելտինոյ. և ի գալն առաջի քահանայիցն Սեբաստիոյ՝ հրամայեաց համարձակ լինել յամենայն գործս հաւատոց, և հնչեցուցանել զձայն ժամահարի, զոր արգելեալ էր Մետրապօլիտն, որպէս յառաջն ասացաք: Եւ անցեալ թագաւորն ընդ Հանձիթ և ընդ Բալու՝ ելանէ ի լեառն Կոհերայ յաւուր Վարդավառի տօնին, որ ընդ մէջ Հաշտենից, Ծոփաց և Խորձենոյ և անդուստ գայ, հասանէ ի գաւառն Արշամունեաց, ի քաղաքն Երիզա: Եւ ամիրայն Նփրկերտոյ՝ քուերորդի Բատին, եկն առ նա ի քաղաքն Երիզայ, և արքունատուր ընծայիւք պատուեալ զնա՝ տայ զմաժխտատուութեան պատիւն: Եւ հրամայէ զօրացն Չորրորդ Հայոց և Տարօնոյ օգնական լինել նմա յոր պէտս և կոչեսցէ:

Եւ ինքն չուեալ հասանէ ի լեառն Հաւ-

ճիչ, ի քաղաքն յայն։ Անդ ընդ յառաջ ե-
ղեն նմա Բագարատ՝ Թագաւորն Ափխազաց,
և հայրն նորա Գուրգէն՝ Թագաւոր Վրաց,
զոր մեծապատիւ մեծարանօք ընկալեալ զԹա-
գաւորն Ափխազաց՝ տայ նմա զկիւրապա-
ղատութեան պատիւն, և զհայրն նորա մա-
գիստրոս արարեալ արձակեաց գնոսա գնալ
յաշխարհս իւրեանց։ Եւ ի նոյն օր գնալոյ
նորա պատերազմ մեծ եղեւ ի բանակին
Յունաց յաղագս դոյզն ինչ պատճառի. զի
իշխանք և ազատք կիւրապաղատին Դաւթի
եկեալ, բանակեալ էին մերձ բանակին Յու-
նաց. և ի հետեւակազնդէն Ռուսաց ոմն ե-
լեալ խոտ տանէր երիվարին իւրոյ։

Իսկ ոմն ի Վրաց մատուցեալ խլեաց
զայն. եկն ոմն յիւրոցն օգնել նմա. նոյն-
պէս և Վրացւոյն յիւրսն աղաղակեալ, որք
եկեալ սպանանէին զառաջին Ռուսն։ Եւ
ապա բոլոր ազգն Ռուսաց որ ի անդւոջն
յայնմ շարժեցան ի պատերազմ. զի էին
նոքա արք 6,000 հետեւակամարտք՝ նիզակ
և ասպար ի ձեռս նոցա, զորս էր խնդրեալ
Թագաւորն Վասիլ ի Թագաւորէն Ռուսաց
յորժամ ետ զքոյրն իւր կնութեան նմա։
Յորում ժամանակի և հաւատացին նոքա ի
Քրիստոս։ Եւ ամենայն իշխանք և ազատք

Տայոց ելին ընդդէմ նոցա, և պարտեալք ի նոցանէ մեռաւ մեծ իշխանաց իշխանն, որում Պատրիարքն կոչիւր, և երկու որդիքն Աշոպընարեայ Գաբրիէլ և Յովհաննէս, և Զորվուանէլ՝ Թոռն Ապուհարպայ, և այլք բազումք. զի ցասումն Աստուծոյ էր ի վերայ նոցա ըստ մեծամտութեան իւրեանց։

Եւ սակաւ ինչ յառաջ խաղացեալ Թագաւորն Վասիլ՝ եկն առ նա Թագաւորն Վանանդայ մանուկն Աբաս՝ ի ձիավարելն ունելով զնշան քաջութեան արիականաւ զարդարեալ զեղով. և Սենեքերիմ՝ Թագաւորն Վասպուրականի, եղբայր Գուրգենայ։ Ընդ որս առեալ ուրախ եղեւ Թագաւորն Վասիլ և պատուեաց զնոսա արքունաւոր պատուով, և ետ նոցա ձիս և ջորիս և հանդերձս պայծառս և ոսկի յոլով. և դարձոյց զնոսա յիւրաքանչիւր տեղիս։ Եւ ինքն չուեալ անցանէ ի գաւառն Հարք, ի Մանազկերտ քաղաք. և անդուստ ի Բագրեւանդ՝ բանակի ի դաշտին մերձ ի քաղաքն Վաղարշակերտ՝ մնայր գալստեան Գագկայ՝ արքային Հայոց։ Այլ նա կրկեւ փոքրութիւն համարեալ զգնալն իւր առ նա. իսկ քուերորդին Գագկայ Ապուսահլ չարախօս եղեւ զնմանէ առ Վասիլ։ վասն որոյ Գագիկ հրաման առեալ որդւոյ

քրոյ Ցոլհաննիսի և յաւարի էառ զգաւառն Ապուսահլի զԿոգոյովիտն և զԾաղկոյոտն։

Իսկ Թագաւորն Վասիլ չու արարեալ գնաց ի քաղաքն Ուխթեաց. և զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով՝ զհաւատարիմս կարգեալ ի նոսա. և զմնացեալ ազատսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան բնակեցուցանել յաշխարհին Յունաց. և դարձաւ նա ընդ Խաղտոյառիճ ի Կոստանդնուպօլիս։

ԽԶ. — Յաղագս նահապետութեան Արծրունեաց, որ զմերովք ժամանակօքս թագաւորեցին Վասպուրականի։

Այլ այն նահապետութիւն, որ ընդ որդւոցն Սենեքերիմայ՝ Ասորեստանեայց Թագաւորի, որ ի ժամանակս Պարուրայ Հայկազնոյ եկեալ բնակեցան յաշխարհն մեր և անուանեցան Արծրունիք։ Որք ծննդաբանութեամբ եկեալ հասին մինչև ցԳագիկ, որ յաւուրս Սմբատայ մեծի, որ զփայտէ կախեալ եղև յանօրէն որդւոյն Աբուսաճի; զոր վերնագոյն յիշեցաք. և յաւերման աշխարհիս Հայոց թագաւորեաց նա ի կողմանս Վասպուրականի ամս 29. և վախճանի յ392 թուին։ Իսկ զկնի մահուան Գագկայ՝ Թա-

գաւորեաց Դերենիկն՝ որդի նորա, ամս 17. և վախճանեցաւ ի 407 թուին. և ապա թագաւորեաց Աշոտ՝ որդի Աբուսահլի, ամս 22. և վախճանեցաւ ի 439 թուին։ Եւ ի միասին թագաւորեցին երկու եղբարք նորա Գուրգէն և Սենեքերիմ՝ որդի Աբուսահլի։ Եւ ի գալ թագաւորին Յունաց Վասլի յաշխարհս արեւելից՝ եկեալ հանդիպեցան նմա նախ Սենեքերիմ և ապա Գուրգէն՝ երէց եղբայր նորա. և արքունատուր ընծայիւք պատուեալք ի նմանէ առատաձեռն ոսկւով և արծաթով. և հրովարտակ առաքեալ առ մերձաւոր ամիրայսն Տաճկաց զի մի մեղիցեն աշխարհին Վասպուրականի. և դադարեցոյց զառ և զգերութիւն և զհարկապահանջ բռնութիւն։ Եւ ապա Գուրգէն վախճանի ի 452 թուին. և Սենեքերիմ ունի զաթոռ թագաւորութեան ամս 20։

ԽԷ. — Ցաղագս շինելոյն Գագկայ արքային ի քաղաքն Անւոյ զեկեղեցին մեծ անուամբ սրբոյն Գրիգորի։

Յայնմ ժամանակի, յորում ընթայր լրութեամբ ամն 1,000 մարմնանալոյ կամ մարդանալոյ Տեառն մերոյ ի Վասլի կայսեր յաւուրս, Գագիկ՝ արքայ Հայոց, խորհուրդ

բարի ի յանձին կալեալ, զմեծաշէն եկեղեցին, որ ի Քաղաքուղաշտի անուամբ սրբոյն Գրիգորի շինեալ, որ էր փլեալ և կործանեալ՝ կամեցաւ նոյնաձեւ չափով և յօրինուածով յարդարել ի քաղաքին Անւոյ հիմնարկեալ ի կուսէ Ծաղկոցաձորոյն, ի բարձրաւանդակ տեղւոջն, տարփատենչ տեսողացն, մեծատաշ, վիմարդեան, կոփածոյ վիմօք, մանուածոյ քանդակաւ յօրինեալ, լուսանցոյց պատուհանօք, երկաթի դրանց դրանդեօք, սքանչատես տեսլեամբ զմբէթաւորեալ գունակ գերամբարձ և երկնանման գնդին»:

Արիստակէս Լաստիվերտցի մինչեւ իր պատմութեան Ե. գլուխը յաճախ կը խօսի Վասիլ Բ.ի վրայ: Իր տեղեկութիւնները, թէ և յոյժ հետաքրքրական, ստիպուած ենք զանց ընել, արդէն իսկ ի մէջ բերուած վկայութիւնք չափազանց երկարած ըլլալով:

27. Ժամանակագրութիւն Վասլի կենաց.
— Ծնունդ Վասլի 957
Վասիլ կայսր կ'օծուի Պոլիէքտոս հայրապետին ձեռամբ 960

*Վասիլ Բ կը թագաւորէ իրապէս* 976

*Վարդ Սքլերոսի ապստամբութիւնն ու պատերազմները* 976–979, 988 (*փախուստ Պաղտատ*), 989 (*անձնատուր կ'ըլլայ*)

*Արաբական պատերազմներ* 977, 986, 987, 989 (*Հայաստանի մէջ*), 993, 994, 1001, 1002, 1003, 1011. 1020

*Բուլղարական պատերազմներ* 981, 990 (*Գրիգոր Տարօնեցի*), 999, 1000, 1001, 1014 (*աչքեր կուրացնել*) 1015-1019 (*վերջնական յաղթանակ*)

*Մահ Անտոն պատրիարքի* 982

*Մեծ երկրաշարժ. Ս. Սոփիայի գմբէթը կը ճեղքուի* 986. *վերստին կը շինուի* 992

*Վարդ Փոկասի ապստամբութիւնը* 988, 989 (*մահ*)

*Վլատիմիր սպառնալեօք կ'ամուսնանայ կայսեր Աննա քրոջ հետ* 991

*Սով* 992

*Մահ Նիկողայոս պատրիարքի* 995

*Մահ Գրիգոր Տարօնեցւոյ* 996

*Աշոտի և Բուլղար արքայադստեր ամուսնութիւնը* 996: *Կ. Պօլիս կը փախչին* 997

*Վասիլ օրէնք մը կը հաստատէ՝ որով հարուստը աղքատին տուրքը պիտի վճարէ* 1002

Վասիլ Տայոց գաւառին կը տիրէ 1003
Պարիի մէջ Իտալացիք Յունաց դէմ կ'ապըստամբին 1009, 1011, 1013
Մահ Աննայի, քրոջ Վասիլի 1011
Խազարաց պատերազմ 1016
Սենեքերիմի գաղթելը 1016
Գէորգ Ափխազի և Յովհաննէս Սմբատի ապստամբութիւնը 1022–1023
Ռուսք, 800 հոգի Պոլիս կու գան, պատերազմ. 1024
Մահ Եւստաթիոս պատրիարքի 1025
Մահ Վասիլ Բ.ի 1025։

28. Վասիլի գերդաստանը. — Ոչ մէկ յիշատակութիւն չկայ՝ Վասիլ Բ.ի ամուսնացած ըլլալու մասին. Ադրիանոս պապի մէկ կոնդակին մէջ միայն կը յիշատակուի Մարիամ կայսրուհի «Յունաց», և Ռեծվինա կայսրուհի Հոռոմայեցւոց, երկուքն ալ դուստր Օթոն կոմսի. այսպիսի հակասական տեղեկութիւն մ'ի հարկէ վստահելի չէ, և ձեռագրական վրիպակ կ'ենթադրուի։
Ըստ Արիստակէս Լաստիվերտցւոյ՝ Վասիլ Բ. պատերազմի զբաղած, փոյթ չէր ունեցած ամուսնանալու։

30. *Վասլի դրամները.* — *Վասիլ իր դրամներու մէջ կը ներկայանայ իր փոքր եղբօրը հետ միասին. իրենց մէջտեղն ունին կրկնագիծ խաչ մը. մակագրութիւն.* Basil s Constantinoz en to xristo bas Romai.



## Զ. ՏԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

## ԿՈՍՏԱՆԴԻՆ Ը.Ի ՎՐԱՅ

24. *Ո՞ր պատմիչներ խօսած են Կոստանդինի Ը.ի վրայ. — Այն պատմիչները որ Վասիլ Բ.ի կենսագրութիւնը կ'ընեն, կը խօսին նաեւ իր եղբօր ու գահակցի՝ Կոստանդին Ը.ի վրայ. այսպէս Կեդրենոս, Զօնարաս, Գլիկաս, և այլն։*

*Հայ պատմիչները խաղաղասիրութիւն կ'անուանեն Կոստանդին Ը.ի քաղաքական անգործութիւնը. «Թագաւորեաց զկնի Վասիլին Կոստանդին նորուն հարազատն՝ ամս չորս. և քանզի այր խաղաղասէր էր և առատ, յառաջին ամին իւրոյ թագաւորութեան եկաց ի լռութեան. և հանգեաւ երկիր ի մեծամեծ տագնապէ. և զիշխանս որ գաւառակալք էին, զորս մեծն Վասիլ կարգեալ էր ի նոյն հաստատեաց». (Լաստիվերացի, Գլուխ Ե. էջ 29)։*

25. Կոստանդինի կենաց ժամանակագրութիւնը. — Իր ծնունդը. 959։

Ռոմանոս Բ. Պոլիֆքտոս հայրապետի ձեռամբ զինք գահակից կայսր կ'օծէ 961 ապրիլ 7

Վասիլ Բ.ի հետ կը թագաւորէ 976–1025

Կոստանդին միայնակ գահ կը բարձրանայ 1025

Դիոգինէս զօրավարը՝ Փացինաքները (Փեչէնէք) Դանուբէն անդին կը հալածէ 1026

Արաբացիք Անտիոքայ վրայ կը յարձակին 1026

Նաւական յաղթութիւն Յունաց ընդդէմ Արաբացւոց՝ յԱրշիպեղագոսի 1027

Որեստ Հռեգիոն քաղաքին կը տիրէ 1027

Կոստանդին կը հիւանդանայ 1028 նոյեմբեր 9

Կոստանդին Ը. կը մեռնի 1028 նոյեմբեր 11։

26. Կոստանդինի Ը.ի գերդաստանը. — Կոստանդին Ը. իր Հեղինէ թագուհիէն՝ հետեւեալ աղջիկները ունեցաւ.

1. Եւդոկիա
2. Զոյէ
3. Թէոդորա

Այս երկու վերջինները, ինչպէս տեսանք, թագաւորեցին միասին՝ Բիւզանդիոնի վրայ։

27. Կոստանդին Ը.ի դրամները. — Կոստանդին Ը. իր դրամներուն մէջ կը ներկայանայ Վասիլ Բ.ի ձախակողմը, աջ ձեռքովը՝ ծիրանին, ձախովը՝ խաչը բռնած։ Դրամներու մակագրութիւնը՝ ընդհանրապէս, Basil Constantinoz en to xristo bas romai.

(Տես Ducange, Historia Byzantina, հա. XXI).

34. — Յաւելուած. Այն գիրքը աւարտած էինք արդէն, երբ ծանօթացանք Շլումպէրժէի մի նոր գրքին հետ, հնագիտական պարունակութեամբ և յոյժ կարեւոր նաև Հայկական բիւզանդագիտութեան համար. «Sigillographie de l'empire byzantin» Paris MDCCCLXXXIV).

Այս գործը չենք կարծեր բնաւ ծանօթ ըլլայ ազգին, որուն համար սակայն յոյժ հետաքրքրական նորութիւններ կը պարունակէ։

1. Այնտեղ կը գտնենք (պատկերով միա-

սին) Թորոս Ռուբէնի (= Թորոս Ռուբինեանի) կնիքը։

Մէկ կողմը կը ներկայանան երկու զինուորական սուրբեր նիզակ ու վահան ի ձեռին. (Ս. Գէորգ և Ս. Թէոդոր, ինչպէս կը մեկնէ Շլիւմպէրժէ)։

Միւս կողմը կայ մակագրութիւնը, յունարէն լեզուով. Δύας φρούρει καλλινικῶν μαρτυρ (ων) σεβάστον θεοδώρον τον ρουπένιον (Զոյգ քաջայաղթ մարտիրոսացն՝ պահեսցէ զԹէոդորոս Ռուբէնիոս)։

(Տե՛ս էջ 695)։

Սեբաստոս, որ հին ժամանակ կը գործածուէր միայն արքունական ընտանեաց անդամներուն համար, յաջորդ դարուց մէջ, սկսեալ գլխաւորապէս Ալեքս Կոմնենոսէն, կը նշանակէր պալատականներու բարձրագոյն կարգը (տե՛ս Sigillographie էջ 581)։

Շլիւմպէրժէ կ'անդիտանայ թէ ով կարող է լինել այդ Թէոդորոս Ռուբէնը և այսչափ կը խորհրդածէ Ռուբէնիոս ձեւի նկատմամբ.

«Nom grécisé d'une illustre famille arménienne qui a donné au trône de la Petite Arménie une longue série de rois»:

Բայց դիւրին է այդ Թէոդորոս Ռուբէնիո-

ռի մէջ ճանչնալ Թորոս Բ.ը (1144-1167). իր Լեւոն Ա (1123-1143) հօրը հետ միասին գերի տարուած և բանտուած ի Կոստանդնուպոլիս, նա յետոյ արքունեաց մէջ պատիւներ ստացաւ և եղաւ ամենէն բարձրաստիճան պալատականներէն մին, ամուսնացաւ յոյն իշխանուհւոյ մը հետ, մինչև որ յաջողեցաւ փախչիլ Կիլիկիա, և վիպասանական արկածներէ յետոյ՝ իր հայրենի ժառանգութիւնը ձեռք բերել։

Շլիւմպէրժէ «Թուբէնիոս»ը «Բիւզանդական ընտանիքներու» շարքին մէջ դասակարգած է. մինչ, եթէ ստոյգ է մեր տուած մեկնութիւնը, նա ընտանեկան կնիք մը չէ, այլ Թորոս Բ.ի անձնական կնիքը։

Այսպէս ուրեմն Հայոց պատմութեան ամենէն սիրելի և ամենէն ժողովրդականացած դէմքերէն մին՝ մեզ թողուցած է իր կնիքը՝ ցարդ Հայոց անծանօթ մնացած։

Թորոս Բ. Ալեքս Ա. Կոմնենոսէն (1081-1117) շատ յետոյ ապրած ըլլալով՝ ոչ մէկ առարկութիւն կրնայ վերցնել Սեբաստոս տիտղոսը։

2. Լեւոն Հայկազնի վրայ խօսելով, յիշեցինք իր անուամբ հատած դրամներու սա-

*կաւութիւնը։ Ի փոխարէն՝ ունինք այս Հայ-արէն՝ կնիք մը։ Իրեն պէտք է ընծայել, Շլիւմպէրժէի կարծեօք, ինքզինքը «Հայոց զօրավար» անուանող Լեւոնի մը կնիքը, թ դարուն պատկանող։*

*Հետաքրքրականն այն է որ այդ կնիքի մակագրութեան մէջ՝ փոխանակ յն. տրական* Λεοντη *ձեւին գրուած է* Λεοντα. *Շլիւմպէրժէ կ'անդրադարձնէ այս երեւոյթը, առանց մեկնութիւն տալու. արդեօք հայկական հոլովման մը (Ղեւոնդայ) ազդեցութիւնը չկա՞յ այստեղ։*

3. *Մենք այլուր Լալակոն անուան վրայ խօսելով զայն Մամիկոնեանի հետ համեմատեցինք։*

*Կնիքներու հաւաքածոյքը կը յայտնէ մեզի Հայաստանի Կիւրոպաղատ մը — մինչեւ ցարդ հայ կիւրոպաղատներու ցանկէն բացակայ — Լեւոն Լալակոն անուամբ, որ ինքզինքը կ'անուանէ Դուքս Հայոց։ Կնիքը Ժ դարէն է։*

«C'est ici le sceau de Léon Lalacon, duc des (contingents) Arméniaques, dont le Porphyrogénète nous a raconté les exploits contre

les Sarrasins au chapitre XLV du *Livre de l'Administration.* Ce sceau nous apprend que Léon Lalacon était en plus revêtu de la haute dignité de curopalate. Il était le chef du thème Arméniaque en 986» (*Շլումպ. էջ* 296)։

*Ակնարկուած Լալակոնն է այն՝ որ* 996 *թուին Հայաստանի նահանգապետն ըլլալով յարձակեցաւ Արաբացւոց վրայ որ Բասեան նահանգի եկեղեցիները աւերած էին և զանոնք հալածեց Հայաստանէն, յետոյ, Թէոդուպօլսէն. Քաղաքային զօրավարին հետ յարձակեցաւ շրջակայ երկիրներու վրայ և աւերեց զանոնք.* (*տես* Muralt, Chronographie byzantine *էջ* 483)։

*Այս Լալակոնը կը թուի ճիշտ այն ընտանիքէն, որուն կը պատկանէր նաև Նիկետասէն յիշատակուած և* 858*ին ապրող Լեւոն Լալակոն, որ Նումերեան կոչուած գնդին զօրավարն էր, և որ Իգնատիոս հայրապետը չարչարեց։* (*Նոյնը, էջ* 434)։

*Մորտմանի կնիքներու հաւաքածոյքին մէջ կը գտնուին հետեւեալները՝ հայկական բանակաբեմի պաշտօնատարներուն պատկանող.*

Խերոսփաքքես, (Միկիլիոյ) հայ լեգէոննե-րու դատաւոր, Գէորգ, Պետրոս, Հայոց հիւպատոսներ։

Շլիւմպերժէի հաւաքածոյքին մէջ կը գըտ-նենք նաև հետևեալ Հայազգիներու կնիք-ները․

Արև (էջ 622) ԺԱ դարու մէջ ապրող հայազգի զօրավար, որ Աքրիտոսի դղեակը պաշտպանեց ընդդէմ Լատինացւոց և 2091ին Ալեքս կայսեր դէմ դաւադրութիւն կազմե-լով՝ աքսորուեցաւ։

Թովմաս Արտաւան պատրիկ, ԺԱ դար․ (էջ 622).

Եպիփան Արտաւազդեան, դեսպ, Կոմնե-նեանց ժամանակ (էջ 623).

Յովհաննէս Արտաւազդեան «Վեստ, հիւ-պատոս, դատաւոր Վելումի և Կեպիւրհերո-տէսի». Ժ դար). Ս. Նիկողայոսի պատկե-րով (էջ 262).

Արտաւազդ «պատրիկ, կիւրոպաղատ և կոմս կայսերական աստուածապահ Օփսիկե-ոնի» (Ը դար)։ Սա այն նշանաւոր թագա-պահանջն է որ նախ Օփսիկեոնի կոմս ըլ-լալով՝ յաջողեցաւ յետոյ կայսր հռչակել ինքզինք 742–743 (էջ 249)

Քրիստափոր Վասպուրականցի. (Ասփրաքանիթիս). Ժ դար.

Վարազքակուր (էջ 249). 711ին, Յուստինիանոս կայսեր հետ՝ սպանուեցաւ Վարդան Փիլիկ կայսրէն. նա Օփսիկիոնի կոմս էր։

Թէոդոր Խորձենանցի (Ժ-ԺԱ դար) էջ 635

Միքայէլ Քուրդիկ (Ժ դար), որ 978ին ապստամբ Վարդի ծովակալն էր և յաղթուեցաւ։

Նիկետաս Մխիթար (Նիկետաս Մախիթար, ԺԲ-ԺԳ դար). էջ 675

Վասիլ Մխիթար (էջ 675). «Վեստ, դատաւոր, և նահանգապետ Մելիտինէի և Լիւկանդոսի» (Ժ դար)։

Գէորգ Մլեհ (Մելիաս), Ժ դար (էջ 679)

Բակուրիանոս Վլաստոս, ԺԲ-ԺԳ դար։

Ռոմանոս Սքլերոս ԺԱ դար, նշանաւոր անձ իր դարու պատմութեան մէջ (էջ 696).

Գրիգոր մագիստրոս Տարօնեցի, ժամանակից՝ Ռոմանոս Լեկապենոսի էջ 706

Յովհաննէս Տարօնեցի Կիւրոպաղատ (1093ին կը յիշուի այս անուամբ զօրավար մը). էջ 706

Անտոն Թոռնիկ էջ 708.

Միքայէլ Վարդան (ԺԲ-ԺԳ դար) էջ 712

Եղփիտիոս Վռախամիոս (Վահրամ) կիւ-

րոպաղատ և դուքս Կիպրոսի, հաւանօրէն որդի 1078ին Անտիոքայ վրայ իշխող Փիլարետ Վահրամ հայ դուքսին. (էջ 714)։

Վահրամ իշխան, ԺԱ դար. (էջ 714).

Գնեմեար Վահրամ, վէստ և զօրավար (էջ 714).

*

Բիւզանդական արդի պատմչաց ցանկին վրայ (զոր տե՛ս Գրոցս Ա. հատորին, Ներածութեան մէջ) պէտք է աւելցնել գրութիւն մը, զոր գրքիս աւարտումէն յետոյ առիթ կ՚ունենանք տեսնելու. Gibbon անգղիացւոյն, 12 հատորով, The history of the decline and fall of the roman empire, London MDCCXCVII.



# ՑԱՆԿ ԳՐՈՑՍ

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐԻՆ

### Է · ԿՈՍՏԱՆԴԻՆ ՊԵՐՓԵՌՈՒԺԷՆ



### Ը · ՌՈՄԱՆՈՍ ԼԵԿԱԲԵՆՈՍ

## Թ. ՌՈՄԱՆՈՍ Բ. ԿՐՏՍԵՐ



## Ժ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՉՄՇԿԻԿ

## ԺԱ. ՎԱՍԻԼ Բ. ԲՈՒԼՂԱՐԱՍՊԱՆ

## ԺԲ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Ը.





# ՀԱՅ ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐԸ

## Ե. ՀԵՂԻՆԷ



## Զ. ԹԷՈԴՈՐԱ Բ.



## Է. ԹԷՈԴՈՐԱ Գ.



## Ը. ՈՒԹԱ





# ՑԱՆԿ

## ԾԱՆՕԹՈՒԹԵԱՆՑ



*



*

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՑԱՆԿ

## ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ «ՀԱՅ ԿԱՅՍԵՐԱՑ»

### ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆՑ

## Ա. ՀԱՏՈՐ



## Բ. ՀԱՏՈՐ

## ՀԱՅ ԿԱՅՍՐՈՒՀԻՆԵՐ

(Բ. ՀԱՏՈՐԻՆ ՄԷՋ)



***ՎԵՐՋ***